ոչ որպէս պարտն է վճարէ՝ այլ° զմէր որտին ըղձալէր-տէ :
Իսկ դու սուրբ Հայրդ իմ ըստ հոգւոյս՝ և ուսուցիչ իմ ըստ մարմնոյս ,
խանդաղատեա քոյս հիքոյս՝ միշտ յիշելով 'ի սուրբ յա-ղօթս ( 2 ) :

Զամս քսան և վեց եկաց նա յառաջնորդութեանն ե-րում, և ազգասէր գործովք բարերար հանդիսացեալ Ջու-ղայու, եթող զյիշատակ բարի և փոխեցաւ յաշխարհէ 'ի 1646 ամի : Մարմին նորա ( 3 ) ամփոփեցաւ 'ի ներքնայարկի եղանոյ սրբոյ վանիս, ըստ յետագայ արձանագրութեանն :

Ի հանգստի՛ աստ ամփոփի՝ մաքուր մարմին վարդապետի ,
Խաչատրոյ Սրբազանի՝ հետևողի Տեառն Յիսուսի :
Որ էր տեղեաւ Կեսարացի՝ գործով սուրբ հեզ և արի ,
բարձեալ յուս իւր զլուծ Քրիստոսի՝ առաջնորդէ Նորին հօտի :
Երեսնամեայ յայս գործ յանձնի՝ ամս նստիլ յայսմ աթո-ռի ,
կրէ յանձին զվարս անմարմնի՝ մեայ մինչև յիսուն վեցի ( 4 ) :
Յանցաւորացըս նա զատի՝ հազար Ղ և Ե թուի :

---

( 1 ) . Ազգ". օրա". Արարա". ընծ". հատ". ա. Եր. 2. էջ 13 — 14 :

( 2 ) . Սա այն Գրիգոր Կեսարացի լինելոց է՝ որդի 'Ի է Առաքել վարդապետ և Եէ հայր Մելքիսեդ Զամշեան ( առաջնորդ անեալ զԱ-ռաքել պատմաբան ) յիշեն 'ի պատմութեանն Հայոց Իւրով [illegible] : Հայր Մելքիսեդ 'Ի պատ. Հայ. հատ Գ. էջ 633 յիշէ Եէ յամ 1630 Մով-սէս կաթողիկոս գնաց պարտապետ Կեսարացի առաքեաց նախ-քան 'ի Յովհաննու, և նորա հանեալ 'ի [illegible] յիւրմ խնդրեաց 'ի-[illegible] Նիկոլ եպիսկոպոսէ : Եթէ յիշեալն Հայր Մելքիսեդի խաչատրոյ

Սա սկիզբն արար երկրորդ շինութեանն վանի, աւարտելով զայն յընթացս ինն ամաց 'ի 1113 թուականին Հայոց: Համգոյն նախորդին իւրոյ գովելի ազգասիրութեամբք կառավարեաց և սա զհօտ իւր, ուստի մեծարեցաւ 'ի Ջուղայեցւոց, և յաղագս բազում երախտեացն՝ սովորութիւն եղև յեկեղեցիս Ջուղայու և Հնդկաստանի 'ի Պատարագին 'ի գոհութեանն յիշատակել զանուանս սորա և նախորդին իւրոյ՝ իբրև զբազմաշնորհ Բարերարս իւրեանց: Այն սովորութիւն պահպանեցաւ մինչև ցքանի ամօք յառաջ:

Յիշատակարան գրչագիր Առաջինութեանց մատենի (2)· պատմէ զնորա արժանաւորութիւն և զվարուցն սրբութիւն՝ զոր հարկաւոր համարեցի 'ի կարգի պատմութեանս նշանակել:

“ Յիշեցէք 'ի քրիստոս զարժանին յիշատակի զհոգևոր
“ ծնօղն իմ և զարփիաւորիչն հոգւոյ իմոյ զբազմերջանիկ
“ և երիցս երանեալ ընդ երանելիսն հանգուցեալ զՏէր
“ Դաւիթ վարդապետն զարհի Եպիսկոպոսն, որ ծնաւ
“ զմեզ վերստին բանիւն ճշմարտութեան, քանզի էր սա
“ ընիկ գաւառաւ և ազգաւ Ջուղայեցի, բարեպաշտ ծնո-
“ ղաց զաւակ, նախնեօք և սերիւք յոյժ ազնուատոհմ,
“ երկիւղած յԱստուծոյ և ամօթխած 'ի մարդկանէ, բա-
“ րեբարոյ և հեզահոգի, վարուքն առաքինի և սիրօղ
“ սրբութեան, կրօնիւքն պարկեշտ յամենայն իրս, 'ի յա-
“ տել 'ի յըմպել՝ և 'ի զգենուլ, ատեցօղ ծուլութեան և
“ փառամոլութեան, արտասուօղ և աղօթարար յարաժամ,
“ անձանձիր ուսուցիչ և աննախանձ բաշխիչ խնդրողաց,
“ լցեալ ամենևին շնորհօք հոգւոյն սրբոյ. զարդարեալ
“ տեսականաւն և գործնականաւն, յաւէտ ևս կարի Քր-
“ իստոսասէր, մինչ զի յիշելն զտենչալի անուն փրկչին
“ թէ լինէր աչքն արտասուօք: Այսպիսի վարուք կեցեալ
“ յերկար ժամանակս հանգեաւ խաղաղութեամբ 'ի Քր-
“ իստոս. որոյ յիշատակ օրհնութեամբ եղիցի ամէն:
“ Ճշմարտիւ ասեմ 'ի Քրիստոս և ոչ ստեմ, զի ոչինչ ի-
“ ւիք ունէր պակասութիւն քան զնախնի եղեալ սուրբ

«վարդապետսն՝ որ 'ի գիրս պատմի, և ոչ 'ի մերումս ժա-
«մանակի տեսաք զոք նման նմա, որպէս և Տէր իսկ գի-
«տէ. քանզի շրջեալ մեր 'ի բազում աշխարհս, և գնա-
«ցեալ մինչ և 'ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, գրեթէ
«տեսաք աչօք մերովք զամենայն վարդապետս՝ եպիսկո-
«պոսս՝ և կաթուղիկոսս՝ և ոչ գտաք համեմատ նմա։
«Ի դասս արեղայից ևս՝ 'ի գումարս կարգաւորաց, 'ի ժո-
«ղովս միաբանից և 'ի հոյլս միայնակեցաց (ոչ գտաք նման
«նմա) վկայ է Տէր։ Սա 'ի տիս տղայութեան իւրոյ մինչ
«լեալ էր երկոտասանամեայ, ցանկայր վարուց կրօնաւորա-
«կանաց, և գնայ մտանէ յաշակերտութիւն մեծի և տիե-
«զերալոյս վարդապետին Խաչատրոյ Կեսարացւոյ, որ և
«նա աշակերտ Տեառն Մովսիսի Սիւնեցւոյ կաթուղիկոսի
«ամենայն Հայոց, որ եղև երկրորդ լուսաւորիչ տանս Ա-
«րամեան, և մնաց յաշակերտութեան մինչ 'ի ժամանա-
«կակէտ վարդապետին Խաչատրոյ, 'ի նմանէ ընկալեալ
«զօծումն քահանայութեան և իշխանութիւն վարդապե-
«տական, զ'նի և մեծ զաւազան որդի հոգազանդ լեալ,
«և ծառայ հաճոյական, նմին գերագոյն լեալ 'ի մէջ յո-
«գունց աշակերտակցաց խոհեմութեամբ՝ հոգազանդու-
«թեամբ՝ ճգնութեամբ՝ և առաքինութեամբ, ամենեքին
«հանգուցանէ զսիրտ վարդապետին՝ մինչ զի 'ի ժամ
«վախճանին նմա յանձն առնէ զաթոռն և զհօտն, և նո-
«րա յոչ կամաց յանձն առնու 'ի սէր վարդապետին վասն
«ժառանգելոյ զօրհնութիւն նորա, իսկ յետ վախճանին
«պարձեալ հրաժարի ամս հինգ, մինչ զի ժողովուրդն
«ամենայն բողոք բառնան առ գերահռչակ և ճգնազգեաց
«կաթուղիկոսն Տէր Փիլիպպոս, որ և նա ևս էր ձանձրա-
«ցեալ սակս չլսելոյ գերազանց հրամանի իւրոյ՝ զոր բա-
«զում անգամ գրեալ էր յանձն առնուլ զայն գործ։
«Վասն որոյ յղէ նամակ սաստկութեան՝ թէ ահա ես ճա-
«նապարհ արարեալ երթամ յԵրուսաղէմ, պիտոյ է և
«քեզ անդ լինել ինձ 'ի սպասու, որ և սա լեալ անճար
«յամենայն կողմանց ելեալ երթայ 'ի սուրբ քաղաքն, և

‘‘ լինի յանդիման Արքայազն Հայրապետին ’ի բարեկենդան
‘‘ Հինգշաբաթին յաւուրն տօնի վարդանանցն սրբոց, և մնայ
‘‘ մինչ ’ի սուրբ զատիկն, և յառաջին չորեքշաբաթին ’ի-
‘‘ տօնի աւետեաց սուրբ Աստուածածնի յիօթն. Այլեւ
‘‘ 1100 Թուոյ Հայոց ձեռնադրէ զնա սուրբ Հայրապետն
‘‘ Եպիսկոպոս անդէն ’ի սուրբ քաղաքին, և ուրախու-
‘‘ Թեամբ իբրև որդւոյ սիրելւոյ և հաճոյական ծառայի
‘‘ Քրիստոսի Թագ կապէ նմա, և փեսայացուցանէ մասին
‘‘ Հայոց՝ որք ’ի կողմանս Պարսկաստանի, և արհիական Ե-
‘‘ պիսկոպոս արքայանիստ քաղաքին իբրև գլուխ երկրորդ
‘‘ ’ի դրան արքունի, և արկանէ զպատշաճագեղ լանջօքն
‘‘ զեմիփորանն պատուական, և դնէ ’ի ձեռն զգաւազանն
‘‘ գեղուղէշ, և արկեալ ’ի մատն զմատանին ծանրագին՝
‘‘ նշան փեսայութեան, առ ’ի տիրել հարսին եկեղեցւոյ, և
‘‘ այնպիսի ճոխ փառօք եկեալ և Թագաւորեալ յեկեղե-
‘‘ ցիս մեր, ջանհաւորեալ որպէս զարեգակն. և արար բա-
‘‘ զում արդիւնս նախ՝ արար սկիզբն շինութեան եկեղեց-
‘‘ ւոյ վանաց Ամենափրկչի Նոր Ջուղայու, և կերտեալ զնա
‘‘ զմբեթայարկ և երկնաքատակ յօրինուածով. յոյժ մե-
‘‘ ծագին ծախիւք եռայարկեան ըստ նմանութեան Նո-
‘‘ յեան տապանին և Սողոմոնեան Տաճարին, և ետ նկարել
‘‘ զանազան դեղօք՝ երանգ երանգ գունով՝ ոսկենկար յօ-
‘‘ րինուածով և երփն երփն ծաղկօք յար և նման դրախ-
‘‘ տին եդեմայ և վերնոյն Սիօնի, սպանդարան անմահին
‘‘ ուր միշտ զենանի գառն Աստուծոյ ’ի հաշտութիւն Հօր
‘‘ բարձրելոյ և ’ի քաւութիւն ամենայն հաւատացելոց,
‘‘ յաւէտ պատճառ փրկութեան հոգւոյ բազմերջանիկ Հօրս
‘‘ մերոյ, ուր և հանգուցեալ կայ պատուական և սրբա-
‘‘ նեալ նշխարք նորա ’ի ներքոյ սրբոյ սեղանոյն, ընդ ե-
‘‘ րանելի Հօր և վարդապետի իւրոյ վերոյ գրելոյ։ Երկ-
‘‘ րորդ՝ մեծացոյց և ընդարձակեաց զնիստ վանացս բնակու-
‘‘ Թեան, գեղեցիկ գեղեցիկ և պատշաճաւոր շինուածովք
‘‘ զարդարեաց զնա, երրորդ՝ ստացաւ և ժողովեաց բա-
‘‘ զում աշակերտս, և ձեռնաւորն իւր արարեալ զնոսա և

«« լուսաւոր ընթաց հոգւով և զարդարեաց գիտութեամբ և
«« զանազան ուսմամբ՝ ՃԾ հոգենուագ սաղմոսիւք, քաղցր ե-
«« ղանակ շարականիւք, երաժշտական ձայնաւորօք, տա-
«« ղիւք, մեղեդիւք, գանձիւքն և այլ մանրամասն կցուր-
«« դօք, համաբողական Թուականիւք, քերթողական քե-
«« րականիւք, փիլիսոփայական հանճարիւք, և արտաքին
«« ուսմամբք, ընագանցական Աստուածաբանութեամբ, և
«« ճշմարտութեամբ Աստուածաշունչ գրոց »:

Սորա եղեն քսան և հինգ աշակերտք, յորոց հինգ Եպիսկոպոսացան առ ժամանակաւ Նորին, հինգ եղեն վարդապետք, և մնացեալքն քահանայացան։ Եպիսկոպոսունքն, Ստեփաննոս՝ որ զկնի Նորա կալաւ զառաջնորդութիւնն Ջուղայու, Խաչատուր, Մինաս, Անդրէաս, Միքայէլ, Մարկոս, Յովսէփ, Սիմէօն՝ և Յովհան։ Վարդապետքն էին՝ մեծ Բարսեղ, Յակոբ՝ որ յետոյ Եպիսկոպոսացեալ եղև կաթուղիկոս, փոքր Բարսեղ, Ստեփաննոս, Յովհաննէս, Գրիգոր, Երեմիայ, Եսայի, և Ահարոն (Յ)։ Սոյն Դաւիթ Առաջնորդ 'ի մէջ Եպիսկոպոսական կնքոյն իւրոյ քանդակեալ էր զկենդանին իւր աշակերտ Խաչատրոյ Կեսարացւոյ, որ ապացոյց համարի խոնարհութեանն իւրոյ և երախտագիտութեանն։ Վախճանեցաւ 'ի 1683 (1132) և ամփոփեցաւ կից ընդ Խաչատրոյ Նախորդին իւրում, 'ի ներքոյ յարկի սեղանոյն սրբոյ վանաց։ Ըստ յետագայ տապանագրութեան։

Նշխեալ գանձ ընծայլի՝ ուրումն Սրբազանի,
քաջ րաբունւոյ Տեառն Դաւթի՝ Շօշ քաղաքի գլխաւորի,
որ էր մնեալ 'ի տոսատկայն (4) գերեզի՝ ընիկ ազգաւ Ջուղայեցի,
առաջնորդեաց այսմ Նահանգի՝ երեսուն ամաց ութն աւելի (5)։
ՌՃԼԲ Հայոց Թվին ԼԲ ևս աւելի.
յորում առօրս առ Տէր փոխի։ Նոյեմբեր Գ ։

զկամապաշտութիւն քահանայից ոմանց որք առանց կոնդակի կամ հրամանի առաջնորդի գնան 'ի Հնդկաստան, յաւելու ասել " զայս հարկ (աթոռահամ) 'ի վերայ երիցագլխոյ ե-
" դաք, որպէս սատ կայ 'ի վերայ երիցանց, որքան կամիք
" կենալ և յամենալ ('ի վիճակաւորութեան) տարին մէկ ե-
" րէցն՝ երկու թուման տայ աղքատ և հարկաշատ եկեղե-
" ցեացս . . . :

Փութաջան եղև մի բառնալոյ զհարկս եկեղեցեացն (2). Ջուղայու որ հաստատեալն էր 'ի շահ Սէլման արքայէ, և վասն այնր ծախեաց զչորս հարիւր թումանս մինչև ընկալաւ զհրամանն ազատութեան, այլ տակաւին վճարեցաւ այն հարկ մինչև ցժամանակս Մովսէս Առաջնորդի:

Յաւուրս սորա 'ի 1688 ամի յուզեցաւ խռովութիւն մեծ ընդ մէջ Լուսաւորչական և Հայ պապականաց Ջուղայու, Շահրիմանեանք զօրաւիգ և պաշտպան էին պապականութեան, և կամէին տարածել զայն 'ի Լուսաւորչական Հայս Ջուղայու առաջնորդութեամբ Յիսուսեան կրօնաւորաց. և սա այլովք իշխանօք Ջուղայու հոգւով չափ հակառակեաց ընդդէմ նոցա, և բողոքեալ առ շահ Սէլման արքայն՝ ընկալաւ զհրաման արտաքսելոյ զփաթերայս նոցա և քակելոյ զեկեղեցիս նոցա (3). զորոց յիւրում տեղւոջ ունիմ լիագոյն պատմաբանել:

Ընդդէմ պապականաց տպագրեաց սա 'ի վանսին Ամենափրկչի զմատեանն կոչեցեալ " Հակաճառութեան ,, (4). որոյ վասն պապականք չարախօս եղ՚ն առ մեծամեծս այլազգեաց թէ ընդդէմ վարդապետութեան Ղուրանին՝ են բանք նորին մատենի, վասն որոյ ստացան ըստ այնմ մասին զերկերիւր թուման տուգանս, և այլ ևս երկերիւր թուման ծախս եղև վասն մեծամեծաց այլազգեաց կաշառացն, մինչև շիջաւ այն հրդեհ չարախօսութեան: Ստացաւ զերկերիւր թումանս յիշխանաց և 'ի մեծատանց Ջուղայու, և բաշխեաց զայն աղքատ ժողովրդոց (5): Յամի 1697 յեպիսկոպոսաց սրբոյ Էջմիածնի բազմականիք մանաւանդ թախանձանօք հրաւիրեցաւ կալնուլ զգահ կաթողիկոսութեան՝ յընկեցիկ առնելն

զՆահապետ կաթողիկոս (6) ։ Վասն որոյ եղեալ Նորա մանտարաւ Ջուղայեցւոց և Հրովարտակաւ (7) շահ Սլէյման արքայի գնաց յէջմիածնին, այլ անդ ոչ աջողեցաւ ելք գործոյն զի ՚ի կուսակցաց Նահապետ կաթողիկոսի չարախօսութեամբ մատնեցաւ այլազգի իշխանին Երևանայ, որոյ կաշառակեր եղեալ գրեաց զչարախօսութիւնս կուսակցաց Նահապետ կաթողիկոսի առ շահ Սլէյման, և արքայն եդ զհազար թումանս ՚ի վերայ Նորա, (զոր վճարեաց վանքն Ամենափրկչի) և արկեալ եղև ՚ի բանտ, ուրանօր զկնի բազում խոշտանգանաց վախճանեցաւ յամի 1698 ՚ի 4 Յունվարի (8) ։ Յետ վախճանելոյ սորա յառաջնորդութենէ և գնալոյ յաթոռն Էջմիածին, վանքն Ամենափրկչի մնաց ՚ի ներքոյ հազար թուման պարտուց, որք յաւուրս առաջնորդութեան Նորա ծախեցան վասն պէսպէս ազգաօգուտ և անազգաօգուտ գործոց, և հազար թուման տուգանքն ևս յաւելաւ ապա ՚ի վերայ նոյն ծանրութեան ։

---

(1). Գրեալ է այն ։
(2). Տես ՚ի Գլուխ ։
(3). Ասել նորա կրեալ ։ Ձեռագիր յիշատակարանէ ։
(4). Հայր Միքայէլ Չամչեան ՚ի պատմութեան Հայոց հատոր [Գ], երես 749, գրէ թէ " առ սոյն Աղէքսանդր ... Գրեալ էր Գիրք մի " քաջորէն հակառակ Ֆռանկաց, որոյ ընդդէմ արար ոմն Գիրք Սրբազ- " ասնաս դաշտեցի ՚ի նոր Ջուղայէ՝ մի ոմն մի պատասխանեալ Ֆռանկաց " նորա իմաստութեամբ ,, ։ Աղէքսանդր կաթողիկոս թէպէտ ունէր հակառակութիւն հոգւով շատ ընդ ֆաթէրյս պապականաց, այլ նորա ոչ կայ մատեան ինչ շինեալ հակառակ նոցա. սակայն յիշատակեալ հայր Միքայէլն կամ լինելոց է նոյն հակաճառութեան մատեանն յօրինեալ ՚ի Սրբազանն եպիսկոպոսէ, կամ լինելոց է " Կրթութեան մանկանց ,, քաջորէն Գիրքն զոր յօրինեալ է Ջուղայեցի Յովհաննէս վարդապետն հօշէցեանն տեէշերալյս, որ տպագրեալ է ՚ի Պօլիս ՚ի տպարանի Գրիգոր դպրի Մարզուանեցւոյ, յամի 1713 ։ Այլ ինձ Հրաշագործ այս յարմար թուի, զի յիշատակեալ հայր Միքայէլ, Սրբ-

# Ե.

## ԱՂԵՔՍԱՆԴՐ

Տէր Աղէքսանդր եպիսկոպոս Ջուղայեցի ըստ խնդրոյ ժողովրդոց Ջուղայու յամի 1694 կալեալ զաթոռ Առաջնորդութեանն, և բարւոք տնտեսութեամբ կառավարէ զբանաւոր հօտն իւր մինչև ցամ Տեառն 1706. յորում ժամանակի ըստ խնդրոյ և ըստ ընտրութեան ազգի Հայոց կարգի կաթուղիկոս սրբոյ Էջմիածնի, և արքունի հրովարտակաւ ելանէ 'ի Ջուղայոյ և գնայ յԷջմիածին կալնուլ զաթոռ Հայրապետութեան (1)։ Յետ ելանելոյ սորա յԱռաջնորդութենէ վանին Ամենափրկչի՝ վանքն կայր 'ի ներքոյ 1180 թումանի պարտուց (2) որ մնացեալն էր 'ի ժամանակէ առաջնորդութեանն Ստեփաննոս Եպիսկոպոսի։ Սա յընթացս կենաց իւրոց ցորչափ եկաց 'ի կաթուղիկոսութեան, կարի մտերմական և ընտանեկան սիրով պահեաց զհաղորդակցութիւն սիրահաղորդ նամակաց ընդ իշխանս Ջուղայու, յորմէ երեսուն կոնդակք բարեկամականս և հայրենակցութեան սիրով գրեալք անցին 'ի ձեռս իմ, զորս գրեալ էր առ ներքոյ գրեալ իշխանսն Ջուղայու, էր զի ուրոյն ուրոյն յանուն նոցա, և էր զի 'ի միասին, որք են Աէթաղայ, Սաֆրազ Թարխան, Աւետիք, Յակոբ, Էլիազ, Էմնիազ, (սա յամենայն կոնդակսն իւր իբրև առանձին սիրոյ նշան գրէ "աչացս լոյս") Սահրադ և Ղազար. 'ի միում 'ի կոնդակացն իւր, յետ յիշելոյ զկացութենէ իւրմէ՝ ընդ որ բաւարալ ցուցանէ զինքն և գոհ ըստ ամենայնի, յաւելու ասել" բայց "միայն սէր ձեր տոչորէ և խորովէ զսիրտ իմ, և գութ ձեր "զալարեցուցանէ զաղիս իմ, և 'ի մտածելն զձեզ՝ տոչորին "երիկամունք իմ, և ոչինչ ունիմ մխիթարութիւն, այսքան "աղէտից և տարակուսանաց իմոց"։ Եւ յայլում կոնդակի

խորում գրէ այս օրինակ, «Եւ արդ՝ սիրելիք իմ և հարա-
«զատ որդիք Մօրս Լուսոյ սրբոյ Էջմիածնի, զոր գոհութիւն
«գոհացայց զձէնջ, և կամ որպիսի շնորհակալ եղէց զբարե-
«րարութիւնէ ձերմէ, 'ի տրոցն յառատութենէ՝ թէ 'ի պատ-
«ուոյն յոլովութենէ զոր պարտական եմ յամենայնի, բայց
«միայն օրհնութեամբն այն օրհնեցից զձեզ որ ոչ անցանէ. և
«զփոխարէն տրիտուրն հատուսցէ ձեզ հատուցիչն ամենայն
«բարեաց՝ հոգևորացն և մարմնաւորացն, աստեացս և հան-
«դերձելոցն, ձեզ և ձեր որդւոցն, սիրելեաց և բարեկամաց.
«յաւէտ և սնուցելոց ձերոց յամենայնի»։

Սա անշէջ ունելով 'ի սրտի խորում զսէր Հայրենեաց, 'ի 25 Թիրայ 1160 ամի, ('ի 12 Հոկտեմբերի 1711) գայ 'ի Ջուղայ. և անդ մնալով ամիսս ութ, և մխիթարելով զհայրենիս և զբարեկամս իւր, 'ի 27 շբաթ 1161 (17 յունիս 1712) վերադառնայ միւսանգամ 'ի սուրբ Աթոռն Էջմիածին (3)։ Կաթուղիկոսութիւն սորա եղև կարի օգտակար ոչ միայն սակս Ազգին, այլ և վասն սրբոյ Էջմիածնի, զորոց նոյն ինքն Աղէքսանդր գրէ առ Մովսէս Առաջնորդն Ջուղայու վանաց, յունիս 4՝ ՌՃԿԲ թուական կոնդակաւն իւրով, զոր հարկաւոր համարեմ յիշատակել աստ։

«Յաղուհացի միջնոցէն մինչև ցարդ թէ տան, և թէ
«դուրսն, տասն տեղ քարխանայք ունիմ, երեք հարիւր ա-
«ւելի ուստայ մշակ կուրանի, տեղոյս կարգն գիտես որ ա-
«մէն մշակ օրն երեք անգամ հաց կուտէ, որ լինի օրն ինն
«հաց, օրն երեք հազար հաց տանէս դուրս կուլինի, զատ 'ի-
«միաբանից և երթևեկողաց. քարխանայքն այս ինչ են՝
«յառաջին գրեալ եմ, սեղանատանն ձմեռան համար, քան և
«հինգ գազ ու կէս երկայնութիւնն, հինգ գազ լայնութիւնն,
«չորս գազ բարձրութիւնն, ամէնն սրբատաշ և նարին
«թրաշ քարով, սորա վերևն այլ նոյն չափովս ցորենի ամ-
«բար. սեղանատունն Աստուածով մինչի վարդապետն կատար
«կառնու, մէջն այլ նոյնպէս տաշեալ քարով, երկու բու-
«խերի երեք դռնացի, որ այլ սեղանատանէն ներս կումտնէ։
«Երկրորդ որ եկեղեցւոյ մօտի խորն տանուս եմ շինած

"Նորա վերայ այլ զանգակատան նման երկու տակ և երկու
"գմբեթով նոյնպէս քարով շինած եմ։ Երրորդ՝ Միմոն վար-
"դապետի այգուցն կտրած եմ ծածանած թաւլէք շինում։
"Չորրորդ՝ Դըրի այգւոյ հիւսիսային պատերն 'ի վեր ա-
"ռեալ շատ բարձրացուցինք, և յարևմտեան կողմն այգիք
"առինք նորս ձգեցինք մինչև սուրբ Հռիփսիմի մօտն որ կրկին
"Դըրի այգի եղև։ Հինգերրորդ՝ այս մեր նոր առած այգին
"յեզրն հիւսիսային և արևմտեան կողմն պատերն բաց էր,
"որչափ կամեցաք նորս ձգեցաք որ եղև կրկին նոյնչափ։
Վեցերրորդ՝ Երևանայ այգեաց պատերն բարձրացուցինք,
որ այլ այգւոյ միջոցն ճանապարհ չլինի, կողերուն † գնան։
"Եօթներրորդ՝ յուշկանայ այլ նոր մուլք եմք առած, որ
"պատերն քաշում են։ Ութերրորդ՝ առուն որ միայն եօթա-
"նասուն մշակ տեղն է բանի։ Իններրորդ՝ խառատ և դարբին
"որ սոցա ուզեցած պարագայքն են շինում։ Տասներրորդ՝
"մոնլադուրսի թուրքի մլքերն որ յիսուն վաթսուն տարի է
"իւրեանց ձեռքն է եղեալ, դիւանի արզ արարաք զայն ևս
"յետ դարձուցին մեզ, որ այժմս վարեցինք և ցանեցինք շը-
"նորհօքն Քրիստոսի ,,։

Սա յամի 1163 գրէ զկտակ իւր, որոյ այս է պատճէն։
"Ըրդ ես Ջուղայեցի Տէր Աղէքսանդր կաթուղիկոս ամե-
"նայն Հայոց, 'ի սուրբ Աթոռոյս Էջմիածնի 1155 թվին,
"կոչեցայ յաթոռակալութիւն սորին, եկն եհաս ժամանեաց
"մինչև 1163 թվին, յորում զկտակս գրեցի, թէ ութնամե
"զինչ արդիւնք եղև սրբոյ Աթոռոյս Աստուած միայն գիտէ,
"այլ և տեսողքն և լսողքն և մանաւանդ թէ նահապետ կա-
"թուղիկոսն որ թագաւորական պարտք կայր երկու հազար
"թումանն զայն ևս վճարեցի, որ մէկ դեկան պարտք չկայ
"սուրբ Աթոռոյս այլ և դրամ ևս կայ . . . երկրորդ՝ ով
"սիրելիք իմ յետ մահուանն իմոյ՝ կամք ձեր է զո՞ ոք կամիք
"կաթուղիկոս ընտրէք, այլ եթէ ինձ լսէք Ջուղայեցի Մով-
"սէս վարդապետին կարգեցէք, զի ստոյգ և հաւատաւ-
"գիտեմ, որ կրկին՝ երեքկին՝ և բազմակրկին ճոխացուցանէ
"զԱթոռս և զԱզգս, և որինչ 'ի նմանէ պակասութիւն լինի

“ Ազգին և սուրբ Աթոռոյս ես լինիմ պարտական, և որինչ
“ շահ և օգուտ ծնանի, դուք վայելեսջիք բարութեամբ։
“ Ողջոյն և խաղաղութիւն եղիցի ընդ ձեզ ընդ ամենեսեանսդ,
“ ամէն, կացէք բարեաւ և մնացէք խաղաղութեամբ,
“ և վասն մեր աղօթս արարէք և յիշեցէք 'ի քրիստոս, և
“ դուք յիշօղքդ յիշեալ լիջիք առ Տէր Յիսուս Քրիստոս և
“ 'ի յոյսն բնաւից, ամէն ,,։

Թողեալ նորա զբազում ազգաօգուտ գործոց յիշատակս, փոխեցաւ յաշխարհէ աստի 'ի 22 Նոյեմբերի 1714 ամի (1163)։

Ի պատմութեանն սոյն Աղէքսանդր կաթուղիկոսի, Հ. Մի-
քայէլ Չամչեան գրէ թէ “ Սա ինքն Աղէքսանդր յառաջ քան
“ զնստիլ իւր յաթոռ Հայրապետութեան՝ ունէր ընդդիմու-
“ թիւն առ քաղկեդոնականսն առ Աթոռն Հռովմայ . . . Այլ
“ յորժամ նստաւ Աղէքսանդր յաթոռ կաթուղիկոսութեան
“ 'ի բաց եթող զառաջին ընդդիմութիւն իւր, և կալաւ սէր
“ մեծ ընդ Առաքելական գահին Հռովմայ, և եցոյց պատիւ
“ լատին կրօնաւորաց, որք հանդիպեցան յէջմիածին, և
“ զկնի սակաւուց՝ յամի 1709 ՌՃԾԸ 'ի փետրվարի 25 յղ-
“ ղեաց գիր սիրոյ և յարգութեան առ Սրբազան պապն Կղե-
“ մէս մետասաներրորդ 'ի դիմաց իւրոց և 'ի դիմաց համօրէն
“ վարդապետաց և բովանդակ հօտին իւրոյ, յորում ընդու-
“ նելով զՀռովմայ Հայրապետն լինել փոխանորդ Քրիստոսի
“ և յաջորդ Պետրոսի վիմի անուանէ զնա երիցս երջանիկ տի-
“ եզերական Հայրապետ, և Պետական գլուխ, գերիշխանա-
“ կան մեծութիւն, և գերագոյն նախագահութիւն Հայր հա-
“ սարակաց քրիստոնէից և անշիջանելի ջահ կաթուղիկէ և
“ առաքելական եկեղեցւոյ։ Եւ առաջի եդեալ զսէր իւր և
“ զիւրայնոցն առ Սրբազան գահն Հռովմայ, խնդրէ՝ զի ըստ
“ հայրախնամ գթոյն արժանի արասցէ առաքել զփոխադարձ
“ պատասխանի յԱթոռն սրբոյ էջմիածնի, և մեք առէ՝ ըն-
“ կալցուք զթուղթս ձեր իբրև զԱստուածատուր պատգամս
“ Մովսէսի ,,։ (Չամչեան պատմ. Հայ. հատ. Գ. էջ 749)։

Բարեբաղդաբար գտի զօրինակ յիշեալ կոնդակին յԱղէք-

սանդր կաթուղիկոսէ գրեալ առ Եղեմէս պապ, զոր ընդ այսմ կցել հարկաւոր համարեցի, զի գիտասցէ Ազգն թէ պատմութիւնն չինեալ 'ի Հ. Միքայէլէ՝ 'ի բազում դէպս է յարմարեալ ըստ իւրոյ հաճոյից, որ միշտ գուն գործէ զեկեղեցին Հայոց արկանել ընդ լծով հրամանի աթոռոյն Հռովմայ, քանզի կոնդակն գրեալ յԱղէքսանդրէ առ Եղեմէս պապ, է բողոք զշարախառնութեանց փաթերայից, և 'ի յիշեալ կոնդակին չիք յիշատակութիւն ծանր ծանր պատուանուանունութեանցն, զոր ըստ քմաց շարակարգէ Հ. Միքայէլ 'իպատմութեանն իւրում: Ահաւասիկ այս է պատճէն կոնդակին: «Ի գերապատիւ և 'ի գերաակզբնական պատճառէ յԱստուծոյ հօրէ 'ի գերակատար և 'ի գերածնունդ Նորին բնութենէ խնկակից՝ և անժամանակ միածին բանէ, 'ի գերազանց և 'ի գերալրական բղխմանէ Նորուն էութենէ՝ ինքնազօր և ամենազօր Հոգւոյն Ճշմարտէ, ընտրեալ և պսակեալ՝ բարգաւաճեալ և փառաւորեալ, և Նոյն ամենասուրբ Երրորդութեամբն պարսպեալ և Նորին շնորհօքն ուռճացեալ՝ և պերճացեալ հոգևոր և մարմնաւոր իշխանութեամբ՝ զարգացեալ և շքեղացեալ յԱստուածպետական փառաց հաղորդեալ: Տիրելով ծովու և ցամաքի, քաղաքաց և աւանաց՝ հեռաւորաց կղզեաց, և մերձաւորաց գաւառացն: Յոգնապատիւ և գերահռչակ պատուով մեծարեալ՝ պետականին ժամանեցելոյ գահին Հռովմայ Տեառնդ Գլեմէնտոսի երիցս երջանիկ Պապի:

Ողջոյն սիրոյ և սրբութեան մատուցանեմք վսեմախօս մեծութեանդ, և որոց ընդ հովանեաւ քոյոց թևոց դասուց եկեղեցականաց միանգամայն և աշխարհականաց: Մեք նուաստ ծառայք Քրիստոսի Տէր Աղէքսանդր ամենայն Հայոց կաթուղիկոս 'ի կաճս լուսազարդ և Աստուածաէջ Աթոռոյս Էջմիածնի, և որք ընդ ինև ժառանգաւորք սրբութեան ուխտի Եպիսկոպոսք՝ Քահանայք՝ Վարդապետք և ամենայն կղերք եկեղեցեաց: Եւ ընդ Աստուածապարգև և Քրիստոսանուէր ողջունիս, ծանուցումն յայտարարութեան առնեմք փառաւոր Տէրութեանդ քոյ: Զի թէպէտ և մեք վերջացեալ գտանեմք.

ներ այսմ ժամանակի 'ի մարմնաւոր իշխանութենէ՝ սակայն ըզ-
ձերն տեսանելով և լսելով քաջատոհմութիւն գերապատ-
ուութեան, զուարճացեալ բերկրիմք 'ի սիրտ և 'ի հոգի, և
գոհութիւն անբաւ բիւրօք, և օրհնութիւն մատուցանեմք
ամենակալ թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որովք թա-
գաւորք թագաւորեն և հզօրք գրեն զարդարութիւն՝ ըստ
իմաստնոյն բանի։ Եւ խնդրեմք զինոյն յամերամ ժամանակօք,
և պարագայց ամօք խաղաղութեամբ, և անդրդուելի հաս-
տատուն պահեսցէ մինչ 'ի կատար, և 'ի սպառումն յաւիտե-
նից այսորիկ 'ի փառս և 'ի գովեստ Աստուածութեան իւրոյ,
յուրախութիւն և 'ի պարծանս ամենայն քրիստոնէից ամէն։
Եւ արդ՝ արտաքրեմք և զայս առաջի գերիշխանական մե-
ծութեան ձերոյ, զի 'ի բնուստ, անդուստ 'ի սկզբանէ՝ այս է
սովորութիւն նախապահութեան գերագունութեանցդ, վար-
դապետս, և քարոզս առաքել 'ի չորեքծագեան տիեզերս,
որպէս և յոլովս տեսաք, և տեսանեմք աչօք մերովք, իբր զի
քարոզեսցեն զՔրիստոս Աստուած հաւատալ, և խոստովա-
նել, և նովաւ գտանել զփրկութիւն հոգւոց, և հասանիլ
թողութեան մեղաց ըստ Սրբազան Առաքելոյն Պօղոսի որ ասէ
" սրտիւ հաւատալ յարդարութիւն, և բերանով խոստովա-
նել զփրկութիւն ,, ։ Քանզի ոչ ուստեքէ հաստատեալ ա-
ւանդութիւնս այս, եթէ ոչ 'ի նոյն ամենաՏեառնէ Քրիստոսի
Աստուծոյ։ Որ և յետ փրկագործ տնօրէնութեանն, և փա-
ռաւոր յարութեանն, պատուիրեաց աշակերտաց իւրոց ասե-
լով " երթայք յաշխարհ ամենայն, և քարոզեցէք, որ հա-
ւատայ և մկրտի կեցցէ, և որ ոչ հաւատայ դատապարտե-
ցի ,, ։ Զոր և այսու եդեալ պայմանաւ՝ կրկին նշանս կըն-
քեալ տեսանեմք 'ի բարերար փրկչէն մերմէ, հաւատ և մկր-
տութիւն, ընդ որս և կայ պարունակեալ ամենայն աւանդու-
թիւնք եկեղեցւոյ, որովք յայտնի ծանուցանի բոլոր խորհըր-
դածութիւնք քրիստոնէից։ Քանզի զի՞նչ են հաւատք, ե-
թէ ոչ յուսացելոց 'իրաց հաստատութիւն, և յանդիմանու-
թիւն որոց ոչն երևին ըստ առաքելոյ։ Ըստ որում կանոնի
պարտիմք հաւատալ 'ի միում ամենազօր և ամենակարող ըն-

զՆահապետ կաթուղիկոս (6) ։ Վասն որոյ եղեալ նորա մանտարաւ Ջուղայեցւոց և Հրովարտակաւ (7) շահ Սուլէյման արքայի գնաց յէջմիածին, այլ անդ ոչ աջողեցաւ ելք գործոյն զի ՚ի կուսակցաց Նահապետ կաթուղիկոսի չարախօսութեամբ մատնեցաւ այլազգի իշխանին Երևանայ, որոյ կաշառակեր եղեալ գրեաց զչարախօսութիւնս կուսակցաց Նահապետ կաթուղիկոսի առ շահ Սուլէյման, և արքայն եդ զհազար թումանս ՚ի վերայ նորա, (զոր վճարեաց վանքն Ամենափրկչի) և արկեալ եղև ՚ի բանտ, ուրանօր զկնի բազում խոշտանգանաց վախճանեցաւ յամի 1698 ՚ի 4 Յունվարի (8) ։ Յետ եղանելոյ սորա յաջորդութենէ և գնալոյ յաթոռն Էջմիածին, վանքն Ամենափրկչի մնաց ՚ի ներքոյ հազար թուման պարտուց, որք յաւուրս աջորդութեան նորա ծախեցան վասն պէսպէս ազգօգուտ և անազգօգուտ գործոց, և հազար թուման տուգանքն ևս յաւելաւ առա ՚ի վերայ նոյն ծանրութեան ։

---

(1). Գրեալ է այն ։
(2). Տես ՚ի Գլուխ ։
(3). Այսպէս նորա Գրեալ ։ Ձեռագիր յիշատակարանք ։
(4). Հայր Միքայէլ Չամչեան ՚ի պատմութեան Հայոց հատոր Գ, երես 749, գրէ թէ «առ իւրն Աղեքսանդր ... գրեալ էր գիրք մի «Փոքրիկ համառօտ Ճառնիրք, որոյ ընդդէմ արար զայլ գիրք Ստեփանոս Դաշտեցի ՚ի Նոր Ջուղայէ՝ մի առ մի պատասխանելով ճառից «նորա իմաստութեամբ» ։ Աղեքսանդր հաւատացեալ թէպէտ ունէր հակառակութիւն հոգւով շատ ընդ Փաթերացն պապականաց, այլ նորա ոչ գոյ մարթեան իւր լինել հակառակ նոցա. սակայն յիշատակեալ Հայր Միքայէլն հիմ լինելոց է նոյն հակաճառութեան մարդեանն յօրինել ՚ի Մխիթարեան [illegible], հաւան լինելոց է «Արթուրեան մանկանց» Փոքրիկ գիրքն զոր յօրինեալ է Ջուղայեցի Յովհաննէս Վարդապետն հռչակեալ [illegible], որ տպագրեալ է ՚ի Պոլիս ՚ի տպարանի Գրիգոր դպրի Մարզուանցւոյ, յամի 1713 ։ Այլ մեզ [illegible] այս յարմար թուի, զի յիշատակեալ Հայր Միքայէլ, Մխ-

# Ի.

## ԱՂԷՔՍԱՆԴՐ

Տէր Աղէքսանդր Եպիսկոպոս Ջուղայեցի ըստ խնդրոյ ժողովրդոց Ջուղայու յամի 169? կալաւ զաթոռ Առաջնորդութեանն, և բարւոք տնտեսութեամբ կառավարէ զքանաւոր հօտն իւր մինչև ցամ Տեառն 1706, յորում ժամանակի ըստ խնդրոյ և ըստ ընտրութեան ազգի Հայոց կարգի կաթուղիկոս սրբոյ Էջմիածնի, և արքունի հրովարտակաւ ելանէ 'ի Ջուղայոյ և գնայ յԷջմիածին կալնուլ զաթոռ Հայրապետութեան (1)։ Յետ ելանելոյ սորա յԱռաջնորդութենէ վանին Ամենափրկչի՝ վանքն կայր 'ի ներքոյ 1180 թումանի պարտուց (2) որ միացեալն էր 'ի ժամանակէ առաջնորդութեանն Ստեփաննոս Եպիսկոպոսի։ Սա յընթացս կենաց իւրոց ցորչափ եկաց 'ի կաթուղիկոսութեան, կարի մտերմական և ընտանեկան սիրով պահեաց զհաղորդակցութիւն սիրահաղորդ նամակաց ընդ իշխանս Ջուղայու, յորմէ երեսուն կոնդակք բարեկամականք և հայրենակցութեան սիրով գրեալք անցին 'ի ձեռս իմ, զորս գրեալ էր առ ներքոյ գրեալ իշխանսն Ջուղայու, էր զի ուրոյն ուրոյն յանուն նոցա, և էր զի 'ի միասին, որք են Սէթաղայ, Սաֆրազ Թարխան, Աւետիք, Յակոբ, Էլիազ, Էմիրազ, (սմա յամենայն կոնդակսն իւր իբրև առանձին սիրոյ նշան գրէ "աչացս լոյս) Սահրադ և Ղազար. 'ի միում 'ի կոնդակացն իւր, յետ յիշելոյ զկացութենէ իւրմէ՝ ընդ որ բաւարար ցուցանէ զինքն և գոհ ըստ ամենայնի, յաւելու ասել" բայց "միայն սէր ձեր տոչորէ և խորովէ զսիրտ իմ, և գութ ձեր "զալարեցուցանէ զաղիս իմ, և 'ի մտածելն զձեզ՝ տոչորին "երիկամունք իմ, և ոչինչ ունիմ մխիթարութիւն այսքան "աղետից և տարակուսանաց իմոց,,։ Եւ յայլում կոնդակի

իւրում գրէ այս օրինակ, « Եւ արդ սիրելիք իմ և հարա-
« զատ որդիք Մօրս լուսոյ սրբոյ Էջմիածնի, զոր գոհութիւն
« գոհացայց զձէնջ, և կամ որպիսի շնորհակալ եղէց զքարե-
« բարութենէ ձերմէ, 'ի տրոցն յառատութենէ՝ թէ 'ի պատ-
« ուոյն յոլովութենէ զոր պարտական եմ յամենայնի, բայց
« միայն օրհնութեամբն այն օրհնեցից զձեզ որ ոչ անցանէ. և
« զփոխարէն տրիտուրն հատուսցէ ձեզ հատուցիչն ամենայն
« բարեաց՝ հոգևորացն և մարմնաւորացն, աստեացս և հան-
« դերձելոցն, ձեզ և ձեր որդւոցն, սիրելեաց և բարեկամաց.
« յաւէտ և սնուցելոց ձերոց յամենայնի,,:

Սա անուշէջ ունելով 'ի սրտի իւրում զսէր Հայրենեաց, 'ի 25 Թիրայ 1160 ամի, ('ի 12 Հոկտեմբերի 1711) գայ 'ի Ջուղայ, և անդ մնալով ամիսս ութ, և մխիթարելով զհայրենիս և զբարեկամս իւր, 'ի 27 շբաթ 1161 (17 յունիս 1712) վերադառնայ միւսանգամ 'ի սուրբ Աթոռն Էջմիածին (3): Կաթուղիկոսութիւն սորա եղև կարի օգտակար ոչ միայն սակս Ազգին, այլ և վասն սրբոյ Էջմիածնի, զորոց նոյն ինքն Աղէքսանդր գրէ առ Մովսէս Առաջնորդն Ջուղայու վանաց, յունիս 4՝ ՌՃԿԲ Թուական կոնդակաւն իւրով. զոր հարկաւոր համարեմ յիշատակել աստ:

« Յաղագս հացի միջնոցէն մինչև ցարդ թէ տան, և թէ
« դուրսն, տասն տեղ քարխանայք ունիմ, երեք հարիւր ա-
« ւելի ուստայ մշակ կուբանի, ամղուոյս կարգն գիտես որ ա-
« մէն մշակ օրն երեք անգամ հաց կուտէ, որ լինի օրն ինն
« հաց, օրն երեք հազար հաց տանէս դուրս կուլինի, զատ 'ի-
« միաբանից և երթևեկողաց. քարխանայքն այս ինչ են՝
« յառաջին գրեալ եմ, սեղանատան ձմեռան համար, քանն և
« հինգ գազ ու կէս երկայնութիւնն, հինգ գազ լայնութիւնն,
« չորս գազ բարձրութիւնն, ամէնն սրբատաշ և նարին
« թրաշ քարով, սորա վերեն այլ նոյն չափովն ցորենի ամ-
« բար. սեղանատունն Աստուծով մինչի վարգաւլառն կատար
« կառնու, մէջն այլ նոյնպէս տաշեալ քարով, երկու բու-
« խէրի երեք դռնացի, որ այլ սեղանատանէն ներս կումտնէ:
« Երկրորդ որ եկեղեցւոյ մօտի խուցն տանքու եմ շինած

«Նորա վերայ այլ զանգակատան նման երկու տուն և երկու
«գմբեթով նոյնպէս քարով շինած եմ։ Երրորդ՝ Սիմոն վար-
«դապետի այգւոյն կորած իմ մեծամեծ թաւլէք շինեալ ։
«Չորրորդ՝ Գըռի այգւոյ հիւսիսային պատէրն 'ի վեր ա-
«ռեալ շատ բարձրացուցինք, և յարևմտեան կողմն այգիք
«առինք նորս ձգեցինք մինչև սուրբ Հռիփսիմի մօտն որ կրկին
«Գըռի այգի եղև ։ Հինգերրորդ՝ այս մեր նոր առած այգին
«յեզրն հիւսիսային և արևմտեան կողմն պատերն բաց էր,
«որչափ կամեցաք նորս ձգեցաք որ եղև կրկին նոյնչափ ։
Վեցերրորդ՝ Երևանայ այգեաց պատերն բարձրացուցինք,
որ այլ այգւոյ միջոցն ճանապարհ չլինի, կողերովն † գնան։
«Եօթներորդ՝ յուշկանայ այլ նոր մուլք եմք առած, որ
«պատերն քաշում են ։ Ութերրորդ՝ առուն որ միայն եօթա-
«նասուն մշակ տեղն է բանի ։ Իններրորդ՝ խառատ և դարբին
«որ սոցա ուզեցած պարագայքն են շինում ։ Տասներրորդ՝
«մնկլաղուրսի թուրքի մլքերն որ յիսուն վաթսուն տարի է
«իւրեանց ձեռքն է եղեալ, դիւանի արզ արարաք զայն և
«յետ դարձուցին մեզ, որ այժմս վարեցինք և ցանեցինք շը-
«նորհօքն Քրիստոսի »։

Սա յամի 1163 գրէ զկտակ իւր, որոյ այս է պատճէն ։

«Որդ ես Ջուղայեցի Տէր Աղէքսանդր կաթուղիկոս ամե-
«նայն Հայոց, 'ի սուրբ Աթոռոյս Էջմիածնի 1155 թուին,
«կոչեցայ յաթոռակալութիւն սորին, եկն եհաս ժամանեաց
«մինչև 1163 թուին, յորում զկտակս գրեցի, թէ ութն ամ
«զինչ արդիւնք եղև սորբոյ Աթոռոյս Աստուած միայն գիտէ,
«այլ և տեսօղքն և լսօղքն և մնացեալքն, թէ նահապետ կա-
«թուղիկոսն որ թագաւորական պարտք կայր երկու հազար
«թուման զայն ես վճարեցի, որ մէկ դեկան պարտք չկայ
«սուրբ Աթոռոյս այլ և դրամ ես կայ . . . երկրորդ՝ ով
«սիրելիք իմ յետ մահուանն իմոյ՝ կամք ձեր է զո՛ ոք կամիք
«կաթուղիկոս ընտրէք, այլ եթէ ինձ լսէք Ջուղայեցի Մով-
«սէս վարդապետին կարգեցէք, զի ստոյգ և հաւատեա
«գիտեմ, որ կրկին՝ երեքկին՝ և բազմակրկին ճոխացուցանէ
«զԱթոռս և զԱզգս, և որինչ 'ի նմանէ պակասութիւն լինի

"Ազգին և սուրբ Աթոռոյս ես լինիմ պարտական, և որինչ
"շահ և օգուտ ծնանի, դուք վայելեսջիք բարութեամբ ։
"Ողջոյն և խաղաղութիւն եղիցի ընդ ձեզ ընդ ամենեսեանսդ,
"ամէն, կացէք բարեաւ և մնացէք խաղաղութեամբ,
"և վասն մեր աղօթս արարէք և յիշեցէք 'ի քրիստոս, և
"դուք յիշողքդ յիշեալ լիջիք առ Տէր Յիսուս Քրիստոս և
"'ի յոյսն բնաւից, ամէն,, ։

Թողլով նորա զբազում ազգաօգուտ գործոց յիշատակս, փոխեցաւ յաշխարհէս սա 'ի 22 Նոյեմբերի 1714 ամի (1163) ։

Ի պատմութեանն սոյն Աղէքսանդր կաթուղիկոսի, Հ. Միքայէլ Չամչեան գրէ թէ "Սա ինքն Աղէքսանդր յառաջ քան
"զնստիլ իւր յաթոռ Հայրապետութեան՝ ունէր ընդդիմու-
"թիւն առ քաղկեդոնականսն առ Աթոռն Հռովմայ . . . Այլ
"յորժամ նստաւ Աղէքսանդր յաթոռ կաթուղիկոսութեան
"'ի բաց եթող զառաջին ընդդիմութիւն իւր, և կալաւ սէր
"մեծ ընդ Առաքելական գահին Հռովմայ, և եցոյց պատիւ
"լատին կրօնաւորաց, որք հանդիպեցան յէջմիածին, և
"զկնի սակաւուց՝ յամի 1709 ՌՃԾԸ 'ի փետրվարի 25 յը-
"ղեաց գիր սիրոյ և յարգութեան առ Սրբազան պապն Կղե-
"մէս մետասաներրորդ 'ի վիմաց իւրոց և 'ի դիմաց համօրէն
"վարդապետաց և բովանդակ հօտին իւրոյ, յորում ընդու-
"նելով զՀռովմայ Հայրապետն լինել փոխանորդ Քրիստոսի
"և յաջորդ Պետրոսի վիմի անուանէ զնա երիցս երջանիկ տի-
"եզերական Հայրապետ, և Պետական գլուխ, գերիշխանա-
"կան մեծութիւն, և գերագոյն նախագահութիւն Հայր հա-
"սարակաց քրիստոնէից և անշիջանելի ջահ կաթուղիկէ և
"առաքելական եկեղեցւոյ ։ Եւ առաջի եդեալ զսէր իւր և
"զիւրայնոցն առ Սրբազան գահն Հռովմայ, խնդրէ՝ զի ըստ
"հայրախնամ գթոյն արժանի արասցէ առաքել զփոխադարձ
"պատասխանի յԱթոռն սրբոյ Էջմիածնի, և մեք ասէ՝ ըն-
"կալցուք զթուղթս ձեր իբրև զԱստուածատուր պատգամս
"Մովսիսի,, ։ (Չամչեան պատմ. Հայ. հատ. Գ. էջ 749) ։

Բարեբաղդաբար գտի զօրինակ յիշեալ կոնդակին յԱղէք-

անդր կաթողիկոսէ գրեալ առ Կղեմէս պապ, զոր ընդ այժմ
կցել հարկաւոր համարեցի, զի գիտասցէ Ազգն թէ պատ-
մութիւնն չինեալ 'ի Հ. Միքայելէ՝ 'ի բազում դէպս է յար-
մարեալ ըստ իւրոյ հաճոյից, որ միշտ գուն գործէ զեկեղե-
ցին Հայոց արկանել ընդ լծով հրամանի աթոռոյն Հռովմայ,
քանզի կոնդակն գրեալ յԱղէքսանդրէ առ Կղեմէս պապ, է
բողոք զչարախառնութեանց փաթերայից, և 'ի յիշեալ կոն-
դակին չիք յիշատակութիւն ծանր ծանր պատուանունու-
նութեանցն, զոր ըստ քմաց շարակարգէ Հ. Միքայել 'ի-
պատմութեանն իւրում։ Ահաւասիկ այս է պատճէն կոնդա-
կին. «Ի գերապատիւ և 'ի գերաակզբնական պատճառէ յԱս-
տուծոյ հօրէ 'ի գերակատար և 'ի գերածնունդ Նորին բնու-
թենէ խնկակից՝ և անժամանակ միածին բանէ, 'ի գերազանց
և 'ի գերալրական բղխմանէ Նորուն էութենէ՝ ինքնազօր և
ամենազօր Հոգւոյն Ճշմարտէ, ընտրեալ և պսակեալ՝ բար-
գաւաճեալ և փառաւորեալ, և նոյն ամենասուրբ երրոր-
դութեամբն պարսպեալ և նորին շնորհօքն ուռճացեալ՝ և
պերճացեալ հոգևոր և մարմնաւոր իշխանութեամբ՝ զար-
դացեալ և շքեղացեալ յԱստուածպետական փառաց հազոր-
դեալ։ Տիրելով ծովու և ցամաքի, քաղաքաց և աւանաց՝
հեռաւորաց կղզեաց, և մերձաւորաց գաւառացն։ Յոգնապա-
տիւ և գերահռչակ պատուով մեծարեալ՝ պետականին ժա-
մանեցելոյ գահին Հռովմայ Տեառնդ Կլէմէնտոսի երիցս եր-
ջանիկ Պապի։

Ողջոյն սիրոյ և սրբութեան մատուցանեմք վսեմախօս մե-
ծութեանդ, և որոց ընդ հովանեաւ քոյոց թևոց դասուց ե-
կեղեցականաց միանգամայն և աշխարհականաց։ Մեք նուաստ
ծառայք Քրիստոսի Տէր Աղէքսանդր ամենայն Հայոց կաթու-
ղիկոս 'ի կաճս լուսազարդ և Աստուածաէջ Աթոռոյս Էջմի-
ածնի, և որք ընդ ինև ժառանգաւորք սրբութեան ուխտի,
Եպիսկոպոսք՝ Քահանայք՝ Վարդապետք և ամենայն կղերք
եկեղեցեաց։ Եւ ընդ Աստուածապարգև և Քրիստոսանուէր
ողջունիս, ծանուցումն յայտարարութեան առնեմք փառաւոր
Տէրութեան քոյ։ Զի թէպէտ և մեք վերջացեալ դաւանեմք,

նէր այսմ ժամանակի 'ի մարմնաւոր իշխանութիւնէ՝ սակայն ըզձերն տեսանելով և լսելով քաղաքատոհմութիւն գերապատուութեան, զուարճացեալ բերկրիմք 'ի սիրտ և 'ի հոգի, և գոհութիւն անբաւ բերոք, և օրհնութիւն մատուցանեմք ամենաթագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որովք թագաւորք թագաւորին և հզօրք գրեն զարդարութիւն՝ ըստ իմաստնոյն բանի։ Եւ խնդրեմք զնոյն յամենայն ժամանակօք, և պարագայց ամօք խաղաղութեամբ, և անդրդուելի հաստատութեան պահեսցէ մինչ 'ի կատար, և 'ի սպառումն յաւիտենից այսօրիկ 'ի փառս և 'ի գովեստ Աստուածութեան իւրոյ, յուրախութիւն և 'ի պարծանս ամենայն քրիստոնէից ամէն։ Եւ արդ՝ արտաբերեմք և զայս առաջի գերիշխանական մեծութեան ձերոյ, զի 'ի բնուստ, անդուստ 'ի սկզբանէ՝ այս է սովորութիւն նախապահութեան գերագունութեանցդ, վարդապետս, և քարոզս առաքել 'ի չորեքծագեան տիեզերս, որպէս և յոլովս տեսաք, և տեսանեմք այսօք մերովք, իբր զի քարոզեսցեն զՔրիստոս Աստուած հաւատալ, և խոստովանել, և նովաւ գտանել զփրկութիւն հոգւոց, և հասանել թողութեան մեղաց ըստ Սրբազան Առաքելոյն Պօղոսի որ ասէ “ սրտիւ հաւատալ յարդարութիւն, և բերանով խոստովանել զփրկութիւն ”։ Քանզի ոչ ուստեքէ հաստատեալ աւանդութիւնս այս, եթէ ոչ 'ի նոյն ամենատեառնէ Քրիստոսի Աստուծոյ։ Որ և յետ փրկագործ տնօրէնութեանն, և փառաւոր յարութեանն, պատուիրեաց աշակերտաց իւրոց ասելով “ երթայք յաշխարհ ամենայն, և քարոզեցէք, որ հաւատայ և մկրտի կեցցէ, և որ ոչ հաւատայ դատապարտեսցի ”։ Զոր և այսու եղեալ պայմանաւ՝ կրկին նշանս կընքեալ տեսանեմք 'ի բարեբար փրկչէն մերմէ, հաւատ և մկրտութիւն, ընդ որս և կայ պարունակեալ ամենայն աւանդութիւնք եկեղեցւոյ, որովք յայտնի ծանուցանի բոլոր խորհըրդածութիւնք քրիստոնէից։ Քանզի զինչ են հաւատք, եթէ ոչ յուսացելոց 'իրաց հաստատութիւն, և յանդիմանութիւն որոց ոչն երևին ըստ առաքելոյ։ Ըստ որում կանոնի պարտիմք հաւատալ 'ի միում ամենազօր և ամենակարող ըն-

նութիւն Աստուածութեանն երիս անձինս կատարեալս, և յայտնեալս՝ Հայր և Որդի և սուրբ Հոգի, Հայր անծին և ոչ յումեքէ, և Որդին ծնունդ Հայրական, որպէս բան 'ի մտաց, և սուրբ Հոգին բղխումն 'ի Հօրէ անքննելի և անիմանալի, որում ոչ մեծութիւն և ոչ նուաստութիւն ոչ բարձրութիւն և ոչ խորութիւն, ոչ ունելով ստուերս աստիճանի ել և էջս առաւելութեան և նուազութեան, այլ զոյգ և համապատիւ, համակամ, համիշխան, համակար, համագործ, և համազօր, անհատ, և անորոշ անբաժանելի, վերացեալ բարձրացեալ ժամանակաց, և յաւիտենից, յանվախճան և յանսահման թագաւորութեան որ հնեալ յաւիտեանս ամէն ։

Դաւանամք և ընդ նմին զմինն երից անձնաւորութեանց, զբանն և զՈրդին ծնեալ 'ի Հօրէ նախ քան զյաւիտեանս անախտաբար, և անժամանակապէս, ոչ յետոյ և ոչ կրտսեր, այլ յաւիտենական Հօրէ՝ յաւիտենական Որդի, անժամանակ ծնողէ՝ անժամանակ ծնունդ, հանգունատիպ և հաւասար ամենայնիւ, քանզի ոչ էր Հայր երբեմն որ ոչ էր Որդի, այլ որպէս միշտ Հայրն Հայր և Որդին Որդի, և նոյն 'ի վախճան յաւիտեանցս ծնաւ մարմնով 'ի սուրբ կուսէն Մարիամայ, Աստուածն կատարեալ՝ նոյն ինքն և մարդ կատարեալ հոգւով, և մտօք, և մարմնով, անորոշելի մարդկութեամբ, և անթերի Աստուածութեամբ, եկն մարդ յառաջ 'ի կնոջէ և ընդ օրինօք՝ ըստ Առաքելոյ . յանձն էառ և զամենայն կիրս մարդկային որ ինչ բնութեանն էր բաց 'ի մեղաց, ոչ ծառայելով իբրև զմեզ կրիցն բնականաց, այլ կիրքն բնութեանս ծառայէին նմա իբրև Աստուծոյ . յաղագս որոյ՝ և հաղորդիւր կամաւորացն, և ակամայքն խոյս տուեալ փախչէին 'ի նմանէ զարհուրեալք իբրև յԱստուծոյ ։ Եւ յետ ամաց երեսնից գայ 'ի յորդանան մկրտել 'ի Յովհաննէ . և վկայի յԱստուծոյ Հօրէ, որդի սիրելի կուսածին մարմնովն, և սուրբ Հոգին աղաւնակերպ իջանէ յայտնեալ զփառս էակցին Որդւոյ և վարի յանապատ փորձել 'ի սատանայէ, և յաղթէ նմա մարմնովն աչաւմայէն ։ Եւ նոյն հետայն ժողովէ զաշա-

կերպան առնէ նշանս և զօրութիւնս բաղումս հրաշս և զարմանալիս յոլովս: Ուստի և 'ի վախճանի կամաւորութեամբ գայ 'ի չարչարանս և յանձն առնու զմահ խաչի, և մարդկապէս մեռանի 'ի վերայ նորա, յառնէ փառօք յաւուր երրորդի, և երևի աշակերտաց այսպէս արուեստիւք յաւուրս քառասուն, հաղորդելով ընդ հացիւ: Եւ յետ այնորիկ յանդիման աշակերտացն ինքնիշխան զօրութեամբ համբառնի յերկինս, նովին մարմնովն որով ծնաւն՝ խաչեցաւ, մեռաւ և յարեաւ և նստաւ ընդ աջմէ հօր՝ ըստ կանխասացութեան Դաւթայ, որով և գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս, որում հաւատացեալ սպասեմք և ակնունիմք յարութեան և դատաստանի և հատուցման գործոց: Ընդ նմին և խոստովանիմք զՄարիամ մայրն Յիսուսի՝ Աստուածածին, որպէս և ծնեալն՝ Աստուած, և զնոյն 'ի նաչ ելեալ, Ը Գրիգորի Աստուածաբանին որ ասէ յԱՂ որս գիրսն. եթէ ով զՄարիամ Աստուածածին ոչ իմանայցէ՝ հեռի է յԱստուածութենէն. և եթէ ոք խաչեցելոյն երկիր ոչ պագանէ՝ նզովեալ եղիցի և կարգեսցի ընդ Աստուածասպանսն: Եւ վասն այսր այսքան 'ի կարճոյ: Հաւատամք և 'ի Հոգին սուրբ Աստուած կատարեալ առանց առնելոյ. բղխումն մշտնջենաւոր առ 'ի Հօրէ, որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս, և յԱռաքեալսն, և էջ յորդանան գետ և 'ի սուրբ վերնատունն: Հոգի պետութեան Հոգի ազատութեան Հոգի բերանոյ Աստուծոյ նորին էութեան Հօր և յՈրդւոյ, ոչ արարած ոչ ծառայ, ոչ հրամանառու, այլ հրամանատու, քանզի մի գործ է Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, որպէս ասաց փրկիչն աշխարհաց թէ ես և Հայր, և հոգին ճշմարտութեան որ 'ի Հօրէ ելանէ, ելանէ՝ և ոչ բաժանի, բղխէ և ոչ սպառի, և ինքն է Աստուած խնկեալ տէրապէս, ամենայն յամենայնի: Հաւատամք և զհամաշխարական կաթուղիկէ եկեղեցի սուրբ, զթողութիւն մեղաց հաստատեալ 'ի վերայ հիման Առաքելոց և Մարգարէից և Վարդապետաց, ըստ Պօղոսի թէ՝ զորս եդ Աստուած յեկեղեցւոջ այս են, նախ՝ զԱռաքեալս, երկրորդ զՄարգարէս երրորդ զՎարդապետս, և զի լուսաւոր բանիւք սոցա՝ հաստատեալ

Հայ սուրբ եկեղեցի, անդրդուելի և անսասանելի յաւիտեանս յաւիտենից: Եւ զի կառուցեալ է սա 'ի վիմէն կենդանութեան, որ է ինքն Քրիստոս Աստուած ըստ Սողոմոնի թէ, իմաստութիւն շինեաց իւր տուն և կանգնեաց սիւնս եօթն 'ի սուրբ եկեղեցի՝ և խորհուրդք եօթն աւանդեալ 'ի նմա. Նախ Մկրտութիւնն, երկրորդ Դրոշմն, երրորդ ապաշխարութիւն, չորրորդ հաղորդութիւնն, հինգերրորդ կարգ քահանայութեանն, վեցերրորդ Պսակն, եօթներրորդ օծումն վերջին, զոր ունիմք առանց յաւելուածոյ և պակասութեան:

Վասնզի Մկրտութիւնն է սկիզբն և ներածութիւն առ Աստուծոյ ընտանութիւն և երկնային ժառանգութիւն, թարց որոյ ոչ ոք մտանէ յարքայութիւնն երկնից՝ ըստ Տէրունական վճռի: Եւ դրոշմն որ է կնիք լուսաւոր մկրտութեան: Եւ դըրոշմն Քրիստոսական հաւատոյ, և տարանջատ յանհաւատից, որ առնէ զմեզ քրիստոնեայս, և Քրիստոսունօղս, խաչանիշ կնքովն որով երևիմք ահաւոր սատանայի և հրեշտակացն նորա: Ապաշխարութիւնն հանդերձ խոստովանութեամբ, տայ մեզ յոյս թողութեան, որովք գտանեմք փրկութիւն հոգւոց, և արձակումն 'ի կապանաց մեղաց ըստ Տեառն բանի թէ " զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս ,, և դարձեալ թէ ,, ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա ", և դարձեալ " ապաշխարեցէք զի մերձեալ է արքայութիւնն երկնից ,, , նաև հաղորդութիւն Մարմնոյ և Արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, առնէ զմեզ հաղորդս Աստուածութեանն իւրոյ, ըստ ասելոյն թէ " որ ուտէ զՄարմին իմ և ըմպէ զԱրիւն իմ. նա յիս բնակեսցի և ես 'ի նմա ", և դարձեալ " որպէս առաքեաց զիս կենդանին Հայր, և ես կենդանի եմ վասն Հօր ,, : Եւ ,, որ ուտէն զիս և նա կեցցէ վասն իմ ,, . և մեք այսու յուսով ճաշակեմք զՄարմին և զԱրիւն Որդւոյն Աստուծոյ:

Այլ և զկարգ քահանայութեան ընկալեալ 'ի Քրիստոսէ և յԱռաքելոց՝ ունիմք ամենայն ճշմարտութբ, զի ձեռն եդ 'ի-վերայ գլխոց նոցա, և օրհնեաց զնոսա, որով եղին կատարեալք և կատարելագործք, ըստ սրբոյն Դիոնիսեայ պարտիմք նախ

մաքրել, լուսաւորիլ և լուսաւորել, կատարելագործիլ և կատարելագործել, որպէս և աւանդեցաւ յԱռաքելոցն որոց, զոր ունիմք անշեղապէս, և անսայթաք ընթանամք զշաւիղս նոցա, նախ՝ առնուլ զձեռնադրութիւն և ապա տալ այլոց, յառաջ կատարելագործիլ, և ապա կատարելագործել, որպէս և է իսկ ճշմարիտ և հաստատուն: Եւ Պսակն խորհուրդ մեծ և պանծալի ըստ Պօղոսի՝ "խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ 'ի Քրիստոս և յեկեղեցի", և թէ "պատուական է ամուսնութիւն", և Տէրն "զոր Աստուած զուգեաց, մարդ մի մեկնեսցէ": Քանզի սա է սրբութիւն զուգաւորութեան, առանց որոյ՝ շուն կոչի որ զուգաւորի: Եւ Օծումն վերջին է որ զօրացուցանէ զմեզ մտանել 'ի հանդէս ընդդէմ աշխարհականին խաւարի, ըմբշամարտել ընդդէմ գռողին, և առնուլ զպսակն յաղթանակի, աւանդեալ մեզ 'ի սրբոց Առաքելոցն, ըստ Աւետարանական պատմութեան, թէ օծանէին զբազում հիւանդս: Ուստի նոյն իւղ որհնութեան կատարի յեկեղեցիս Հայաստանեայց յամենայն ամի, և օծանին ամենայն հիւանդացեալք հոգւով և մարմնով, որով և ունիմք յոյս առողջութեան հոգւոյ և մարմնոյ, և փարատումն ամենայն ախտից: Են և այլ յօգունք աւանդութիւնք մասնաւորք կարգեալք յեկեղեցիս մեր, եթէ 'ի տօնս տէրունականս, և 'ի սուրբսն Աստուծոյ, և եթէ 'ի պահս և յաղօթս, և 'ի տըրք-նութիւնս գիշերային հսկման, և եթէ յարարողութիւնս ժամատեղաց և յամենայն կարգաւորութիւնս, թողաք զի մի լիցի ձանձրութիւն ընթերցողաց, և մանաւանդ գրեալքս ոչ ըստ բոլորին և ըստ պատշաճին գրեցաւ, այլ ըստ մասին սակաւագիծ բանիւք, թողլով ապառնան ձեր գերակատար իմաստութեանն, շարել մասամբ զբոլորն:

Որ և 'ի յայս հաւատացեալ մկրտիմք, և ակնունիմք հոգւոյն կենդանութեան և մերոյին փրկութեան՝ ըստ անսուտ խոստման Տեառն, թէ "որ հաւատայ և մկրտի՝ կեցցէ": Դարձեալ 'ի կարգ անդր 'ի վեր ելանելով ասեմք թէ, որով ունիմք մեք հաւատս և Մկրտութիւն, քարոզեն այնոքիկ նախասացեալք ոչ պարտին աշխատ լինիլ առ մեզ այլ առա-

ւել առ այնոսիկ որք ոչ կարդան զանուն Տեառն մերոյ Յի-սուսի Քրիստոսի, և ոչ խոստովանին զնա Աստուած, և ոչ զտնօրէնութիւն նորա ամենայն, և ոչ ունին զՔրիստոսական կնիքն յանձինս իւրեանց, և ոչ ճանաչեն զխորհուրդս Եկե-ղեցւոյ, և ոչ ընդունին զԱստուածաշունչ գիրս, հին և նոր կտակարանս, և ոչ գիտեն զանուն Առաքելոց, և Մարգարէից, և Վարդապետաց, և ծիծաղին 'ի վերայ անհաս խորհրդոց քրիստոնէիցս, և զառանցանս վարկանեն զպաշտելի դաւանու-թիւնս քրիստոնէից որ յամենասուրբ Երրորդութիւնն, և 'ի տնօրէնութիւնն միածնի որդւոյն. 'ի սուրբ կոյս Մարիամ Աստուածածինն և 'ի պարծանս քրիստոնէից, 'ի կենսակիր և ամենազօր սուրբ խաչն, և զպատկերս տէրունականս և ամե-նայն սրբոց՝ կուռս համարին, ատեալով զքրիստոնեայս իբրև զմոլորեալս: Նոքա զայս ամենայն տեսանելով և լսելով ոչ-ինչ համարին, և ոչ ցաւ է նոցա, այլ անփոյթ առնելով ըզ-նոցանէ՝ զմեօք շրջապատեալ պաշարեն արկանելով 'ի մէջ քրիստոնէիցս աղմուկ խռովութեան. և փոխանակ շինութեան և հաստատութեան արկանեն յոլով գայթակղութիւնս, ա-սելով միշտ յականջս անկատարից և անխորհրդածից՝ թէ ոչ է պատարագ ձեր պատարագ, և ոչ Մկրտութիւնն մկրտ-ութիւն. նոյնպէս խոստովանութիւնն և ապաշխարութիւնն, և այլ խորհուրդք, յորոց բանից նեղուկ առեալ թուլա-մորթքն, և յողդողդքն, և անհաստատքն, ելանեն 'ի հաւատոց. և այլք բազումք առնեն անկարգութիւնս ընդդէմ կանոնաց եկազան չարիս, զոր ոչ կարեմք արկանել ընդ գրով, ասելով թէ որովհետև սուտ է կրօնք քրիստոնէից որպէս և նոքայն ասեն. արասցուք զինչ հաճեսցին սիրտք մեր որով հայհոյի անունն Աստուծոյ և վարդապետութիւնն 'ի մէջ հեթանոսաց. զայս պտուղ նոցա արդեանցն: Եւ զի յստակագոյնն ասասցուք, մեք որ բնակեալ եմք 'ի մէջ այսպիսի ազգաց, որ ոչ հաւա-տան զՔրիստոս Աստուած և ոչ են պաշտօնեայք Քրիստոսի, ոչինչ իւիք զզուեցուցանեն զմեզ կամ տառապեցուցանեն, այլ մանաւանդ կան ընդ մեզ խաղաղութեամբ և սիրով, յա-ւէտ ևս զի յոլով անգամ ընդդիմաքանեմք ընդ նոսա, և վի-

ձեռք յաղագս Աստուածութեան Քրիստոսի և որդւոց նորա, և լինիմք ջատագով քրիստոնէութեան կրօնից. ոչինչ ըմ-բոստանան տանջանել զմեզ, այլ միամտութեամբ ակն ածեն զմեօք:

Այլ և թագաւորքն մեր որոյ իշխանութեամբն մակաղիմք մեք, տացէ ամենաթագաւորն Աստուած հաստատութիւն թա-գաւորութեանն իւրոյ. և մեք աղօթս ձեօք մատուցանեմք ըստ խրատու մեծին Պօղոսի զի այսպէս հանդարտութեամբ վարիմք զկեանս մեր որպէս և ոչ յաւուրս թագաւորացն մե-րոց մինչ իշխանութիւն մեր էր, և սա այլազգ է և ոչ պաշտօ-նեայ քրիստոնէութեան խորհրդոյս, այսպիսի զթով զթայ և նախախնամեալ պահպանէ զմեզ թարց զգուանաց: Իսկ առ մեզ եկեալ պատրիքն ոչ այսպէս, այլ ներհակաւն վարին ընդ մեզ, խուլընդդակն առնելով. և յորժամ ներհակեմք ան-կարգ արարմանց նոցին՝ զօր և ունայն բանիւք ամբաստան լի-նին առ մեծութիւն ձեր, և անփորձ գոլով նոցին բանիցն՝ հաւատայք, քանզի 'ի մէջ այլասեռից, զհայս հերձուա-ծող և հերետիկոս անուանեն: Այլ ըստ միրոյ գրեալ պատա-նութեանցն՝ եթէ մեծապատուութիւն քոյ զհայս հերետիկոս դատապարտես՝ եղիցի կամք միհաւատութեանդ օրհնեալ իսկ թէ ոչ, խնդրեմք 'ի հայրապետաց հօրէդ որ այնպիսեացն տասն ապառնալեաց գրես որ դատարքն յայնպիսի սխալութե-նէ, զի և Որբազան անուան Տեառնդ ոչ է վայելուչ այնպիսի իրակութիւն: Եթէ վասն յուսոյն և սիրոյն Քրիստոսի այդ շնորհ մեզ առնիցես ըստ հայրախնամ գթոյդ, նոցա թուղթն առաքես 'ի ձեռս մեր, և ընկալեալ մեր իբր զԱստուածա-տուր պատգամն Մովսէսի. ցուցցուք պատրոցն թերեւս ա-կաւ մի կասեցցեն յատելութենէ քրիստոնէից: Եւ Տէրդ մեր ընկալցիս վարձս 'ի վարձատուէն բոլորեցունց: Նա և շնոր-հել մաղթեմք եկեղեցւոյն Հայոց որ 'ի Վենետիկ, քանզի ողոր-մելի ազգն Հայոց որք անդր՝ են առանց հաղորդութեան և ամենայն խորհրդոց:

Իսկ 'ի վախճանի բանիս, և զայս ևս գիտասցէ մեծապատ-իւ գիտութիւնդ, յերկրէն Հնդկաց և յերկրէն Օսմանցւոց

և յՕգլէզաց Դեսպանք յոլովք գան յաշխարհս մեր, ոչ մի-ում յումեքէ կրեմք վնաս և նեղութիւն, բայց յամենայն ե-կելոց Փռանկաց դեսպանաց նեղութիւնս և վնաս յոլովս կը-րեմք, յորոց անկեալ խնդրեմք և զայս, ոչ թողացուցա-նել լինել այսպէս: Պետական գլուխդ և հասարակաց քրիս-տոնէից հայրդ կեցցես և մնասցես ողջ և առողջ 'ի փառս մե-ծագոյն Աստուծոյ և 'ի պարծանս եկեղեցւոյ ամէն:

Գրեցաւ ՌՃԾԸ թուին Փետրվարի ամսոյ ին, 'ի սուրբ Էջմիածին. — ,,:

Իսկ գրելոյ Հ. Միքայէլի " այս նամակ յորժամ եհաս 'ի-" Հռովմ, անդ գտաւ Յակոբ Վիլոտ լատին կրօնաւոր 'ի կարգէ " Յսեանց, և զի սա ըստ վկայելոյ իւրոյ զամս քսան և հինգ " շրջեալ էր յաշխարհսն Հայոց և Պարսից և ունէր փոքր մի " տեղեկութիւն հայկական լեզուի, թարգմանեաց 'ի լատին " զթուղթ կաթուղիկոսին՝ թէպէտ և ոչ հարազատ իմաց-" ուածով,, (4):

Գիտել արժան է զի նոյն Յակոբ լատին կրօնաւոր 'ի կար-գէ Յսեանց էր 'ի Ջուղայ մինչ յամի 1688 ծագեցաւ խռո-վութիւն մեծ ընդ մէջ լուսաւորչական Հայոց և պապական-աց, և Ստեփաննոս առաջնորդ Ջուղայու բողոքեալ՝ Շահ-Սլէյմանայ արքայի (5) ընկալաւ զհրաման, և արտաքսեաց 'ի Ջուղայոյ զլատին կրօնաւորսն, ընդ որս էր և նոյն ինքն Յա-կոբ, որ անչափ մախացեալ ընդ Ստեփաննոս և ընդ Աղէք-սանդր Եպիսկոպոսունս Ջուղայու, որոց ոչ կարեալ երևե-լապէս առնել վնաս ինչ՝ 'ի գաղտնութենէ սրտին շինեաց ըզ-փոքրիկ տետրակ (6) յորում առնէ յիշատակութիւն յաջոր-դութեան կաթուղիկոսաց Հայոց, մինչև ցԱղէքսանդր, և 'ի-նմա օրինակելով զկոնդակն նորա՝ առնէ զդիտողութիւնս իւր ստեղծ իմաստից այնր, այլ թէ որչափ ստելութեան կռիւք և չարայոյզ բանիւք՝ ձանձրութիւն լինի ընթերցողին յիշատա-կութիւն առնել 'ի կարգի բանիս, վասնորոյ համառօտեա-յիշեմ զբանս նորա յաղագս հաստատնութեան Աղէքսանդր կաթուղիկոսի 'ի ցրել զազդեցութիւնս նոյն լատին կրօնաւո-րաց 'ի ժողովրդեանէ Հայոց, որոյ աղաղաւ և ինքն լեալ էր

հալածական ։ " Ետուր փակել վանքն Քափու չինացն որ 'ի-
" Թաւրէզ քաղաքի, զի մի բարձրասցի սուրբ խաչն Քրիս-
" տոսի 'ի մէջ անհաւատից, և զի մի կրթեսցին մանկունք տա-
" ռապեալ և աղքատ ժողովրդեանն այնմիկ ։ Որպէս 'ի սկզբ-
" բան ամի կաթուղիկոսութեանդ յորժամ հասիր 'ի Սպահա-
" նայ Թաւրէզ և երկրորդում աւուր երեկոյեան ժամուն 'ի-
" մէջ եկեղեցւոյ սկսար հայհոյանօք քարոզել ընդդէմ կաթու-
" ղիկէ եկեղեցւոյն Քրիստոսի, և դարձուցանելով բանդ առ
" ժողովուրդս վասն նոյն պատրի քափու չինացն, թէ լուեալ
" եմ զի անմեղ զաւակս ձեր տանիք և տայք 'ի ծըծել զըս-
" տինս շանց ( յ͞ մանկունս ձեր տայք 'ի կրթութիւն պատ-
" րեացն ) սպառնալով քո մահ սրօք պարսկաց եթէ այլ ևս
" առնիցեն ։ ։ . . . որպէս և արարեր նոյն ամի զի գրեցեր
" 'ի նոյն թի՞ւ հայոց ՌՃԾԶ, կամ ՌՃԾԷ 'ի Կոստանդնու-
" պօլիս առ մեծ վազիրն Օսմանցւոց թէ ես Հայոց ազգին
" Ֆթիլայ տուողն եմ և դուքս իմ ժողովուրդք հնազանդել
" ոչ կամին ինձ, և եկեալ են 'ի կրօնից մերոց, ահա ետու
" Ֆթիլայ զի պատժիցէք այս անուն և այս անուն թուով իբ-
" րև 175 կամ 200 անձինս որք Ֆռանգ են եղեալ հայքդ, որ
" և եղև կատարումն Ֆթիլայիդ, քանզի սուրն հերովդէի
" կոտորեաց բազում մանկունս եկեղեցւոյ, և ոմանս ետուն
" չաքդրայ, զի 'ի թավլու և 'ի տանջանաց մեռցին նեղութեամբ ։
" Թող զայլ բազումս և հազարաւոր անձինս որք փախստա-
" կանք եղեն հալածանաց և մնացին զուրկ 'ի տանէ և 'ի հայ-
" րենեաց ։ Այլ և կրկին սկսար աղմկել և 'ի հիմանց շըջել
" տունս Հայոց եթէ Թաւրէզ և 'ի Շամախի, եթէ 'ի Գանջայ
" և 'ի Թիփլիզ, և այլ գաւառս և քաղաքս որոյ ակամատես
" ես ինքնին իսկ եղէ բազմաց . . . որ դեռևս եմ 'ի պատ-
" ճառս նոյն հալածանաց, շըջելոյ պանդուխտ և օտար երկ-
" րի . . . . „ ։ Հայր Միքայէլ 'ի պատմութեանն Հայոց ոչ
" առնէ յիշատակութիւն այնպիսի յաղագս Աղէքսանդրի,
" ուստի յայտ է թէ գրեալն սորա զնմանէ՝ է թշնամանօք, իբ-
" րև պատճառ այնչափ չարաց ցուցանել զնա ։ Արդ ու-
" շադրութեան արժանի է թէ անձն որ զգացեալ իցէ այնչափ



## ՄՈՎՍԷՍ

Տէր Մովսէս բազմարդիւն Եպիսկոպոս զկնի գնալոյ Տէր Աղեքսանդր Արք Եպիսկոպոսի Նախորդի իւրոյ՝ ընտրութեամբ ամենեցուն յամի 1706 նստի յաթոռ առաջնորդութեան ։ Արժանաւորութեանց սորա ջատագով վկայ լինի կտակն գրեալ 'ի Հոգեւորյս Աղեքսանդր կաթուղիկոսէ, և գործքն իւր եւս ապացոյց են այնմիկ ։ Սա գնէ և ընդարձակէ զայգի վանիւն խաղողոյ կոչեցեալ ։ Շինէ 'ի յիշատակ ինքեան. զօծեալ ականակուռ խաչ լանջակիր, որոյ 'ի չորս անկիւնս կան չորս խոշոր մարգարիտք, 'ի վերայ շրթանց այնր շուրջանակի գրեալ կայ յիշատակ նորա այսպէս "սուրբ կենաց "փայտ և խաչիս ծառայ Մովսէս վարդապետ Ջուղայեցի, "'ի թուին ՌՃԿԲ" (1713) ։ 'ի յիշատակարանէ անտի յայտնի լինի թէ 'ի մէջ նոյն խաչի գոյ մասն 'ի սուրբ խաչափայտէն կենաց, կամ այլ ևս մասունք սրբոց ։ Գին նորա՝ արժէ յաւել քան զերկերիւր թումանս ։ Այդ պատուական խաչ անհետացեալ էր նախ քան զժամանելն առ Ներկայ առաջնորդ Սրբազան Թադէոս Եպիսկոպոսի, այլ Աստուած հաճեցաւ զայն 'ի ձեռն իմոյ նուաստութեան 'ի յայտ ածել, զի մինչ յամսեանն մայիսի 1857 ամի՝ կարգադրէի և զետեղէի զզգեստս վանիս յիւրաքանչիւր պահարանի, խաչն այն 'ի խորշ պահարանի ուրեք զգեստուցն կայր թաքուցեալ, զոր ուրախութեամբ առեալ յայտնեցի Սրբազան Առաջնորդ Տեառն իմում, և նորա խնդացեալ յոյժ ընդ այն բաղդաւորութիւն համարեցաւ վանիս Ամենափրկչի, զի յայտնեաց Աստուած զայն որ թանգագին էր ըստ նիւթական արժէիցն իւրոյ, և ևս առաւել թանգագին էր ըստ սրբութեանցն զե-

տեղւոյց 'ի նմին ։ Շինեաց նա և զԱռաջնորդարանն որ կայ այժմ 'ի վանսն ։ Եւ զախճապակիս շուրջանակի որմոցն սրբոյ եկեղեցւոյն տաճարի վանիցն ։ Ի ժամանակի սորա եղև արձակումն Աղուանից յԱսպահան քաղաք. ուստի բազմապատիկ էին վիշտք և նեղութիւնք 'ի նմին ժամանակի, այլ սորա քաջ համբերութեամբ կառավարելով զհօտն՝ վսեմական համբերութեամբ տարաւ վշտածուփ կոհակաց դառնութեանն այնմիկ ժամանակի ։ Յետ մահուանն Աղէքսանդր Կաթուղիկոսի միաբանք սրբոյ Էջմիածնի հրաւիրեցին զնա հոկտ". 19 յամի 1715 խնդրագրութեամբ զի երթիցէ 'ի սուրբ Էջմիածին կալնուլ զգահ կաթուղիկոսութեանն, այլ սա գրեաց նոցա պատասխանի "Թէ գրեալ էիք որ մեր կաթուղիկոսն դու ես, ոչ "միանգամ, այլ երկիցս և երիցս գրեալ էք. ուղղութիւն է "սիրելեաց նախամեծարել 'ի պատիւ զսիրելիս. ըստ այնմ "Թէ 'ի պատիւ զմիմեանս ելանել՝ շնորհակալեմք 'ի սիրե-"լեացդ մերոց, այսուհետև յիմս կողմանէ միամիտ լերուք, "և ձս անդր 'ի բաց տարէք 'ի մտաց ձերոց, զի այդ ոչ է մեր "գործ" ։ Եւ բարեյիշատակ գործովք կեցեալ յառաջնորդութեան զամս տասն և ինն 'ի 1 մարտի 1725 (1174) կընքեաց զկեանս իւր խաղաղութեամբ, և պատուական մարմին նորա ամփոփեցաւ 'ի մէջ սենոյ հիւսիսային դրան եկեղեցւոյ վանիցն, սովին արձանագրութեամբ՝

" Աղաչեմ զի մի փակեսցես դիմելոյ առ քեզ զառագաստ "սրահի կենացդ յարկի՝ այլ յիշեա զիս յողորմութեան քում "և մի յիրաւունս քո, յիշեա զիս 'ի ներողութեան քում և "մի 'ի հատուցումն, զի առ չարս ես բարի, առ մեղաւորս "ես քաւիչ, և առ մահացեալս ես կեանք ։ Տապանս է Մով-"սէս անարժան կրօնաւորի, դատապարտեալ ծառայի և սուտ "անուամբ Առաջնորդի, որ զանուն իմ դատէ զիս յաւուրն "վերջին, վայ ինձ. զի որ երբեմն էի վերնային՝ այժմ ան-"դնդային, վախճանեալ 'ի կենցաղոյս եղայ յայսմ տեղի, զոր "և խնդրեմ՝ եկեալքդ յայսմ տեղի՝ անխիղճ կոխել զերեսս՝ "զոր և իսկ եմ արժանի. և դուք ընկալջիք զխնդիրս ձեր "բարի ։ Ի թուին հազար հարիւր եօթանասուն և չորս, և

« յամսեանն մարտի 1 »։

Ի ժամանակս առաջնորդութեան նորին միաբանք վանին էին Դաւիթ և Աստուածատուր Եպիսկոպոսունք, Բարսեղ՝ Ստեփաննոս Պետրոս՝ Զաքարիայ՝ Սիմէոն՝ Դաւիթ՝ Ղուկաս՝ Բարաղամ՝ Յարութիւն՝ Յովհաննէս՝ Ստեփաննոս՝ Ղուկաս՝ Գէորգ՝ Նիկողայոս՝ Ահարոն՝ Սիմէոն և Պարսամ վարդապետք։

Ոմանք 'ի յիշեալ վարդապետաց էին յայրի Քահանայից՝ մտեալ 'ի կարգ վարդապետութեն։ Եւ 'ի չորեքտասան եկեղեցիս Ջուղայու եղեալ են վաթսուն և երկու Քահանայք (1)։

Ի կոստանդնուպօլսոյ Յովհաննէս պատրիարգ իւրով հոգևորականօք և ականաւոր ժողովրդովք գրէ առ սոյն Մովսէս Առաջնորդ Թուղթ խնդրանաց (2), յաղագս զկարևոր օգնականութիւնս առնելոյ 'ի նպաստ սրբոյ Երուսաղէմի յայտնելով թէ գումար պարտուց նորա հասեալ է ցչորս հարիւր քըսակս։ Այսպէս սկզբնաւորի այն նամակ « Բարձրապատիւ գե-
« րազանցութեան և բարեհամբաւ ձոխութեամբ մեծին իսկ
« տեսողացն պարու հաւատարիմ տնտեսի Աստուածայինն
« յարկի՝ որ առ նախնին ժողովուրդ անուամբ և արդեամբ
« համաքատակը անձին և ըստ արփիական ճառագայթից գե-
« րանշոյլն փայլման անթաքչապէս զտէրունեանն բանի պեր-
« երևական տեսութեամբ ուղելոյդ կարկեհանի 'ի լանջս վա-
« կասին եկեղեցւոյ ստորինս երկրի։ Իսկ և բարերջանիկ և
« Քրիստոսատիպ հեղինակի և արթնական կարգաւորչի այդմ
« մեծափարթամ և պարոնահաւաք Շահանիստ Մայրաքա-
« ղաքի Ասպահանու Տեառն Մովսէսի արհիապետրձ քա-
« րոզչի և քաջ հռետորի երիցս երանելոյ հոգեկիր և Սըր-
« բազան վարդապետի Աստուածամերձ Աջոյ'ի հեռուստ
« ասուի իբր 'ի մօտոյ 'ի ծոցոյ կայսերանիստ և 'ի մեծանուն
« մայրաքաղաքէս Կոստանդինուպօլսոյ բոլոր արամեանս
« գումարք մեծաւ խոնարհութեամբ և անձկութեամբ բաղ-
« ձանաց որտի ծառայական համբոյր նուիրեմք » (3)։

Յետ յայտնելոյ զպատճառս դիզման պարտուցն սրբոյ Աթոռոյն Երուսաղէմի յաղագս միաւորելոյ պատրիարգու-

## Ի.

## ԴԱՒԻԹ ԵՐԿՐՈՐԴ

Տէր Դաւիթ երկրորդ ճգնազգեաց Եպիսկոպոս, ըստ քա-ղուած թախանձանաց ժողովրդոց յամի 1725 (1174) կալաւ զաթոռ առաջնորդութեանն զինի վախճանելոյ նախորդին իւրոյ։ Ճիշտ պահպանող և նախանձաւոր էր բարեկարգու-թեան եկեղեցւոյ և բարի վարուց հոգևորականաց։ Զայնու ժամանակաւ ոմանք 'ի քահանայից Ջուղայու սկիզբն արա-րեալ էին գործածել զքթախոտն (թանօթի), որ վասն գը-րէ առ Նուսս զծանր յանդիմանական կոնդակ, արգելու զգ-գործածութիւն այնր, և պատիժ սահմանէ զրկել 'ի կլոյ հասից եկեղեցական արդեանց' որք գործածեն զքթախոտ։ Այլ ընդ այնմ հրամանի զայլ ևս հինգ յօդուածս բարեկար-գութեան զոր ոչ աւելորդ համարիմ շարակարգել 'ի կարգի պատմութեանս։

" Նախ՝ որ լուեալ եմ թէ միով ճաշու ողորմեայիւ ըզ-
" սուրբ պատարագն մատուցանէք, և զերկուսն թողուք, որ
" և այսու խափանէք զսահմանս և զկանոնս սրբոց հարցն ա-
" ւանդեալ, պատճառէք թէ ժողովուրդքն խնդրեն փու-
" թով արձակել զսուրբ պատարագն վասն մարմնաւոր գոր-
" ծոց իւրեանց, դուք զձեր հրամանն որ Աստուածային է
" թողուք, և զմարդկայինն կատարէք, քանզի պարտ է
" զԱստուածայինն կատարել՝ և ոչ մարդկայինն։ Արդ ոչ
" զիտէք եթէ երից ողորմեայիցն խորհուրդ վերաբերեալ
" առ սուրբ երրորդութիւնն։ Վասնորոյ պատուիրեմ այսուհե-
" տև զերիս ողորմեայսն լրացեալ ասել և ապա պատարագ
" մատուցանել։ Եթէ յանդգնիք և ծուլանայք ասելն՝ պա-
" տիժս կրելոցէք յինէն։ Երկրորդ՝ լուեալ եմ թէ քահա-

« Նայքն գիշերային առաջին ժամուն ոչ զտանին յիւրեանց
« զասուն, կամ գիշերն ընդ իսկ ժամ ոչ երթան, որ կարէ
« յոյժ գայթակղութիւն է ժողովրդեան։ Ո՛վ սիրելիք դուք
« ոչ ամաչէք յորժամ երթայք տեսանէք ժողովուրդքն
« սուրբ եկեղեցւոյն առաջին ժամուն պատրաստ ✝ և դուք
« անդ ոչ գոլով՝ որչափ անկարգութիւն է և գայթակղու-
« թիւն նոցին, զի եթէ արհեստաւորքն ոչ գործելով՝ ոչ
« վայելեն, դուք զիարդ զհոգևորն ոչ գործելով կամիք
« վայելել։ Ահա ասացի ձեզ որ այսուհետև պարտիք արթ-
« նալ և զգուշանալ, և առաջին ժամուն նախքան զժողո-
« վուրդ երթալ, և մի ամօթ կրել առաջի Աստուծոյ և ժո-
« ղովրդեան։ Եթէ որ ոք 'ի քահանայից լուայց որ ծուլա-
« նայ 'ի խրատական բանէս, զնորա հասէն կատարելոց եմ և
« պատժելոց, ահա ասացի ձեզ։ Երրորդ յորժամ քահանայ
« ոք կամի երթալ 'ի տուն ժողովրդեան վասն գիր գրելոյ,
« կամ կարդալոյ, կամ այլ ինչ պատճառաւոր իրաց, մի մի-
« այնակ երթիցէ, այլ երկուս ըստ տեառն բանի, թէ « առա-
« քեաց երկուս երկուս յառաջակերտաց իւրոց», զի 'ի միոյն զան-
« կարգութիւն գայթակղութիւն ծնանի, և 'ի յերկուցն
« ճշմարտութիւն։ Ահա պատուիրեցի ձեզ որ միայնակ 'ի
« տուն ժողովրդեան ոչ երթիջիք, այլ երկու երկու. եթէ
« լուայց, զի ոչ անսայջիք հրամանի իմոյ, զայնպիսւոյն փի-
« լոնն առնելոց եմ և պատժելոց, ահա սիրով ասացի։ Չոր-
« րորդ՝ լսեմք թէ քահանայքդ միշտ վայրապար շրջէք 'ի
« շուկայս և 'ի հրապարակս, մանաւանդ այնքան յանդգնիք
« որ 'ի մէջ շուկային և խանութաց մտանէք և զրուցա-
« տուութիւն առնէք, փոխանակ կարդալոյն և դաս առնելոյն
« և մանաւանդ զԱստուածային սուրբ գիրս ընթեռնլոյն,
« անշահ՝ անկարգ՝ ձրի զրոյց տայք, ահա պատուիրեմ միշտ
« դուք յԱստուածայինն պարապիլ. միշտ զսուրբ գիրս ըն-
« թեռնլով, զժողովուրդսն ուսուցանելով, և զանձն ձեր օ-
« րինակ տալով ամենից, ահա այսուհետև մի լիցի ձեզ, որ
« այլ 'ի մէջ Մէյդանի և դուքանսն մտանէք զրոյց տայք,
« բայց միայն վասն առի և տրոյն վաճառելոցն ժամու պարագա-

« պեռճիք, քանզի մեծ պատիժ կրելոց էք յինէն »: Հինգ-
« երրորդ պատուիրեմ վասն չախչուր (1) զգեցո-
« ղացն. քանզի պտրտիք հարկաւորին հետևել. և մի աւելոր-
« դացն: Հարկաւոր ծածկոյթ անձին մեր՝ կտաւեղէն է, և
« այլն ամենայն աւելորդ է, պտրտիք զաւելորդն բառնալ, և
« զհարկաւորն պահել: Ահա մեր և ձեր ոտից ծածկոյթն
« կամ ներկն է՝ կամ գունլայն ոչ թէ չախչուր, եթէ վասն
« ծածկութեան՝ այդ բաւական է. ապա թէ վասն զարդուց
« է, այդ ոչ վայել է կարգի մերում. ահա այսպէս եդի, զի
« ով ոք որ չախչուր զգենու, 'ի դասէն իւրմէ արգելեցից,
« զի կանգնեցի առ ժողովուրդս. որք են զգենուն զչախ-
« չուր՝ Նոցա պատիժն այս է. ահա սիրելիք, քանի մի բանս
« ասացի և աղդեցի. զի զգուշանայք, և լսով կատարէք ըզ-
« պատուէրս իմ, վասնորոյ այսուհետև եւ անպարտ գոլով
« որոց ոչ հնազանդողացն և ոչ կատարողացն արտաքացուցա-
« նելոցեմ: Զօգուտն ձեր դուք գիտասջիք »:

Նոյն ապա իւրով իսկական ձեռամբ յաւելու գրել,
« Պարծեալ հասարակ աւագերիցունք, լուեալ եմք թէ
« ըստ ձեր ծուլութեան և հեշտասէր գոլոյն մէկ անկար-
« գութիւն այլ նոր մուծանէք յեկեղեցին և զայթակղե-
« ցուցանէք զժողովուրդն Աստուծոյ, դուք զրկիք և զժո-
« ղովուրդն այլ զրկէք, դմ զհրաժարիմքն՝ զխոստովանիմն,
« և զմեղայն ոչ ասէք լիապէս, այլ պակաս և թերի թո-
« ղուք, որով պարտական գտանիք որբոց հարցն՝ որք կա-
« նոնեալք են զայդ, և ժողովրդեանն. ահա գրեցի որ այսու-
« հետև պտրտիք առանց թուլութեան և ծուլութեան՝ ըզ-
« հրաժարիմն՝ զխոստովանիմն՝ համդերձ մեղայիւն անպա-
« կաս լրապէս ասել, զարևտզալիսն եւ յամենայն աւուր թէ
« պաս թէ ուտիս, թէ լուր օր, անպակաս ասել պարտիք:
« Ահա գրեցի և զգուշացուցի. որ մի լիցի զայդ անկարգու-
« թիւնդ այլ լսեմ 'ի ձէնջ. զի պատիժս մեծս կրելոցէք յի-
« նէն, ահա գրեցի ձեզ »:

Ամս երիս կեցեալ յառաջնորդութեան իւրում, 'ի թըւ-
ւին հայոց 1177 (1728) 'ի 18 դեկտեմբերի վախճանի, և

դնի առընթեր բարեյիշատակ նախարարին իւրոյ 'ի հիւսիսային դրան սրբոյ տաճարին վանաց :

Այս է արձանագիր Տապանին Նորին :

Աղաղակեմ առ քեզ գթած, մի՛ թողուր զիս 'ի ձեռաց, որ միշտ ես ողորմած, խնայեա 'ի քո սոսկ ծառայս, և զոր աստ եդեալ կամ մեղսամած, և մի՛ մատներ աւազակաց, որք 'ի գիշատելն են պատրաստ, և աղաչեմ զի մի՛ փակեսցես զիմ եւ լոյս առ քեզ՝ զառագաստ արքային կենացդ յարկի՝ այլ յիշեա զիս յողորմութեան քում և 'մի յիրաւունս քո. յիշեա զիս 'ի ներողութեան քում, և մի 'ի հատուցումն, զի առ չարս ես բարի, առ մեղաւորս ես քաւիչ, և առ մահացեալս ես կեանք : Տապանս է Դաւիթ անարժան կրօնաւորի, դատապարտեալ ծառայի, և սոսկ անուամբ առաջնորդի, որ զանուն իմ գատէ զիս յաւուրն վերջին. վայ ինձ զի որ երբեմն էի վերնային և այժմ անդնդային, վախճանեալ 'ի կենցաղոյս եդայ յայսմ տեղի, որք և խնդրեմ եկելոցդ յայսմ տեղի անխիղճ կոխել զերեսս, որ և իսկ եմ արժանի, և դուք ընկալջիք զխնդիրս ձեր բարի, ամէն. թուին 1177 և յամսեանն դեկտեմբերի 18 :

Տէր Յովհաննէս խաչկեան 'ի համառօտ պատմութեանն Առաջնորդաց Ջուղայու յաղագս սորա գրէ թէ « սա հանգոյն
« անուանակցին իւրոյ առաջնոյ առնէ զշինութիւնս բազումս
« և յախճապակեօք շքեղացուցանէ զորմս սուրբ տանն, 'ի-
« սօրոտէ յատակացն մինչև ցերիս կանգունս որմոցն՝ և 'ի-
« վերայ յախճապակեացն յօրինէ զպատկերս չարչարանաց
« սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին՝ զգեղեցիկս և զօ-
« կեզօծս և զծաղիկս երփնափայլս, որովք յոյժ պայծառա-
« ցեալ զարդարի եկեղեցին Աստուծոյ » : Յիշատակարանն գրեալ 'ի մէջ սեմոյ հիւսիսային դրան սրբոյ տաճարին է յիշատակ յախճապակի շինուածին որ ունի զթուականն Հայոց 1150, որ է քսան և չորս ամօք նախքան զառաջնորդութիւնն Դաւթի երկրորդի : Իսկ թէ Տէր Յովհաննէս խաչկեան ասէ

առեալ․ զայն տեղեկութիւն յիշատակէ 'ի համառօտ պատմագրութեանն իւրում՝ չգիտեմ։ Վասնորոյ զայն յօդուած արտաքոյ կարգի պատմութեան յիշատակեմ իբրև ծանօթութիւն ինչ․

---

† [illegible] է որ [illegible] [illegible] Ջուղայեցւոց [illegible] ։
(1)․ [illegible], կամ ըստ ոմանց [illegible] ։

# Բ․

## ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ

Տէր Աստուածատուր Եպիսկոպոս Փահրապատցի (1), կրօնաւոր՝ հեզաբարոյ՝ և խաղաղասէր, ըստ խնդրոյ Ջուղայեցւոց նստի յաթոռ առաջնորդութեան յամի 1729 (1181) և խոհեմութեամբ կառավարէ զհօտն իւր։ Սմա մակ անուն կարդային աղաւնի, ասկս հեզամիտ և խաղաղասէր բնաւորութեանն իւրոյ։

Չիք մորա գործ ինչ երևելի, կամ թէ եղեալ իցէ՝ ոչ է ժամանեալ առ մեզ, այլ քաղցրութիւն բարուց նորա հռչակաւոր է։ Վախճանեցաւ յամի 1745 (1194) որոյ մարմինն ամփոփեալ կայ 'ի հիւսիսային գաւթի որբոյ վանիցն։

Այս է [illegible] նորին տապանին,

«Ներ զայս տապանի՝ եդեալ ամփոփի,
մարմին մեղաւորի՝ հեզս Աստուածատուրի,
որուպս վարդապետի՝ որ Փահրաբադցի,

որքան 'ի մարմնի՝ կացի յաշխարհի,
միշտ չարեօք 'ի լի՝ երկ հինգ քանքարի.
այլ և մնասի՝ նա և տաղանդի,
եւ ոչ յարգեցի՝ 'ի վարշամակի՝
'ի հող թաղեցի ։ Ո՛վ դուք պանծալիք,
որդիք Սիոնի՝ մաղթեցէք յաղօթս,
զի ինձ ողորմի՝ յաւուրն ահեղի,
հանգերձ յիշողի՝ պարգև ինձ տացէ.
յորն այն խաւարի՝ և համառօտի,
'ի թուականի՝ հազար հարիւրի.
իննսուն յաւելի՝ և քառեակ թուի,
'ի յունվարի 17ի՝ զրաւ կենացս լինի,
պատկեր աւուրն 'ի շաբաթի՝ 'ի տօնի սրբոյն Նիկողոսի։

(1)․ Փահրաբաղ է քաղաք սահմանակից Մազանդարանայ, ուրանօր առաքեաց Շահաբաս մեծ՝ զգաղթականսն գերեալ յազգէ Վրաց, ընդ որս կային և յազգէ Հայոց և Եբրայեցւոց ։ (առաքել, գլ․ ժա․ էջ 130 — 131)։

Յամի 1178 (1729) 'ի 28 փետրվարի Փահրաբաղցի Մէլիք Մարկոսի որդի Գրիգոր անուն գրէ առ յիշեալ Աստուածատուր Եպիսկոպոսն ողջունագիր, յորում համառօտապէս յիշատակէ յաղագս գաղթականացն Փահրաբաղայ, ասելով
«Արդ ․ ի․ լինի աուրը հօրս մեռնյ, թէ Մազանդրանայ ահ-
«վալն է․ իմանաս, ամէն գեղարէնքն խարապ այ. դ․ զաւ-
«ցել, զ․ Շաբբջի աջի ե․ Տէր Նակօսն այ մնացել, էլ են
«գեղումն մարդ ազգ չկայ, Դըվէրի զ․ չէնի ղալայկէն եր-
«ակէն է․ Պեարոսի տղայ Ալվերդին այ և իւր ախբէր ը․ Նա-
«րապետն այ կենում, վանքի † չէնումն Ուտիլարիումն՝ ա-
«մէն գեղում, ամէննն մի քառասուն տուն անջաղ թ․ մնա-
«ցէլայ, էլ բաղին Ժ․ ամէնն զուլմը ժա․ Ութամի ժբ․ ձե-
«ռաց՝ որն ուրացէլայ, որն մեռէլեն, հրամանոց տուաց հող՝
«տասն ութն տարի այ որ բանտայ ժդ․ տեղէն խիզանըս
«վեր էմ առէլ դուռս եկէլ, բանտայ էլ տեղըս խեղճ տառա-
«պեալ միացէլամ ձեռնումս իքմին չկայ, հէնց ժդ․ որ Փա-

Ոչէք յայտնի տեղի գերեզմանին Նորա և ժամանակ վախճանին։ Առաջնորդութիւն Նորա եղև վնասակար յոյժ վասն վանին, վատնեցան բազում անօթք, և վանքն անկաւ ընդ ծանրութեամբ յոլով պարտուց (2)։

Միաբանք վանին առ ժամանակաւ Նորա, էին են Գէորգ՝ Պետրոս՝ տփխիսեցի Զաքարիայ, Խաչատուր և Մովսէս Եպիսկոպոսունք։ Ստեփաննոս՝ Բարսեղ՝ Կարապետ՝ Աւետիք և Յովհաննէս վարդապետք։ Այլք քահանայք, Տէր Դաւիթ գինէպան և անօթապահ, մեծ Տէր Ղուկաս՝ վերակացու կառուածոց և մշակաց, Տէր Մատթէոս և փոքր Տէր Ղուկաս՝ ժամասացք, Տէր Յովհաննէս դասապահ ժամկոչ, Տէր Ստեփաննոս՝ լուսարար, Տէր Սիմէոն՝ Տէր Յակոբ՝ Տէր Հայրապետ և Տէր Եզեկիէլ միաբանք (3)։

Յետ ընկեցիկ լինելոյ Պօղոս Եպիսկոպոսի 'ի 1752 ամի՝ Տէր Զաքարիայ (4) Եպիսկոպոս տփխիսեցի կարգի Յաջորդ և վերատեսուչ վանին։ Գրէ զկոնդակ 'ի Հնդկաստան, ուր ծանուցանելով զանցս եղանելոյն Պօղոսի յառաջնորդութենէ, յարէ՝ " ըստ այսմ պատճառի հարկ եղև վասն շինութեան " սրբոյ տանս յաջորդ հաստատել. թէպէտ ես ոչ կամէի " առ այս լինելութիւն, սակայն ( քեալանթար ) Պարոն Սար- " գիսն հանդերձ միաբանիւք, քահանայիւք, և ժողովր- " դովք զիս բռնադատեալ հաստատեցին յաջորդ և վերակա- " ցու սրբոյ վանին, նոյնպէս Պարոն Սարգիսն եւս երեսփոխ " սրբոյ տանս"։

---

(1). Ձեռագիր յիշատակարանք։

(2). Նոյն . Նոյն։

(3). Յիշատակարան գրչագիր ժամագրոց եղելոյ 'ի վանին։

(4). Տէր Յովհաննէս Խաչիկեան 'ի համառօտ պատմագրութեան իւրում (էջ 3) զսոյն Զաքարեայ համարէ 'ի թիւս Առաջնորդաց, այլ կերևի որ ծանօթ է, չէ նա համարելոյ Յաջորդ. և վարեաց զպաշտօն ա-ռաջնորդութեան առանց դասելոյ լինելոյ 'ի թիւս Առաջնորդաց։

ժ.

# ԳԷՈՐԳ

Տէր Գէորգ եպիսկոպոս միաբան սորին վանիս, հաճութեամբ ամենեցուն կարգի առաջնորդ յամի 1754 (1)։ Սա 'ի պատճառս բազմապատիկ նեղութեանց և հարստահարութեանց բռնաւորաց անճարացեալ առնու զանօթս սորին վանին, յորս նշանաւորք են հգետառան ակինք վեց արծաթի, և մի ականակուռ ոսկեայ գաւազան (2) և հանդերձ երևելի միաբանիւքն գնայ 'ի Բասրայ քաղաք և անդ վարէ զպաշտօն առաջնորդութեանն իւր ց'ամ Տեառն 1763։

Յամի 1760 'ի 20 սեպտեմբերի, Պետրոս և Բարսեղամ վարդապետք գրեն առ նա 'ի Ջուղայոյ պթուղթ խնդրանաց զի վերադարձցի 'ի Ջուղայ կառավարել զվանքն՝ ասելով "
" Հայր սուրբ խնդրեմք հրամանեցէն " որ մեզանէ ներդանաս
" ոչ, վասն սուրբ Աթոռիս համար թաստի անք (ա) տալ-
" ման հրամանոց, որ հաստատ մնայ և դուռն բաց լինի, մեզ
" խօյ (բ) յուսհատած մնացեալ անք՝ չինք (գ) խաբար մեր ճարն
" դօր (դ) գնի (ե) տանս տէր չկայ, վանք և եկեղեցիք՝
" քահանայք և ժողովուրդք ամենեքեան յուսահատեալ են
" . . . ժողովուրդ խօյ Աստուած տայ . . . վանք և եկե-
" ղեցիք քաքտվանմայ յանտէրութենէ . . . վանքիս չօք (զ)
" կողմն մէդամով և քօլն (է) Ջուղայ քուրթ այ (ը) նըս-
" տած, Մարդարի քօչն (թ) էլ (ժ) Շահրիմանէնց ար-
" ներումն են նստած, մաղում (ժա) թէ էստոնց (ժբ)
" ձեռնումն դօր պիտի պրինք "։

Յամի 1763 մինչ խաղաղացաւ փոքր մի Սպահան քաղաք 'ի բռնաւորութեանցն Նատիրշահի, վերադարձաւ սա 'ի Բասրայ 'ի 27 Նաւասարդ (14 Սեպտեմբեր) և հանդերձ միա-

բանիւք ժամանէ 'ի Ջուղայ յԱթոռ Առաջնորդութեան նո-
րոյ, և ըստ կարևորին մխիթարէ զժողովուրդսն որք անտէ-
րունչ և անխնամ մնացեալ էին, բարեկարգէ և զկառավա-
րութիւնս վանին ըստ ներելոյ պարագայից :

Յետ վերադառնալոյ սորա 'ի Բասրոյ, Քահանայք Ջու-
ղայու տան գթուղթ ուխտի և խոստման զի յետ վախճանե-
լոյ անժառանգ քահանայի, ամենայն ստացուածք նորա վա-
նացն եղիցի ժառանգութիւն : Այս է պատճէն խոստման թղ-
թոյն այնմիկ, “ Մեք Ջուղայու աւագերիցունք և հասարակ
“ քահանայք և բոլոր ժողովուրդք, ուխտեմք ուխտ և դաշինս
“ 'ի նախնեաց մերոց ընդ սրբոյ Ամենափրկիչ վանիս, և ընդ
“ նմա ներկայ Առաջնորդ և Յաջորդին, առաջի ամենասուրբ
“ Երրորդութեանն և ընդ սրբոյն Աստուածաշօշափ Աջոյն
“ Յովսեփայ, որ ինչ Քահանայ սուրբ Աթոռէս կարգ առնէ,
“ և յետ իւր մահուանէն որ յիշատակ չունենայ իւրն ամե-
“ նայնիւ անյիշատակ Քահանայի վարքս (ժդ) և տէր, մեր
“ սուրբ Աթոռն է, և ներկայ առաջնորդ և յաջորդն է, ոչ
“ ոք իշխանութիւն ոչ ունի, և թէ ոք յայսմ ուխտի և դա-
“ շինիս վերայ այլ և այլ առնէ, Ամենասուրբ Երրորդու-
“ թեանն և երեք հարիւր տասն և ութ Հայրապետացն՝ և
“ սրբոյն Յովսեփայ Աստուածաշօշափ Աջոյն նզովեալ ներքոյ է,
“ և կատարողին օրհնեալ ; որ Առաջնորդն նորա հոգին ամե-
“ նայնիւ հոգայ (ժդ). և մնացեալն տէրէ, ըստ իւրն (ժե)
“ իւրն է : Այսքան է մեր ուխտ և դաշն առանց յիշատակի
“ Քահանայի կողմանէ :
“ Եղև աւարտումն 'ի սարսափելի դրան սրբոյ Ամենափրկչի
“ գերահրաշ վանի. յամի Տեառն 1764, շբաթ 13 (յունիսի
“ 1.), աւարտ ” (3) :

Վախճանի 'ի 28 հոկտեմբերի 1768 ամի և յարևմտեան
դրան սաւճարին սրբոյ վանի ամփոփի, ունի տապանագրու-
թեամբ :

> Տէր ողորմեա Գէորգ վարդապետին, որ 'ի տապա-
> նիս է՝ կեցեալ յաշխարհի զամս 75, և հանգեաւ 'ի
> Տէր յամի Տեառն 1768, յոկտեմբերի 28 :

վաստիճան եպիսկոպոսութեան, և եկեալ անտի հասանէ 'ի Բասրայ ուրանօր 'ի ժողովրդոց հրաւիրի յետ մահուանն Գէորգ Առաջնորդի յաջորդել նմա։ Եկեալ 'ի Բասրոյ 'ի 1768 ամի հասանէ 'ի Ջուղայ 'ի ժամանակի ծանր հիւանդութեանն Գէորգ Առաջնորդի։ Յետ վախճանի Գէորգ Առաջնորդի, ըստ բազում թախանձանաց ժողովրդեանն 'ի 15 յունվարի 1769 նստի յաթոռ Առաջնորդութեանն Ջուղայու վանաց ( 1 )։

Յաւուրս առաջնորդութեան սորա բազմապատիկ խռովութեամբ աղմկի Պարսկաստան, բռունք յափշտակեն զգահ թագաւորութեանն, ոչ ևս կարգաւորութեամբ վարի իշխանութիւնն թագաւորութեան, զի 'ի չորեք կուսէ խանք և իշխանք մարտ ընդ միմեանս տան, որ յաղթէն՝ նա թագաւորէր, և յայլմէ քան զինքն հզօրագունէ պարտեալ յաղթականին մնայր իշխանութեանն վանորոյ անդադար շարունակէին մարտ՝ արիւնահեղութիւնք՝ բռունն հարկապահանջութիւնք և բազում նեղութիւնք՝ զորոց յիշուած տեղւոջ խօսեցաք։ Այսպիսի ուժգին բռնակալութիւնք սաստկապէս վըտանգեցին զՋուղայ, կողոպտեցան եկեղեցիք, և վանքն 'ի պարդուեց. վասն վճարելոյ հարկաց։ Ալեմուրատխան բռնաւոր կողոպտէ զվանս, զորմէ պատմէ Տէր Ստեփաննոս պատմիչ, որոյ զբանս սրբագրութեամբ նշանակեմք աստանօր։

" Ալեմուրատխանն ունէր զծառայս յազգէ վրաց որք ու-
" րացեալ էին 'ի հաւատոց քրիստոնէութեան և բնակեալք
" էին 'ի մէջ Ջուղայեցւոց, և տեսանէին զպայծառութիւն
" սրբոյ Աթոռոյն մերոյ Ամենափրկչի, և ամենք 'ի նոցանէ
" տեղեակ էին որպիսութեան նորա։ Երիտասարդ մի ազգա-
" կան ուրացելոցն աշակերտ էր 'ի վանին, զոր վասն սխալու-
" թեան իմիք 'ի բաց վարեցին 'ի վանաց։ Գնացեալ նորա առ
" ուրացեալ բնտանիս իւր՝ չարախօս եղև թէ այսքան ա-
" նօթ ոսկւոյ և արծաթոյ կան մթերեալ 'ի վանին 'ի պա-
" հեստի։ Յայտնեցին զայն Ալեմուրատխանին որ առաքեաց
" զքսան ծառայս զի կալցին զառաջնորդ վանացն և զմիա-
" բանսն և չարչարեսցեն զնոսա մինչև յայտնեսցեն զտեղի
" թաքստեանն, յորմէ առեալ զամ որինչ եղէ պարծարան-

« ցեն առ ինքն ։
« Եւ իբրև այս բօթալի հրամանս եղև 'ի նմանէ 'ի նախա-
« նուաղ երեկոյին ծառայքն ելին դէպ 'ի Ջուղայ, և 'ի լսել
« միաբանիցն զայն լուր ելեալ 'ի վանաց Թաքեան 'ի տունս
« դրացեաց 'ի խորշս և յանկիւնս տանց ։ Իսկ եկեալ զինուո-
« րացն կալան զառաջնորդ Մկրտիչ վարդապետն և զյաջորդ
« Յակոբ վարդապետն' զերկուս 'ի միաբանից' և զերկուս 'ի
« տիրացուաց, և եդին զփալանգայն յոտս առաջնորդին և յա-
« ջորդին, և այնքան գանեցին 'ի չորից կողմանց, մինչև ոտք
« նոցա ցծունկսն ներկեցան արեամբ ։ Այլ յաջորդ Յակոբ
« վարդապետն մեռցուք 'ի վերայ հաւատոյս և Աթոռոյս մե-
« րոյ և ժառանգեսցուք զհոգի և զմարմին և մի տացուք 'ի
« ձեռս այլազգեաց զօրինակ անօթս մեր ։ Բայց միաբանքն և
« երկու աշակերտքն ոչ լուան նմա, իսկ առաջնորդ Մկրտիչ
« Վարդապետն ոչ ունէր կարողութիւն խօսելոյ վասն ան-
« չափ գանիցն, վասն այն միաբանքն և աշակերտքն ոչ լու-
« ան աղերսանաց յաջորդին, այլ ասէ ոմն յաշակերտաց արձակե-
« ցէք զիս 'ի կապանաց և եկայք զկնի իմ . . . և արձակեցին
« զնա 'ի կապանաց, որ գնաց 'ի տանիս սրբոյ տաճարին և
« զինուորքն զկնի նորա, և ասաց քակեցէք զայս նիշ տեղի.
« և նոքա քակեցին և բացան զաղուսն, և զցուցանօղ ա-
« շակերտն Մարտիրոս անուն առաքեցին 'ի ներքս և առին զա-
« մենայն որ ինչ կայր 'ի նմա զխաչ' զսկիհ' զբուրվառ' ըզ-
« քշոց' զպաշտանակ' զմոմակալս' զգաւազանակս' և զայլ եկե-
« ղեցական զարդս, և ապա մտեալ 'ի խուց և 'ի սենեակս միա-
« բանիցն կողոպտեցին զամենայն որ ինչ կայր 'ի նոսա, և էր
« կշիռ արծաթոյն քսան և հինգ լիտր բաց 'ի զգեստուցն .
« և կշիռ ոսկւոյն երեք չարէք (տ) ։ Իսկ առաջնորդն և
« յաջորդն անկեալ կային 'ի զնդանատանն և զկսկիծ զա-
« նիցն թողեալ' զկորուստ սրբութեանն անօթոցն ողբային
« (2) ։

Ցաւօք և հեծութեամբ տառապէր առ յիշխանութեանն իւրում, զօրհանապազ յահ և յերկիւղ սասանեալ' տուգա-նեալ և հարուածեալ, յորոց ոչ գտանեալ զելս փրկու-

Թեան անձնարոցեալ գնայ 'ի Շիրազ ( 3 ), անդ Ճաշոյն առ ժամանակ մի, 'ի Թագաւորելն Քերիմխանի՝ պատուեալ 'ի նմանէ և սիրելի եղեալ յաչս նորա վերադարձաւ 'ի Ջուղայ, և անձնուէր հովուութեամբ կնքէ զընթացս ժամանակին կենացն իւրոց 'ի 1787 ամի, և ամփոփի յարեւմտեան դրան եկեղեցւոյ վանիցն :

Այս տապանագիր է նորին :

"Ներ դայս տապանի՝ եղեալ ամփոփի
մարմինս մեղաւորի՝ Հէգս Մկրտչի
տրուպ վարդապետի՝ որ եմ Թաւրիզեցի ( 4 )
որքան 'ի մարմնի՝ կեցեալ յաշխարհի
միշտ չարեօք 'ի լի՝ երկ հինգ քանքարի
այլ և մնասի՝ նաև տաղանդի,
եւ ոչ յարդեցի՝ 'ի վարշամակի,
'ի հող թաղեցի : Ով դուք պանծալիք
որդիք Սիոնի՝ մաղթէք յաղօթի
զի ինձ ողորմի :

Այժմ եղծեալ է գրութիւն այն տապանին, և ես 'ի հատուկտոր թղթոց գրեմ զարուն տապանագիրն :

Ի սորա ժամանակս՝ փեալանթար Սարգիս ընդ երեսփոխան վանիցն, յաւէտ յօգուտ իւր քան թէ յօգուտ վանիցն : Միաբանք 'ի վանսին եղեալ են Յակոբ՝ Մատթէոս՝ Եզեկիէլ՝ Մանուէլ՝ Աստուածատուր՝ Բաղդասար և Յարութիւն վարդապետք, եւս և Հայրապետ վարդապետ Նուիրակ 'ի Հնդիկս և Մինաս վարդապետ գործակից Նուիրակի ( 5 ) :

---

(1). Ձեռագիր յիշատակարան Գրոց 'ի նմանէ :
(2). Տէր Ստեփաննոս գործն է :

« կեղեցիսն իւր մեծահասիլ (Ա) . Քահանայից և երեցփոխաց
« սաստիկ ահաբեկելով՝ զամենայն զարդ և անօթ ոսկեղէն և
« արծաթեղէն կողոպտեաց մինչև բազմաց աչերն՝ մասունքն
«, ծախեաց, աչերն կոտրատեաց, որ եկեղեցեաց ամենատուր
« զենումն 'ի մէջ խեցեղինաց մատչի . . . յետ ամենայն ինչ
« կողոպտելոյն և այգիքն գրաւելով . . . Ա ,, : Զամանէ
դառնաղէտ սրտիւ զանգատէ աղայ Մարգար Աւետ խալըզա-
քեանց, 'ի նամակին իւրոյ գրեցելոյ 'ի Բաղդադայ 'ի Թուականի
Հայոց 1240 ( 1791 ) առ միաբանսն սրբոյ Ամենափրկչի վանուցն,
ասելով, « Սմին նման առաջնորդն ( որոյ արարածն պարծեմ
« հեթանոսք ևս չեն կրասարեն ) ոչ աշխարհումս այդպիսի
« անձն եկած լինի կամ արարքն արարած լինի, անհաւատն
« կրօղողայ այդպէս բան չի անում որպէս դա արար՝ որ ակին՝
« խաչ՝ աւետարան՝ մասունք կոտրատեց . . . Ո՛հ ներո-
« ղութեան Աստուծոյ, որպէս ներեցեր, որպէս լռեցեր, որ
« երկինք և երկիր սարսեն այդպիսի բանից : Մեր եկեղեցին
« ևս (4) . Թամամ (Բ) . աւերակ այ արարիէլ . մին նոր
« վարագոյրն որ մաղրասուն չինել տվէլ, տասն ութ
« թումանայ գինն . ծախէլայ քուրթի . . . սուրբ Թօմայի
« շօշափումն այ, նա վրէժ խնդիր լինի նմանպէս ակին՝ խաչն՝
« Ա իրաւի յիշելն արժան չէ ,, :

Յետ զայն ամենայն առնելոյ՝ զմնացեալ սպասս և զա-
նօթս վանուցն առեալ գաղտ եղանէ աստի և գնայ 'ի Բասրայ,
ուրանօր տեղեկանալով իշխանաց քաղաքին մանաւանդ գոր-
ծակատարաց վանուցն անցիցն զորս նա անցուցեալ էր 'ի Ջու-
ղայ, և թէ բերեալ է ընդ իւր զանօթս վանուցն, յորս էր և Աջ
սրբոյն Յովսէփայ Արեմաթացւոյ, առնուն զայնոսիկ 'ի նմանէ
և առաքեն դարձեալ 'ի վանքն Ամենափրկչի (5) : Իսկ Յակոբ
առաջնորդ եղեալ անտի գնայ 'ի Մադրաս և անդ կատարեալ
զղջմամբ և խոստովանութեամբ գրէ զկտակ իւր. ասելով 'ի
նմա « մի ոք յայլ վիճակէ ընդունիջիք ձեզ Առաջնորդ կա-
« ցուցանել, եթէ ոչ 'ի միաբանից սրբոյ վանուցն մերոյ և ընտ-
« րողութեամբ հասարակութեան ,, : Զամենայն զստացուածս
իւր կտակէ հասանել սրբոյ Ամենափրկչեան վանուցն, որպէս

ցեալ մահուանն նորա գոյք նորա հասանեն ՚ի վանսն, և ինքն ՚ի 22 Սեպտեմբերի 1793 ամի վախճանի անդ և ամփոփի ՚ի մէջ եկեղեցւոյ հայոց (6).

Թէպէտ բազմապատիկ բողոք և գանգատանք եղեն զՅակոբ Առաջնորդէ, և ՚ի հասարակութենէն Ջուղայու գրեցաւ զնմանէ դատն գանգատագիր առ Սրբազան Ղուկաս կաթուղիկոսն ՚ի սուրբ Էջմիածին (զորովք զանց առնելի բարւոք համարեցի) այլ ինձ հաճութիւն գոյ կարծելոյ՝ թէ դիտումն Յակոբ Առաջնորդի ոչ է եղեալ կողոպտել զեկեղեցիսն կամ զվանսն՝ սակս իւրոյ անձնաշահութեան, այլ ըստ որում բռնաւորութիւն և կեղեքումն անպակաս էր յայնսիկ ժամանակս ՚ի շահախնդիր բռնաւորաց ոմանց, վասն որոյ սրտաբեկեալ նորա առաւել ՚ի դէպ համարեալ է ինքն ժողովել զընտացուածս և զգոյս եկեղեցեացն և վանիցն, քան թէ թողուլ աւար լինել անյագուրդ բռնակալացն իւրոյ ժամանակի։ Զայս կարծիս կալեալ՝ կշռադատելով զվարս նորա, զի մինչ Ալիմուրատխան առաքեալ էր զծառայս իւր կողոպտել զվանսն, նա ինքն էր որ ընդ Մկրտիչ Առաջնորդին գնացեալ լեալ լաւ համարէր մեռանել քան թէ մատնատու լինել սրբութեան սպասուցն սրբոյ վանիցն, և յառաջնում ամի առաջնորդութեանն իւրոյ իբրև հայր խնամաշատ հոգ տարաւ կերակրել և խնամել զաղքատս՝ զտնանկս և զչքաւորս ժողովրդեան. որք նորին խնամոց շնորհիւ ազատեցան ՚ի սովամահ լինելոյ։ Նոյնպէս և վախճանն նորա կատարեալ զղջմամբ և խոստովանութեամբ, և կտակելն վանիցն զամենայն գոյս իւր, նա ևս հոգ տանելն սակս ապագայ ընտրութեանն առաջնորդի, ապացոյցք են բարիմիտ լինելոյ նորա, ուստի և ես յապացուցութեանց անտի ոչ աւելորդ համարեցի յիշատակել զվերոյ գրեալն իմ կարծիս։ Եթէ յոմանց ՚ի բարեմտաց սրտմտանիցիմ սակս զանխլայելուս գործս ոմանց հանգուցելոց արժանագրելոյ ՚ի դիր, առ այն ասեմ թէ և իմ խիղճ խորշէր յայնմանէ վասն անսովոր լինելոյ խօսելոյ կամ գրելոյ զվատաբանութիւնս զումեքէ, այլ զանցս պատմութեանն խեղաթիւրել և զիմաստն դարձուցանել ըստ քմաց (որպէս առնեն ոմանք

որք կամին զամենայն դէպս յօգուտ իւրեանց շրջել) առաւել ստգտանելի գործ համարելով, բարւոք վարկայ զպարտս պատմագրի կատարել, քան թէ զընթացս պատմութեանն ըստ քմաց աղաւաղել :

Զկնի գնալոյ Յակոբ առաջնորդի յամի 1791 կարգեցան վերատեսուչք վանից Միքայէլ՝ Ղազար և Գէորգ վարդապետք 'ի միաբանից աթոռոյն, որովք կառավարեցաւ վանքն մինչև ցընտրութիւն Առաջնորդի : Եւ ըստ որում գործք Յակոբ առաջնորդի վշտացուցեալ էր յոյժ զսիրտս ժողովրդեանն՝ վասն որոյ աղերս մատուցեալ 'ի սուրբ Էջմիածին, խնդրեցին ոչ ևս առաքել զօք առաջնորդ՝ մինչև խաղաղասցին ժողովուրդք, և Ղուկաս կաթուղիկոս 'ի փետրվարի ինն (1242) ամի գրէ առ Ջուղայեցիսն զկոնդակ մխիթարութեանն, և 'ի նմա յաւելու ասել "այլ զանզի Յակոբ պետն այնպէս նշկա-
"հեալ եղև և զայլ առաջնորդս ևս ոչ կամիք այլ խնդրէք
"առանց առաջնորդի կալ առ ժամանակ մի . . . մինչև համ-
"դարտեսցի երկիրդ 'ի վրդովմանց, գիտասջիք առ այդ զի
"Յակոբ պետն ոչ կարէ դառնալ այդր և զայլ ոք ևս ոչ
"եմք առաջնորդ կարգելոց որպէս խնդրեալ էք և օգտաւոր
"համարեալ" (7) :

Յաղագս այնր զամս ինն վանքն կառավարեցաւ առանց առաջնորդի՝ հոգաբարձուօք միայն :

---

(1). Ձեռագիր յիշատակարանք :

(2). Տէր Ստեփաննոս պատմիչ էջ :

(3). Թղթակցութիւնք գրեալք ընծայք :

(4). Իշխեցին նոյն է որբայն Թողիսայի, որ հասարակօրէն գաւ- գող ժամ կոչի :

(5). Ձեռագիր յիշատակարանք :

(6). Նամակ յայտարարութեան գրեալ 'ի Մադրաս քաղաքէ :

(7). Օրինակ կոնդակագրոյ Ջուղայեցւոց ընծայեալ, և նամակ. Միաբանութեան գրեալ 'ի Կալկաթա քաղաքէ՝ ուղղեալ 'ի վանսն Ամենափրկչէ :

( Ա ) . Մահուանն է Եսա պարոնց , և հայր ծառայն որ ՚ի Դերա-
ն [illegible] լինի օրինակ շնորհս [illegible] , հաս զմ և էջէ ղա-
ւնջելն Գամարոս :

( Բ ) . Թումամ ՚ի պարոնց հայր սեբէմամ ,, որ նշանակէ՝ Եսաջինգալ ,,
[illegible] և անդակաո :

## ԳԼ. Գ.

## ՅԱՐՈՒԹԻՒՆ

Յամի 1798 մանաւանդ Ջուղայեցւոց և Բասրայեցւոց գնացին յէջմիածին Յարութիւն և Գէորգ վարդապետք զի ընկալցին զպատիւ Եպիսկոպոսութեան, յայնմ ժամանակի վախճանեցաւ Ղուկաս կաթուղիկոս, որոյ աղագաւ մնացին նոքա անդր ցընտրութիւն Դաւթի, յորմէ ՚ի 5 մայիսի 1801 ամի ընկալան զօծումն Եպիսկոպոսութեան, և ՚ի 12 Յունիսի նոյն ամի վերադարձան ՚ի Ջուղայ ( 1 ) : Նոքա ՚ի լինելն յէջմիածին ըստ պահանջելոյ Դաւիթ կաթուղիկոսի տան զթուղթ խոստման առ նոյն Դաւիթ կաթուղիկոս զի յետ ընդունելոյ իւրեանց զառաջնորդութիւնն Ջուղայու, զվիճակն Ամենափրկչեան վանի արասցեն Տէրունի և թեմ սրբոյ Աթոռոյն Էջմիածնի : Ի լսելն լինել այնպիսի լուր ՚ի Ջուղայ և ՚ի Հնդկաստան, ծագեցաւ տարաձայնութիւն ՚ի ժողովրդեանն, և անհաւանական եղև խոստումն այն, ուստի բողոք բարձին յէջմիածին և պահանջեցին դարձուցանել զայն խոստումնագիր, այլ յէջմիածին չեղև մտադրութիւն առնել այնր, ուստի տարաձայնութիւն և բողոք ժողովրդեանն տևեաց մինչև ցժամանակ Սրբազան Եփրեմ կաթուղիկոսի, յորմէ դարձեալ պահանջեցին Ջուղայեցիք զայն խոստումնագիր և նա-

քին Սրբազնակատար օծութիւնն. 'ի բաւարարութիւն սրտի Ջուղայեցւոց գրեաց առ նոսա յամի 1813 'ի 25 յունուարի օրհնութեան կոնդակաւ ; « այլ սակայն հանգուցեալ Յարու-
« թիւն և Գէորգ Եպիսկոպոսքն ձեր որք 'ի կենդանութեան
« իւրեանց թուղթ ին տուեալ առա վասն տէրունի առնելոյ
« զկիձանկ սրբոյ Աթոռոյս, զայն թուղթ խնդրեալ էիք և
« այժմ յետս առ ձեզ առաքել, բայց որպէս նախ քան զզան
« մեր 'ի սուրբ Աթոռս չէին գտեալ զնոյնն՝ թէ հոգելոյս
« Գանձէլ Սրբազանն և թէ սուրբ ժողովն, նոյնպէս և մեք
« 'ի ներկայս ոչ կարացաք գտանել զի առաքէաք, բայց ա-
« հա այսու գրով յետմի լերուք միամիտ առ այն, զի եթէ
« գտանիցի յայտայն՝ անընդունակ լիցի այն յաւիտենից ժա-
« մանակաց » :

Տէր Յարութիւն Եպիսկոպոս կարգի առաջնորդ յամի 1801, և Տէր Գէորգ Եպիսկոպոս լինի յաջորդ նորա : Բարւոք հովուութեամբ կառավարեն զհօտն իւրեանց, ընդ միմեանս սիրով և միաբանութեամբ կալով : Ի սոցին ժամանակս վիշտք և նեղութիւնք պակասին, ուստի քան զնախորդս իւրեանց՝ սոքա անդորրութեամբ անցուցանեն զկեանս իւրեանց : Ըստ ձեռնահասութեան իւրեանց նորոգեն զանշքութիւն վանացն : Ի սոցին ժամանակս պարտք վանիցն հասեալ էր ցչորս հազար թուման (2) : Ուստի յամի 1803 զՆիրակոս վարդապետ առաքեն նուիրակ 'ի Հնդկաստան, և զՄկրտիչ վարդապետ առաքեն նուիրակ 'ի Ռուսաստան. և նոցին նուիրակական արդեամբք ազատեն զվանքն 'ի ծանրութենէ պարտուց : Եւանք Գէորգ Եպիսկոպոսի կարճի 'ի 141 հոկտեմբերի 1808 ամի, և ամփոփի 'ի զանգատան վանիցն : Իսկ Յարութիւն Առաջնորդ վախճանի 'ի 26 դեկտեմբերի 1810, և ամփոփի 'ի հիւսիսային գաւթի, 'ի շարս հանգուցեալ Առաջնորդաց :

- [illegible] նորին է այս :

Հրաման է ամենակալի՝ ամենայն մարմին հող լինի,
'Ի տապանի աստ ամփոփի՝ զի առաջնորդ Յարութիւնի

արքեպիսկոպոսութեան՝ որ էր մարմինն յոյժ գովելի, յիշումն և իմն ամաց վախճանի՝ որք հանդիպիք տուք ողորմի։ Թուին 1810, դեկտեմբեր 26 ին։

---

(1). [illegible] նոցա, և [illegible]։

(2). [illegible] նոցա։

## ԺԳ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ

Տէր Յովհաննէս եպիսկոպոս Էջմիածնեցի, յամի 1812 նուիրակութեան պաշտօնիւ գայ 'ի Ջուղայ, և քաղցրութեամբ վարեալ ընդ ժողովրդեանն սիրելի լինի նոցա, ուստի հասարակութիւնն Ջուղայու յ2 Սեպտեմբերի 1812 խնդրագիր մատուցանեն նմա յանձն առնուլ մնալ Առաջնորդ Ամենափրկչի վանաց, և գրեն միաբանութեամբ առ Տէր Եփրեմ հոգելոյս կաթողիկոսն զխնդիր սակս հաստատելոյ զառաջնորդութիւնն սորա յաղագս Ամենափրկիչ վանին (1). յայտնեն և պատուելի համազգեացն որք 'ի Հնդկաստան զայնմանէ առաջնորդութենէ իւրեանց, և նոքա միաբան լինին այնմիկ խորհրդոյ, վասն որոյ Սրբազնակատար Տէր Եփրեմ կաթողիկոսն յ8 Մարտի 1813 ամի առաքէ զկոնդակ առաջնորդութեանն սորա։ Իսկ սորա աւուրս ծագեցաւ խռովութիւնն ապօրէնգործաց, և եղև սոյն կոչեցեալ Սադրի (2). ուստի,

վարեաց նա զառաջնորդութիւնն իւր վշտօք և նեղութեամբ, և վախճանեցաւ 'ի 28 Յուլիսի 1817 ամի, և մարմին նորա ամփոփեցաւ 'ի Զանգակատան վանին :

Ի յայսմ շիրմիս ներ պարագրի
մարմին ուրումն վեհագունի
որ Յովհաննէս վերաձայնի
Եպիսկոպոս գեր պանծալի :
Իսկ միաբան Էջմիածնի ,
և բուն զաւակ այնր գահի ,
գտեալ զգործ՝ նուիրակի
յԷջմիածնէ՝ այսր դիմի ,
յետոյ տեսուչ՝ վանացս ընտրի ,
և առաջնորդ՝ 'ի սմա կարգի :
Վեց ամ կացեալ՝ յայսմ հարկի
փայլեաց գործովն իբր զարփի ,
սոյն ծաղկեցեալ՝ ալեօքն 'ի լի ,
'ի ծերութեան իւր հասակի
բարի մահուամբ առ Տէր կանխի ,
առնու զձիրն յաղթանակի ,
'ի յամի Տեառն՝ կենարարի
հազար և ութն հարիւրեկի ,
այլ եօթն և տասն ընդ այնր զուգի ,
'ի 28 Յուլիսի :

Ի սորա առաջնորդութեան ժամանակի, միաբանք սորոյ վանին եղեալ են նշանաւորք՝ Յակոբ՝ Աբրահամ մեծ Օհան՝ Աստուածատուր՝ Ղազար և Գէորգ վարդապետք Ջուղայեցիք , փոքր Օհան՝ և Ղուկաս վարդապետք Բուրվարցիք , Թէոդորոս և Յարութիւն աբեղայք , Պարոնայք Գալստան Բարսեղեան և Սէթ Մկրտչեան կառավարիչք վանին :

(1). Խնդրագրութիւն Ջուղայեցւոց գրեալ առ նա , որ պահի

՚ի վանքն ։

(2) . Խնդրագրութեան նորա առ Հնդկահայս յաղագս այնորիկ նեղութեանցն ։

# ԺԵ·

## ԿԱՐԱՊԵՏ

Տէր Կարապետ Եպիսկոպոս Ջուղայեցի, այր հեզահոգի և բարեսիրտ, յամի 1817 յամսեանն Սեպտեմբերի մահտարական խնդրանօք Ջուղայեցւոց գնայ 'ի սուրբ Էջմիածին և անդ յ7 Յունվարի 1818 ամի ձեռնադրի եպիսկոպոս 'ի Տէր Եփրեմ Սրբազան կաթողիկոսէ, և 'ի նոյն ամի յ9 մարտի ելեալ յԷջմիածնէ առաջնորդական կոնդակաւ վերադառնայ 'ի Ջուղայ և ժամանէ 'ի վանքն Ամենափրկչի 'ի 14 մայիսի (1) ։ Ըստ բարեսիրտ քաղցրութեանն իւրոյ կառավարէ զժողովուրդն 'ի քանի ամս ։ Յաւուրս նորա հաջի Հաշէմխան բախտիարի լոռ՝ վարուք ցոփ և արբշիռ բռնաւոր հանդիսանայ յԱսպահան քաղաքի, յորմէ քաղաքն ողջոյն և քաղաքապետն ահաբեկին, նա սովորութիւն առնէ գալ 'ի Ջուղայ ստէպ ստէպ և գնալ 'ի վանքն Ամենափրկչի, ուրանօր զգինարբութեան խնջոյս բռնաւորաբար կազմէ, և առաջնորդն վասն ահի և երկիւղի պարտաւորի գտանիլ առ նմա վասն շահելոյ զնա, յայնմանէ ընթացք բարեկարգ կառավարութեանն նուազիլ սկսանի. ուստի պարտաւորի հրաժարիլ յառաջնորդութենէ, և յամսեանն ապրիլի յամի 1831 գնայ յԷջմիածին, ուրանօր պատուով պահեալ լինի 'ի միաբանից. ապա 'ի սէր Հայրենեաց վերադառնայ կրկին 'ի Ջուղայ 'ի 1842, և բնակի

'ի վանսին իբրեւ՝ միաբան, պատուեալ յամենեցունց, հեզա-
ղամբարի չնաշխարհիկ վարուք. եւ վախճանի յ2 յունվարի
1853 ամի, եւ հանդիսապէս ամփոփի յարեւմտեան դրան սրբոյ
տաճարի վանսին:

Տապանագիրն այս է.

Աստ հանգչի Աբրահամ Վարդապետ
արք Եպիսկոպոսն, որ է լեալ առաջնորդ
վանիս: Հանգեաւ յ2 յունվարի 1853:

Յետ գնալոյ Վարդապետս առաջնորդի 'ի սուրբ Էջմիածին, կարգի վերակացու վանսին Յակոբոս գիտնական վարդապետ յաջորդ նորա: Ձեռնադրի սա 'ի Փիլիպպոս եպիսկոպոս նուիրակէ սրբոյ Էջմիածնի 'ի Բումբայի յ3 յուլիսի 1813, ըստ խնդրոյ ժողովրդոցն Բումբայու առանց գիտութեան Ջուղայու վանաց առաջնորդին, յայն սակս Յովհաննէս Առաջնորդ գրէ զթուղթ մեղադրանաց առ Փիլիպպոս Եպիսկոպոսն ասելով "գուցէ նոքա (հայոց հասարակութիւնն Բումբա-"յու) չգիտէին զօրինաւոր պատկանն եւ զտեղի լինելու-"թեանն, այլ մի թէ եւ դու չգիտէիր եւ ոչ գիտեմք որ տե-"ղեակ ես եւ հասու ամենից պայմանադրութեանց թէ ա-"ռաջնայն եւ թէ նորոց որ վասն այլոց վիճակին, այլ զի "անփոյթ արարեր՝ արդարեւ զարմացաք, եւ յոյժ հեռի է "'ի խոհեմութենէ քումէ,,: Կարգի նա նուիրակ Հնդկաստանի եւ արդիւնաւորութեամբ կատարէ զայն գործ, առաքէ սակս վանսին զբազում յիշատակս, եւ 'ի նուիրակական մուտ եկեալ գումարաց զտասն հազար կումպանու ռուփիս դնէ յաւանդի 'ի կառավարութեան Գալկաթու նազարէթայ սուրբ եկեղեցւոյ, որոյ տարեկան տոկոսն է հիմնաւոր մուտք վանսին Ամենափրկչի: Ի 13 յուլիսի 1824 հասանէ 'ի Ջուղայ դարձ արարեալ 'ի Հնդկաստանէ, եւ մեծարի սակս իւրոյ գիտնականութեան եւ արժանաւորութեանն: Սիրէր նա բնակիլ 'ի տան իւրում, ուստի գժտութիւն անպակաս լինէր յաղագս այսր ընդ մէջ նորա եւ Առաջնորդին: Ի ժամանակս առաջնորդութեանն Խաչատրոյ երկրորդի, սակս 'ի տան իւրում անարգել

բնակելոյ լքանէ զվանքն Ամենափրկչի, և դիմէ 'ի Դոմինիկեան վանս Լատինացոց, խոնարհեցուցանելով զպարանոց իւր ընդ լծով պապականութեան, յորում կեցեալ զամս եօթն մեռաւ և թաղեցաւ 'ի հանգստարանին Ջուղայու։

## ԺԴ.

## ՅՈՎՀԱՆՆԷՍ Դ

Տէր Յովհաննէս եպիսկոպոս միաբան սրբոյ Էջմիածնի այր կորովամիտ և ժողովրդասէր. 'ի 12 Նոյեմբերի 1832 ժամանէ 'ի Ջուղայ։ Նախ քան զհասանելն նորա յաթոռ իւր յՍպահան և 'ի Ջուղայ անկանի սղութիւն հացի և սով, սա մարդասիրելով կարօտաւորաց Աղքի իւրում յետ ժամանելոյն 'ի Ջուղայ գնէ զցորեան և զալիւր և առնելով հաց բաշխէ առ ժամանակ ինչ կարօտաւորաց ազգին, որով բազումք յազգային աղքատաց պատսպարեալ ապրեցան 'ի սովամահ լինելոյ։ Յաւուրս սորա 'ի 1834 ամի Ֆաթալիշահ արքայ պարսից մեռանի յՍպահան, սա իւրով քաջասրտութեամբ ապահովութեամբ պահէ զՋուղայ յաւարառութենէ անտէրունչ ժամանակին։ Կարգադրէ զհարկատուութիւնն Ջուղայու, ոչ ևս թոյլ տալով կեղեքող յափշտակողաց ծանրանալ 'ի վերայ ժողովրդեանն, ուստի թեթևանայ յոյժ հարկն Ջուղայու։ Կեցեալ սորա ժողովրդասէր կառավարութեամբ՝ կարճի 'ի կենաց 'ի 1836 ամի, և մարմին նորա ըստ կտակելոյ նորին ամփոփի 'ի հանգստարանին վարդապետաց որ կայ 'ի հասարակաց հանգստարանին, զյետագայ գամբանագիրն ընդունելով։

Ո՛վ որք ցորեան այս տեսանէք
ցորեան մարմին վեհափառի
արք եպիսկոպոս Յովհաննիսի,
Բագրեւանդցի ազգօք ուենի,
վերատեսուչ ազգ արմենի,
բնակչաց Շօշ ծիւղ ընծայի
ամաց չորից սոցունց փայլի,
բարի անուամբ և արդեամբք լի
փայլեալ սրբեալ խաղաղալի,
յարդ յօրինեալ գեղափայլի,
վաթսուն ամաց յաստէն փոխի
Նոյեմբերի 7 օրն շաբաթի 1836:

## ԺԵ.

## ԽԱՉԱՏՈՒՐ. Բ

Տէր Խաչատուր եպիսկոպոս Վաղարշապատցի յամի 1838 առաջնորդական կոնդակաւ հասանէ 'ի Ջուղայ: Յաւուրս սորա 'ի 1841 ամի Մոնսիօ Բօռէ Գաղղիացի պապական հաւատով, գայ 'ի Ջուղայ և հիմնէ դպրոց. ուրանօր ժողովեցան մանկունք Հայոց: Յարեաւ խռովութիւն ընդ մէջ լուսաւորչեան Հայոց և պապականաց, և սա ոչ կարելով խոհեմութեամբ վարել, զի գոլով դիւրաւան 'ի բարկանալ՝ առանց առաջատես կշռադատութեան առնէր զոր առնէրն, ուստի հրամանաւ Սինօդին սրբոյ Էջմիածնի, յամի 1842 վերադարձաւ 'ի սուրբ Էջմիածին, ոչինչ օգուտ ընծայելով վանին: Ի սորա աւուրս միաբանք սրբոյ վանիս էին Յակոբ վարդա-

պետ և յաջորդ (որ էմուտ ընդ լծով պապականութեան 'ի 1841 ամին) Աստուածատուր՝ Գէորգ և Օհան վարդապետք։ Յամի 1840, Անդրէաս վարդապետ Սարգսեան 'ի սմանէ ձեռնադրի աբեղայ։

## ԺԲ.

## ՅՈՎՀԱՆՆԷՍ · Գ

Տէր Յովհաննէս եպիսկոպոս Սուրենեան ըրեմեցի Ռուսաց նշանակիր և ասպետ, գիտնական և բանագէտ, 14 օգոստոսի 1841 ամի կոնդակաւ Յովհաննէս կաթուղիկոսի հաստատի Առաջնորդ, և 'ի 1842 ամի հասանէ 'ի Ջուղայ։ Մեծամեծ յուսատուութեամբ խոստանայ զազգասօգուտ բարեկարգութիւնս հաստատել, այլ կամ ժամանակին անաջող կամ պակասիլն կենաց նորա թողին զայն ամենայն խոստմունս նորա անկատար։ Յամի 1843 հիմնեաց զդպրոց հոգևորական, որ սակս պակասութեան դրամոյ ոչ կարելով պահել զշարունակութիւնն իւր՝ խոնարհեցաւ։ Սա ունէր զբարեկամական հաղորդակցութիւն սիրոյ ընդ գերազանցեալ կոմս Մէդէմ դեսպաննին Ռուսաց որ 'ի Թէհրան, և միջնորդութեամբ նորին արժանացաւ կայսերական պարգևի 'ի 1846 ամի, որ էր պնակէ փրկչական շուրջանակի ականակուռ։ Սա շինեաց զնոր վանքն զտուննն կոչեցեալ Միքայէլեանց կամ քեալանթար Դուկանց՝ և անդ եբաց զդպրոցն հոգևորական, շինեաց և զայգին կոչեցեալ վախմի։ 'ի 1844 ամի 'ի Թէհրան գնացեալ՝ ստացաւ 'ի Թագաւորէն Մահմադշահէ զպարգևագիր ստանալոյ զցորեան հարկի գեղջն Սանգիբարանայ՝ ցամս երիս։

րին Սրբազնակատար օծութիւնն. 'Ի բաւարարութիւն սրտի Ջուղայեցւոց գրեաց առ նոսա յամի 1813 'ի 25 յունուարի օրհնութեան կոնդակաւ, " այլ սակայն հանգուցեալ Յարու-
" թիւն և Գէորգ Եպիսկոպոսքն ձեր որք 'ի կենդանութեան
" իւրեանց թուղթ են տուեալ աստ վասն տէրունի առնելոյ
" զվիճակս սրբոյ Աթոռոյս, զայն թուղթ խնդրեալ էիք և
" այժմ յետս առ ձեզ առաքել, բայց որպէս նախ քան զզայն
" մեր 'ի սուրբ Աթոռս չեն գտեալ զնոյնն՝ թէ հոգելոյս
" Դանիէլ Սրբազանն և թէ սուրբ ժողովն, նոյնպէս և մեք
" 'ի ներկայս ոչ կարացաք գտանել զի առաքէաք, բայց ա-
" հա այսու գրով յանմի լերուք միամիտ առ այն, զի եթէ
" գտանիցի յապայն՝ անընդունակ լիցի այն յաւիտենից ժա-
" մանակաց" :

Տէր Յարութիւն Եպիսկոպոս կարգի առաջնորդ յամի 1801, և Տէր Գէորգ Եպիսկոպոս լինի յաջորդ նորա: Բարւոք հովուութեամբ կառավարեն զհօտն իւրեանց, ընդ միմեանս սիրով և միաբանութեամբ կալով: Ի սոցին ժամանակս վիշտք և նեղութիւնք պակասին, ուստի քան զնախորդս իւրեանց՝ սոքա անդորրութեամբ անցուցանեն զկեանս իւրեանց: Ըստ ձեռնահասութեան իւրեանց նորոգեն զանշքութիւն վանացն: Ի սոցին ժամանակս պարտք վանքին հասեալ էր ցչորս հազար թուման (2): Ուստի յամի 1803 զԿիրակոս վարդապետ առաքեն նուիրակ 'ի Հնդկաստան, և զՄկրտիչ վարդապետ առաքեն նուիրակ 'ի Ռուսաստան. և նոցին նուիրակական արդեամբք ազատեն զվանքն 'ի ծանրութենէ պարտուց: Կեանք Գէորգ Եպիսկոպոսի կարճի 'ի 14 հոկտեմբերի 1808 ամի, և ամփոփի 'ի զանգատան վանքին: Իսկ Յարութիւն Առաջնորդ վախճանի 'ի 26 դեկտեմբերի 1810, և ամփոփի 'ի հիւսիսային դաւթի, 'ի շարս հանգուցեալ Առաջնորդաց:

Տապանագիր նորին է այս :

Հրաման է ամենակալին՝ ամենայն մարմին հող լինել,
'Ի տապանի աստ ամփոփի՝ դի առաջնորդ Յարութիւնի

արք եպիսկոպոսաց բարունի՝ որ էր վարուքն յոյժ գովելի, յիսուն եւ ինն ամաց վախճանի՝ որք հանդիպիք տուք ողորմի ։ Թուին 1810, դեկտեմբեր 26 ին ։

---

(1)․ Կոնդակ Բեհմառդառնեան նոյն, եւ յետամնէր յերկրորդարանս ։

(2)․ Նոտերագրական կոնդակ նոյն ։

## ԺԳ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ

Տէր Յովհաննէս եպիսկոպոս Էջմիածնեցի, յամի 1812 նուիրակութեան պաշտօնիւ գայ 'ի Ջուղայ, և քաղցրութեամբ վարեալ ընդ ժողովրդեանն սիրելի լինի նոցա, ուստի հասարակութիւնն Ջուղայու յ 2 Սեպտեմբերի 1812 խնդրագիր մատուցանեն նմա յանձն առնուլ մնալ Առաջնորդ Ամենափրկչի վանաց, և գրեն միաբանութեամբ առ Տէր Եփրեմ հոգելոյս կաթուղիկոսն զխնդիր սակս հաստատելոյ զառաջնորդութիւնն սորա յաղագս Ամենափրկիչ վանին (1)․ յայտնեն և պատուելի համազգեացն որք 'ի Հնդկաստան զայնմանէ առաջնորդութենէ իւրեանց, և նոքա միաբան լինին այնմիկ խորհրդոյ, վասն որոյ Սրբազնակատար Տէր Եփրեմ կաթուղիկոսն յ 8 Մարտի 1813 ամի առաքէ զկոնդակ առաջնորդութեանն սորա ։ Ի սորա աւուրս ծագեցաւ խռովութիւնն ապօկէգործաց, և եղև սմա կոչեցեալ Սադրի (2)․ ուստի,

վարեաց նա զառաջնորդութիւնն իւր վշտօք և նեղութեամբ, և վախճանեցաւ 'ի 28 Յուլիսի 1817 ամի, և մարմին նորա ամփոփեցաւ 'ի Ջանգակատան վանին ։

Ի յայսմ շիրմիս ներ պարագրի
մարմին ուրումն վեհագունի
որ Յովհաննէս վերաձայնի
Եպիսկոպոս գեր պանծալի ։
Իսկ միաբան Էջմիածնի ,
և բուն զաւակ այնր գահի ,
գտեալ զգործ՝ նուիրակի
յԷջմիածնէ՝ այսր դիմի ,
յետոյ տեսուչ՝ վանացս ընտրի ,
և առաջնորդ՝ 'ի սմա կարգի ։
Վեց ամ կացեալ՝ յայսմ հարկի
փայլեաց գործով՝ իբր զարփի ,
սոյն ծաղկեցեալ՝ ալեօքն 'ի լի ,
'ի ծերութեան իւր հասակի
բարի մահուամբ առ Տէր կանխի ,
առնու զձիրն յաղթանակի ,
'ի յամի Տեառն՝ կենարարի
հազար և ութն հարիւրեկի ,
այլ եօթն և տասն ընդ այնր զուգի ,
'ի 28 Յուլիսի ։

Ի սորա առաջնորդութեան ժամանակի, միաբանք սորոյ վանիս եղեալ են Կարապետ՝ Յակոբ՝ Աբրահամ մեծ Օհան՝ Աստուածատուր՝ Ղազար և Գէորգ վարդապետք Ջուղայեցիք , փոքր Օհան՝ և Ղուկաս վարդապետք Բուրվարցիք , Թէոդորոս և Յարութիւն աբեղայք, Պարոնայք Գալստան Բարսեղեան և Մէթ Մկրտչեան կառավարիչք վանիս ։

---

(1). Խնդրագրութիւն Ջուղայեցւոց գրեալ առ նա , որ պահի

'ի վանքն ։

(2)․ Խաչքարագրութեան նորա առ Հնդկահայս յաղագս այնորիկ նեղութեանցն ։

# ԺԸ․

## ՆԱՐԱՊԵՏ

Տէր Նարապետ Եպիսկոպոս Ջուղայեցի, այր հեզահոգի և բարեսիրտ, յամի 1817 յամսեանն Սեպտեմբերի մահտարական խնդրանօք Ջուղայեցւոց գնայ 'ի սուրբ Էջմիածին և անդ յ7 Յունվարի 1818 ամի ձեռնադրի եպիսկոպոս 'ի Տէր Եփրեմ Որբազան կաթուղիկոսէ, և 'ի նոյն ամի յ9 մարտի ելեալ յէջմիածնէ առաջնորդական կոնդակաւ վերադառնայ 'ի Ջուղայ և ժամանէ 'ի վանքն Ամենափրկչի 'ի 14 մայիսի (1)։ Ըստ բարեսիրտ քաղցրութեանն իւրոյ կառավարէ զժողովուրդն 'ի քանի ամս։ Յաւուրս նորա հաջի Հաչէմխան բախտիարի լոռ՝ վարուք ցոփ և արբշիռ բռնաւոր հանդիսանայ յԱսպահան քաղաքի, յորմէ քաղաքն ողջոյն և քաղաքապետն ահաբեկին, նա սովորութիւն առնէ գալ 'ի Ջուղայ ստէպ ստէպ և գնալ 'ի վանքն Ամենափրկչի, ուրանօր զգինարբութեան խնջոյս բռնաւորաբար կազմէ, և առաջնորդն վասն ահի և երկիւղի պարտաւորի գտանիլ առ նմա վասն շահելոյ զնա, յայնմանէ ընթացք բարեկարգ կառավարութեանն նուազիլ սկսանի. ուստի պարտաւորի հրաժարիլ յառաջնորդութենէ, և յամսեանն ապրիլի յամի 1831 գնայ յէջմիածին, ուրանօր պատուով պահեալ լինի 'ի միաբանից. այլ 'ի սէր Հայրենեաց վերադառնայ կրկին 'ի Ջուղայ 'ի 1842, և բնակի

'ի վանին իբրեւ՝ միաբան, պատուեալ յամենեցունց, Կենցաղավարի չնաշխարհիկ վարուք. և վախճանի յ2 յունվարի 1853 ամի, և հանդիսապէս ամփոփի յարեւմտեան դրան սրբոյ տաճարի վանին:

Տապանագիրն այս է.

Այս հանգչի Սրբազան Կարապետ
արք Եպիսկոպոսն, որ է լեալ առաջնորդ
վանիս: Հանգեաւ յ2 յունվարի 1853:

Յետ գնալոյ Կարապետ առաջնորդի 'ի սուրբ Էջմիածին, կարգի վերակացու վանին Յակոբոս գիտնական վարդապետ յաջորդ նորա: Ձեռնադրի սա 'ի Փիլիպպոս եպիսկոպոսէ Նուիրակէ սրբոյ Էջմիածնի 'ի Բումբայի յ3 յուլիսի 1813, ըստ խնդրոյ ժողովրդոցն Բումբայու առանց գիտութեան Ջուղայու վանաց առաջնորդին, յայն սակս Յովհաննէս Առաջնորդ գրէ զթուղթ մեղադրանաց առ Փիլիպպոս Եպիսկոպոսն ասելով "գուցէ նոքա (հայոց հասարակութիւնն Բումբա-"յու) չգիտէին զօրինաւոր պատկանն և զտեղի լինելու-"թեան, այլ մի թէ և դու չգիտէիր և ո գիտեմք որ տե-"ղեակ ես և հասու ամենից պայմանադրութեանց թէ ա-"ռաջնոյն և թէ նորոց որ վասն այլոց վիճակին, այլ զի "անփոյթ արարեր՝ արդարև զարմացաք, և յոյժ հեռի է "'ի խոհեմութենէ քումէ,,: Կարգի նա նուիրակ Հնդկաստանի և արդիւնաւորութեամբ կատարէ զայն գործ, առաքէ սակս վանին զբազում յիշատակս, և 'ի նուիրակական մուտ եկեալ գումարաց զտասն հազար կումպանու ռուփիս դնէ յաւանդի 'ի կառավարութեան Կալկաթու նազարէթայ սուրբ եկեղեցւոյ, որոյ տարեկան տոկոսն է հիմնաւոր մուտք վանին Ամենափրկչի: Ի 13 յուլիսի 1824 հասանէ 'ի Ջուղայ դարձ արարեալ 'ի Հնդկաստանէ, և մեծարի սակս իւրոյ գիտնականութեան և արժանաւորութեանն: Սիրէր նա բնակիլ 'ի տան իւրում, ուստի գժտութիւն անպակաս լինէր յաղագս այսր ընդ մէջ նորա և Առաջնորդին: Ի ժամանակս առաջնորդութեանն Խաչատրոյ Եպիսկոպոսի, սակս 'ի տան իւրում անարգել

բնակելոյ լծանէ զվանքն Ամենափրկչի, և գիմէ 'ի Դոմինիկեան վանս Լատինահայոց, խոնարհեցուցանելով զպարանոց իւր ընդ լծով պապականութեան, յորում կեցեալ զամս եօթն մեռաւ և թաղեցաւ 'ի հանգստարանին Ջուղայու:

## ԺԶ.

### ՅՈՎՀԱՆՆԷՍ Բ

Տէր Յովհաննէս եպիսկոպոս միաբան սրբոյ Էջմիածնի այր կորովամիտ և ժողովրդասէր. 'ի 12 Նոյեմբերի 1832 ժամանէ 'ի Ջուղայ: Նախ քան զհասանելն նորա յաթոռ իւր յԱսպահան և 'ի Ջուղայ անկանի սղութիւն հացի և սով, սա մարդասիրելով կարօտաւորաց Աղքէ իւրում յետ ժամանելոյն 'ի Ջուղայ կնէ զցորեան և զալիւր և առնելով հաց բաշխէ առ ժամանակ ինչ կարօտաւորաց ազգին, որով բազումք յազգային աղքատաց պատսպարեալ ապրեցան 'ի սովամահ լինելոյ: Յաւուրս սորա 'ի 1834 ամի Ֆաթալիշահ արքայ պարսից մեռանի յԱսպահան, սա իւրով քաջասրտութեամբ ապահովութեամբ պահէ զՋուղայ յաւարառութենէ անտերունչ ժամանակին: Կարգադրէ զհարկատուութիւնն Ջուղայու, ոչ ևս թոյլ տալով կեղեքող յափշտակողաց ծանրանալ 'ի վերայ ժողովրդեանն, ուստի թեթեւանայ յոյժ հարկն Ջուղայու: Կեցեալ սորա ժողովրդասէր կառավարութեամբ՝ կարճի 'ի կենաց 'ի 1836 ամի, և մարմին նորա ըստ կտակելոյ նորին ամփոփի 'ի հանգստարանին վարդապետաց որ կայ 'ի հասարակաց հանգստարանին, զյետագայ գամբանագիրն ընդունելով:

Ոսկերք ցօրեան այս տիրանի
ցօրեան մարմին վեհափառի
արք եպիսկոպոս Յովհաննիսի,
Բագրեւանդցի ազգօք ուխտի,
վերատեսուչ ազգ արմենի,
բնակչաց Շօշ Ճիւղ ընծայի
ամաց չորից սոցունց փայլի,
բարի անուամբ և արդեամբ լի
փայլեալ սրբեալ խաղաղալի,
յարդ յօրինեալ գեղափայլի,
վաթսուն ամաց յաստէն փոխի
Նոյեմբերի 7 օրն շաբաթի 1836։

## ԺԷ.

## ԽԱՉԱՏՈՒՐ. Բ

Տէր Խաչատուր եպիսկոպոս Վաղարշապատցի յամի 1838 առաջնորդական կոնդակաւ հաստատեալ 'ի Ջուղայ։ Յաւուրս սորա 'ի 1841 ամի Մօնսիօ Բօռէ Գաղղիացի պապական հաւատով, գայ 'ի Ջուղայ և հիմնէ դպրոց, ուրանօր ժողովեցան մանկունք Հայոց։ Զարեաւ խռովութիւն ընդ մէջ լուսաւորչեան Հայոց և պապականաց, և սա ոչ կարելով խոհեմութեամբ վարել, զի գոլով դիւրաւան 'ի բարկանալ՝ առանց առաջատես կշռադատութեան առնէր զոր առնէրն, ուստի հրամանաւ Սինոդին սրբոյ Էջմիածնի, յամի 1842 վերադարձաւ 'ի սուրբ Էջմիածին, ոչինչ օգուտ ընծայելով վանին։ Ի սորա աւուրս միաբանք սրբոյ վանիցն էին Յակոբ վարդա-

պետ և յաջորդ (որ էմուտ ընդ լծով պապականութեան
'ի 1841 ամին) Աստուածատուր՝ Գէորգ և Օհան վարդա-
պետք : Յամի 1840, Անդրէաս վարդապետ Սարգսեան 'ի
սմանէ ձեռնադրի աբեղայ :

## ԺԲ.

### ՅՈՎՀԱՆՆԷՍ Գ.

Տէր Յովհաննէս եպիսկոպոս Սուրենեան՝ ղրիմեցի Ռուսաց
նշանակիր և ասպետ, գիտնական և բանագէտ, 14 օգոստոսի
1841 ամի կոնդակաւ Յովհաննէս կաթուղիկոսի հաստատի Ա-
ռաջնորդ, և 'ի 1842 ամի հասանէ 'ի Ջուղայ : Մեծամեծ
յուսատուութեամբ խոստանայ զազգաօգուտ բարեկարգու-
թիւնս հաստատել, այլ կամ ժամանակին անաջող կամ պա-
կասիլն կենաց նորա թողին զայն ամենայն խոստմունս նորա
անկատար : Յամի 1843 հիմնեաց զդպրոց հոգևորական, որ
սակս պակասութեան դրամոյ ոչ կարելով պահել զշարու-
նակութիւնն իւր՝ խոնարհեցաւ : Նա ունէր զբարեկամական
հաղորդակցութիւն սիրոյ ընդ գերազանցեալ կոմս Մէդէմ
դեսպաննին Ռուսաց որ 'ի Թէհրան, և միջնորդութեամբ նո-
րին արժանացաւ կայսերական պարգևի 'ի 1846 ամի, որ էր
պնակէ փրկչական շուրջանակի ականակուռ : Նա ընկալաւ զվան
վանին զտունն կոչեցեալ Մինչօնեանց կամ քալանթար Ղու-
կասէնց՝ և անդ եբաց զդպրոցն հոգևորական, ընկալ և զայ-
գին կոչեցեալ վախմի : 'ի 1844 ամի 'ի Թէհրան գնացեալ՝
տուաւ 'ի թագաւորէն Մահմադշահէ զպարգևագիր առա-
նալոյ զցորեան հարկի գեղջն Սանգիբարանայ՝ ցամս երիս :

Ի վերջին ժամանակս կենաց իւրոց սակս թուլութեան ընդ երկար ժամանակ մնաց յանկողնի, և վախճանեցաւ 'ի 13 դեկտեմբերի 1848 ամի, և ամփոփեցաւ 'ի Հիւսիսային դաւթի սրբոյ վանիցն 'ի շարս վախճանելոց Առաջնորդացն ։ Ի սմանէ ձեռնադրեցաւ Գրիգոր տիրացուն Մկրտչեան Երևանցի, և ընկալաւ 'ի վարդապետութեանն զԳէորգ անուն ։

Այս է տապանագիր նորին ։

Տապան նորուն բարձր Սրբազնութ Տեառն Յովհաննու ասպետափառ արք եպիսկոպոսի Սուրբէնեանց Ղրիմեցւոյ և գերապատիւ և բարեջան Առաջնորդ սրբոյ վանուցն Ամենափրկչի, որ և զկնի վեցամեայ առաջնորդութեանն իւրում հանգեաւ 'ի Տէր ։

'ի 13 դեկտեմբեր թուին 1848 ամի ։

Յետ վախճանելոյ Նորին՝ կառավարութիւն վանիցն մնաց ընդ հոգաբարձութեամբ Աստուածատուր վարդապետի, և նորա 'ի 1849 ամի գնացեալ 'ի Թէհրան սակս պարգևագրոյ վանացս, վախճանեցաւ անդ և թաղեցաւ 'ի մէջ եկեղեցւոյ թաղին Ղահարբէօլաղիմայ ։ Զկնի վախճանելոյ Նորին՝ կառավարութիւն վանիցն մնաց 'ի վերայ Անդրէաս վարդապետի, որ ըստ չափու կարողութեան իւրոյ անձնադիր եղեալ կառավարեաց զվանքն և զժողովուրդն Ջուղայու մինչև ցհասանել Սրբազան Թադդէոս Առաջնորդի ։ Նշանաւոր հաւատարմութիւն նորա առ ժողովուրդն եղև 'ի 1851 ամի 'ի ժամանակի զօրապահանջութեան, զի որչափ կարևոր էր վաստակեցաւ յօգուտ ժողովրդեանն ։ Այլ կարճակեաց եղև զի յետ անցանելոյ վշտացն՝ մինչ շնորհիւ Սրբազան Թադդէոս Առաջնորդի սկիզբն արարեալ էր վարել զկեանս խաղաղականս, վախճանեցաւ 'ի 16 հոկտեմբերի 1855 ամի, և թաղեցաւ յարևմտեան դրան սրբոյ տաճարին ։

## Ժ Թ.

## ԹԱԴԴԷՈՍ

Յետ վախճանի Յովհաննու Սուքիասեան վանքն մնաց 'ի ներքոյ ծանրութեան հազար թումանաչափ պարտուց: Թէ ներքին և թէ արտաքին վիճակ վանացն չէր 'ի բարւոք դը-րութեան, յայն սակս հասարակութիւնն Ջուղայու յետ վախ-ճանի Սուքիասեան Յովհաննու յամի 1849 խնդրամատոյց եղեն 'ի սուրբ Էջմիածին առ ժամանակ մի ոչ առաքել զոք առաջ-նորդ: Այլ ըստ որում դժուարին լինէր առանց Առաջնորդի պահել զկառավարութիւն վանիցն և ժողովրդեան, վասն որոյ ժողովուրդք Ջուղայու յամի 1850 խնդրեցին միաբանգամ Առաջնորդ: Ի Տէր հանգուցեալ վեհափառ Ներսէս տեառնը կաթուղիկոսն զբազմափորձ. հաւատարիմն իւր զՏէր Թադ-դէոս վարդապետն Բէկնազարեան կոչելով յաստիճան Եպիս-կոպոսութեան, 'ի 1851 ամի նշանակեաց վիճակաւոր Ջուղա-յու, որոյ օրհնանաւէր կոնդակաւն 'ի 3 յունիսի 1851 ամի ժամանեցաւ նա 'ի վանքն Ամենափրկչի: Բազում եղեն օգտա-կար արդիւնք խոհական կառավարութեան սորա թէ վասն ժողովրդեան թէ վասն վանիցն՝ և թէ սակս եկեղեցեաց: Ուս-տի հասարակութիւն Ջուղայու 'ի ցոյց երախտագիտութեան գրեցին զնամակ բաւարարութեան իւրեանց զնմանէ 'ի 30 Սեպտեմբերի 1857 ամի առ Սրբազան Սինհոդոսն սրբոյ Էջ-միածնի, ուրանոր հաւաստեօրէն արարին յիշատակութիւն զգործոց խոհական կառավարութեան նորին զոր 'ի կարգի պատմութեանս 'ի դէպ համարիմ նշանակել:

Լուսաւորչական Հայոց Սրբազան Սիւնհոդոսին սրբոյ Էջմի-
ածնի ։

Ի հոգեւորականաց և ՚ի ժողովրդականաց Հայոց բնա-
կելոց ՚ի Ջուղայ ։

Երախտագիտական յայտարարութիւն ։

Եթէ երախտագիտութիւնն է ճանաչել զերախտիս բա-
րերարաց և զվաստակս բարեջան վաստակաւորաց՝ հանդերձ
գոհացողութեամբ, ուրեմն հասարակութեան մեր պարտա-
ւորութիւն է շնորհակալու բերանով և խորին երախտագէ-
տական զգացմամբ խոստովանել զբազմադիմի բարեշնորհու-
թիւնս բարձր Սրբազան Տէր Թադդէոս Արք Եպիսկոպոս ա-
մենապատիւ Առաջնորդի մերում, որոյ եօթնամեայ խոհական
առաջնորդութեամբ և հովուական վերակացութեամբ ոչ սա-
կաւ բաղդաւոր հանդիսացաւ Ջուղայ, ընդ որում և ժողո-
վուրդք Թեմին Ամենափրկչի վանաց հասարակաբար ։

Երկիցս ( 1 ) յայտնեալ եմք ջերմ երախտագիտու-
թեամբ զմեր ամենեցուն որոց բաւականութիւն զկառավա-
րութենէ Նորին Բարձր Սրբազնութեան առ հոգելոյս և
Սրբազնակատար Հայրապետն մեր Տէր Ներսէս, մատուցանելով
զանբաւ շնորհակալութիւնս մեր յաղագս արժանի կացու-
ցանելոյ զմեր նուաստ հասարակութիւն՝ այսպիսում ժողո-
վրդասէր Առաջնորդի. և արդ՝ հարկաւոր համարեցաք Սր-
բազան Սիւնհոդոսիդ յայտնի առնել զայն երախտագէտ ըզ-
գացմունս մեր՝ հանդերձ համառօտ նկարագրութեամբ բա-
րեպատուղ արգասեաց խոհական առաջնորդութեանն Նորին,
յընթացս եօթնամեայ ժամանակի լինելութեանն Նորա ՚ի
Ջուղայ ։

Յամի 1851 յ3 յունիսի ՚ի ժամանելն Նորին Սրբազնու-
թեան ՚ի Ջուղայ, եգիտ զհասարակութիւն տեղւոյս և զա-

ւառական Հայոց 'ի պատճառս զօրապահանջութեան 'ի վերջին ամիսներս վիճակի և յուսաբեկութեան, զվանքն Ամենափրկչի 'ի ներքոյ ծանրութեան հազար թուման պարտուց և աղքատ անշքութեան, զերապատիւ Հնդկահայեան հուպ ընդ հուպ օտարանալոյ 'ի վանաց (2) և զգաւառական ժողովուրդն խորթացեալ 'ի ժողովրդական պարտաւորութենէ իւրեանց :

Այլաւ Նորին Սրբազնութիւնն զընթացս Առաջնորդական կառավարութեանն իւրոյ ամենայն շրջահայեաց խոհեմութեամբ, որով վերոյիշեալ ճապաղեալ պարագայք պարզեցան և բարեկարգեցան ըստ յետադայ յայտարարութեանցն :

Ա— Ժողովրդական հասարակութեան դէր եղեալ բարիք :

1 . Թէ ըստ յաճախակի բարեջանութեանց՝ խնդրարկութեանց և միջնորդութեանն Նորին Սրբազնութեան, և թէ ըստ յատուկ խնամոցն Աստուծոյ և ըստ քաղցր ողորմածութեան վեհափառ Շահի, Հայ ժողովուրդք Պարսկաստանի ազատութիւն գտին 'ի զօրապահանջութենէ, որով և ազատութիւն ստացան 'ի կորստենէ և յեղծմանէ իւրեանց :

2 . Ըստ տնօրէնութեան Նորին Սրբազնութեան, յամի 1852 . և հրամանաւ Տէրութեան նոր 'ի նորոյ չափեցան կալուածք Ջուղայու, որով եղև բարձումն զրկանաց, և հանդիսանալն արդարութեան 'ի մասին հաւասարաբաշխ հարկատուութեան ամենեցուն :

3 . Ի նմին 1852 ամի, եբարձ զծախսարարութիւն տանուտարութեան խնջոյից, որով և օգուտ ընծայեաց հասարակութեանն Ջուղայու : Ըստ փոքրն հաշուելոյ տարեկանց 500 թուման :

4 . Զափաւորեաց զծախսարարութիւն վասն հարսանեաց և յուղարկաւորութեան :

5 . Ի քահանայս արծարծեաց զսէր կանոնապահութեան ըստ վաղնջուց եկեղեցական բարեկարգութեանց . Եկեղեցեաց՝

կարգելով զՀաւատարիմ երեսփոխանս, կառավարութեան նոցին ետ զնոր իմն կերպարան, որով օր ըստ օրէ բաց 'ի վայելչութեանցն, յառաջադիմութեան կողմն քայլէին ըստ դրամական կարողութեան մասին: Նւս և վայելչացոյց զժամերգութեանն երգոց երաժշտականութիւնս ըստ համբերաբար դաստառակութեանն իւրոյ:

6. Ջերեաց զհեղինակութիւն ոմանց այլազգի բռնաւորաց և օրկարեան հարստահարողաց, որք ներհակ բարեհաճութեան բարձրագոյն Տէրութեանն Պարսից, սակս անտերունչ լինելոյ Հայոց՝ ներէին զնոսա նախ քան զնորին Արքայինութեանն գալուստ յառաջնորդութիւն տեղւոյս:

7. Քնջեաց զազդեցութիւնս Պապական հոգևորականաց, որք ունէին զայն բաւական ներգործութեամբ 'ի վերայ ժողովրդեանն Հայոց՝ նախ քան զնորին մուտ գործելն 'ի Ջուղայ:

8. Յամի 1854 յամսեանն յունվարի 'ի ցրտագին եղանակի ձմերան գնաց 'ի Թէհրան 'ի բարձր Դուռն վեհափառ Շահի, և յութամսեայ ժամանակի՝ յօգուտ ազգի անձնընծայութեամբ աշխատելով 'ի դրունս Նախարարաց Տէրութեանն, ընկալաւ հրովարտակս, նախ 'ի հարկատուութենէն 'ի բաց բառնալ զպարգև վասն Ջուղայեցւոց՝ տարեկան 150 Թումանն յաղագս երից ամաց. երկրորդ՝ թեթևութիւն սակս հարկի գաւառականացն Հայոց Փէրիու նահանգի տարեկան ց300 Թումանն: Երրորդ՝ հաստատել ետ զնշանաւորն 'ի Նախարարաց Տէրութեան զբարձրապատիւ Միրզայ Ջէյնէլաբդին Մէլիք Քըթարն՝ վերակացու կամ Ոստիկան վասն Հայոց, որով ամենայն խնդիրք Հայ ժողովրդեանն Պարսկաստանի դիւրաւ վերջանային: Չորրորդ՝ ընկալաւ զբարձր հրաման վեհափառ Շահին յաղագս ըստ քաղաքական արտօնութեանց կամ հարկատուութեան մասին հաւասար լինելոյ ժողովրդեանն Հայոց Պարսկաստանի ընդ տեղական ժողովրդեանն Պարսից. և Հինգերորդ՝ ազատութիւն քրիստոնեայ ճանապարհորդաց 'ի տրոց առ բաժառուս ճանապարհաց, որպէս էր սովորութիւն վասն հայ ուղևորաց նախ քան զայն:

9. Ի ձեռն յաճախակի խնդրարկութեանց իւրոց. և բարե-

րար օժանդակութեամբ Պարոն Մարգարայ Սուքիասեան, և բարեպաշտութեամբ պերճացեալ Տիկին Մարիամու Յակոբ Յարութիւնեան (3) Ջուղայեցւոց եղելոց 'ի սահմանս Ջաւայի՝ հաստատեաց զերկու Դպրոցս 'ի Ջուղայ, յորս ուսանին արդ. մանկունք իբրև հարիւր և յիսուն, և ունելով զխնամաշատ վերատեսչութիւն 'ի վերայ նոցա՝ 'ի բարեկարգութեան քայլին ընթացք կառավարութեան նոցին :

10. Խնամածու եղև իրաւանց և դատից բազում որբոց և այրեաց, պաշտպանողական իրաւաօրութեամբ ոչ թոյլ տալով բռանց յափշտակել զիրաւունս նոցա :

11. Յամի 1856 ստացաւ զհրովարտակս 'ի վեհափառ Շահէն (4), զի ամենայն Հայ վաճառականք ընդհանրապէս և Պարոնայք Եղիազար Գ. Գասպարեան, և Ղազար Յոհանեան մանաւանդապէս տացեն զհարկս սակս վաճառաց իրեանց՝ հաւասար հարկատուութեանն Պարսից վաճառականաց :

12. Ի ներկայ 1857 ամի 'ի ժամանակս պատերազմի Անգղիացւոց ընդ Պարսից՝ երաշխաւոր լինելով սակս ժողովրդեան Հայոց Ջուղայու և Շիրազ քաղաքի ապահովացոյց զկառավարութիւնս այնոցիկ քաղաքաց, թէ հայք չեն անհաւադատ Տէրութեանն որում հպատակեալ ժողովուրդք են, որով և զերծ պահեաց զնոսա 'ի մեծամեծ և 'ի մօտալուտ փորձանաց :

Անհատական բարեգործութիւնք :

1. Ազատեցաւ վանքն 'ի ծանրութենէ պարտուց (5) :

2. Տնտեսական բարեկարգութիւն հանդերձ պատշաճաւորն վայելչութեամբ սկզբնաւորեցաւ և շարունակեցաւ 'ի վանին :

3. Գնեաց զերկու այգիս վասն վանիայն, որոց տարածութիւնն է 10 ջրիբ (իւրաքանչիւր ջրիբն է հազար գազ քա-

ռակուսի ) և մի կտոր կալուածք՝ երկու ջրիք. և յամի 1856 շինեաց զատացատուն մի ։

4. Նորոգեաց զշինութիւնս վանացն ըստ ներքին և ըստ արտաքին պարագայից շքեղացուցանելով զվանքն գլխովին (6) ։

5. Փոքր 'ի շատէ նորոգեաց և ճոխացոյց զեկեղեցական զարդս և զզգեստս վանից ստէպ ստէպ խնդրագրութեամբ, և նորացոյց զհնացեալ սփռոցսն սրբոյ տաճարին ։

6. Նորոգեաց զվանքական տունն Միջօնեանց կոչեցեալ, և մեծ ծախիւք հաստահիմն շինեաց զգետատար որմն նորաշէն վանքական այգւոյ, և արդէն իսկ 'ի Մէյդանն կոչեցեալ հրապարակին շինէ զխանութս և զկրպակս ։

7. Յետս ստացաւ զտունն մի վանացն՝ զոր 'ի վաղուց հետէ տիրեալ էին այլք, և զկալուածս եկեղեցւոյն Շահվէլեանց որ 'ի բազում ամաց հետէ էր յանիրաւի տիրապետութեան այլազգւոյ միում ։

8. Հիմնաւորեաց զապահարկութիւն վանքական կալուածոց ։

9. Զվանքն արար աղբիւր մխիթարութեան կարօտելոց և չքաւորաց Ազգի ։

10. Յամի 1856 առաքեաց զնուիրակ 'ի Հնդկաստան և 'ի Ջաւայ, որով բազում օգտակարութիւնք եղեն վասն վանին՝ Ջուղայու՝ աղքատացն և Դպրոցաց (7) ։

11. Արար քաջ վերատեսչութիւն յաղագս խնամատարութեան վանքական այգեաց ըստ մշակութեան մասին, որով օր ըստ օրէ այգիք ծաղկեալ յառաջանան ։

12. Մերոյ նշանակեալ բարեկարգութեամբք յաւել զշուք և զփառս վանին ։

Գաւառական ծաղկերգոյ վիճակ ։

1. Կարգեաց 'ի 1852 ամի վասն իւրաքանչիւր գաւառաց զգործակատար քահանայս՝ որք եղեն բարեկարգիչք եկեղեցեաց, քահանայից և ժողովրդոց ըստ քրիստոնէական պար-

տաւորութեանց ճանաչման մասին ։

2. Յորդորեաց զնոսա բանալ զԴպրոցս, որպէս բացեալ եղև Դպրոց մի յամի 1852 'ի Բաղմավէի 'ի գաւառին Քեա-զազայ, և Դպրոց մի 'ի Նամակերդ գեղջ 'ի գաւառին՝ Փէ-րիու ։

3. Ի 1851 ամի արար զխաղաղութիւն և զհաշտութիւն 'ի մէջ գիւղականաց Նամակերդայ՝ որք յերկուս ճեղքեալ գեղջկական-ոխակալութեամբ թշնամի էին ընդ միմեանս, որոց մարտ արիւնահեղ էր անպակաս, և 10 մարդիկ յերկուստե-քէ զոհ 'էին եղեալ միմեանց քինախնդրութեան, որոց դատ և բողոք ոչ պակասէր յԱտենից իշխանաց, և որպէս յերկուց քարանց աղօրեայ հոսէին կաշառք և տուգանք, և ինքեանք զմիմեանս կեղեքելով՝ մտադրեալ էին բնաջինջ բառնալ զյի-շատակս իրերաց ։ Յօրէ զհաշտութիւնն արկանելոյ մինչև ցարդ ոչ է եղեալ շշունջ ինչ տարաձայնութեան 'ի նոսա, այլ որպէս 'ի լէգէօնէն ազատեալ և զգաստացեալ մարդիկ կան և վարին ընդ միմեանս սիրով Աստուծոյ հանդերձ ընկերա-կան խաղաղասիրութեամբ ։

4. Ջնջեաց զհեղինակութիւն մասնաւոր իշխանաց և խա-նից գաւառաց՝ որք նախ քան զժամանակ առաջնորդութեան նորին Սրբազնութեան կեղեքէին զնոսա և նեղէին անդադար, ուստի անդորրացաւ գաւառական ժողովուրդն 'ի տարապար-տուց հատուցմանէ տուժից՝ տուգանաց և 'ի բռնադատեալ պարգևատուութենէ կամ 'ի հիւրընկալութենէ ։

5. Կարճեաց զշահախնդրութիւն գաւառապետաց, որք քան զկանոնաւորեալն տուրս՝ ակնածութիւն ունեցան 'ի-պաշտպանողական խնամոց՝ պահանջել կամ առնուլ զանկա-նոնաւոր պահանջ ինչս ։

6. Ի գաւառին Չարմահալայ, յամի 1856, ապստամբող ոմանք Բախտիարի կոչեցեալք սպանին զՔեալանթար Յարու-թիւն և զՔեալանթար Աբէլ զիշխանս Լիւասխան գեղջ, ո-րոց տարապարտուց արեանն վրէժխնդրութեամբ ստացաւ զհրաման 'ի ժողովրդախնամ Տէրութենէն՝ յաղագս կալա-նաւորելոյ զնոսա, որոյ աղագաւ զօրք առաքեցան և քակե-

ցան տունք նոցա, իսկ նոքա տակաւին հալածական [illegible] և անդ վարանին, 'ի զարմանս ամենայն այլազգի լողաց, թէ 'ի-վրէժ արեան երկուց հայոց և ս լինին այսքան հետապնդութիւն վրէժխնդրութեան ։

7. Յօգտակարագոյն կառավարութեանց աստի, զաւառական ժողովուրդք ազատութիւն ստացան 'ի նեղչաց և 'ի հալածչաց իւրեանց, ծանեան զվանքն Ամենափրկչի իբրև իւրեանց հոգևոր վիճակ գիտացին զժողովրդական պարտաւորութիւնս իւրեանց առ վանքն, որով և աղբիւրք վանքական ուրոց նոցա անճիլ սկսաւ ։

Հնդկահայք,

Պետրապատիւ հնդկահայք 'ի լրոյ ամենեցուն ծանուցեալ բարեկարգութեանց աստի զարթուցին զհայրենասիրական ըզգացմունս իւրեանց, դարձուցին առ Ջուղայ և առ վանքն Ամենափրկչի զմարդասիրական՝ մտադրութիւնս իւրեանց, բազումք շարժեալ 'ի յորդորական գրութեանց նորին Սրբազնութեան սրարին և առնեն զբարեգործութիւնս ազգաօգուտս, և հանեն 'ի մտաց զստարանալն 'ի վանաց Ամենափրկչի ։ Իսկ ամենաբարեպաշտ մերազնեայք բնակեալք 'ի Ջաւայ ներտ իմն շաղկապօք գրաւեցան 'ի սէր նորին Սրբազնութեան, առաւել ևս երախտագիտութեամբ ծանեան զնորա ազգաօգուտ երկոցն զարդ, և ինքեանք առաւել ևս ջերմացեալ յեռանդն ժողովրդական բարեպաշտութեան և ջերմեռանդութեան իւրեանց, բաղդաւոր համարելով զինքեանս զի վիճակեցան այսպիսի բարեխնամ Առաջնորդի ։

Արդ արժանի է կշռադատութեան թէ որչափ ծանրակշիռ բարիք ծագեցան 'ի խոհեմ կառավարութենէ Ամենապատիւ Արհւոյն Թադդէոսի, և որչափ բարւոքեցաւ վիճակ ժողովրդականաց թեմի նորա, ուստի մտադրութեան Սրբազան Սիւնհոդոսիդ արժանի է առնել զխորհրդածութիւն հարկաւոր՝ 'ի պսակել զվաստակս նորա Աստուածահաճոյ,

ի պարծանս մեր, և Թերևս յօգուտ ամենայն Հայազգի ժո-ղովրդականաց :

Ի Ջուղայ, յամի փրկչական 1857 }
յ30 Սեպտեմբերի : }

Սովին բազմարդիւն կառավարութեամբ շարունակէ զա-ռաջնորդական պաշտօն, ակնածելի հանդիսացեալ յամենայն այլազգի իշխանաւորաց, պատուեալ յամենայն ազգատոհմաց և նախանձելի լեալ յամենայն յաշակերտաց :

Յամի 1857, յամսեանն փետրվարի արժանացաւ ստանալ յօգոստափառ կայսերէն Ռուսաց զՎլադիմիրի երրորդ աստի-ճանի խաչ լանջակիր որով առաւել ևս ընդարձակեցաւ վարկ նորա և յարգ 'ի ժողովրդեան այլազգեաց : Տէր Աստուած պահեսցէ զնա ընդ երկայն աւուրս 'ի մխիթարութիւն հօտի իւրոյ և ժողովրդեանն : Ի սորա աւուրս Օհան Բուրվարցի և Անդրէաս վարդապետ Ջուղայեցի էին միաբանք սորոյ վա-նիս, և երկոքին ևս ընկալան զվախճան կենաց, առաջինն յ3 փետրվարի և երկրորդն 'ի 16 հոկտեմբերի 1855 ամի : Յամի 1856 ըստ խնդրոյ առաջնորդին եկն յԷջմիածնէ Յովհաննէս վարդապետ Տէր Յարութիւնեան Տաթևացի, այլ անընտել գոլով նորա վարդապետական խցակեցութեան՝ անհանդուր-ժելի եղև նմա մնալ 'ի վանսն Ամենափրկչի, վասնորոյ յետ միոյ ամի 'ի 1857 վերադարձաւ 'ի սուրբ Էջմիածին : Աւետիք և Աբրահամ Ջուղայեցիք գրաւոր խնդրագրութեամբ և խոստ-մամբ յօժարեցան մտանել 'ի վանսն Ամենափրկչի և լինել վանական, վասնորոյ յետ իբրև երկու ամաց փորձառութեան հաստատուն գտանելով զնոսա յուխտին իւրեանց, յամի 1857 շնորհեցաւ նոցա աստիճան Սարկաւագութեան և հանդերձ կրօնաւորութեան, որոց Տէր արժանի արասցէ լինել հաւա-տարիմ պաշտօնեայ Աստուծոյ 'ի տաճարին իւրում :

հին կեղւոցման 'ի հաստատչեցութեան նշանաւոր աստղաբաշխութեամբ. և Մարեամ օրինօք ամուսնանալով ընդ այր Յակոբայ Յարութիւնեան ատենից ունելոյ զծառայն : Թագմադարէն եղեն սոցա ազգային Եւրեպացւոցն գործք, զի ենէկեցեք Ջուղայու 'ի Եռաման դէպ վայելեցին մնոց շնորհ աստուածաբանական, և Եռաման չքաւորք և աղքատք Թիֆլիսեցան նոքօք թէ 'ի հեռաստ 'ի յետն խնդրագրութեանց և թէ անձամբ աղաստանելով 'ի գթութեան նոցա :

Նշանաւորքն 'ի ծծագործութեան նոցա, եղեն հաստատելն զվարժարան ազգային 'ի Թիֆլիս զոյան հայոց ասափի ծախելով ամսոյ պան վարժարանին, և զհարեւր հայոց ասափի նշանակելով յանուն նորա եկեղ դրամագլուխ վասն մշտահաստատ շարունակութեան. երկրորդ ծծագործութեան նոցա եղև յամի 1853 հաստատել զԴպրոց մի 'ի Ջուղայ, յանուն որոց որդւեցին զհասմար 'ի կրակին եարեանց' զի Դպրոցն շարունակեսցէ հաստատութեամբ և մշտնջենաւորապէս : Թագաւորն վախճանեցաւ 'ի 1857 ամի. իսկ Մարեամ կնոյ կենդանի գեղեցիկ օրինակ լինելով Եւրեպացւոյութեան, որ որդւոց 'ի Եարեպարեն եասար, այնպէս խորշի 'ի փառաց կերպ ճշմարիտ հաստատեալ աստուածային վարդապետութեանն, որոյ շնորհ Տէր Աստուած ընդ երկայն ասարս սրբոցէ :

(4). Օրինակ սոյն հրովարտակաց կայ 'ի դրակ վաճառականութեան :

(5). Ի գաւառաց պարտականութեանց վանին այդ Կարապետ Գըրիգորեան Սաղմէոսց զօրեցի 'ի 1851 ամի յամսեանն յուլիսի վճարեաց զ540 թուման, և աղաչեաց զվանական կալուածն 'ի գրաւադրութենէն յորսամ կայր, այլ ըստ որսամ ըստ խնդրոյ Արքայազն Թագաւորն Աստնորդին' նորին պայծառափայլութիւն կնեալ Դիձիոր Իշխան Դոլղորուկով Դեսպանն Ռուսաց Թշնորդելով առ Օգոստափառ կայսրն Ռուսաց' ընկալաւ 'ի նմանէ պարգև յանուն վանին Ակնարկելի զ800 ռուբլի Հոլանդիոյ. այդ Կարապետն Սաղմէոսց ոմանց 'ի գաւառաց անիւ զվճարեալն իւր 540 թուման, և ինացեալն ութն հարիւրն զոհ եղև այնմ գաւառաց : Իսկ զինացորդն վանական պարտուց վճարեաց նորին Արքայութեանն յանձնական գաւառաց իւրոյ, մինչև վանական արդիւնք վճարեցին նմա զպարտսն :

(6). ( Տես 'ի գլուխ Ա, յօդուած Ա ): Յաղագս այնպէս նորագութեանցն եղելոց 'ի ժամանակս աստընորդութեանն նորին. 'ի ճանապարհորդութեան զբան որէոյ դաճարին գրեցաւ այս արձանագրութիւն " Յամ

« փրկչական 1857 'ի ժամանակս առաջնորդութեանն Թադդէոս եպիս-
« կոպոսի նորոգեցաւ գաւիթս՝ և օրհնեցան պատկերք եկեղեցւոյն »:

(7). Երկու նշանաւոր օգտակար եղեն 'ի նուիրականութենէն Սրբակրօն Տէր Մարտիրոս Խաչակիր Աւագ Քահանայի Տէր Յովհաննէսեան, նախ՝ զի [illegible] և ջերմացոյց զսէր ճշմարիտ հայրենասիրացն Հայոց Ջուղայեցւոց որք 'ի Ջուղայ՝ առ Աշգն և առ Հայրենիս, և երկրորդ՝ զի նուիրականն որդեամբ Ջուղայի գնեցաւ մթերանոց է 'ի Բթաւեաց, որ յաղագս վանին էերէ որդւոց [illegible] հարկաց առաքէս Ջուղայ առ ամեն :

# ՅՕԴ. Դ

Կարգաւն և արդիւնաւորութիւնք Առաջնորդաց Ամենափրկչեան վանի և հասոյթք նոցա :

*ա. Առաջնորդք Ջուղայու 'ի սկզբանէ անտի մինչև ցարդ կարգեալ եղեն և առաքեցան 'ի սուրբ Էջմիածնէ կոնդակաւ վեհափառ կաթողիկոսին (1). վասնորոյ վանքն Ամենափրկչի ուղղակի կախումն ունի ըստ հոգևոր մասին 'ի սուրբ Էջմիածնէ : Առաջնորդն Ջուղայու ոչ միայն ըստ հոգևոր մասին Ճանաչի պետ և իշխան ժողովրդեան թեմի իւրոյ, այլ և ըստ երկրաւոր գործոց և քաղաքական իրողութեանց մասին յամենայն այլազգի իշխանաւորաց թէ 'ի հոգևորականաց և թէ 'ի նախարարաց Ճանաչի և յարգի իբրև ազգապետ և ծայրագոյն դատաւոր ժողովրդեան Հայոց Պարսկաստանի (2): Յետ հաստատելոյ վիճակաւոր Առաջնորդին Ջուղայու 'ի Թեհրան 'ի թագաւորանիստ քաղաք Պարսից՝ տուեալ լինի յայտարարութիւն Տէրութեան զգալստենէ նորա, և վեհափառ Տէրութիւնն տայ նմա զհրովարտակ հաստատելով զվիճա-*

յաւորութիւն նորա 'ի վերայ ժողովրդեանն Հայոց Պարսկաստանի, և շնորհէ նմա զայն ամենայն արտօնութիւնս և իշխանութիւնս զորս ունեցեալ են նախորդք նորա (3) ։ Ի հաստանել նորա նովին հրովարտակաւ 'ի վանքն Ամենափրկչի, քաղաքապետն Սպահանայ տայ զնոր հրամանադիր համաձայն իմաստից Թագաւորական հրովարտակին, որով հաստատի և հրատարակի իշխանութիւն Առաջնորդին 'ի վերայ ժողովրդեանն Հայոց Պարսկաստանի իբրև ծայրագոյն ազգապետի և դատաւորի թէ ըստ հոգևոր և թէ ըստ քաղաքական մասին ։

Բ. Յեօթն և տասներորդ և յութ և տասներորդ դարու կային երևելի քեալանթարք 'ի Ջուղայ, որք ըստ իշխանութեան իւրեանց կառավարէին զքաղաքական և զերկրաւոր գործս ժողովրդեանն. իսկ 'ի դէպս երևելիս կարօտէին օգնականութեան Առաջնորդի ։

Իսկ յինն և տասներորդ դարուն նուազեցաւ և գոգջիր անհետացաւ իշխանութիւնն քեալանթարաց. վասնորոյ ամ՟ գործք ժողովրդեան Հայոց թէ հոգևոր և թէ քաղաքական ծանրացան 'ի վերայ Առաջնորդաց ։ Ժողովուրդք 'ի գալ նեղութեանց ինչ և հարստահարութեանց դիմեն 'ի վանս և բողոք բարձեալ առ Առաջնորդն խնդրեն զօգնութիւն նորա ։ Վասնորոյ զօրհանապազ ոչ պակասին 'ի վանաց բողոքարկուք, և 'ի պատճառէ անտի անպակաս է գլխացաւութիւն Առաջնորդին ։ Երջանկութիւն և ապերջանկութիւն ժողովրդեանն Հայոց Պարսկաստանի կախի զառաջնորդէն, զի եթէ իցէ Առաջնորդն ժողովրդասէր և արիաջան պաշտպանօղ իրաւանց ժողովրդեանն, առանց թոյլ տալոյ զրկանաց և անիրաւութեանն տիրելոյ նոցա՝ անդորրանայ ժողովուրդն, որպէս անդորրացեալ կայ յայսմ ժամանակի շնորհիւ հզօր պաշտպանութեանցն ներկայ Սրբազան Առաջնորդի ։ Իսկ եթէ առաջնորդն անխնամ լիցի բողոքանաց և խնդրոց ժողովրդեան բռունք յափշտակեն զիրաւունս նոցա և զրկանք ծանրանան 'ի վերայ նոցա որով կորուսանեն զանդորրութիւն և զերջանկութիւն քաղաքական վիճակի իւրեանց ։ Նոյնպէս ամենայն դատ և դանգատանք ժողովրդոց զիրերաց մատուցեալ լինին

յատեան Առաջնորդին, և ծորին իրաւադատութեամբ վեր-ջաւորի առարկայն։ Եթէ ոմանք 'ի ժողովրդոց անլուր հրամանի և վճռոյ առաջնորդին լինելով՝ դիմեն յատեանս քաղաքական դենպետաց, դարձեալ լինի 'ի նոցանէ հարցումն առ Առաջնորդն յաղագս իրաւանց դատին, և գրեթէ ըստ կամաց Առաջնորդին վերջաւորի առարկայն։ Յերկու բողոքաւորաց անշուշտ միոյն լինելոց է իրաւացի և միւսն անիրաւօղ, ուստի Առաջնորդք յորոշելն զիրաւունս՝ ստանան զանբաւականութիւն միոյ կողման։

Ստանօրոյ 'ի ժողովրդեանն խօսելոյ զԱռաջնորդէն զաջու-ձախ համբաւս գլխաւորապէս 'ի պատճառէ աստի ունի զծագումն։

Ի նախկին ժամանակս եղեալ է 'ի վանին փայտ և գելարան, զի որք ոչ լուիցեն ունկամբ՝ լուիցեն թիկամբ, և կայր սօսի " մի Յուդայի ծառ" կոչեցեալ, առ որ կապելով զյանցաւորսն զանէին, այլ 'ի սոյն ժամանակի ոչ նոյն սօսի կայ և ոչ նոյն դատողութիւն, զի բռնութիւն կամ մարմնաւոր դատողութիւն զանից հեռացեալ է այժմ 'ի միջոյ վանաց։

Դ. Զամենայն ծախս նախկին Առաջնորդաց հոգայր վանքն (4). և ո՛ և իցէ հասոյթք մտանէին 'ի հաշիւ վանին. որոշեալ արդիւնք առաջնորդացն կոչի գաւազանապտուղ։

Իսկ ներկայ Առաջնորդ Սրբազան Թադդէոս արք եպիսկոպոսն կարգադրեաց զի անձնական ծախք իւր (բաց յաւելեացն) եղիցին 'ի քսակէ իւրմէ, և արդիւնքն որոշեալք ըստ կանոնաց վասն Առաջնորդաց՝ վճարեսցեն զայն ծախս։ Հասք որոշեալք յանուն Առաջնորդի են՝ պսակահաս կամ մահրանայ՝ դիազարդք ննջեցելոց՝ հոգեբաժին և առանձին տուրք կամ պարգևք բարեպաշտից։ Ի վախճանիլ Առաջնորդին ըստ նախկին սովորութեանն՝ ամենայն գոյք նորա և ստացուածք լինէին վանաց (5) և Առաջնորդն չունէր իշխանութիւն կտակելոյ ընտանեաց իւրոց զստացուածս իւր։ Իսկ արդ համաձայն կայսերական կարգադրութեանն լինի թոյլտուութիւն (եթէ 'ի կենդանութեանն իւրում հաստատեսցէ Առաջնորդն զկտակ կանոնաւոր) նշանակել 'ի նմա ըն-

մասնաւոր պարգեւս յանուն իւրոց ընտանեաց կամ հաւա-
տարմաց . իսկ մեծ մասն դարձեալ ունի հասանել վանին : Որ-
պէս վանքն տէր լինի ստացուածոց առաջնորդաց՝ նոյնպէս
և տէր լինի պարտականութեանց, նոցա և պարտք Առաջնոր-
դին՝ լինին պարտք վանաց, որոյ օրինակ բազում կան 'ի գործս
Առաջնորդաց :

---

( 1 ) . Ի կանոնականս հին և նոր Առաջնորդաց :

( 2 ) . Ի հրովարտակս հին և նոր Թագաւորաց Պարսից :

( 3 ) . Արժէ աստ դնել զհատուածս հրովարտակի Փա-
թալէշահ արքայի տուեալ յանուն Յովհաննու եպիսկոպոսի՝ ոչ անդէն հա-
մարեմ,

"  Տեղեկք Աստուծոյ ամենակարողէ են : Հրաման եղև արքայական զի
" մարգարէին 'ի սուրբն թագաւորութեան և անխափան թագ կացեալ
" 'ի ճակատ թագաւորականութեան սրբեալ և Քն որդի էմ Մէֆօրով-
" լէ ք Սուլթան Մահմատ Քրդւոյ հրամանատար քաղաքին Մզդահայ հաք-
" լանքն ՔՔ Բաղդատարաց և այլոց , ընտրհէ անուան արքայական եարէ-
", հասութեան Քնայոց և գետայոց , թէ յայսմ ժամանակի որդւոյ յայտ-
" նի եղև նախարարաց Տէրութեան Քրոյ, եարջրագահ ընտրեալն և
" լաւագոյնն 'ի Քնաց քրիստոնէից՝ Յովհաննէս վարդապետն Հայ-
" ազգի՝ որ է Քն վարդապետն վարդապետաց հայոց նորեալն յէջմիածին,
" առաքեալ է զեարջրաստեանն ընտրեալն 'ի կարգաւորաց Հայոց և
" զընտրեալն 'ի քրիստոնէից զՅովհաննէս վարդապետն հայազգի ( որ է
" 'ի հարազատից և 'ի գերանկանաց Հայոց ) յաղագս վերակարգելոյ ըզ-
" գործս վերաբերեալս հայոց և վանաց որ 'ի Ջուղայ , զի եկեալ հաս-
" տատեսցէ զնոսա փոփոխելով զերաշխութեամբ նոցին ըստ սահմանի առաջ-
" նոց և ըստ արժանաւորութեանց նախկին առաջնորդաց . յայս սակս հրովար-
" տակս այս Քն տուեալ եղև զի ընտրհաշատ որդիք Քր ըստ արժան-
" ւոյն զընդհ օգնականութեան և քաջութեան առ յեղեալ վարդապետն
" անձինք , և հրամայեսցին զի հայք Ջուղայու յաղագս գործոց եկե-
" եղեց , թէ առանց նմա է եղէ և թէ այլ , վարեսցին ըստ առաջնոյ կար-
" գին՝ համաձայն արժանաւորութեանցն զոր ունին առաջնորդն Ջու-
" ղայու . . . " :

Դ. Սեփօրօվնյն է տեղւոյն, և նշանակէ ասուեր Յերուսաղէմ:

ԴԴ. Թախտախարէս է անուն ազգէ միոյ կամ ժողովրդեան որք չունին ընտանեկան և ընդհանրական բնակութեան, այլ նոքա լինելով են ընթերս և ջորս, և նոքա ապրանօք կենաց են եղբայրութեան և համաձայնութեան: Համբունք՝ կոչէ ցեղ մը 'ի ժողովրդենէ անտի:

(4). (—):

(5). (—):

# ՅՕԴ. Ե

Վիճակ կամ Թեմ Ամենափրկչի Վանաց, և վիճք ծաւալեալք յայնագոյն այնորիկ:

ա. Ջուղայ՝ որպէս ցուցաք յիւրում տեղւոջ (1) բաժանէր 'ի Հին և 'ի Նոր, Հին Ջուղայ կոչէր ժողովուրդն եկեալ 'ի Ջուղայէ որ 'ի Հայաստան: Իսկ Նոր Ջուղայ կոչէր այն մասն ժողովրդեան՝ որք յայլ քաղաքաց Հայաստանի գաղթեալք շինեցին զբնակութիւն իւրեանց կից Ջուղայու 'ի ժամանակս երկրորդ Շահաբասայ: Վանքն Ամենափրկչի շինեցաւ 'ի Հին Ջուղայեցւոց, և Հին Ջուղայն Սպահանայ եղև սեփական թեմ և վիճակ նորա. և ըստ որում գաղթեալքն 'ի Հնդկաստան էին 'ի վաճառականաց, և վաճառականքն ևս էին Ջուղայեցիք, վասնորոյ Հնդկաստան ևս վիճակեցաւ Ամենափրկչի վանացն:

բ. Իսկ միւս մասն Ջուղայու ժողովրդեան որք Նոր Ջուղայ կոչէին, որք են Երևանցիք՝ Թաւրիզեցիք՝ Դաշտեցիք՝ Քօչերցիք և Ղարադէլցիք՝ 'ի սկզբան անդ համարեալ լինէին տէրունի ժողովուրդք և հնազանդէին սրբոյ Էջմիածնի: Յամի Տեառն 1658 'ի գալն Յակոբ կաթուղիկոսի Ջուղայեցւոյ 'ի Ջուղայ՝ զՅոհան եպիսկոպոս ամն կարգէ առաջնորդ սրբոյն

Սարգսի Եկեղեցւոյ , տալով նմա թեմ և վիճակ զԹաղամն Նուանայ՝ գաւառի՝ Թաւրիզեցւոց՝ Դաշտեցւոց՝ և գաւրապատարւոց , նաև զգիւղօրայսն Լենջանու՝ Ալենջանու՝ գանգիժանու՝ և Ջղախոռու (2) ։ Յայնմանէ անուն սուրբ Սարգսի Եկեղեցւոյ յորէ անուն կոչեցաւ Օհանայ վանք ։ Թէպէտ յիշեալ ժողովուրդքն որք յանձնեցան Օհան Եպիսկոպոսի՝ համարեալ լինէին տէրունի վիճակ , այլ կառավարեալ լինէին յԱռաջնորդաց Ամենափրկչի վանաց. նախ քան զգալն Յակոբ կաթուղիկոսի . ուստի յետ բաժանելոյ զնոսա Յակոբ կաթուղիկոսի յիշխանութենէ Ամենափրկչի վանաց՝ ծագեցաւ տարաձայնութիւն մեծ ընդ մէջ ժողովրդեանն և կարգաւորաց , զի ժողովուրդք ոմանք ոչ յօժարեցան բաժանիլ յիշխանութենէ Ամենափրկչի վանաց , և ոմանք յարեցան առ Յոհան Եպիսկոպոս , ուստի երկպառակեցան 'ի միմեանց ։

Առաջնորդք Ամենափրկչի վանաց բողոքեցին առ Թագաւորն Պարսից և ընկալան զհրաման՝ զի որպէս եղեալ էին հպատակեալք Ամենափրկչի վանացն ամենայն հայ ժողովուրդք Սպահանայ և գաւառաց նորին , նոյնպէս կացցեն ընդ հպատակութեամբ նորին առանց ինչ փոփոխութեան (3) ։ Յաճախեցաւ երկպառակութիւնն 'ի մէջ ժողովրդեան որոց համբաւք որ քստ, օրէ հասին 'ի լսելիս Յակոբ կաթուղիկոսի , և նա 'ի դարման այնր՝ յամի 1109 ( 1660 ) 'ի 4 Սեպտեմբերի գրեաց կոնդակ առ ժողովուրդսն որք էին ընդ հրամանաւ ենթարկեալ Օհանայ վանքի , թէ « ընդ օրհնութեանս ծանիրուք « հոգևոր և սիրելի որդիք մեր , զի աստ Արքայական Առաքեալն « թէ խորհիմք զբարիս առաջի Աստուծոյ և մարդկան ։ Արդ « մեր կամք և խորհուրդն ընդ այսմ բանի այն էր՝ թէ օգուտ « և շահ հասարակաց հոգևոր փրկութեան լինէր , 'ի տեղիս « տեղիս վանք և միաբանք բազմանայր , և խրատն և մխի- « թարութիւնն հոգևոր 'ի հեռաւոր ժողովրդենէն անպա- « կաս լինէր ։ Վասն որոյ և օրհնեցաք զձեզ 'ի վանիցն Ջու- « ղայու ։ Այլ այժմ զի տեսաք թէ օգուտն այնչափ ոչ երևե- « ցաւ 'ի բաժանմանէն , որպէս և կարծէաք , մանաւանդ « թէ երկպառակութիւն և թշնամութիւն սերմանեցաւ 'ի մէջ

« ուխտոյ եւ միաբանութեան, յաղագս այսորիկ եւ մեք ըստ ա-
« ռաջին կարգի սահմանեցաք զձեզ սեփհական թեմ եւ վի-
« ճակ սուրբ Ամենափրկչի վանիցն, եւ առաջնորդ ձեր՝ եղ-
« բայր մեր Դաւիթ վարդապետն հաստատեցաք զի լինիջիք
« մի հօտ եւ մի հովիւ »։

Յոհան եպիսկոպոս կոչեցեալն տնտեսի տեղայ՝ դժկամակէր ընդ տնօրէնութիւնն այն՝ զխռովութիւնս արկանէ 'ի մէջ ժողովրդեանն, եւ որսացեալ իւրեան զկողմնականս հաստատէ ըզմանսար վկայութեան ժողովրդոց եւ գնացեալ 'ի սուրբ էջմիածին, միւսանգամ հաստատի՝ կոնդակաւ Եղիազար կաթողիկոսի յառաջնորդութիւն Օհանայ վանիցն եւ ժողովրդոցն նորա։

Յետ հասանելոյ նորա 'ի Ջուղայ, դարձեալ յուզի երկպառակութիւնն 'ի մէջ ժողովրդեանն. վասնորոյ երկրորդաբար ընկեցիկ լինի նա յառաջնորդութենէ իւրմէ հրամանաւ Եղիազար կաթողիկոսի, եւ ժողովուրդքն յանձնին 'ի հնազանդութիւն Ամենափրկչի սուրբ վանաց։ Յամի 1689 յ7 ապրիլի, Եղիազար կաթողիկոս առ ամենայն ժողովուրդսն հնազանդեալսն թեմին սրբոյ Ամենափրկչի վանաց գրէ այսպէս.
« Հրամայէ Սրբազան Առաքեալն Քրիստոսի Պօղոս, եթէ գը-
« լուխ պատուիրանին սէր է 'ի սուրբ սրտէ եւ յանկեղծաւոր
« հաւատոյ, եւ թէ՝ ուր հեռ եւ նախանձ գոյ, անդ է անկար-
« գութիւն եւ ամենայն իրք չարք։ Եւ Տէրն ասէ, բաժա-
« նեալ տուն յանձն իւր՝ աւերի. եւ քաղաք յիւրաքանչիւր
« անձն բաժանեալ՝ կործանի. որպէս տեսաք այժմիս աչօք
« մերովք թէ զանձասար եւ թէ այլ վանորայք, մանաւանդ
« Աստուածաշէնն եւ Ագգիս լոյս եւ մխիթարութիւն սուրբ Յա-
« կոբն որ յերուսաղէմ, ոչ եթէ այլազգիք աւերեցին՝ այլ
« մերային ազինք, միմեանց ներհակ եւ հակառակ լինելով,
« եւ դրամ տալով՝ անտանելի պարտուց եւ անզերծանալի նե-
« ղութեանց մէջ արկին որ ոչ իմիք հնարիւք բուժումն լինի-
« ցաւոյն այնորիկ։ Ըստ այնց սարսափ եղեւ 'ի ձերում կողմանց
« եւ օրհնեալ երկրիդ, յորժամ բաժանումն երկուց եղեւ, թէ
« քանիս 'ի հաւատոց ելան՝ որք անօրինաց եւ սահմանաց քակ-

" տուեմն եղև, և որպիսի չարիք կայացաւ, և զինչ խռո-
" վութիւն արմատացաւ որպէս տեսիք բարիաչօք ձերովք.
" Եւ եթէ թողումք այս բորբոքումն՝ և զնախնեաց կար-
" գեալ շաւիղն՝ ոչ գոյ հնար բժշկութեան մինչև առ յա-
" պայն. Այլ արդ քննեցաք և յոլովից հնարից բուռն հա-
" րաք և խոստագոյն խուզուեմն արարաք հանդերձ միաբան
" և միախորհ որդւովք սրբոյ Աթոռոյս, Եպիսկոպոսօք՝
" վարդապետօք և իշխանօք և երթևեկող Աստուածասէր
" վաճառականօք 'ի խորհուրդս բազումս մտաք իբրև տասն
" ամօք սակս այսմ բանի՝ և ոչինչ ելս իրաց գտաք. Բայց
" միայն 'ի միածել և միապետութիւն առնել. Ահա եւ Նը-
" ուաստ ծառայ Տեառն Եղիազար կաթուղիկոս ըստ 'ի վե-
" րուստ տուեալ իշխանութեանն և բարձր հրամանաւ սրբոյ
" Աթոռոյս Էջմիածնի՝ վերստին կարգեցաք և հաստատեցաք
" այդ օրհնեալ քաղաքըդ և գաւառքդ Թէմ և վիճակ Ջու-
" ղայու սուրբ Ամենափրկչի վանիցն, և ոչ եթէ մնացածին
" բանիւ կամ այլ ինչ պատճառի արարաք, այլ այսքան Աստ-
" ուածաբան վարդապետօք և դօլվաթաւորօք կարգեցաք և
" սահմանեցաք որ այլ ոչ ոք հրաման չունի յերկիրն մտա-
" նելոյ առանց հրամանի Ամենափրկչի վանից Առաջնորդին՝ և
" ձեռնամուխ լինել. ոչ սևագլուխ՝ և ոչ այլ ոք. և որինչ
" սևագլուխք կան յայդմ կողմանքդ՝ գան միաբանք լինին
" սուրբ Ամենափրկչին և Նորին Առաջնորդին հլու և հնա-
" զանդ ".

Ոչ դադարեցաւ Յոհան եպիսկոպոս յետ հասանելոյ այնմիկ հրամանի, այլ գուն գործէր որսալ ինքեան զկողմնականս և սպասէր դիպող ժամանակի. Յետ վախճանելոյ Եղիազար կաթուղիկոսի, մինչ Նահապետ կաթուղիկոս նստաւ յաթոռ կաթողիկոսութեան, և Ջուղայեցիք ոչ յօժարէին ընդ կաթուղիկոսանալն նորա (4), յայն սակս ժամ պատեհ համարեալ Յոհան եպիսկոպոս գնաց 'ի սուրբ Էջմիածին, և երբեմն եղև առաջի Նահապետ կաթուղիկոսի, և հաւանեցուցեալ զնա ընկալաւ զկոնդակ և կարգեցաւ միւսանգամ Առաջնորդ Օհանայ վանիցն. Վերադարձաւ 'ի Ջուղայ կոնդակաւ.

պահապետի, որոյ այս է պատճէն.

« Ոչ Թողաք զհոգևոր որդիսդ մեր առանց հովուաց փ- « խանամ մնալ՝ ըստ կտակի հոգևոր հօրն մերոյ Տեառն-Եղի- « ազարու կաթուղիկոսի. Քանզի յորժամ եկն նա ՚ի սուրբ « Աթոռս, ամենայնիւ զարդարեաց զսա և զաղգս ամենայն « զվանորայս և զեկեղեցիս, կարգելով ՚ամենայն ուրեք զա- « րժանաւորն Առաջնորդս և հոգաբարձուս, որպէս և ՚ի վե- « րայ վանից և եկեղեցւոյն սրբոյն Սարգսի և ՚ի վերայ որհ- « նեալ տէրունի ժողովրդականացդ մերոց կարգեաց Առաջ- « նորդ և հոգաբարձու զհոգևոր որդին մեր զՅոհան վար- « դապետն, բայց յետոյ տաչորէր սիրտ նորա սակս զրկանաց « վանից Սրբոյն Սարգսի և Յոհան վարդապետին: Իսկ ՚ի- « ժամ վախճանին իւրոյ յորժամ ամենայն ինչ վերջին կտա- « կաւ ՚ի մեզ յանձնէր՝ զայս ևս պատուիրէր ասելով, թէ « սպասեցաք զՅոհան վարդապետն Եպիսկոպոսական իշխա- « նութեամբ ՚ի վերայ վանից սրբոյն Սարգսի և ՚ի վերայ որհ- « նեալ տէրունի ժողովրդականաց մեծի Աթոռոյս, բայց յե- « տոյ զրկեցաք, այդ խիղճ է ինձ ոչ սակաւ. պարտիս վերըս- « տին հաստատել զնա յաթոռ իւր՝ և զտէրունի ժողո- « վուրդսդ զոր ՚ի վերոյ գրեցաք, ՚ի նա յանձնել և զայլ մնա- « ցեալսն թողուլ ՚ի հոգաբարձութիւն Աղէքսանդր վար- « դապետին: Յաղագս որոյ ըստ կտակի հոգևոր Հօրն մերոյ՝ « շնորհօք սուրբ հոգւոյն՝ բարձր իշխանութեամբ մեծի Ա- « թոռոյս և հայրապետական հրամանաւ մերով, և հաճու- « թեամբ ամենեցունց՝ իբրաւունս վարկաք, կրկնակի և վերըս- « տին կարգեալ հաստատեցաք Առաջնորդ վանիցն սրբոյն « Սարգսի զհոգևոր և զսիրելի որդիդ մեր զՅոհան վարդա- « պետդ, և զվերոյգրեալ տէրունի ժողովուրդսդ ՚ի հոգա- « բարձութիւն դորին յանձնեցաք, որ հովուեսցէ զտէրունի « ժողովուրդսդ մեր Եպիսկոպոսական իշխանութեամբ. « և զմնացեալ տէրունի ժողովուրդսն, այսպէս կնքարանին « առնելով Թողաք ՚ի հոգաբարձութիւն Աղէքսանդր վար- « դապետին ըստ կտակի հօրն մերոյ հոգևորի.

ղովրդեանն ։ Յորժամ վերստին ստացաւ Յոհան վարդապետ
զիշխանութիւնն Առաջնորդութեան, կրկին ընձիւղեցաւ ատ-
մուկ և տարաձայնութիւն մեծ 'ի մէջ ժողովրդեանն. զաւա-
ռական ժողովուրդք չինեցին զմկայական գիրս՝ թէ որպէս
լեալ են յառաջմէ անտի հրաժարեալք Ամենափրկչի վանաց
Առաջնորդէն, այժմ ևս կամին մնալ ընդ հնազանդութեամբ
այնր՝ առանց ճանաչելոյ զայլ ոք առաջնորդ իւրեանց ։ Ընդ
այն ժամանակս Ստեփաննոս Առաջնորդ Ամենափրկչի վանաց-
գնայ յէջմիածին, և Նստի Աղէքսանդր Առաջնորդ վանին ։
Տեսեալ Նորա թէ երկպառակութիւնն ճարակի հետ զհետէ
հանդերձ բազմապիսի վնասուք, խոհեմութիւն արարեալ կո-
չէ զՅոհան վարդապետն և համոզէ զնա խաղաղութեամբ վեր-
ջաւորել զայն բազմամեայ վէճ, վասնորոյ հաւանեցուցանէ
զնա լինել Առաջնորդ Բուրվարու գաւառին միայն, և զհա-
ժողովրդեանն այնմիկ գաւառի առնել ինքեան ապրուստ ։
Թերևս խոնջեալ Նորա 'ի խռովասիրութենէ հաւան զտանի
ընդ այն, և զայն դաշինն փակեն գրով ընդ Աղէքսանդր Ա-
ռաջնորդի. ուստի Նա ինքն Աղէքսանդր յ7 յունվարի 1679
ծանուցագրով ազդ առնէ ժողովրդեանն Բուրվարու թէ
" ծաներուք սիրելիք մեր 'ի Տէր, հրամայէ փրկիչն ամենե-
" ցուն Տէրն մեր Յիսուս Քրիստոս 'ի փրկական աւետարանին
" ասելով արդ կալարուք դուք յանձինս ձեր զաղն և խաղա-
" ղութիւն արարէք ընդ միմեանս. և Մարգարէն Դաւիթ
" ասէ եղև խաղաղութիւն տեղի Նորա ։ Սիրելիք ինչ տեղ
" խաղաղութիւն կայ՝ Քրիստոս անդ բնակի, և ինչ տեղ խը-
" ռովութիւն կայ՝ սատանայ կու բնակի. ահա ձեզ ամենեցուն
" յայտնի է որ այսչափ ժամանակ մեր և Յոհան վարդապետի
" մէջն խռովութիւն կայր՝ յազդեցութենէ չարին սատանայի,
" որոյ պատճառն մի ըստ միոջէ գրելն աւելորդ է և անօգուտ ։
" Զինչ և էր հինն էանց, և արդ Նոր եղև, քանզի շնորհօքն
" Աստուծոյ հաշտեցաք ընդ միմեանս, բարձաւ խռովութիւնն
" և հաստատեցաւ խաղաղութիւնն, վերացաւ միջնորմն
" ցանգոյն և եղև մի, այսուհետև ոչ 'ի Պօղոս և յԱպօղոս
" բաժանիք, այլ 'ի Քրիստոս միանայ ։ Եւ 'ի վախճան ամենայ-

‹‹ նի, մեր սիրոյ և միաբանութեան նշան անխզելոյ և ան-
‹‹ քակ միաւորութեան՝ զայս հաստատեցաք, որ ձեր օրհնեալ
‹‹ երկրիդ Բուլղարու ժողովուրդդ, անդրանկամեծար և Յար-
‹‹ գոյապատիւ եղբայրն մեր Յոհան Աստուածաբան վարդա-
‹‹ պետն և սրհիական եպիսկոպոսն տէրն՝ հովուէ և առաջ-
‹‹ նորդէ, և դուք ամենեքեան հլու հպատակութեամբ հնա-
‹‹ զանդ լինիք նմա՝ որպէս վայելէ մեծութեան նորա իբրև
‹‹ հովուի և առաջնորդի: Մի ոք ընդդիմասցի և հակառա-
‹‹ կեսցի, այլ ամենայնիւ լսող և ունկնդիր լինիք ամենայն
‹‹ հնազանդութեամբ: Զամենայն հաս և զիրաւունս ձեր տա-
‹‹ ջիք 'ի ձեռս նորա՝ և իւր միաբանիցն որ նորին թղթով և
‹‹ հրամանաւ գան 'ի մէջ ձեր: Դարձեալ չլինի այլ և այլ
‹‹ մտածմունք անէք, վասն այսորիկ և խռովիք իբր թէ օ-
‹‹ տարացուցանեմք զձեզ 'ի սուրբ Աթոռոյս Ամենափրկչի
‹‹ վանաց՝ որ ձեր բնիկ և հայրենի տուն է, քաւ լիցի. մինչև
‹‹ ցայս վայր որ բաժանումն կայր մեր մէջն՝ այդպէս էր,
‹‹ արդ՝ որպէս բաժանումն վերացաւ խորհօքն Քրիստոսի՝
‹‹ նոյնպէս իմն և քոյն վերացաւ, զի 'ի Քրիստոս Յիսուս, իմ և
‹‹ քո ոչ է, որպէս գրեալ է 'ի գործ Առաքելոցն: Այժմ
‹‹ Յոհան վարդապետն և մեք և դուք միեմք, և ոչ այլ և
‹‹ այլ: Բայց միայն նշան սիրոյ զայս հաստատեցաք և երկու
‹‹ գրեցաք զայս գիր ›› ևն:

Յետ այնմիկ յդաշանց խաղաղութիւն եղև ընդ մէջ Յոհան վարդապետին և Առաջնորդին Ջուղայու վանաց:

Դ. Մինչ 'ի 1666 ամի շինեցաւ 'ի Հազարջրիբ գեղջ վանքն կոչեցեալ սուրբ Աստուածածնի, և նստաւ անդ Առաջնորդ Ստեփաննոս Եպիսկոպոս՝ Հրամանաւ Յակոբ կաթուղիկոսի, եղև դարձեալ մասնաւոր փոփոխութիւն յաղագս թեմից Ամենափրկչի վանաց, զի 'ի գիւղօրէից գաւառացն նշանակեցան քանի գիւղօրայք լինել ընդ իշխանութեամբ Առաջնորդին Հազար Ջրիբայ վանից: Զհամադան քաղաքն ևս նշանակեաց Յակոբ կաթուղիկոս լինել թեմ նոյն վանի, և գրեաց զկոնդակ առ ժողովուրդսն Համադանայ ասելով ‹‹ Թէ
‹‹ ծանուցումն լիցի ձեզ սիրելի որդիք զի դուք Փարեաւ վա-

Դ. Սեփոփոխն է փեփղոս, և նշանակէ սասեր Տէրութեան:

ԴԴ. Բախտաւորէք է անուն այգէ միոյ կամ ծաղկանոցի որք չուանի պհաստապատն և պէտղոտական բնակութեան, այլ նոցա լինելն են ընդէր և յորք, և նոցա ապրուստ կենաց են եկամտականութիւն և հարկահաւաքութեան: Համփելոնն՝ կոչէ ցեղ մի 'ի ծաղկանոցէն անքէ:

(4). (—):

(5). (—):

## ՅՕԴ. Ե

### Վէճակ կամ Թեմ Ամենափրկչի վանաց, և վէճք ծագեալք յաղագս այնորիկ:

ա. Ջուղայ՝ որպէս ցուցաք յիւրում տեղւոջ (1) բաժանէր 'ի հին և 'ի նոր, հին Ջուղայ կոչիւր ժողովուրդն եկեալ 'ի Ջուղայէ որ 'ի Հայաստան: Իսկ Նոր Ջուղայ կոչիւր այն մասն ժողովրդեան՝ որք յայլ քաղաքաց Հայաստանի գաղթեալք շինեցին զբնակութիւն իւրեանց կից Ջուղայու 'ի ժամանակս երկրորդ Շահաբասայ: Վանքն Ամենափրկչի շինեցաւ 'ի հին Ջուղայեցւոց. և հին Ջուղայն Սպահանայ եղև սեփական թեմ և վիճակ նորա. և ըստ որում գաղթեալքն 'ի Հնդկաստան էին 'ի վաճառականաց, և վաճառականքն ևս էին Ջուղայեցիք, վասնորոյ Հնդկաստան ևս վիճակեցաւ Ամենափրկչի վանացն:

բ. Իսկ միւս մասն Ջուղայու ժողովրդեան որք Նոր Ջուղայ կոչէին, որք են Երևանցիք՝ Թաւրիզեցիք՝ Դաշտեցիք՝ Քօչերցիք և Ղարադէլցիք՝ 'ի սկզբան անդ համարեալ լինէին տէրունի ժողովուրդք և հպատակէին աթոռոյ Էջմիածնի: Յամի Տեառն 1658 'ի գալն Յակոբ կաթուղիկոսի Ջուղայեցւոյ 'ի Ջուղայ՝ զՅովհան եպիսկոպոս ոմն կարգէ առաջնորդ որոյն

Յարգանօք եկեղեցւոյ, տալով նմա թեմ և վիճակ զթաղամն Ե-րևանայ՝ գաւառն՝ Թաւրիզեցւոց՝ Դաշտեցւոց՝ և գաւառապատ-րւոց, նաև զգիւղօրայսն Լինջանու՝ Ալինջանու՝ գանգիմա-նու՝ և Ջղախօռու (2)։ Յայնմանէ անուն սուրբ Սարգսի եկ-կեղեցւոյ յօրէ անտի կոչեցաւ Օհանայ վանք։ Թէպէտ յե-շեալ ժողովուրդքն որք յանձնեցան Օհան Եպիսկոպոսի՝ հա-մարեալ լինէին տէրունի վիճակ, այլ կառավարեալ լինէին յԱռաջնորդաց Ամենափրկչի վանաց. նախ քան զգալն Յակոբ կաթուղիկոսի. ուստի յետ բաժանելոյ զնոսա Յակոբ կաթու-ղիկոսի յիշխանութենէ Ամենափրկչի վանաց՝ ծագեցաւ տարա-ձայնութիւն մեծ ընդ մէջ ժողովրդեանն և կարգաւորաց, զի ժողովուրդք ոմանք ոչ յօժարեցան բաժանիլ յիշխանու-թենէ Ամենափրկչի վանաց, և ոմանք յարեցան առ Յոհան ե-պիսկոպոս, ուստի երկպառակեցան 'ի միմեանց։

Առաջնորդք Ամենափրկչի վանաց բողոքեցին առ Թագաւորն Պարսից և ընկալան զհրաման՝ զի որպէս եղեալ էին հնազան-դեալք Ամենափրկչի վանացն ամենայն հայ ժողովուրդք Սպա-հանայ և գաւառաց նորին, նոյնպէս կացցեն ընդ հնազան-դութեամբ նորին առանց ինչ փոփոխութեան (3)։ Յաճախե-ցաւ երկպառակութիւնն 'ի մէջ ժողովրդեան որոց համբաւք օր ըստ օրէ հասին 'ի լսելիս Յակոբ կաթուղիկոսի, և նա 'ի դարման այնր՝ յամի 1109 (1660) 'ի 4 Սեպտեմբերի գրեաց զկոնդակ առ ժողովուրդսն որք էին իւրով հրամանաւ ենթ-արկեալ Օհանայ վանքի, թէ «Ընդ օրհնութեանս ծանիրուք «հոգևոր և սիրելի որդիք մեր, զի ասէ Սրբազան Առաքելոյն «թէ խորհիմք զբարիս առաջի Աստուծոյ և մարդկան։ Արդ «մեր կամք և խորհուրդքն ըստ այսմ բանի այն էր՝ թէ օգուտ «և շահ հասարակաց հոգևոր փրկութեան լինէր, 'ի տեղիս «տեղիս վանք և միաբանք բազմանայր, և խրատն և մխի-«թարութիւնն հոգևոր 'ի հեռաւոր ժողովրդենէն անպա-«կաս լինէր։ Վասն որոյ և պաշտեցաք զձեզ 'ի վանիցն Ջու-«ղայու։ Այլ այժմ զի տեսաք թէ օգուտն այնչափ ոչ երևե-«ցաւ 'ի բաժանմանէն, որպէս և կարծէաք, մանաւանդ «թէ երկպառակութիւն և թշնամութիւն սերմանեցաւ 'ի մէջ

«« սիրոյ և միաբանութեան, յաղագս այսորիկ և. մեք ըստ ա-
«« ռաջին կարգի սահմանեցաք զձեզ սեփհական Թեմ և վե-
«« ճակ սուրբ Ամենափրկչի վանիցն, և առաջնորդ ձեր՝ եղ-
«« բայր մեր Դաւիթ վարդապետն հաստատեցաք զի լինիջիք
«« մի հօտ և մի հովիւ »։

Յոհան եպիսկոպոս կոչեցեալն տնտեսի տղայ՝ դժկամակեալ
ընդ տնօրէնութիւնն այն՝ զխռովութիւնս արկանէ 'ի մէջ ժո-
ղովրդեանն, և որսացեալ ինքեան զկողմնակալս հաստատէ ըզ-
մանաար վկայութեան ժողովրդոց և գնացեալ 'ի սուրբ Էջ-
միածին, միւսանգամ հաստատի՝ կոնդակաւ Եղիազար կաթողի-
կոսի յառաջնորդութիւն Օհանայ վանքի և ժողովրդեացն
նորա։

Յետ հասանելոյ նորա 'ի Ջուղայ, դարձեալ յուզի երկ-
պառակութիւնն 'ի մէջ ժողովրդեանն. վասնորոյ երկրորդա-
բար ընկեցեալ լինի նա յառաջնորդութենէ իւրմէ հրամանաւ
Եղիազար կաթողիկոսի, և ժողովուրդքն յանձնին 'ի հնա-
զանդութիւն Ամենափրկչի սուրբ վանից։ Յամի 1689 յ7 ապ-
րիլի, Եղիազար կաթողիկոս առ ամենայն ժողովուրդսն հնա-
զանդեալսն Թեմին սրբոյ Ամենափրկչի վանաց գրէ այսպէս.
«« Հրամայէ Սրբազան Առաքեալն Քրիստոսի Պօղոս, եթէ զը-
«« լուխ պատուիրանին սէր է 'ի սուրբ սրտէ և յանկեղծաւոր
«« հաւատոյ, և թէ՝ ուր հեռ և նախանձ զոյ, անդ է անկար-
«« գութիւն և ամենայն իրք չարք։ Եւ Տէրն ասէ. բաժա-
«« նեալ տուն յանձն իւր՝ աւերի. և քաղաք յիւրաքանչիւր
«« անձն բաժանեալ՝ կործանի. որպէս տեսաք այժմս աչօք
«« մերովք թէ զանձասար և թէ այլ վանորայք, մանաւանդ
«« Աստուածաշէն և Ագուլիս լոյս և մխիթարութիւն սուրբ Յա-
«« կոբն որ յԵրուսաղէմ, ոչ եթէ այլազգիք աւերեցին՝ այլ
«« մերային ազինք, միմեանց նախանձ և հակառակ լինելով,
«« և դրամ տալով՝ անտանելի պարտուց և անզերծանալեան-
«« ղութեանց մէջ արկին որ ոչ իմիք հնարիւք բուժումն լինի
«« ցաւոյն այնորիկ։ Ըստ այնց սարասի եղև 'ի ձերում կողմանց
«« և որ հնեալ երկրիդ, յորժամ բաժանումն երկուց եղև, թէ
«« քանիցս 'ի հաւատոց եղան՝ որք անօրինաց և սահմանաց քակ-

" տումն եղև, և որպիսի չարիք կայացաւ, և զինչ խռո-
" վութիւն արմատացաւ որպէս տեսիք բարի աչօք ձերով։
" Եւ եթէ թողումք այս բոլորոքումն՝ և զնախնեաց կար-
" գեալ շաւիղն՝ ոչ գոյ հնար բժշկութեան, մինչև առ յա-
" պայն։ Այլ արդ քննեցաք և յոլովից հնարից բուռն հա-
" բաք և խստագոյն խուզումն արարաք հանդերձ միաբան
" և միախորհ որդւովք սրբոյ Աթոռոյս, Եպիսկոպոսօք՝
" վարդապետօք և իշխանօք և երթևեկող Աստուածասէր
" վաճառականօք 'ի խորհուրդս բազումս մտաք իբրև տասն
" ամօք սակս այսմ բանի՝ և ոչինչ ելս իրաց գտաք։ Բայց
" միայն 'ի միաձել և միապետութիւն առնել։ Ահա եւ Նո-
" ւաստ ծառայ Տեառն Եղիազար կաթուղիկոս ըստ 'ի վե-
" րուստ տուեալ իշխանութեանն և բարձր հրամանաւ սրբոյ
" Աթոռոյս Էջմիածնի՝ վերստին կարգեցաք և հաստատեցաք
" այդ օրհնեալ քաղաքդ և գաւառքդ թէմ և վիճակ Ջու-
" ղայու սուրբ Ամենափրկչի վանիցն, և ոչ եթէ մտացածին
" բանիւ կամ այլ ինչ պատճառի արարաք, այլ այսքան Աստ-
" ուածաքան վարդապետօք և դօվլաթաւորօք կարգեցաք և
" սահմանեցաք որ այլ ոչ ոք հրաման չունի յերկիրն մտա-
" նելոյ առանց հրամանի Ամենափրկչի վանից Առաջնորդին՝ և
" ձեռնամուխ լինել. ոչ սեպզլուխ՝ և ոչ այլ ոք. և որինչ
" սեպզլուխք կան յայդմ կողմանքդ՝ գան միաբանք լինին
" սուրբ Ամենափրկչին և Նորին Առաջնորդին հլու և հնա-
" զանդ"։

Ոչ դադարեցաւ Յոհան եպիսկոպոս յետ հասանելոյ այնմիկ հրամանի, այլ գուն գործէր որպէս ինքեան զկողմնականս և սպասէր դիպօղ ժամանակի։ Յետ վախճանելոյ Եղիազար կաթուղիկոսի, մինչ Նահապետ կաթուղիկոս նստաւ յաթոռ կաթողիկոսութեան, և Ջուղայեցիք ոչ յօժարէին ընդ կաթուղիկոսանալն նորա (4), յայն սակս ժամ պատեհ համարեալ Յոհան եպիսկոպոս գնաց 'ի սուրբ Էջմիածին, և սիրելի եղև առաջի Նահապետ կաթուղիկոսի, և հաւանեցուցեալ զնա ընկալաւ զկոնդակ և կարգեցաւ միւսանգամ Առաջնորդ Օհանայ վանիցի։ Վերադարձաւ 'ի Ջուղայ կոնդակաւ

պահապետի, որոյ այս է պատճէն․

« Մէ Թողաք զՀոգևոր որդիդ մեր առանց հովուաց փա-
« խնամս մնալ՝ ըստ կտակի հոգևոր հօրն մերոյ Տեառն-Եղի-
« ազարու կաթուղիկոսի․ Քանզի յորժամ եկն նա ՚ի սուրբ
« Աթոռս, ամենայնիւ զարդարեաց զսա և զազգս ամենայն,
« զվանորայս և զեկեղեցիս, կարգելով ամենայն ուրեք ըստ
« արժանւոյն Առաջնորդս և Հոգաբարձուս, որպէս և ՚ի վե-
« րայ վանից և եկեղեցւոյն սրբոյն Սարգսի և ՚ի վերայ օրհ-
« նեալ տէրունի ժողովրդականացդ, մերոց կարգեաց Առաջ-
« նորդ և Հոգաբարձու զՀոգևոր որդին մեր զՅոհան վար-
« դապետն, բայց յետոյ տաչորէր ախտ նորա սակս զրկանաց
« վանից Սրբոյն Սարգսի և Յոհան վարդապետին։ Իսկ ՚ի-
« ժամ վախճանին իւրոյ՝ յորժամ ամենայն ինչ վերջին կտա-
« կաւ ՚ի մեզ յանձնէր՝ զայս ևս պատուիրէր ասելով, Թէ
« պսակեցաք զՅոհան վարդապետն եպիսկոպոսական իշխա-
« նութեամբ ՚ի վերայ վանից սրբոյն Սարգսի և ՚ի վերայ օրհ-
« նեալ տէրունի ժողովրդականաց մեծի Աթոռոյս, բայց յե-
« տոյ զրկեցաք, այժմ խիղճ է ինձ ոչ սակաւ, պարտիս վերըս-
« տին հաստատել զնա յաթոռ իւր՝ և զտէրունի ժողո-
« վուրդսդ զոր ՚ի վերոյ գրեցաք, ՚ի նա յանձնել և զայլ մնա-
« ցեալսն թողուլ ՚ի հոգաբարձութիւն Աղէքսանդր վար-
« դապետին։ Յաղագս որոյ ըստ կտակի հոգևոր Հօրն մերոյ՝
« շնորհօք սուրբ հոգւոյն՝ բարձր իշխանութեամբ մեծի Ա-
« թոռոյս և հայրապետական հրամանաւ մերով, և հաճու-
« թեամբ ամենեցունց՝ իրաւունս վարկաք, կրկնակի և վերըս-
« տին կարգեալ հաստատեցաք Առաջնորդ վանիցն սրբոյն
« Սարգսի զՀոգևոր և զսիրելի որդիդ մեր զՅոհան վարդա-
« պետդ, և զվերոյգրեալ տէրունի ժողովուրդսդ ՚ի հոգա-
« բարձութիւն դորին յանձնեցաք, որ հովուեսցէ զտէրունի
« ժողովուրդսդ մեր եպիսկոպոսական իշխանութեամբ․
« և զմնացեալ տէրունի ժողովուրդսն այդպէս կառավարին
« առնելով թողաք ՚ի հոգաբարձութիւն Աղէքսանդր վար-
« դապետին ըստ կտակի հօրն մերոյ հոգևորի․

ժողովրդեանն ։ Յորժամ վերստին ստացաւ Յոհան վարդապետ գերիշխանութիւնն Առաջնորդութեան, կրկին ընձիւղեցաւ ատմունկ և տարաձայնութիւն մեծ 'ի մէջ ժողովրդեանն. զաւառական ժողովուրդք չինեցին զվկայական գիրս՝ թէ որպէս ելեալ են յառաջին անտի հպատակեալք Ամենափրկչի վանաց Առաջնորդին, այժմ ևս կամին մնալ ընդ հպատակութեամբ այնր՝ առանց ճանաչելոյ զայլ ոք առաջնորդ իւրեանց ։ Ընդ այն ժամանակս Ստեփաննոս Առաջնորդ Ամենափրկչի վանացն գնայ յԷջմիածին, և Նստի Աղէքսանդր Առաջնորդ վանքին ։ Տեսեալ Նորա թէ երկպառակութիւնն ճարակի հետ զհետէ հանդերձ բազմապիսի վնասուք. խոհեմութիւն արարեալ կոչէ զՅոհան վարդապետն և համոզէ զնա խաղաղութեամբ վերջացուցանել զայն բազմամեայ վէճ, վասնորոյ հաւանեցուցանէ զնա լինել Առաջնորդ Բուրվարու գաւառին միայն. և զհաժողովրդեանն այնմիկ գաւառի առնել ինքեան աթոռ ։ Թերևս խոնջեալ Նորա 'ի խռովասիրութենէ հաւան գտանի ընդ այն, և զայն դաշինս փակեն գրով ընդ Աղէքսանդր Առաջնորդի. ուստի Նա ինքն Աղէքսանդր յԷ յունվարի 1679 ծանուցագրով ազդ առնէ ժողովրդեանն Բուրվարու թէ

“ ծաներուք սիրելիք մեր 'ի Տէր, հրամայէ փրկիչն ամենե-
“ ցուն Տէրն մեր Յիսուս Քրիստոս 'ի փրկական աւետարանին
“ ասելով արդ կալարուք դուք յանձինս ձեր զաղն և խաղա-
“ ղութիւն արարէք ընդ միմեանս. և Մարգարէն Դաւիթ
“ ասէ եղև խաղաղութիւն տեղի Նորա ։ Սիրելիք ինչ տեղ
“ խաղաղութիւն կայ՝ Քրիստոս անդ բնակի, և ինչ տեղ խը-
“ ռովութիւն կայ՝ սատանայ կու բնակի. ահա ձեզ ամենեցուն
“ յայտնի է որ այսչափ ժամանակ մեր և Յոհան վարդապետի
“ մէջն խռովութիւն կայր՝ յազդեցութենէ չարին սատանայի.
“ որոյ պատճառն մի ըստ միոջէ գրելն աւելորդ է և անօգուտ ։
“ Զինչ և էր հինն էանց, և արդ Նոր եղև, քանզի շնորհօքն
“ Աստուծոյ հաշտեցաք ընդ միմեանս, բարձաւ խռովութիւնն
“ և հաստատեցաւ խաղաղութիւնն, վերացաւ միջնորմն
“ ցանգոյն և եղև մի, այսուհետև ոչ 'ի Պօղոս և յԱպօղոս
“ բաժանիք, այլ 'ի Քրիստոս միանայ ։ Եւ 'ի վախճան ամենայ-

« նի, մեր սիրոյ և միաբանութեան նշան անխզելոյ և ան-
« քակ միաւորութեան՝ զայս հաստատեցաք, որ ձեր օրհնեալ
« երկրիդ Բուլղարաց ժողովուրդդ, անդրանկամեծար և Յար-
« գոյապատիւ եղբայրն մեր Յոհան Աստուածաբան վարդա-
« պետն և սրհիական եպիսկոպոսն տիրէ՝ հովուէ և առաջ-
« նորդէ, և դուք ամենեքեան հլու հպատակութեամբ հնա-
« զանդ լինիք նմա՝ որպէս վայել է մեծութեան նորա իբրև
« հովուի և առաջնորդի: Մի ոք ընդդիմացի և հակառա-
« կեսցի, այլ ամենայնիւ լսող և ունկնդիր լինիք ամենայն
« հնազանդութեամբ: Զամենայն հաս և զիրաւունս ձեր տա-
« ջիք 'ի ձեռս նորա՝ և իւր միաբանիցն որ նորին թղթով և
« հրամանաւ գան 'ի մէջ ձեր: Դարձեալ չլինի այլ և այլ
« մտածմունք անէք, վասն այսորիկ և խռովիք իբր թէ օ-
« տարացուցանեմք զձեզ 'ի սուրբ Աթոռոյս Ամենափրկչի
« վանաց՝ որ ձեր բնիկ և հայրենի տուն է, քաւ լիցի. մինչև
« ցայս վայր որ բաժանումն կայր մեր մէջն՝ այդպէս էր,
« արդ՝ որպէս բաժանումն վերացաւ շնորհօքն Քրիստոսի՝
« նոյնպէս իմն և քոյն վերացաւ, զի 'ի Քրիստոս Յիսուս, իմ և
« քո ոչ է, որպէս գրեալ է 'ի գործ Առաքելոցն: Այժմ
« Յոհան վարդապետն և մեք և դուք մի եմք, և ոչ այլ և
« այլ: Բայց միայն նշան սիրոյ զայս հաստատեցաք և երկու
« գրեցաք զայս գիր » ևն:

Յետ այսմիկ դաշանց խաղաղութիւն եղև ընդ մէջ Յոհան վարդապետին և Առաջնորդին Ջուղայու վանաց:

Դ. Մինչ 'ի 1666 ամի շինեցաւ 'ի Հազարջրիբ գեղջ վանքն կոչեցեալ սուրբ Աստուածածնի, և նստաւ անդ Առաջնորդ Սարգիս եպիսկոպոսն՝ հրամանաւ Յակոբ կաթողիկոսի, եղև դարձեալ մասնաւոր փոփոխութիւն յաղագս թեմից Ամենափրկչի վանաց, զի 'ի գիւղօրէից գաւառացն նշանակեցան քանի գիւղօրայք լինել ընդ իշխանութեամբ Առաջնորդին Հազարջրիբայ վանից: Զհամադան քաղաքն ևս նշանակեաց Յակոբ կաթողիկոս լինել թեմ նոյն վանի, և գրեաց զկոնդակ առ ժողովուրդն Համադանայ ասելով « Թէ « ծանուցումն լիցի ձեզ սիրելի որդիք զի դուք Փարիսէ վա-

«Նոցին ժողովուրդ էք, և ով որ ՚ի վանքն այն առաջնորդ
« անուն նստի, դուք պարտ էք հնազանդել նմա միաբանա-
« բար, և զամենայն հաս և իրաւունս ձեր մի բառ մինչև մի-
« բով տալ ՚ի ձեռս նորա, զի նա է ձեր առաջնորդ, և վե-
« րատեսուչ, և այլք եպիսկոպոսք և վարդապետք մի թո-
« ղուք ՚ի ձեր մէջն որ առաջնորդական հասի և իրաւանց վե-
« րայ խօսի»: Այլ այժմ վանքս, որպէս յիւրում տեղւոջ ծանուցաք ( ) միայն առն հրդետասան յեկաց ՚ի հաստատութեան, և բարձաւ Առաջնորդութիւնն ՚ի նմանէ փոխանակին, վասն որոյ չերևի խռովութեան առարկայ ըստ այնմ մասին, և յետ ամայանալոյ վանիցն այնմիկ՝ պարձեալ ամենայն գաւառք և քաղաքք մնացին վիճակք Ամենափրկչի վանացն:

Որք վիճակաւոր քաղաքք Ամենափրկչեան վանի ՚ի Պարսկաստան են Ջուղայ, Շիրազ, Բուշեռ, Թէհրան, Համադան, Ռաշտ և Անզալի: Յառաջին ժամանակս մինչ ՚ի Քաշան ՚ի Ղազբին և ՚ի Դարբանդ և ս. կային բնակիչք Հայոց՝ էին ընդ իշխանութեամբ Ամենափրկչեան վանի: Բայց ՚ի քաղաքաց անտի ունի և զ8 գաւառս յորս բնակին բազմաթիւ ժողովուրդք, որոց անուանքն են Ղարաղան, Մալայիր, Քեազազ, Գեափըլայ, Քեամարայ, Բուրվարի, Փէրիայ և Չարմահալ, որք ընդ ամենայն ունեն զեօթանասուն և չորս գիւղօրայս Հայոց:

Յօսմանեան սահմանս Բասրայ է միայն, իսկ Բաղդատ քաղաք և ո՛րքերեմն կառավարեցաւ ըստ հոգևոր մասին իշխանութեամբ Ջուղայու Առաջնորդաց, այլ այժմ ՚ի բնաւ անտի է Տէրունի վիճակ որքոյ Էջմիածնի: Ի Հնդիկս Բոմբայի, Սուրաթ, Մադրաս, Կալկաթայ, Չինչրայ, Դաքքայ, Սէյդաբադ, Գուալիէր, Քաբուլ, Սինկափուր, և Պինանգ: Ի Ջավայ՝ Բըթաւիա, Սուրաբայիա՝ և Սամարանգ: Խօսիլ համառօտեաւ ըզնոցանէ, յուսամ զի ներելի լիցի ինձ, եթէ կողմնակի պարտք վերաբերելի մերում պատմութեան:

ՇԻՐԱԶ: Է քաղաք ՚ի սահմանս Ֆարսայ՝ 60 փարսախ հեռի յԱսպահանայ: Պատմէ Առաքել թէ «յայսմ ժողովրդենէ
« Հայոց զոր տարան ՚ի Սպահան՝ հինգ հարիւր տուն բաժա-

«Նեցին և տարան յերկիրն Շիրազու և անդ բնակեցուցին,
«քանզի Ալահվէրդիխանն որ էր տէր Շիրազու՝ խնդրեաց
«'ի Շահաբասէն շնորհել նմա մասն-ինչ յազգէն Հայոց վասն
«քաջամտութեան և հաւատարմութեան ազգին Հայոց, զի
«լիցին նմա 'ի ժողովուրդ և Թագաւորն շնորհեաց նմա ըզ-
«խնդիրն, և նա տարեալ բնակեցոյց 'ի գաւառն Շիրազու»։
«(Առաք. «գլ. Դ. էջ 45)։ Ի բանից աստի յայտ է թէ ըս-
կիզբն գաղթականութեան Հայոց 'ի Շիրազ եղև 'ի 1605 կամ
1606 ամի։ Ոչ աճեցաւ անդ ժողովուրդն Հայոց, այլ հետ
զհետէ նուազեցաւ։ Ըստ Թուագրութեան որ եղև յամի
1856՝ եօթն տուն միայն հայք գտանին անդ, որք ունին զտասն
և չորս արու և զքսան իգական բնակիչս։ Երկու տունն են
վաճառական, որոյ առաջինն է Պարոն Պետրոս Մայիլեան այր
գործունեայ, ժրաջան և հիւրասէր, և միւսն է Պարոն Ստե-
փաննոս Յարութիւն Խաչկեան, իսկ մնացեալ հինգ տունն
այլքն մասնաւոր փերեզակութեամբ կամ գինեվաճառու-
թեամբ։

Ունէին զեկեղեցի մի շինեալ 'ի 1111 Թուին Հայոց, որոյ
այս է արձանագրութիւն։

«Այս տուն Տեառն է և արդարք մտանեն ընդ սա։

«Ի Թուին հայոց միոյ հազարի, նաև հարիւր մետասանի,
«արդեամբք տեղւոյս մերոց Ազգի, տաճարս ԱՅ շինեալ լինի։
«Դարձեալ 'ի Թուիս մի հազարի, և երկերիւր վաթսուն հնգի,
«ժողովրդեան կամք յօժարի, զմբեթայարկ կերտեալ լինի,
«արդեամբք Պարոն Շահնազարի, որ է որդի Սարգսեանի։

Այն եկեղեցի հիմնայատակ տապալեցաւ յամի 1853 'ի
քուռն երկրաշարժութեան և վերստին առաւել վայելուչ և պայ-
ծառ յօրինեցաւ յամի 1856՝ ըստ մեծի մասին արդեամբ բարե-
պաշտօն մահի Պարոն Յովհաննու Աւետումեան. սուրբ Աստ-
ուածածին անուն կոչելով որպէս և էրն յառաջ։

ԲՈՒՇԵՐ։ Է ծովահանգիստ քաղաք 'ի ծոցն Պարսկաստա-
նի. փարսախ հեռի 'ի Շիրազայ։ Չիք հաւաստի տեղեկութի

թէ երբ սկիզբն արարին հայք հաստատել անդ զբնակութիւնս իւրեանց, այլ այս ինչ յայտնի է զի 'ի սկզբան ութևտասներրորդ դարու 'ի բազմանալ հարստահարութեանցն 'ի Ջուղայ, և 'ի խուսիլ ականաւորաց ժողովրդեանն 'ի Ջուղայոյ՝ սկիզբն եղև հաստատելոյ Հայոց 'ի նմին քաղաքի զբնակութիւն իւրեանց, այլ հաւանական է կարծել թէ նախ քան զայն ժամանակ եղեալ են 'ի նմին քաղաքի Հայ վաճառականք սակս առի և տրոյ կալնլով անդ իջևան: Այժմ ինն տուն Հայ բնակիչք կան 'ի նմա, բաղկացեալ յերեսուն և երեք արուաց և յերեսուն և երկու իգականաց: Երկու երևելի վաճառատունք կան 'ի նմա, առաջինն աղայ Յովսէփայ Յ. Մէլքումեանց, և երկրորդն Պարոն Եղիազարու Գ. Գասպարեան, կամ Պարոն Մկրտիչի Յ. Պետրոսեան գործակատարի նորա: Ունին զմի եկեղեցի:

ԹԵՀՐԱՆ: Թագաւորանիստ քաղաք Պարսկաստանի: Կան 'ի նմա եօթանասուն և հինգ տուն բնակիչք, որք ունին ըզ. 162 արական. և 148 իգական բնակիչս: Կան անդ օտարական վաճառականք և-ս՝ որք ոչ մտանեն ընդ այն թուահաշիւ: Ունին զերկու եկեղեցիս, սուրբ Թադէոս 'ի թաղն Շահաբդօլազիմ և սուրբ Գէորգ 'ի թաղն Ղազբինի: Ականաւորքն 'ի վաճառականաց հայոց այժմ են Աղայ Կարապետ Գրիգորեան Սառաֆեանց Պօլսեցի վաճառականապետ Ռուսաց, որ և ունի զաստիճան պաշտօնի կրաժտանիութեան, Աղայ Պետրոս Ներսիսեան արցախեցի երբեմն ընկեր և գործակից աղայ Կարապետի, այր ազգասէր յորում † նենգութիւն ոչ գոյ, Աղայ Իւանէ Մամիկոնով Տփխիսեցի. և այլք ոմանք:

ՀԱՄԸԴԱՆ. կոչի և եկբատան: Թուի թէ 'ի ժամանակի մեծ տարագրութեանն Հայաստանի ժողովրդոց՝ 'ի ցիր և ցան լինելն նոցա՝ 'ի քաղաքս պարսից հաստատեցաւ անդ բնակութիւն Հայոց: Ունի և նա գեօղ մի Շաւարին կոչեցեալ իբրև երեք փարսաղ հեռի 'ի նմանէ: Ի Համադան և 'ի Շաւարին կան 116 տուն հայք, որք են 279 արականք և 269 իգականք, գործ նոցա ըստ մեծի մասին է կինեվաճառութիւն, և որովհետև խառն ընդ այլազգիս բնակին՝ տարազ զգեստուց կա-

նանց նոցա է ըստ տարազու այլազգեաց ։ Ունին 'ի Համադան զեկեղեցի մի յանուն սուրբ Ստեփաննոսի շինեալ 'ի 1125 (1676), (1) ։ Յընթացս 1838 ց1841 ամաց երիցս մտեալ գողոց յեկեղեցի անդ կողոպտեալ են զսկեղէն և զարծաթի սպասս և զթանգագին զզգեստս նորա, վասն որոյ եկեղեցին չունի այժմ զառաջին ճոխութիւնս իւր ։

Ի Շաւարին կայ եկեղեցի մի յանուն սուրբ Աստուածածնի ։ 'Ի Համադան քաղաքի կայ դիւթարան Քէշիշխանէ կոչեցեալ 'ի ձեռս ոմանց 'ի ժողովրդենէ Հայոց՝ որ ամ ըստ ամէ վճարէ Տէրութեանն Պարսից զերկերիւր թումանս իբրև հարկ կամ լաւ ևս ասել իբրև տոյժ և տուգանք ։ Է այն սենեակ մի անշուք և ամայի, յորում նստի արարօղն դիւթականութեան և տայ զգիր հմայութեան խուռն խնդրարկուաց, որք զօրհանապազ անպակասեն 'ի տանէ անտի, և ըստ որում համբաւեալ է անուն նոյն դիւթարանի՝ վասն որոյ 'ի հեռաւոր տեղեաց գան այլազգիք ընդունել անդէն զգիր հմայութեան ։ Հաստատեցաւ այն նախ քան զՄահմադ Հօսէյնխան Ղարագօզլին 'ի Հերնի անուն կնոջէ միոյ, որոյ որդիքն 'ի գործ ածեցին զայն զկնի մահուան մօրն իւրեանց, և վճարեցին ըզտարեկան հարկ նորա տասն թուման ։ Իսկ 'ի ժամանակս թագաւորութեանն Ֆաթալիշահի, Մահմադալի միրզայ որդին, որ էր 'ի Քրմանշահ՝ առաքեաց 'ի Համադան զմինն յորդւոց իւրոց և զհարկն Քէշիշխանէ դիւթարանին հաստատեաց զերկերիւր թմնս առ տարին, զոր բզմ տառապանօք վըճարէին (2) ։ Յաղագս այնր եղեալ է բազում անգամ խնդրարկութիւն, զի հրամանաւ Տէրութեան դիւթարանն այն և հարկն նորա միանգամայն վերջասցի, այլ ըստ որում Տէրութիւնն ստանայ զտարեկան զերկու հարիւր թուման շահս 'ի տանէ անտի՝ վասն որոյ անմտադիր խնդրարկութեանցն նոցին լինելով՝ պահանջի հարկն ամ ըստ ամէ, և 'ի պարտաւորութենէ բայց մնայ դուռն նոյն դիւթարանի և շարունակի ։

ՌԱՇՏ և ԱՆԶԱԼԻ ։ Են երկու քղք 'ի սհմնս Գիլանայ. յԱնզալի կան ինն տուն հայք, որք ունեն զ21 արական և 16 իգական բնակիչս ։ Ունեն զժամատուն մի փայտաշէն ։ Ի Ռաշտ

կան օտարական վաճառականք ըստ մեծի մասին 'ի Հայաստանէ, որք յաղագս գնելոյ զմետաքս առնեն անդ երթևեկ։ Եղեալ է անդ եկեղեցի մի Հայոց, այլ այժմ խափանեալ ամայացեալ գտանի։ Կայ մտադրութիւն շինելոյ անդ զնոր եկեղեցի 'ի տեղւոջն աւերակ եկեղեցւոյ, և սակս այնր եղեալ է բազում անգամ խնդրարկութիւն առ Տէրութիւնն Պարսից զի շնորհեսցի հրաման Տէրութեան, այլ տակաւին չէրև է նշան շինութեանն։

Զգաւառաց Հայոց Պարսկաստանի ունիմ ուրոյն գլխով խօսել փոքր մի առաւել պարզաբանութեամբ։

ԲԱՍՐԱՅ։ Ծաղկեցաւ աստ բնակութիւն և վաճառականութիւն Հայոց 'ի սկզբան ութ և տասներրորդ դարու, մինչ 'ի հարստահարութեանց Ջուղայու՝ փախստական դիմեցին անդր բազմութիւն Ջուղայեցւոց։ Ոչ տևեաց ընդ երկար առաջադիմութիւն Հայոց 'ի նմին քաղաքի, զի կամ 'ի պատճառս օդոյ վատութեանն կամ յաղագս անյարմարութեանն վաճառականութեան լքին զայն քաղաք բնակիչք տեղւոյն և գաղթեցին 'ի Սուրաթ, ըստ մեծի մասին 'ի Հնդկաստան և 'ի Բաղդադ։ Այժմ միայն քանի տուն Հայ բնակիչք կան 'ի նմա, որք աղքատութեամբ և օրական աշխատանօք անցուցանեն զաւուրս իւրեանց։ Ունեն զմի եկեղեցի։

ԲՈՒՇԻՐԱՅ։ Առաջին քաղաք Հնդկաստանի, յորում կան այժմ 17 տուն Հայ բնակիչք, բաղկացեալ 'ի 24 արուաց և 'ի 25 իգականաց։ Ունեն զմի եկեղեցի սուրբ Պետրոս անուն։ Սկիզբն բնակութեան Հայոց 'ի նմա եղեալ է 'ի վախճան եօթ և տասներրորդ դարու։ Կային 'ի նմա յառաջ քան զայս ականաւոր վաճառականք յազգէ Հայոց, այլ այժմ տեղի տուեալ է երևելի վաճառականութիւնն վասն Հայոց 'ի քաղաքէ անտի։ Երևելիքն 'ի նմա են այժմ Պարոն Յարութիւն Յորդանանեան, Յովսէփ Աղազարեան և եղբարք նորա։ Երկու եղբարք Պարոնայք Մարկոս և Ղուկաս Մահի Յովսէփեան իբրև քանի ամօք յառաջ էին անդ առաջադէմ, այլ անանկութիւնն խոնարհեցուցիչ այց ել նոցա։

ՍՈՒՐԱԹ։ Զսմանէ լիագոյն խօսեցաք յառաջնում հատորի։



ՄԱԴՐԱՍ։ Նշանաւոր քաղաք 'ի Հնդկաստան, յաղագս նը-
շանաւոր Հայ բնակչացն իւրոց, որք թէ ըստ մեծութեան և
թէ ըստ ազգասիրութեան մասին գերազանցեալ էին յոյժ
երբեմն յիսուն ամօք յառաջ։ Գաղթեցին անդ վաճառականք
Ջուղայու յերկս կոյս եօթնևտասներրորդ դարու և զօրացան
յոյժ յոյժ։ Իսկզբան ինն և տասներրորդ դարու վաճառակա-
նութիւնն նուազիլ սկսաւ 'ի քաղաքի անդ յազգէ Հայոց, և
ընդ մէջ նոյն դարու միայն տունն Սամեանց էր երևելի վա-
ճառատուն, այլ սնանկացաւ և այն 'ի 1853 ամի։ Այժմ միայն
երկու եղբարք որդիք Նիկողոսի Յարութիւնեան պարապին
մասնաւոր գործով վաճառականութեան. և բաց 'ի նոցանէ
չիք այլ ոք վաճառական ականաւոր հայազգի 'ի նմին քաղա-
քի։ Որպէս վերջացաւ ճոխութիւն և հարստութիւն 'ի քա-
ղաքէ անտի՝ նոյնպէս և առկայծեցաւ ազգասիրութիւնն,
զի բնաւորութիւն ներկայ ժողովրդոց հայոց Մադրասի (թէ-
պէտ ոչ ամենեցուն) յաւէտ խորշիլ ցանկայ յանուանէ հայ-
ութեան, քան թէ ինքեանց փառս համարել. սակս լինելոյ
սերունդքն քաջացն Հայկայ և Արամայ, ըստ հաւատոյ մասին
նոյնպէս չունին զջերմ զգացումն և բազումք խոտորեալք են
յաղանդն Փրիմէսոնութեան. ունին զմի եկեղեցի, և զմի Դըպ-
րոց։ Տունք 'ի նմա են 20. արականք 51. և իգականք 45,
յազգէ Հայոց։

ԿԱԼԿԱԹԱՅ։ Մայրաքաղաք Հնդկաստանի, 'ի սմա քան
դայլ քաղաքս Հնդկաստանի շնորհիւն Աստուծոյ առաւել
ծաղկեալ են յայսմ դարու հայազգի ժողովուրդք։ Բնակիչք
'ի նմա են 113 տուն, 345 արուք, 297 իգականք, և յիսու-
նաչափ օտարականք։ Ունին զմի եկեղեցի Նազարէթ անուն
շինեալ յաղայ Նազարայ, որ ունի եօթն հարիւր հա-
զար ռուփաչափ կարողութիւն, որոյ մեծի մասն են 'ի վերայ
անշարժ կալուածոց։ Սովորաբար երեք վիճակաւոր քահա-
նայք լինին 'ի նմա. Կառավարի եկեղեցին 'ի չորս աւանդա-
պահաց, 'ի միոյ եկեղեցպանէ՝ և յերից խորհրդակցաց կա-
մաւորի կոչեցելոց, որք հասարակաց ժողովով ընտրեալ հաս-

տատին և փոփոխին ։ Եկեղեցին ամսական բաշխէ զհասու-տեալ տուրս աղքատաց 1500, ց 2000 ռուփի կումպանեայ ։ Ունին զմի Դպրոց Մարդասիրական Ճեմարան կոչեցեալ, որ հաստատեցաւ 'ի 1821 ամի ։ Թէպէտ յընթացս այսչափ ամաց բազումք եղեն որք լուսաւորեցան յայնմ Դպրոցի, այլ որ-չափ անունն է՝ չէ ըստ անուանն արդիւնք լուսաւորու-թեանն ։ Վարժապետ 'ի նմա վասն հայկական դպրութեան է գիտնական Պարոն Յովհաննէսն Ավդալեան, ծանուցեալ ոք ըստ բարեպաշտութեան մասին, որ մինչև ցարդ երեսուն և հինգ ամք են զի վաստակի յայնմ պաշտօնի յաղագս լուսաւորու-թեան ազգային մանկտեաց ։ Հայ բնակիչք սոյն քաղաքի իբրև քսան տուն են վաճառականք, յորոց վեց կամ ութն տունն են ականաւոր յոյժ, որոց առաջինն է տունն Աբգարեանց ։ (Էին և ամօք յառաջ վաճառական երևելի տունն Աղ-ա-բէկ, կամ Աղաբէգեանց, այլ սնանկացան յամի 1850, և ըստ Աղ-ա-բեկ անուանն բեկին և զտունս բազմաց) ։ Ունին և օրէնս-գէտ փաստաբանս, դրագիրս և զմի բժիշկ Պարոն Սարգիս Շիր-խոռեան անուն ։

ՋԻԶՐԱՅ ։ Էր սա յութևտասներրորդ դարուն առաւել ևս առաջագէմ և կային 'ի նմա բազում տունք յազգէ Հայոց, այլ 'ի ծաղկիլ առաջադիմութեանն Կալկաթայի՝ մնաց սա յետա-դաս ։ Վեց տունք են 'ի նմա յազգէ Հայոց (ըստ թուահաշ-ւոյն որ եղև 'ի 1855 ամի) և կան 'ի նմա արու և էգ հոգիք իբրև քսան ։ Ունին զմի եկեղեցի սուրբ Յովհաննէս անուն, ո-րոյ կառավարութիւնն կախումն ունի 'ի պաշտօնատարաց Նա-զարէթայ եկեղեցւոյն Կալկաթայ ։

ԴԻԱՔԱՅ ։ Քսան և չորս տուն Հայք կան 'ի նմա, յորս են 55 արու և 39 իգական բնակիչք ։ Ունին զմի եկեղեցի յանուն սուրբ Յարութեան ։ Մեծ մասն 'ի բնակչաց անտի են կալուա-ծատերք ։ Կայր առաջագէմ հանգստացեալ յայնմ քաղաքի իբրև քառասուն ամօք յառաջ աղայ Յարութիւն Մէքայէ-լեան, որոյ միլիոնաւոր հարստութիւնք սպառեցան, և հա-զիւ թէ մնաց ութ կամ տասն լաք ռուփի բաժին երկուց դստերաց նորա ։

ՍԵՅԴԱԲԱԴ ։ Ունի զհինգ տուն հայ բնակիչս , զ14 արու և զինն իգականս ։ Ականաւորքն 'ի ժողովրդոց են Վահան և Յովհաննէս Մնացական Վարդանեան , որք ունին զգործարան եղակի և մետաքսի ։

ՓՈՒԱԼԻԵՐ ։ Բնակէր անդ իբրև քսան ամօք յառաջ ականաւոր զօրապետն կոչնէր Յակոբ Պետրոսեան , որ նշանաւոր ոք էր թէ ըստ ազգասիրութեան և թէ ըստ հարստութեան մասին, շինեալ էր վասն իւրեանց զժամատուն և պահէր զքահանայ , այլ յետ վախճանելոյ նորա՝ որդին ոչ գնաց ընդ շաւիղ բարեպաշտութեան և ազգասիրութեան հօրն իւրոյ , այլ գնաց ընդ ճանապարհ բահաղու ։ Ուստի սպառեցան ստացուածք նորա ոչինչ օգուտ սակս ազգին ընծայելով ։ Կին նորա ժրագլուխ Հեղինէ անուն՝ համանման բարեպաշտութեան առն իւրոյ վառուն հաւատով , կամեցաւ զմեծ օգուտ ընծայել ազգին իւրում, այլ հարստութեանն որս եղեալ աշխարհասիրին՝ ունայնացաւ բարինպատակն նորա , այլ ինձ այսպէս թուի թէ Աստուած ոչ կորուսանելոց է զվարձս նորա ։

ՎՆԱԲՕԼ ։ Անուամբ միայն նշանակի վիճակ կամ թեմ Ամենափրկչեան վանից , այլ ոչ զժողովրդոց այնր և ոչ զհանգամանաց նորա կայ տեղեկութիւն ինչ ։

ՍԻՆԿԱՓՈՒՐ ։ Քաղաք վաճառաշահ , յորս կան 8 տուն հայք , 29 արականք և 26 իգականք․ գործ նոցա է վաճառականութիւն ընդ Չինաստանի և ընդ Հնդկաստանի ։ Ունին զմի եկեղեցի շինեալ իբրև քսան և հինգ ամօք յառաջ ։ Այս երեք ամ ժամանակ շարունակեցաւ Ուսումնասէր անուն լրագիրն ։

ՊԻՆԱՆԳ ։ Քաղաք Թերակղզի , յորս կան երկու երևելի գերդաստան Յարութիւն Անտոն անուամբ , որք պարապին գործով վաճառականութեան ։

ԲԹԱՒԻԱՅ ։ Մայրաքաղաք Ջաւայ կղզւոյ ընդ Տէրութ Հոլանդացւոց , կան անդ եօթն տուն հայք բաղկացեալ 'ի20 արուաց և 'ինոյնչափ իգականաց։ Վաճառականք են ըստ մեծի մասին ։ Եռանդն ազգասիրութեան և հայրենասիրութեան

վառուն՝ ներգործող և մշտարծած է 'ի բնակիչս նորա, յարում և ամ ըստ ամէ առնեն առաջադիմութիւն: Աստ բնակի Տիկին Մարիամ Յակոբ Յարութիւնեան, խնամածուն որբոց և այրեաց՝ բարերարն չքաւորաց և կարօտելոց, և ողջակէրն մխիթարուն ըստ տրոցն առատութ մասին՝ ամենայն յանուն ԱՅ խնդրարկուաց: Այս փոքրախումբ ժողովուրդ՝ զմեծամեծս գործեցին յօգուտ ազգին, զի 1853 ամի հիմնարկեցին և կառուցին մի զեկեղեցի յանուն սրբոյն Յովհաննու, հաստատեցին և պահեն զգանձանակ յանուն աղքատաց Ջուղայու, 'ի 1854 ամի սկզբնաւորեցին և 'ի 1855 ամի հիմնաւորեցին զվարժատուն մի ազգային «Մանուկ և Յարութիւն» անուն: Առ հայրենիս ունին և շարունակեն զսէր և զկարեկցութիւն բարեզգաց, և վերջապէս որպէս խորհեն սակս անձնական օգտից իւրեանց և առաջադիմութեան, նոյնպէս և խորհեն յաղագս ազգային առաջադիմութեան և օգտից Ջուղայու: Սկզբնաւոր վառուն ազգասիրութեան նոցա է այն՝ զի ամենայն բնակիչք նորա հայք են գաղթեալք 'ի Ջուղայոյ, յորում մնեալ գոլով 'ի ժամանակս պատանեկութեան իւրեանց և ապա գոլով զփորձ տառապանաց և նեղութեան՝ 'ի մեծութեան իւրեանց յաւելուն զկարեկցութիւն իւրեանց և զգութ առ ազգայինս և առ հայրենիս: Ըստ նոցին օրինակի են և ամենայն հայք որք գտանին 'ի զանազան քաղաքս Ջավայի, զի և նոքա ըստ սոցին սակի գաղթեալք են 'ի Ջուղայոյ և անդ շնորհիւն Աստուծոյ և իւրեանց բարեջան աշխատասիրութեամբ հանդիսացեալ են, և 'ի յաջողուածս օր ըստ օրէ յառաջադիմն նկրտեն: Ի Հնդկաստան ես իբրև կիսադար մի յառաջ ըստ սոցին օրինակի վառուն էր ազգասիրութիւն և հայրենասիրութիւնն յամենայն մերազնեայս: Ի նոսա սակս՝ որք մնեալ 'ի Ջուղայ 'ի պատանեկութեան իւրեանց, վաճառաշահութեամբ զօրացեալ էին ի Հնդկաստան. զի սոն յաղագս ազգային թագաւորութեան վերականգնելոյ տալով զիւր խոկմունս՝ շարադրէր զկանոնագիրք յաղագս թագաւորական կառավարութեանն, սոն աւանդէր զգումար վասն հաստատութեան Դպրոցաց, միւս սոն գնոյ կամէր գնել

դմեան մի երկրին Հայաստանի, և միւսք ամենեքին 'ի նմին օ-րինակ խոկմունս պարապէին և 'ի ժամանակս իւրեանց զմե-ծամեծս գործեցին, զորոց երկարաբանել արտաքոյ պատ-մութեանս կարգի գործ լինելով՝ համառօտեալ անցանեմ, այլ աւաղ և հազար անգամ ափսոս, զի մինչ ծնանն որդիք նոցա 'ի հայրենիս և սնան սևամորթ հնդիկ կանանց կաթամբ, օտարանալ սիրեցին յազգէ իւրեանց, չիջեալ գտան ազգա-սիրական եռանդն 'ի նոսա, և վերջապէս եղեն մարդիկ խոր-թացեալք 'ի շաւղաց հարց իւրեանց: Թէպէտ ոչ վասն ամե-նեցուն են խօսք իմ, զի տակաւին բազումք կան որք վառ-պահեն զսէր ազգի, եկեղեցւոյ և հայրենեաց 'ի սրտի իւրեանց՝ այլ ընդհանրապէս խօսելով տարբերութիւն մեծ կայ ընդ մէջ նախորդ և արդի Հնդկահայոց ըստ ազգասիրութեան մա-սին, այլ այսու ամենայնիւ, եթէ ազգասիրութիւն կայ՝ տա-կաւին 'ի Հնդկահայս կայ՝ բարեպաշտութեամբ զճշմարտութիւն բանիս գտանելով:

Սկիզբն բնակութեան ազգի Հայոց 'ի բարեբեր կղզին Ջաւայ եղև 'ի սկզբան ութ և տասներրորդ դարու:

ՍՈՒՐԲԱՅԻԱ: Ունի զհինգ տուն հայ բնակիչս բաղկացեալ 'ի 22 անձանց, որոյ կէսն են արք և կէսն կղականք, անուա-նին 'ի նոսա է Պարոն Ղազար Յոհանեան, որ ունի զգործարան շաքարի և առնէ վաճառականութիւն:

Նշանաւոր է և Պարոն Մանուկ Յորդանանեան, որ է այր մեկնեալ 'ի սիրոյ աշխարհի, սիրող և պարապող ընթերցմանց, և ըստ առաքինութեան մասին զոյգ ընդ ազգասիրութեանն վկայեալ 'ի բազմաց:

ՉԻՐԻԲՕՆ. ԹԳԱԼ. և ԲԷՆԻՈՒՄԱՍ: Գիւղաքաղաքք 'ի Ջաւայ, յորս կան չորս տուն հայք բաղկացեալ 'ի 16 բը-նակչաց:

ՊԳԱՐԱՅ: Ունի զտունս երկու և զբնակիչս 19: Յայսմ սահմանի 'ի գաւառն Սումբրինգայ բնակի Պարոն Մարգարն Սուքիասեան, որ է գաւառապետ և իշխան նոյն Սումբրինգայի, որոյ կալուածք են իւր իսկ արծաթագին:

ՍՄԱՐԱՆԳ: Ունի զհինգ տուն բնակիչս որք են կալուածա-

վառումն՝ ներգործող և մշտարծած է 'ի բնակիչս նորա, յարում և ամ ըստ ամէ առնեն առաջադիմութիւն։ Այս բնակի Տիկինն Մարիամ Յակոբ Յարութիւնեան, խնամածուն որբոց և այրեաց՝ բարերարն չքաւորաց և կարօտելոց, և աղբիւրն մխիթարութե ըստ որոցն առատութե մասին՝ ամենայն յանուն ԱՅ խնդրարկուաց։ Այս փոքրախումբ ժողովուրդ՝ զմեծամեծս գործեցին յօգուտ ազգին, զի 1853 ամի հիմնարկեցին և կառուցին մի զեկեղեցի յանուն սրբոյն Յովհաննու, հաստատեցին և պահեն զգանձանակ յանուն աղքատաց Ջուղայու, 'ի 1854 ամի սկզբնաւորեցին և 'ի 1855 ամի հիմնաւորեցին զվարժատուն մի ազգային «Մանուկ և Յարութիւն» անուն։ Առ հայրենիս ունեն և շարունակեն զսէր և զկարեկցութիւն բարեգզգաց, և վերջապէս որպէս խորհեն սակս անձնական օգտից իւրեանց և առաջադիմութեան, նոյնպէս և խորհեն յաղագս ազգային առաջադիմութեան և օգտից Ջուղայու։ Սկզբնառիթ վառումն ազգասիրութեան նոցա է այն՝ զի ամենայն բնակիչք նորա հայք են գաղթեալք 'ի Ջուղայոյ, յորում մնեալ գոլով 'ի ժամանակս պատանեկութեան իւրեանց և տեսեալ գոլով զփորձ տառապանաց և նեղութեան՝ 'ի մեծութեան իւրեանց յաւելուն զկարեկցութիւն իւրեանց և զգութ առ ազգայինս և առ հայրենիս։ Ըստ նոցին օրինակի են և ամենայն հայք որք գտանին 'ի զանազան քաղաքս Ջավայի, զի և նոքա ըստ սոցին սակի գաղթեալք են 'ի Ջուղայոյ և անդ շնորհիւն Աստուծոյ և իւրեանց բարեջան աշխատասիրութեամբ հանդիսացեալ են, և 'ի յաջողուածս օր ըստ օրէ յառաջադիմել նկրտին։ Ի Հնդկաստան ևս իբրև կիսադար մի յառաջ ըստ սոցին օրինակի վառումն էր ազգասիրութիւն և հայրենասիրութիւնն յամենայն մերազնեայս։ Ինոսա սակս՝ որք մնեալ 'ի Ջուղայ 'ի պատանեկութեան իւրեանց, վաճառաշահութեամբ զօրացեալ էին Ի Հնդկաստան. զի սմն յաղագս ազգային թագաւորութեան վերականգնելոյ տալով զիւր խոկմունս՝ շարադրէր զկանոնագիրս յաղագս թագաւորական կառավարութեանն, սմն աւանդէր զպատմար վան հաստատութեան Դպրոցաց, միւս սմն գնոյ կամէր գնել

դիմաց մի երկրին Հայաստանի, և միւսք ամենեքին ՚ի նմին օ-
րինակ խոկմունս պարապէին և ՚ի ժամանակս իւրեանց զմե-
ծամեծս գործեցին, զորոց երկարաբանել արտաքոյ պատ-
մութեանս կարգի գործ լինելով՝ համառօտեաւ անցանեմ,
այլ աւաղ և հազար անգամ ափսոս, զի մինչ ծնան որդիք
նոցա ՚ի Հնդիկս և սնան սևամորթ հնդիկ կանանց կաթամբ,
օտարանալ սիրեցին յազգէ իւրեանց, չինջեալ գտան ազգա-
սիրական եռանդն ՚ի նոսա, և վերջապէս եղեն մարդիկ խոր-
թացեալք ՚ի շաւղաց հարց իւրեանց: Թէպէտ ոչ վասն ամե-
նեցուն են խօսք իմ, զի տակաւին բազումք կան որք վառ
պահեն զսէր ազգի, եկեղեցւոյ և հայրենեաց ՚ի սրտի իւրեանց՝
այլ ընդհանրապէս խօսելով տարբերութիւն մեծ կայ ընդ
մէջ նախորդ և արդի Հնդկահայոց ըստ ազգասիրութեան մա-
սին, այլ այսու ամենայնիւ, եթէ ազգասիրութիւն կայ՝ տա-
կաւին ՚ի Հնդկահայս կայ՝ բաղդատութեամբ զճշմարտութիւն
բանիս գտանելով:

Սկիզբն բնակութեան ազգի Հայոց ՚ի բարեբեր կղզին Ջաւայ
եղև ՚ի սկզբան ութ և տասներորդ դարու:

ՍՈՒՐԲԱՅԻԱ: Ունի զհինգ տուն հայ բնակիչս բաղկացեալ
՚ի 22 անձանց, որոց կէսն են արք և կէսն կանայք. անուա-
նին ՚ի նոսա է Պարոն Գասպար Յոհաննեան, որ ունի զգործարան
շաքարի և առնէ վաճառականութիւն:

Նշանաւոր է և Պարոն Մանուկ Յորդանանեան, որ է այր
մեկնեալ ՚ի սիրոյ աշխարհի, սիրող և պարապող ընթերցմանց,
և ըստ առաքինութեան մասին զոյգ ընդ ազգասիրութեանն
վկայեալ ՚ի բազմաց:

ՉԻՐԲՕՆ. ԹԳԱԼ. և ԲԷՆԻԹԻՄԱՍ: Գիւղաքաղաքք
՚ի Ջաւայ, յորս կան չորս տուն Հայք բաղկացեալ ՚ի 16 բը-
նակչաց:

ՄԳԱՐԱՅ: Ունի զտունս երկու և զբնակիչս 19: Յայսմ
սահմանի ՚ի գաւառն Սումբրինգայ բնակի Պարոն Մարգարն
Սուքիասեան, որ է գաւառապետ և իշխան նոյն Սումբրինգայ,
որոյ կալուածք են իւր իսկ արծաթագին:

ՍՄԱՐԱՆԳ: Ունի զհինգ տուն բնակիչս որք են կալուածա-

տեարք ունեն զգործարան շաքարի և ըմպելի, և ոմանք ատ-նեն զվաճառականութիւն։ Անուանի է 'ի նոսա Պարոն Պօղոս Անդրէասեան, որ ունի զկալուածս և յամին 'ի գործարանէ իւրմէ տասանայ դքսան հազար փիթուլ շաքար։ 5։

---

(1). Հոփոր Ա. Գլուխ։

(2). Այն հանգոյն պահէ 'ի մատենադարանի ուխտոյ Անտոփրիկեան վանի։

(3). Գաղափար նոյն հրովարտակի պահել 'ի Լահօրէքեայ՝ պահէ 'ի գրչագրի ուխտոյ Անտոփրիկեան վանի։

(4). Զուղայեցէք յաղագս հրէից պատճառի ոչ յօժարեցան ընդ հաստատելն Նահապետի, նախ վասն ոչ ստանալոյ ընդունել զմասնաւոր Զուղայեցւոց, և երկրորդ յաղագս գոլոյ վասն նորա հարձէք ըն-ներոյ հանդերձ հաստատութեան։ Յայն սակս Զուղայեցէք ծածա-կեալ շնորհն ստ մեծանութիւնն ուխտոյ Էջմիածնի յամի 1693, որ երկերեակ օրինակ պատգրեն 'ի սուրբ Անտոփրիկեան վանքն և պարածել զայն ընդ ամենայն սարէք։ Արգել սոս զօրինակ այնր նամակի ոչ առնելորդ համարեմ յաղագս ընդելոյ ողբայէն հնութեան, թէպէտ արդարոց ձարգեն պատմութեան է գործ։

(5). 1. Փեթուլն է 135. Անգղիական Գրոց։

# Ը.

Սուրբ և սիրելի պաշտօնակցաց մերոց, և հարազատաց հաւատարմաց երջանկացելոց եղբարց Ճշմարտախոհից և ուղղափառաց, վերադիտողացդ սրբազանից զետեղելոց 'ի գերագահ և 'ի գերահռչակ, 'ի սուրբ և 'ի սրբարար Աթոռդ Էջմիածին 'ի մայրդ հասարակաց, նաև որոց ընդ հովանեաւ դորին որդեկացելոց յաշխարհիդ Արարատայ և յԱտրպատականի, քահանայապետաց, և քահանայից, և համօրէն լման ուխտի ժառանգաւորաց և վիճակաւորաց սուրբ եկեղեցւոյ։

Ողջոյն 'ի Քրիստոս մատուցանեմք սիրալիրական սիրով որդութեան երկնաւոր խաղաղութեամբն հանդերձ մեք 'ի Շօշ եղեալ քրիստոնէախումբ դասք եկեղեցականաց և աշխարհականաց ։ Ընդ որոյ և որով ծանուցանեմք պատուականութեան ձերոյ զեղելոց իրաց դիպելոց, որ 'ի մերում եղեալ Թշուառութեան ամանակի յանգգուշութեան և յանպատրաստութեան մերոյ պատճառէ, որով կամք ամենեքեան երերեալ և տատանեալ իբրև զնաւ խռովեալ յալեաց ծովու ։ քանզի սկիզբն և աւարտ խաղաղութեան զբարեկարգութիւնն լինել իմանամք, զի ուրանոր բարձեալ է բարեկարգութիւն՝ արմատացեալ լինի աղմուկ խռովութեան, որպէս և տեսանեմք մերով տեսանելեօք ։ քանզի որքան վախճան առեալ է 'ի կենցաղոյս ընդ երանելեան հանգուցեալ երջանիկ Հայրապետն մեր Տէր Եղիազար՝ վրդովումն խռովութեան ոչ պակասի 'ի մէնջ, պատճառն անխոհեմ և անհանճար մարդոց գործ և արարմունք, որք յիւրեանց փառամոլութեանց ախտիցն ձգեալք և պարապեալք, որոց զլուխ և զօրավիգ զաստապատցի Մինասն, որ ոչ զրոց աշակերտեալ 'ի մանկութենէ, և ոչ ճշմարտութեան վարուց հետևեալ, ոչ զտեսականն ծանուցեալ, և ոչ գործնականին մասին հաղորդեալ, այլ զօրէն գռեհկաց զերկրաւորս և եթ ողջունեալ և 'ի նոյնն ցանկ գեգերեալ, ժամադիր եղեալ ընդ նահապետին ձեռագրով և կնքով միաբանց թէ միշտ 'ի քո կաթուղիկոսութեանդ ես եղէց աթոռակալ, այսու պայմանաւ յառաջեցուցեալ զայդ գործ, որ մեզ ամենեցուն ստոյգ և իբաւապէս յայտնի եղև որ այդ այդպէս է, և առաւել քան զայդ գիտակ եղաք ամենայնի՝ զոր չէ պարտ մի ըստ միոջէ արձանագրուցանել 'ի գիրս ։

Եւ արդ ով իցէ աստապատցի Մինասն որ զայդ առնիցէ, միթէ ազգս արծաթագին է Հօր դորա, որ՞ում և կամիցի վաճառիցէ յազգս պորտոյ և յորովայնի իւրոյ, եթէ այդպիսի է կարգ և կանոն կաթուղիկոս ձեռնադրութեան՝ ով պակաս քան զնա որ ոչ կարիցէ զոմն կատարօղ աթոռի իւրոյ ձեռնադրել կաթուղիկոս, քանզի 'ի ձերում աշխարհի յոլովք

դոն վանորայք և Եպիսկոպոսունք նաև 'ի մերս աշխարհի. եթէ այդպէս իցէ որ առանց ընտրութեան և վկայականի թըղթոյ ձեռնադրեալն է կաթուղիկոս, որում պարտ է հնազանդել՝ ո՞վ է որ ոչ կարիցէ իբրև զաստապատացին օծանել զոք 'ի պատիւ կաթուղիկոսութեան, ո՞վ է որ պակաս է քան զնա որ օծեալ նորա լիցի կաթուղիկոս, և այլոցն ոչ, եթէ նորայն ընդունելի՝ ուրեմն այլոցն պարտ է լինել և ընդունելի իսկ եթէ այլոցն ոչ՝ ուրեմն և նորայն ոչ, տեսնեմ որ աստապատացին ոչ է 'ի կարգի հասարակաց, այլ յոռի և անարգ քան զամենեսեան յաղագս անուսման և անվարժութեան իւրոյ, զոր տգիտութիւնն մայր գոլ սահմանեցին ամենայն մոլութեանց, որով դա կայ պարաւանդեալ որ այդպիսի ոչրագործութիւն գործեաց 'ի մէջ ազգիս, որ և յետ կատարման գործոյն գրեալ են առ մեզ կրկին պատճառ։

Նախ թէ ըստ կտակի հոգևոր տէրին արարաք զայս, երկրորդ թէ 'ի ձէնջ առաքեալ թղթոյն բանիւն գործեցաք։ Առաջնոյն զայս պատասխանեմք, թէ Եղիազար հոգևոր Տէրն ոչ է արարեալ զայդ կտակ, որպէս և կանխագոյն յայտ իսկ է ձեզ, և յետոյ մեզ ևս եղև զըստոյգն յայտնի. զոր եթէ կամիք մեք ծանուսցուք ձեզ զճշմարիտ կտակ հոգևոր տէրին, արդ որովհետև արար՝ վասն էր ոչ դրոշմեաց ձեռամբ իւրով 'ի քարտէսի՝ զոր կանխագոյն իսկ ունէր սովորութիւն յաւարտ բանին դնէր ձեռս ասելով՝ թէ առ 'ի հաստատութիւն բանիս եդի զձեռագիր 'ի վերայ. որ քանի թուղթ առ մեզ գոյ այսպիսի գրեալ և դրոշմեալ, հարկաւորապէս և առաւելապէս դմին իրի յաւէտ պարտէր զայդ սովորութիւն 'ի գործ ածել, զի համաշխարհականէ բանդ և իրագործութիւն, որով երևի ոչ գոլ ճշմարիտ զասացեալն։ Ասեմք թէ և ասացեալ ևս լիցի, հայեցարուք 'ի կարգս և 'ի կանոնս հարցն սրբոց և երանելի նախնեաց, եթէ այդպէս է սովորութիւն և կարգ՝ կաթուղիկոսի, թարց ժողովոյ Եպիսկոպոսաց և վարդապետաց, նաև հարց վանականաց լեռնականաց կրօնաւորաց, և աշխարհաժողով հանդիսի, ինքնահաճ կամօք ըստ ախորժակաց սրտի իւրոյ, կոչեսցէ զոք 'ի պատիւ

կաթուղիկոսութեան, եթէ այնպիսին ընդունելի եղեալ է՝ և այժմ լինիցի, ապա թէ թիւր և զարտուղի է յընթացից նախնեաց՝ ուրեմն ոչ է ընդունելի, եթէ հարցն առաջնոց և նոցին կանոնաց ոչ անսամ՝ գոնէ 'ի մերումս եղեալ ժամանակի հարցն անսասցեն, որ 'ի թուահաշուութեան տոհմիս հայկականս հազար երրորդի հարիւրորդի և տասն և. հինգ ամի մեծանուն վարդապետք, երևելիք և նշանաւորք ժողովեալ են 'ի սուրբ Աթոռդ Էջմիածին հետևելով հարցն սրբազանից, և քանի գլխով քան կարգեալ յաղագս կաթուղիկոս ձեռնադրութեան, թէ որ ոչ լինի այնպէս՝ խոտելի է, որոց գրեալ բանքն լուսաւոր հոգի Մովսէս վարդապետին ձեռնագրով և այլ սրբազան վարդապետացն կնքով և գրով առ մեզ է, որոյ սաւատն և սա առ ձեզ առաքեցաք, եթէ այնց բանից միոյն համաձայնի արարեալն ներկայիս՝ ապա է մեզ ընդունելի, իսկ թէ ոչ՝ մեք ումեք ոչ եմք պարտական եթէ զպարտսն պահանջեսցէ, այսքան առ առաջինն: Երկրորդին զայս տամք պատասխանի, թէ գրեալ եմք մեք առ Տէր Եղիազար կաթուղիկոսն և ոչ կարեմք յուրաստ լինել, թէ որքան դու կենդանի ես՝ մեր կաթուղիկոս դու ես և յետ քո կատարօղեմք կամաց քոց, և քոյոցն առնելոց եմք կաթուղիկոս. ահա Եղիազար հոգևոր տէրն ոչ մի ունէր աշակերտ՝ այլ յոլով, եթէ մեք յանուանէ մարդոյ անուն գրեալ եմք, ապա թէ մեզ վերայ հաստատի բանդ, իսկ թէ անորոշակի եմք գրեալ՝ ապա զուր և նանիր է մեզ վերայ առացեալդ և անպատշաճ արարեալդ. 'ի յաւիտենից ոչ ոք լուաւ թէ նախքան զթաղումն վախճանեալ կաթուղիկոսի օծանիցի նոր կաթուղիկոս, զոր ահա եղև, մի թէ Եղիազար հոգևոր Տէրն այր ոգէտ երևեցաւ յաչս ոմանց, քանզի իւր խոհեմութեամբն և խորագիտութեամբն 'ի գալն յԵրուսաղէմայ նստաւ 'ի Կոստանդնուպօլիս, առելով թէ ոչ եկից 'ի սուրբ Աթոռն մինչև ոչ գայցէ մանսար հրապահանու և յորժամ առաքեցաք՝ իսկոյն եկն, այսպէս լինի արարք առն խոհեմագունի, եթէ յաղագս քինքեան այսպէս խորհէր՝ ապա վասն այլոց զի՞արդ հրամայէր լինել առանց մեր մանսարի, զոր յետ գործոյն կատարման

թարց վկայականի թղթոյ, ապա խնդրեալ էին 'ի մէնջ մանսաւր զոր մեքն արդեանս գրեալն յայնժամ էաք գրելոց. բայց երկրորդ Հողեփեռնէոս և Գոդգոսս անկեալ և կործանեալ զաւետս կաշառակուր եղեալ և արծաթով կուրացեալ. կըրկին և երեքկին անգամ ընկալեալ զկաշառ լիպասի հուքմ հանեալ և առաքեալ առանց մեր մանսարի, սալահի և գիտութեան, որոյ վասն և ինքն կործանեցաւ, և նոր Քալանթար հաստատեցաւ Մահտեսի Խօջա Պետրոսի որդի Քրիստոսիս օրհնեալ Խօջա Ղուկասն ամենեքին յար և նմանն բարեպաշտութեան հօրն իւրոյ: Այսուհետև կաշառն անգործ եղեալ ճշմարտութիւնն է թագաւորելոց և ուղղութիւնն հաստատելոց: Ժամէ այսուհետև մեզ սիրելիք 'ի քնոյ զարթնուլ, քանզի գիշերն մերժեցաւ և տիւն մերձեցաւ: Զայս թուղթ վասն այնր առաքեցաք առ մեծութիւն ձեր զի ցուցանիցէք կաթուղիկոս եղնողիդ. եթէ կամի ղա բռնութեամբ, և ուժգնութեամբ բազկի իւրոյ տիրել մեզ՝ ոչ կարէ, քանզի մեք ոչ ումեք եմք արծաթագին, զի բարձրեալն որոյ տէրութիւնն սեփականէ և իշխանութիւնն բնութեամբ՝ բռնաբար ոչ ումեք տիրէ, թող թէ մարդ: Իսկ ապա թէ արդարութեամբ և իրաւամբք տիրէ՝ հնազանդիմք և մեք առաւել քան զառաւել: Եւ թէ զինչ է արդարութիւն և իրաւունք, այս է գնալ անխոտոր զշաւիղս յառաջնոցն սրբոց, եթէ նախնեացն և զերագունիցն ոչ՝ սակայն յետնացն որ 'ի մերում ժամանակի զառաջնոցն ստացան վարս և առաքինութիւնս, ճշմարտութեան կարգաց և կրօնից հետևելով, զլուսաւոր հոգիք Մովսէս և Փիլիպպոս կաթուղիկոսացն ասեմք, որ 'ի վերջին ժամանակս փայլեցան իբրև զարեգակն ջահաւորեալք 'ի մէջ սուրբ եկեղեցւոյ և յաղագս Հայաստանեայց: Եւ զինչ է խնդիր մեր և զորս՝ համառօտաբար կարգեցուք, Երկոտասան գլխօք: Նախ զի կաթուղիկոսն միշտ և անպարապ ընթերցցի զԱստուածային գիրս և ինքն նովիմբ վարեսցի և վարեսցէ զեկեղեցի: Երկրորդ զի զպարատուսն, և ըղդասատուսս հաստատեսցէ յամենայն տեղիս, որպէս սովորութիւն է այլազգեաց Քրիստոնէից, և մանաւանդ թէ մեզ իսկ

գլխովքն նաեւ պարսից եւս, զոր գիտողացն է քաջայայտ թէ որքան ունէին ջանս և փոյթ յայդմ իրի, քանզի շինութիւն և հաստատութիւն ազգի գովալ լինի։ Որպէս և տեսանեմք խոտպանեցեալ և անպիտանացեալ ազգն վրաց յաղագս ոչ ունելոյ փոյթ զայնմանէ։ Երրորդ զի և ինքն ասուեղէն ըղձեցցի և ոչ բամբակեղէն կամ վշեղէն և ոչ այլոց թոյլ տայցէ։ Չորրորդ զատ և առանձին 'ի միաբանից ոչ յաղօթս կացցէ, և ոչ հաց կերիցէ, այլ ընդ միաբանսն հաղորդեսցի, 'ի յամենայն աղօթսն և 'ի հացկերոյթ սեղանատեղւոն։ Հինգերրորդ մի լիցի առանձին տնտեսութիւն և մառան, և մի իմ և քո 'ի մէջ բերիցէ 'ի հասարակ տան, ինքն իւրայովքն աւելորդօք քան զհարկաւորն շատացեալ, և հասարակն անխնամ և անայցելու մնացեալ կարօտ հարկաւորին, այլ զամենայն մի լիցի, եթէ գանձարան եթէ շտեմարան, եթէ տնտեսութիւն և եթէ սեղանատուն։ Վեցերրորդ մի զարդարեալ սիգաքայլ երիվարօք յոխորտացեալ յօրանայցէ, այլ կիսիշօք շրջեսցի, որպէս և տեսեալ իսկ եմք զնախնիսն առ հօր մերովք։ Եօթներրորդ ոչ ունիցի երկու կամ երեք և չորք փայեակ որպէս այժմս լսեմք, այլ միով սուրհանդակաւ բաւականանալ որպէս նախնի կաթուղիկոսունքն։ Ութերրորդ նոր զարմանս և ծիծաղելիս ոչ առնել, զի, թէ քարշել առաջի ըստ օրինի իշխանաց եզակս մէկ, երկու, և կամ աւելի և պակաս, և կապել թիւր և ղողարայ, որ կարի հեռի է 'ի հոգևոր իշխանութենէ, զի գէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր՝ այլ հոգևոր ըստ առաքելոյ։ Իններրորդ ոչ պահել մատաղ մանկունս զսպասաւորս առաջի զարդարեալ զգեստիւք 'ի գայթակղութիւն տկարամտաց, այլ կատարեալ հասակաւ և մօրուօք սեւազգեստ և խոշորահանդերձ 'ի յամօթ հակառակորդաց բամբասողաց։ Տասներրորդ արանց տգիտաց և անվարժից մի տայցէ պատիւ եպիսկոպոսական, և իշխանութիւն վարդապետական, քանզի նոքա որ ունէին ջան, և աշխատասիրութիւն ուսման՝ տեսանելով զայլս թարց ջանից և աշխատանաց ընկալեալ զպատիւ եպիսկոպոսութեան և զաստիճան վարդապետութեան, և

նոքա յուսահատեալ խափանի լինին 'ի բարի յառաջադիմութենէ և մնայ ազգս 'ի մէջ անգիտութեան խաւարի յաղագս անընտրութեան ըստ Արիստոտէլի որ ասէ, եթէ կամիս բարեկարգութիւն տան, ընտրեա զլաւն 'ի վատթարէն և զհատակաւորն յանձնանէն. և ըստ իմաստնոյն թէ՝ գիտասս իմաստունք ժառանգեսցեն: Մետասաներրորդ՝ ոչ ածել պատիժս անպատշաճս 'ի վերայ ուրուք անյարմար կարգի և աստիճանի, որպէս լսեմք թէ այս ինչ մարդոյ մուրուս կըտրեալ է, և այս ինչ մարդ 'ի սիւն կապեալ, ոչ միանգամ լսեմք՝ այլ յոլովակի, ուստի՞ ունի օրինակ զայդպիսի անօպայ արարմանց, զայր եպիսկոպոս առանց ժողովոյ և դատաստանի, 'ի ժամ հաց կերութեան և զինի ըմպութեան կապեալ 'ի սիւն և բրածեծ տալ առնել արանց սրիկայից և եղուզակաց և յետոյ զմուրուսն հատանել: Բարեպաշտն Կոստանդիանոս երբ արար զայդ Արիոսի թէպէտ և սպանման էր արժանի, և կամ փոքրն Թէոդոս առ Նեստոր երբ գործեաց զայդ, և կամ Հայրապետքն սուրբք երբ օրէնս վարկան և իրաւունք համարեցան այդպիսի դատաստանաւ դատել զեկեղեցականս և մանաւանդ եպիսկոպոս, որպէս գրէ սուրբն Կիւրեղ Աղեքսանդրացի յաղագս պղծոյն Նեստորի թէ՝ լուծումն արարաք զնա յեպիսկոպոսութենէ իրաւամբք ժողովոյն: Զի Մովսէս հոգևոր տէրն երբ արար զայդ և կամ լուսաւոր հոգի Փիլիպպոս կաթուղիկոսն, իբ ամ վարեալ զկաթուղիկոսութիւնն երբ և կամ ում մուրուս կտրեաց կամ սիւն կապեաց. նոյնպէս և Յակոբ հոգևոր Տէրն քսան և հինգ ամ կացեալ յաթոռն միայն Ոնոփրիոսին էած զայդ պատիժ, նմին աշխարհ վկայէր մահու գոլ արժանի, և ոչ լոկ պատժոյ, զոր այժմս տարի և կէս է քանիցս լսեմք զայդպիսի խայտառակեալ զուր և ունայն պատճառաւ, այդպիսի պատիժ քաղաքական օրէնի և դատաստանի է անկ և ոչ եկեղեցական: Վասն որոյ ոչ կամիմք զայր եպիսկոպոս կամ վարդապետ թարց ժողովոյ և կանոնաց դատել կամ պատժել, յորմէ պատճառէ վնասս յոլով ծնանի, զի ժամանակս չար է:

Երկոտասաներրորդ մի փոփոխեսցէ զԹեմ և զվիճակ Եպիսկոպոսաց ըստ Նմանութեան Բրքիշօյի և Շմուէլի, որ մինն զմեռեալ Եպիսկոպոսաց վիճակն յափշտակէր, իսկ միւսն և զկենդանի Եպիսկոպոսաց. որպէս գրէ քերթողահայրն Մովսէս 'ի վիպագրութեան իւրում։ Այլ ըստ ուղղիղ կանոնաց առաքելական և հայրապետական իւրաքանչիւր Եպիսկոպոս տիրէ յիւրում վիճակին, և իւրաքանչիւր Թէմ յիւրում աԹոռոյ կացցէ և մնասցէ՝ զոր 'ի բնէ ունի կարգեալ և հաստատեալ։ Բայց Թէ առաջնորդ Եպիսկոպոսն անուղղագործս ունիցի՝ դատեսցի ըստ իրաւանց կանոնաց եկեղեցւոյ, և որպէս արժանն է պատժեսցի, քանզի 'ի փոփոխմանէ և 'ի բաժանմանէ բազում չարիս ծնեալ է, ծնանի և ծնանելոց է, ըստ Տէրունական բանի՝ տուն, քաղաք, և ԹագաւորուԹիւն բաժանեալ կործանի. և զի ամենեցունց է քաջայայտ որ իւրաքանչիւր աԹոռ պսակեալ է ընդ իւրոյ վիճակին, որոց ոչ է պարտ բաժանիլ 'ի միմեանց. Թէպէտ յետ որբասէր ԿաԹուղիկոսին Տեառն Փիլիպպոսի, ոմանց բաժանումն եղեալ է, և այն ոչ կանոնական իրաւամբք՝ այլ յանիրաւ յարձակմանէ՝ որոց յայսմ հետէ ոչ կամիմք, և ոչ Թողացուցանեմք լինել զայն անկարգուԹիւն։ Եւ 'ի վերայ այսր ամենայնի, սաստապատեցի Մինասն արտաքսեսցէ և հալածեսցէ 'ի սուրբ ԱԹոռոյդ և յայրարատ գաւառէ, և կորուսցէ 'ի բնիկ տեղի իւր, և զոր ինչ առացեալ է և ունի՝ խլեսցէ 'ի ձեռացն, մորուս կտրելոյ, սեւն կապելոյ, և բրածեծ առնելոյ զա է արժանի, և ոչ այս և այն. հալածեալ կորուսանիցէք ձեռագրով որ այլ յերևան չկոխէ բարի է, ապա Թէ ոչ՝ ճշմարտին յայտնի է, մեք առնեմք արքունի հրամանաւ, և գիտեմք Թէ որպէս անպատմելի, և անասելի խայտառակութեամբ կորուսանելոց եմք հանդերձ դատապարտական պատժիւք, քանզի դա եւս բազմաչէքին կոչատօք կուրացուցանէր զայս պարշելի այրանկերպ դազանս յաղագս 'ի գլուխ հանելոյ զիւր չարութեան գործն, վասն որոյ ոչ կամիմք այլպիսի բանսարկու և շփոթող առն մնալ 'ի սուրբ և 'ի հռչակաւոր տեղիդ, այլ յանկեան ուրեք ծակամուտ կացցէ, որպէս և ար-

(11). Քաղուածք նշանակեալք 'ի առձեռին Հնդկաստանի՝ են ընդ իշխանութեամբ Բրիտանական կառավարութեան ։

(12). Գտեալ յօրինեալ և դրոշմեալ 'ի Մադրաս ։

(13). Արար Աղայ Պետրոսի Ոսկանեան, և չրաշ Աղայ Գրիգորի Սալթան. Տէր ։

(14). Աղայ Յովսէփ Ամրեան, որ 'ի Մադրաս, անէր մատադրութեան այնպէս, այլ ոչ ամբողջեցաւ ։

## ՅՕԴ. Օ.

Կալուածք Անդրէասեան վանի և պարգևագիրք առ ի ապահովութեան նոցին ։

ա. Կալուածք զոր ունի այժմ վանքն՝ ամփոփականեցան ըստ կրկին տեսակի, նախ զի մեծ մասն գնեցան հետ զհետէ 'ի նախկին Առաջնորդաց. և երկրորդ՝ զի 'ի ժողովրդոց բարեպաշտից ոմանց տուեալ եղեն նուէր առ վանքն 'ի յիշատակ հոգւոց իւրեանց (1)։ Ի զօրանալ բռնութեանցն 'ի Ջուղայ յեօթն և տասներրորդ դարու, մինչ բազումք լքեալք ըզտունս իւրեանց ելին և փախեան 'ի Ջուղայոյ, տունք նոցա մնացին անտէրունչ և սկսան աւերանալ, վասն որոյ տնօրինեցաւ զի որ կարողն է զամայի տունն հարթեսցէ և արասցէ այգի (2), ուստի յայնմ ժամանակի յոյժ դիւրագնով լինէր գնել զայգիս և զկալուածս ։

բ. Կալուածք վանին ըստ հին ցուցակին ։

| | |
|---|---|
| Դանգիրէնց Պողոսի այգի. | 4։ |
| Փիրէնց այգի. | 1.2։ |

| | |
|---|---|
| Շավէլէնց վախմին | 6 : |
| Լազարէնց տուն | 1 : |
| Ռէկումի այգի | 6 : |
| Մէթաղէնց այգի | 6 . 5 : |
| Խէրէվանի Յաննայի այգի | 7 : |
| Մէրխտատի այգի | 3 . 7 : |
| Կոստառի Ղալանդարէնց մուլք | 3 : |
| Յոհան վարդապետին | 6 : |
| Ղալանդարէնց տուն | 1 . 5 : |
| Կոլ սանումէնց տանի այգի | 1 : |
| Շահրիմանէնց բաքանին | 2 : |
| Միր Սահրադէնց տուն | 6 : |
| Վալաթէնց այգի | 13 . 5 : |
| Լորայելէնց այգի | 7 . 5 : |
| Սարկելի այգի | 16 : |
| Ռաղի Մէյդան | 6 : |
| Շամրիզ Ծատուրի այգի | 6 : |
| Պօղոս վարդապետի այգի | 2 : |
| Եղամալի այգի | 5 . 2 : |
| Թոփչէնց և Շախնաբաթի այգի | 7 : |
| Խաղողի այգի | 18 : |
| Կոզշաբէկէնց | 12 . 2 : |
| Տէր Պետրոսի | 2 . 7 : |
| Գրիգոր աղայի | 8 . 5 : |
| Ոսկավզիկէնց | 1 . 2 : |
| գումար | 149 : |

Է. Արդի ջրառածի վանքին.

| | |
|---|---|
| Նորաշէն այգի | 26: |
| Ալաթէնց մուլք (կալուածք) | 8.5: |
| Ալաթէնց միւս երես | 3: |
| Բադումատան մուլք | 7: |
| Բաղչէ մաչէդ մուլք | 4: |
| Բուագէնց մուլք | 14: |
| Հաքիմ Ստեփաննոսէնց տուն և այգի | 3.4: |
| Գանգրէնց մուլք | 8. |
| Պալանդարէնց | 1.4: |
| Գրիգորէնց այգի | 5.5: |
| Մի կտոր սաղայ մուլք | 2: |
| Մուրատէնց եկեղեցի | 4: |
| Օհանայ վանք | 6: |
| Խաղողի մեծ այգին | 24: |
| Բէաբուղատան | 6: |
| Գոմշաբէկէնց այգի | 9: |
| Յուրխանէնց | 8: |
| Տէր Յակոբէնց | 1.3: |
| Զարհազարէնց երկու այգին | 10.7: |
| Սախմի այգին | 4: |
| Հօսէյնի այգի. | 3.5: |
| Շահվէլէնց եկեղեցի | 1.3: |
| Գումար. | 151.6: |

Ըստ նոր չափման որ եղև 'ի 1852 ամի, հրամանաւն ներկայ Թադդէոս Սրբազան Առաջնորդի՝ բովանդակ վանքական կալուածքն բովանդակին 146 ջրիք: Այգին կոչեցեալ Նորաշէն կամ սերկևլի՝ է ծառատունկ: Այս այգի ըստ որում է յեզր գետոյն զանդարութայ՝ զքազում վնաս ընծայէ վանքին, զի 'ի գարնան ժամանակի 'ի յորդիլ հեղեղաց բարձրացեալ ջրոյ գետոյն փլուցանէ զորմունս սոյն այգւոյ: Ի 1855

դոն վանորայք և եպիսկոպոսունք նաև 'ի մերս աշխարհի · եթէ այդպէս իցէ որ առանց ընտրութեան և վկայականի թղթոյ ձեռնադրեալ է կաթուղիկոս, որում պարտ է հնազանդել՝ ո՞վ է որ ոչ կարիցէ իբրև զաստապատցին օծանել զոք 'ի պատիւ կաթուղիկոսութեան. ո՞վ է որ պակաս է քան զնա որ օծեալ նորա լիցի կաթուղիկոս, և այլոցն ոչ, եթէ նորայն ընդունելի՝ ուրեմն այլոցն պարտ է լինել և ընդունելի, իսկ եթէ այլոցն ոչ՝ ուրեմն և նորայն ոչ, տեսնամ որ ստասպատցին ոչ է 'ի կարգի հասարակաց, այլ յոռի և անարգ քան զամենեսեան յաղագս անուսման և անվարժութեան իւրոյ, զոր ագիտութիւնն մայր գոլ սահմանեցին ամենայն մոլութեանց, որով դա կայ պարաւանդեալ որ այդպիսի անրաղորդութիւն գործեաց 'ի մէջ ազգիս, որ և յետ կատարման գործոյն գրեալ են առ մեզ կրկին պատճառ ։

Նախ թէ ըստ կտակի հոգևոր տէրին արարաք զայս, երկրորդ թէ 'ի ձէնջ առաքեալ թղթոյն բանիւն գործեցաք ։ Առաջնոյն զայս պատասխանեմք. թէ Եղիազար հոգևոր Տէրն ոչ է արարեալ զայդ կտակ, որպէս և կանխագոյն յայտ իսկ է ձեզ, և յետոյ մեզ ևս եղև զըստոյգն յայտնի. զոր եթէ կամիք մեք ծանուսցուք ձեզ զճշմարիտ կտակ հոգևոր տէրին, արդ որովհետև արար՝ վասն էր ոչ դրոշմեաց ձեռամբ իւրով 'ի քարտէսի՝ զոր կանխագոյն իսկ ունէր սովորութիւն յաւարտ բանին զնէր ձեռս ասելով՝ թէ առ 'ի հաստատութիւն բանիս եդի զձեռագիր 'ի վերայ. որ քանի թուղթ առ մեզ գոյ այսպիսի գրեալ և դրոշմեալ. հարկաւորապէս և առաւելապէս զմին իրի յաւէտ պարտէր զայդ սովորութիւն 'ի գործ ածել. զի համաշխարահականէ բանդ և իրագործութիւն, որով երևի ոչ գոլ ճշմարիտ զասացեալն ։ Ասեմք թէ և ասացեալ ևս լիցի, հայեցարուք 'ի կարգս և 'ի կանոնս հարցն սրբոց և երանելի նախնեաց, եթէ այդպէս է սովորութիւն և կարգ՝ կաթուղիկոսի, թարց ժողովոյ եպիսկոպոսաց և վարդապետաց, նաև հարց վանականաց լեռնակեաց կրօնաւորաց, և աշխարհաժողով հանդիսի. ինքնահաճ կամօք ըստ ախորժակաց սրտի իւրոյ, կոչեսցէ զոք 'ի պատիւ

կաթուղիկոսութեան, եթէ այնպիսին ընդունելի եղեալ է՝ և այժմ լինիցի. ապա թէ թիւր և զարտուղի է յընթացից նախնեաց՝ ուրեմն ոչ է ընդունելի, եթէ հարցն առաջնոց և նոցին կանոնաց ոչ անսամ՝ գոնէ 'ի մերումս եղեալ ժամանակի հարցն անսացեն, որ 'ի թուահաշուութեան տոհմիս հայկական հազար երրորդի հարիւրորդի և տասն և հինգ ամի մեծանուն վարդապետք, երևելիք և նշանաւորք ժողովեալ են 'ի սուրբ Աթոռդ Էջմիածին հետևելով հարցն սրբազանից, և քանի գլխով քան կարգեալ յաղագս կաթուղիկոս ձեռնադրութեան, թէ որ ոչ լինի այնպէս՝ խոտելի է. որոց գրեալ բանքն լուսաւոր հոգի Մովսէս վարդապետին ձեռնագրով և այլ սրբազան վարդապետաց կնքով և գրով առ մեզ է, որոյ սաւատն և ս առ ձեզ առաքեցաք, եթէ այնց բանից միոյն համաձայնի արարեալն ներկայիս՝ ապա է մեզ ընդունելի, իսկ թէ ոչ՝ մեք ումեք ոչ եմք պարտական եթէ զպարտոն պահանջեսցէ. այսքան առ առաջինն: Երկրորդին զայս տամք պատասխանի, թէ գրեալ էմք մեք առ Տէր Եղիազար կաթուղիկոսն և ոչ կարեմք յուրաստ լինել. թէ որքան դու կենդանի ես՝ մեր կաթուղիկոս դու ես և յետ քո կատարողեմք կամաց քոց, և քոյոցն առնելոց եմք կաթուղիկոս. ահա Եղիազար հոգևոր տէրն ոչ մի ունէր աշակերտ՝ այլ յոլով, եթէ մեք յանուանէ մարդոյ անուն գրեալ եմք, ապա թէ մեզ վերայ հաստատի բանդ, իսկ թէ անորոշակի եմք գրեալ՝ ապա զուր և նանիր է մեզ վերայ ասացեալդ և անպատշաճ արարեալդ. 'ի յաւիտենից ոչ ոք լուաւ թէ նախքան զթաղումն վախճանեալ կաթուղիկոսի օծանիցի նոր կաթուղիկոս, զոր ահա եղև. մի թէ Եղիազար հոգևոր Տէրն այր տգէտ երևեցաւ յաշս ոմանց, քանզի իւր խոհեմութեամբն և խորագիտութեամբն 'ի գալն յԵրուսաղէմայ նստաւ 'ի Կոստանդնուպօլիս, ասելով թէ ոչ եկից 'ի սուրբ Աթոռն մինչև ոչ գայցէ մանսապ հրապահանն և յորժամ առաքեցաք՝ իսկոյն եկն, այսպէս լինի արարք առն խոհեմագունի, եթէ յաղագս ինքեան այսպէս խորհէր՝ ապա վասն այլոց զիարդ հրամայէր լինել առանց մեր մանսապի, զոր յետ գործոյն կատարման

Թարց վկայականի Թղթոյ, ապա խնդրեալ էին 'ի մէնջ ման-
սար զոր մեքն արդեանս գրեալն յայնժամն էաք գրելոց. բայց
երկրորդ Հողեփեռնէոս և Գոդդոսս անկեալ և կործանեալ
զաւետս կաշառակուր եղեալ և արծաթով կուրացեալ. կըր-
կին և երեքկին անգամ ընկալեալ զկաշառ լիպասի հուքմ
հանեալ և առաքեալ առանց մեր մանսարի, սալահի և գէ-
տութեան, որոյ վասն և ինքն կործանեցաւ, և նոր քալան-
թար հաստատեցաւ Մահտեսի Խօջա Պետրոսի որդի Քրիս-
տոսիւ օրհնեալ Խօջա Ղուկասն ամենեքին յար և նման բա-
րեպաշտութեան հօրն իւրոյ: Այսուհետև կաշառն անգործ
եղեալ Ճշմարտութիւնն է Թագաւորելոց և ուղղութիւնն
հաստատելոց: Ժամէ այսուհետև մեզ սիրելիք 'ի քնոյ զարթ-
նուլ, քանզի գիշերն մերժեցաւ և տիւն մերձեցաւ: Զայս
թուղթ վասն այնր առաքեցաք առ մեծութիւն ձեր զի ցու-
ցանիցէք կաթուղիկոս եղնողիդ եթէ կամի դա բռնութեամբ,
և ուժգնութեամբ բազկի իւրոյ տիրել մեզ՝ ոչ կարէ, քանզի
մեք ոչ ումեք եմք արծաթագին, զի բարձրեալն որոյ տէ-
րութիւնն սեփականէ և իշխանութիւնն բնութեամբ՝ բռնա-
բար ոչ ումեք տիրէ, Թող թէ մարդ: Իսկ ապա թէ արդա-
րութեամբ և իրաւամբք տիրէ՝ հնազանդիմք և մեք առաւել
քան զառաւել: Եւ թէ զինչ է արդարութիւն և իրաւունք,
այս է զնալ անխոտոր զշաւիղս յառաջնոցն սրբոց, եթէ
նախնեացն և գերագունիցն ոչ՝ սակայն յետնոցն որ 'ի մեր-
ումս ժամանակի զառաջնոցն ստացան վարս և առաքինութիւնս,
Ճշմարտութեան կարգաց և կրօնից հետևելով, զլուսաւոր
հոգիք Մովսէս և Փիլիպպոս կաթուղիկոսացն ասեմք, որ 'ի
վերջին ժամանակս փայլեցան իբրև զարեգակն ջահաւորեալք
'ի մէջ սուրբ եկեղեցւոյ և յաղագս Հայաստանեայց: Եւ
զինչ է խնդիր մեր և զորս՝ համառօտաբար կարգեսցուք,
Երկոտասան գլխօք: Նախ զի կաթուղիկոսն միշտ և անպա-
րապ ընթերցցի զԱստուածային գիրս և ինքնովիմք վարես-
ցի և վարեսցէ զեկեղեցի: Երկրորդ զի զդպրատունս և ըզ-
պաստունս հաստատեսցէ յամենայն տեղիս, որպէս սովորու-
թիւն է այլազգեաց Քրիստոնէից, և մանաւանդ թէ մեզ իսկ

գլխովքն նոա և պարսից և ս, զոր գիտողացն է քաջայայտ թէ որքան ունէին ջանք և փոյթ յայդմ իրի, քանզի շինութիւն և հաստատութիւն ազգի գովա լինի ։ Որպէս և տեսանեմք խոպանացեալ և անպիտանացեալ ազգն վրաց յաղագս ոչ ունելոյ փոյթ զայնմանէ ։ Երրորդ զի և ինքն ասուեղէն ըզգեցցի և ոչ բամբակեղէն կամ վշեղէն և ոչ այլոց թոյլ տայցէ ։ Չորրորդ զատ և առանձին 'ի միաբանից ոչ յաղօթս կացցէ, և ոչ հաց կերիցէ, այլ ընդ միաբանսն հաղորդեսցի, 'ի յամենայն աղօթսն և 'ի հացկերոյթ սեղանատեղւոն ։ Հինգերրորդ մի լիցի առանձին տնտեսութիւն և մառան, և մի իմ և քո 'ի մէջ բերիցէ 'ի հասարակ տան, ինքն իւրայովքն աւելորդօք քան զհարկաւորն շատացեալ, և հասարակն անխընամ և անայցելու մնացեալ կարօտ հարկաւորին, այլ զամենայն մի լիցի, եթէ գանձարան եթէ շտեմարան, եթէ տընտեսութիւն և եթէ սեղանատուն ։ Վեցերրորդ մի զարդարեալ սիգաքայլ երիվարօք յախորտացեալ յօրանայցէ, այլ կիսիշեօք շրջեսցի, որպէս և տեսեալ իսկ եմք զնախնիսն աչօք մերովք ։ Եօթներրորդ ոչ ունիցի երկու կամ երեք և չորք փայեակ որպէս այժմս լսեմք, այլ միով սուրհանդակաւ բաւականանալ որպէս նախնի կաթուղիկոսունքն ։ Ութերրորդ նոր զարմանս և ծիծաղելիս ոչ առնել, [illegible], թէ քարշել առաջի ըստ օրինի իշխանաց եղակս մէկ, երկու, և կամ աւելի և պակաս, և կապել թիւր և ղաղարայ, որ կարի հեռի է 'ի հոգևոր իշխանութենէ, զի զէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր՝ այլ հոգևոր ըստ առաքելոյ ։ Իններրորդ ոչ պահել մատաղ մանկունս զսպասաւորս առաջի զարդարեալ զգեստիւք 'ի գայթակղութիւն տկարամտաց, այլ կատարեալ հասակաւ և մուրուօք սևազգեստ և խոշորահանդերձ 'ի յամօթ հակառակորդաց բամբասողաց ։ Տասներրորդ արանց տգիտաց և անվարժից մի տայցէ պատիւ եպիսկոպոսական, և իշխանութիւն վարդապետական, քանզի նոքա որ ունէին ջան, և աշխատասիրութիւն ուսման՝ տեսանելով զայս թարց ջանից և աշխատանաց ընկալեալ զպատիւ եպիսկոպոսութեան և զաստիճան վարդապետութեան, և

Նոքա յուսահատեալ խափան լինին 'ի բարի յառաջադիմու-
թենէ և մնայ ազգս 'ի մէջ անգիտութեան խաւարի յաղագս
անընտրութեան ըստ Արիստոտելի որ ասէ, եթէ կամիս բա-
րեկարգութիւն տան, ընտրեա զլաւն 'ի վատթարէն և զվաս-
տակաւորն յանձանէն, և ըստ իմաստնոյն թէ՝ զփառս իմաս-
տունք ժառանգեսցեն։ Մեստասներորդ՝ ոչ ածել պա-
տիժս անպատշաճս 'ի վերայ ուրուք անյարմար կարգի և աս-
տիճանի, որպէս լսեմք թէ այս ինչ մարդոյ մուրուս կըտ-
րեալ է, և այս ինչ մարդ 'ի սիւն կապեալ, ոչ միանգամ լսեմք՝
այլ յոլովակի, ուստի ունի օրինակ զայդպիսի անօսպայ արար-
մանց, զայր եպիսկոպոս առանց ժողովոյ և դատաստանի, 'ի
ժամ հաց կերութեան և գինի ըմպութեան կապեալ 'ի սիւն
և բրածեծ տալ առնել արանց սրիկայից և ելուզակաց և
յետոյ զմուրուսն հատանել։ Բարեպաշտն Կոստանդիանոս երբ
արար զայդ Արիոսի թէպէտ և սպանման էր արժանի, և կամ
փոքրն Թէոդոս առ Նեստոր երբ գործեաց զայդ, և կամ
Հայրապետքն սուրբք երբ օրէնս վարկան և իրաւունս հա-
մարեցան այդպիսի դատաստանաւ դատել զեկեղեցական և
մանաւանդ եպիսկոպոս, որպէս գրէ սուրբն Կիւրեղ Աղէք-
սանդրացի յաղագս պղծոյն Նեստորի թէ՝ լուծումն արա-
րաք զնա յեպիսկոպոսութենէ իրաւամբք ժողովոյն։ Զի
Մովսէս հոգեւոր տէրն երբ արար զայդ և կամ լուսաւոր
հոգի Փիլիպպոս կաթողիկոսն, ինչ ամ վարեալ զկաթու-
ղիկոսութիւնն երբ և կամ ում մուրուս կտրեաց կամ սիւն
կապեաց, նոյնպէս և Յակոբ հոգեւոր Տէրն քսան և հինգ
ամ կացեալ յաթոռն միայն Ոսկիպրեսին էած զայդ պատիժ,
նմին աշխարհ վկայէր մահու գոլ արժանի, և ոչ լոկ պատ-
ժոյ, զոր այժմս տարի և կէս է քանիցս լսեմք զայդպիսի
խայտառակեալ զուր և ունայն պատճառաւ, այդպիսի պա-
տիժ քաղաքական օրինի և դատաստանի է անկ և ոչ եկեղե-
ցական։ Վասն որոյ ոչ կամիմք զայր եպիսկոպոս կամ վարդա-
պետ թարց ժողովոյ և կանոնաց դատել կամ պատժել,
յորմէ պատճառէ մեծաւս յոլով ծնանի, զեր ժամանակս չարէ։

Երկոտասանեքրորդ. մի փոփոխեսցէ զԹեմ և զվիճակ Եպիսկոպոսաց ըստ նմանութեան բրքեշօյի և շմուէլի, որ մինն զմեռեալ Եպիսկոպոսաց վիճակն յափշտակէր, իսկ միւսն և զկենդանւոյ Եպիսկոպոսաց. որպէս գրէ քերԹողահայրն Մովսէս 'ի վիպագրուԹեան իւրում: Այլ ըստ ուղիղ կանոնաց առաքելական և հայրապետական իւրաքանչիւր Եպիսկոպոս տիրէ յիւրում վիճակին, և իւրաքանչիւր Թեմ յիւրում աԹոռոյ կացցէ և մնասցէ՝ զոր 'ի բնէ ունի կարգեալ և հաստատեալ: Բայց Թէ առաջնորդ Եպիսկոպոսն անուղղագործս ունիցի՝ դատեսցի ըստ իրաւանց կանոնաց եկեղեցւոյ, և որպէս արժանն է պատժեսցի, քանզի 'ի փոփոխմանէ և 'ի բաժանմանէ բազում չարիս ծնեալ է, ծնանի և ծնանելոց է, ըստ Տէրունականն բանի՝ տուն, քաղաք, և Թագաւորութիւն բաժանեալ կործանի. և զի ամենեցունց է քաջայայտ որ իւրաքանչիւր աԹոռ պսակեալ է ընդ իւրոյ վիճակին, որոց ոչ է պարտ բաժանիլ 'ի միմեանց. Թէպէտ յետ որբասէր կաԹուղիկոսին Տեառն Փիլիպպոսի, ոմանց բաժանումն եղեալ է, և այն ոչ կանոնական իրաւամբք՝ այլ յանիրաւ յարձակմանէ՝ որոց յայամ հետէ ոչ կամիմք, և ոչ Թողացուցանեմք լինիլ զայն անկարգութիւն: Եւ 'ի վերայ այսր ամենայնի, աստապատցի Մինասն արտաքսեսցէ և հալածեսցէ 'ի սուրբ ԱԹոռոյդ և յայրարատ գաւառէ, և կորուսցէ 'ի բնիկ տեղի իւր, և զոր ինչ ստացեալ է և ունի՝ խլեսցէ 'ի ձեռացն, մորուս կտրելոյ, սեւն կապելոյ, և բրածեծ առնելոյ գայ է արժանի, և ոչ այս և այն. հալածեալ կորուսանիցէք ձեռագրով որ այլ յերևան չկախէ բարի է, ապա Թէ ոչ՝ Ճշմարտին յայտնի է, մեք առնեմք արքունի հրամանաւ, և գիտեմք Թէ որպէս անպատմելի, և անասելի խայտառակութեամբ կորուսանելոց եմք հանդերձ դատապարտական պատժիւք, քանզի գա և բազմաչափս կաշառօք կարացուցանէր զայս գործելն այրակերպ դազանս յաղագս 'ի գլուխ հանելոյ զիւր չարութեան գործն, վասն որոյ ոչ կամիմք այդպիսի բանսարկու և շոգմոգ առն մնալ 'ի սուրբ և 'ի հռչակաւոր տեղիդ, այլ յանկեան ուրեք ծակամուտ կացցէ, որպէս և ար-

ժամ իսկ է ։ Ահա զայս երկոտասան բանս կարգեալք պահանջեմք 'ի կաթուղիկոսէն, ով ոք և իցէ և զայս բանս խնդրանաց եղբայրական սիրով առ ձեզ առաքեցաք իբրև անդամք միմեանց լինելով ցաւակիցք, և դուք տարեալ ցուցէք իւրն, եթէ հաւանի և ընդունի գրով և կնքով իւրով. և վկայութեամբ երջանիկ եպիսկոպոսաց՝ առ մեզ առաքեսցէ իբրև զայետիկար անջինջ մնալ առ մեզ. յայնժամ և մեք սիրով հլու հպատակութեամբ հնազանդ լիցուք նմա իբրև գլխոյ, և ինքն թագաւորեսցէ յեկեղեցիս մեր որպէս զարեգակն, ապա թէ ոչ ընդունիցի զասացեալս մեր և կամ զգրեալքս խոտան համարեսցի՝ յայնժամ զգրեանս մեր զարձուսջիք յետս, յայնժամ հեռէ գիտեմք և մեք թէ որպէս պարտն իցէ առնել յամենայն կողմանէ անխիղճ ։ Տպեցաւ տիպս երկու հարիւր, 'ի դրան սուրբ Ամենափրկչի վանացս Նոր Ջուղայու. յԻսպահան քաղաքի, 'ի թուում կենարարին մերոյ հազար վեց հարիւր նսուն և երեք ։ Իսկ 'ի հայոց հազար հարիւր քառասուն և երկու ։ Յամսեանն Մայիսի ու ։

---

( 5 ) . Տօնական պահէն այնուհետև մանուրք 'ի Գրատան վանքին Ամենափրկչի ։

( 6 ) . Կոնդակն և Թուղթ դաշանց 'ի չորքի պատմութեանս նշանակեալ պահին 'ի մատենադարանի սրբոց վանուց Ամենափրկչի ։

( 7 ) .

( 8 ) .

( 9 ) . Մովսէսի Աստուածատուր 'ի 21 մայիսի յամի 1126 ( 1676 ) գրէ ընթացք օրհնութեան 'ի Հռոմայ առ Տէր Մանուէլ և առ Տէր Սեթոս քահանայս. յորում ասէ յեղափոխութեան, " եկեղեցւոյ ընթա-" թեանն և հաստատութեանն լսուք, յոյժ ուրախացաք և ասացէք ըն-" ծայ սուրբ եկեղեցւոյն մեր պատուական գանձոց և այլ խառնէ և " ծխանելի ,, ։

( 10 ) . Խնդրագիր հայ հասարակութեան Հռոմայեցւոյ յամի 1852 գրեալ առ Ներսէս Աստուածատուր Մելքոնեան Թադդէոս որք եղեռնագործ ։

| | |
|---|---|
| Շավէլէնց վախմին . . . . . . . . . . . . . . . | 6։ |
| Լազարէնց տուն . . . . . . . . . . . . . . . | 1։ |
| Բէկումի այգի . . . . . . . . . . . . . . | 6։ |
| Սէթաղէնց այգի . . . . . . . . . . . . . . | 6. 5։ |
| Խէրէվանի Յաննայի այգի . . . . . . . . . . . | 7։ |
| Մէրխտատի այգի . . . . . . . . . . . . . | 3. 7։ |
| Կոստառի Ղալանդարէնց մուլք . . . . . . . . . | 3։ |
| Յոհան վարդապետին . . . . . . . . . . . . | 6։ |
| Ղալանդարէնց տուն . . . . . . . . . . . . | 1. 5։ |
| Կող սանումէնց տանի այգի . . . . . . . . . | 1։ |
| Շահրիմանէնց բաբանին . . . . . . . . . . . | 2։ |
| Տէր Սահրադէնց տուն . . . . . . . . . . . | 6։ |
| Սալաթէնց այգի . . . . . . . . . . . . . . | 13. 5։ |
| Լորայէլէնց այգի . . . . . . . . . . . . . | 7. 5։ |
| Սարկևլի այգի . . . . . . . . . . . . . . | 16։ |
| Բաղի Մէյդան . . . . . . . . . . . . . . | 6։ |
| Շամրիզ Ծատուրի այգի . . . . . . . . . . . | 6։ |
| Պօղոս վարդապետի այգի . . . . . . . . . . | 2։ |
| Եղամալի այգի . . . . . . . . . . . . . . | 5. 2։ |
| Թօփչէնց և Շախնաբաթի այգի . . . . . . . . | 7։ |
| Խաղողի այգի . . . . . . . . . . . . . . . | 18։ |
| Կոզչաքէկէնց . . . . . . . . . . . . . . . | 12. 2։ |
| Տէր Պետրոսի . . . . . . . . . . . . . . . | 2. 7։ |
| Գրիգոր աղայի . . . . . . . . . . . . . . | 8. 5։ |
| Ոսկավզիկէնց . . . . . . . . . . . . . . . | 1. 2։ |
| Գումար | 149։ |

## Է. Արդի կալուածք վանին.

| | |
|---|---|
| Նորաշէն այգի | 26: |
| Ալաթէնց մուլք (կալուածք) | 8.5: |
| Ալաթէնց միւս երես | 3: |
| Բաղումատան մուլք | 7: |
| Բաղչէ մաչէդ մուլք | 4: |
| Բուադէնց մուլք | 14: |
| Հաքիմ Ստեփաննոսէնց տուն և այգի | 3.4: |
| Դանգրէնց մուլք | 8. |
| Պալանդարէնց | 1.4: |
| Գրիգորէնց այգի | 5.5: |
| Մի կտոր սաղայ մուլք | 2: |
| Մուրատէնց եկեղեցի | 4: |
| Օհանայ վանք | 6: |
| Խաղողի մեծ այգին | 24: |
| Չէաքուդատան | 6: |
| Գովչաքէկէնց այգի | 9: |
| Յուրիխանէնց | 8: |
| Տէր Յակոբէնց | 1.3: |
| Զարհազարէնց երկու այգին | 10.7: |
| Սախմի այգին | 4: |
| Հօսէյնի այգի. | 3.5: |
| Շահվէլէնց եկեղեցի | 1.3: |
| Գումար. | 151.6: |

Ըստ նոր չափման որ եղև 'ի 1852 ամի, հրամանաւն ներկայ Թադդէոս Սրբազան Առաջնորդի՝ բովանդակ վանքական կալուածքն բովանդակին 146 ջրիբ: Այգին կոչեցեալ Նորաշէն կամ սերկևլի՝ է ծառատունկ: Այս այգի ըստ որում է յեզր գետոյն զանդարութեայ՝ զբաղում վնաս ընծայէ վանին, զի 'ի գարնան ժամանակի 'ի յորդիլ հեղեղաց բարձրացեալ ջրոյ գետոյն փլուցանէ զորմունս սոյն այգւոյ: Ի 1855

ամի կարի սաստիկ եղև յորդութիւնն ջրոյ նոյն գետոյ, որոյ զնմանն ոչ ոք տեսեալ էր նախ քան զայս, վասն որոյ հիւսի-սային որմն նոյն այգւոյ խապառ տապալեցաւ։ Ի 1856 ամի մե-ծագումար ծախուք շինեցաւ կործանեալ որմն այնր հաս-տահիմն կիրուքարով։ Եւ սակս դարձուցանելոյ զջուր գե-տոյն շինեցաւ թումբ մի լայն զի ջուրն անցանիցէ 'ի միւս կողմն, այլ հեղեղն 1857 տարւոյ կործանեաց զմասն մի նոյն նորաշէն թմբոյ և դարձեալ շինեցաւ այն 'ի 1857 ամի։ Աւա-ռելիք վանացն տայ այս այգի 'ի ծառոց՝ զորս կամ՝ քշտեն կամ զչորացեալսն հատանեն։ Մասն մի 'ի սոյն այգւոյ վախմ եղև 'ի 1750 ամի, և մասն մի գնեցաւ 'ի դրացի կալուածատեարց. և 'ի Մովսէս Առաջնորդէ միաւորեալ ընդարձակեցաւ այգին։ Կայ 'ի սմա չարխով, որ է փայտեայ անիւ ջրահան, որով մի ուղտ շրջապտոյտ գնալով հանէ զջուր կրկին չափով քան զջուրն զոր եզն մի հանէ 'ի ջրհորոյ ( 3 )։

Կալուածք կոչեցեալ սաղայ մուլք, ուրանոր ցանեն զցո-րեան՝ զբամբակ՝ զթամբաքու և զայլ արմտիս, է 45 և կէս ջրիբ, որոյ մասն գնեալ եղև ըստ մեծի մասին 'ի Մովսէս Ա-ռաջնորդէ, և մասն մի ընծայեցաւ վանիցն 'ի 1730 է՝ ց1758 ( 4 )։

Այգի խաղողոյ, կոտոր կոտոր տունք աւերեալք, գնե-ցաւ մեծ երեսն ըստ մեծի մասին 'ի Մովսէս Առաջնորդէ, որ միաւորեաց զայնոսիկ ընդ միմեանս յամի 1720 է՝ ց 1750։ Չարհազարէնց կոչեցեալ մեծ և փոքր երեսքն գնեալ եղեն 'ի Յարութիւն Առաջնորդէ յամի 1802 ( 5 )։

Օպօզչարէկէնց երեսն յամի 1746 գնեաց Յակոբ վար-դապետ 'ի Մարեամխանում Մկրտումէն ( 6 )։

Օտէր Պետրոսէնց սաղայ կալուածն գնեաց Կարապետ Ա-ռաջնորդ յամի 1823 'ի Տէր Դաւիթ Մկրտումէ և 'ի ժառան-գաց Փիլիպպոսի։ Այսոքիկ այգիք են 40 ջրիբ ( 7 )։

Կալուածքն կոչեցեալ Օհանայ վանք՝ զկնի ամայանալոյ նոյն եկեղեցւոյ մնաց ընդ կառավարութեամբ Ամենափրկչի վանացն։

Այգին կոչեցեալ Հաքիմ Ստեփանէնց՝ վախմ տուեալ եղև

վանին ։

Կալուածն կոչեցեալ Շահվէլէնց եկեղեցի՝ էր յառաջ քան զայս 'ի ձեռս Մէհմէտ միր Ավէօլվաղւոյ, որ բռնաբար տիրապետեալ էր զայն իբրև կալուած անտերունչ. այլ Սըր-բազան Թադդէոս եպիսկոպոս Առաջնորդ վանին 'ի 1855 ամի բազում ճգամբ կորզեաց զայն 'ի ձեռաց նորա ։

Այգին կոչեցեալ վախմի՝ գնեցաւ 'ի Սրբազան Յովհաննէս Սուրենեան Առաջնորդէ 'ի 1845 ամի ։

Այգին կոչեցեալ Գրիգորէնց 6 ջրիբ՝ գնեալ եղև 'ի ներ-կայ Սրբազան Թադդէոս Առաջնորդէ 'ի 1854 ամի ։ Այգին 3 ջրիբ՝ կոչեցեալ Հօսէյնի՝ գնեալ եղև 'ի ներկայ Սրբազն Թադ-դէոս Առաջնորդէ 'ի 1856 ամի ։ Կալուած մի 2 ջրիբ 'ի մէջ կալուածոյն վանին գնեցաւ 'ի ներկայ Առաջնորդէ ։ Սառցատուն շինեալ 'ի 1856 ամի ։ Տունն քեալանթար Ղու-կասէնց կամ Սիմէօնեանց գնեցաւ 'ի Սուրենեանց Յովհաննէս Առաջնորդէ 'ի 1843 ամի ։

Տունն կոչեցեալ Լիլինէնց՝ գնեաց Մովսէս Առաջնորդ ։

Տունն կոչեցեալ Փռանկ Նազարէնց կամ Գապալէնց՝ գը-նեալ ի Սուրենեան Յովհաննէս Առաջնորդէ ։

Տունն կոչեցեալ Բէկում Շիրաժնց գնեալ 'ի 1830 'ի Յա-կոբոս վարդապետէ ։

Վերոյ գրեալ տունք միան առանց վարձու և առանց ար-դիւնաւորութեան, զի տունք 'ի Ջուղայ ոչ բերեն զարդիւնս այլ միայն պահանջեն զծախս նորոգութեան ։ Հրապարակ կո-չեցեալ Ջուղայու Մէյդան՝ ուրանօր յամենայն կիւրակէի լինի տուրևառութիւն ։ Բերէ նա յամին զ15-ց 20 թուման արդիւնս ։ Գնեաց զայն Սուրենեան Յովհաննէս Առաջնորդ ։ Արդի Առաջնորդ Սրբազան Թադդէոս արք եպիսկոպոս յա-րեւելեան կողմն նորա շինեաց զխանութս և զկրպակս, յուսա-լով զի առաւել ևս բերցէ զարդիւնս յայսմ հետէ ։

Զ. Առուակաց հոսանք են այսոքիկ :

| | |
|---|---|
| Ջահանգիրենց տուն | 1 . 3 : |
| Աղամալենց այգի | 8 . 1 : |
| Վհամալենց տուն | 1 . 3 : |
| Սուղբաշենց այգի | 9 . 5 : |
| Տէր Մարտիրոսենց այգի | 6 : |
| Գարբիէլենց այգի | 4 : |
| Վհերիմալայոնց այգի | 5 : |
| Շահվելենց վախմի այգի | 11 . 8 : |
| Մէլիքաղենց և Թօփչենց չարխով | 16 : |
| Յիսուն 8 և կէս ջրեր · | 58 . 5 : |

Աշաղբուր գեօղ Հայոց մի փարախ հեռի 'ի Ջուղայոյ՝ էր ընդ կառավարութեամբ վանին, այլ 'ի 1828 ամի սպանմանի Շիրաղեցի այլազգի ումն, զորմէ կարծիք լինի թէ Հայք են սպանօղ նորա, վասն որոյ ծագի խռովութիւն և նեղութիւն մեծ յաղագս Ջուղայեցւոց, 'ի պատճառս այնր սոյն գեօղ տուեալ լինի դենպետին վասն պաշտպանելոյ զհայս 'ի փորձութենէ անտի :

Ջրաղաց կամ աղօրիք՝ որ կայ 'ի տեղին կոչեցեալ միունջուղ կամ առվապլուխ, նոյնպէս տուեալ լինի այլազգեաց առանց ինչ վաճառման կամ վանքական օգտի ( 8 ) :

Է. Կալուածք վանքական 'ի սկզբանէ անտի մինչև ցարդ բարեշնորհութեամբ տէրութեան պարսից ազատ եղեն 'ի հարկատուութենէ : Թագաւորն Շահսուլթան Հուսէյն թէպէտ այլով իւիք չունէր քաղցր ակնարկութիւն առ Հայս, այլ ըստ այսմ մասին եցոյց զիւր արքայական բարեշնորհութիւն, զի առաջին պարգևացն իւրն ապահարկութեան վանքական կալուածոց շնորհեցաւ 'ի նմանէ յամսեանն Շավալ 'ի հէճրիթի 1116 ( 1710 ), որ իբրև սուրբ հրաման ( յաղագս Սաֆաֆեան անուանն ) ընդունելի եղև տէրութեանն Պարսից

մինչև ցարդ (9) ։

Մկրտիչ Առաջնորդ յամի 1784 տայ աղերսագիր առ Քէ-
րիմ խանն, յայտնելով " Թէ կալուած վանքական, որ ’ի Ջու-
" ղայ, էր ապահարկ յամենայն արքունի պահանջմանց, և
" յառաջնոյ ժամանակէ մինչև ցարդ, որ է ժամանակ Թագա-
" ւորութեան ձերոյ, չեն առացեալ ինչ և ոչ ոք արարեալ է
" զպահանջ. զի ամենայն օգոստափառ Թագաւորք Սաֆա-
" ֆեան, և Թագաւորն Նադիր շահ շնորհեալ են զհրովար-
" տակ Աստուածանման մշտնջենաւոր հրամանի՝ յաղագս ըստ
" օ և իցէ մասին ոչ պահանջելոյ քաղաքապետաց և հար-
" կահանից զդենար մի յայգեաց մեծ վանիցն, և շնորհիւ մե-
" ծի տէրութեան ’ի վաղնջուց մինչև ցարդ ոչինչ են պա-
" հանջեալ։ Արդ աղաչանօք և խնդրեմ ’ի գոհարասարաս յատս
" սուրբ Թագաւորութեանդ այս է՝ զի վասն սիրոյն Աստու-
" ծոյ և ’ի շնորհս բարձրագոյն գլխոյ (որ ժամանէ մինչև
" յամպս և աստեղք են նմա հովանի) ձերոյ շնորհեսցի հրո-
" վարտակ Աստուածանման անդառնալի հրամանի, զի այգիք
" վախմ եղեալ վանաց ըստ հին սովորութեանն, որ մինչև
" ցարդ յամենայն պահանջմանց դիւանի ազատէր և ապա-
" հարկ, յայսմ հետէ ևս լիցի այնպէս, և ոչ ոք արասցէ
" զպահանջ ինչ, զի եղիցի մեզ տեղի յուսոյ վասն սրտի
" մտօք աղօթելոյ յաղագս բարերջանկութեան մեծի տէ-
" րութեան"։

Քէրիմխան, որ բարեխնամ էր առ հայս և ունէր զյա-
տուկ քաղցր ակնարկութիւն առ յիշեալ Մկրտիչ Առաջնոր-
դըն, գրեալ է ’ի ճակատ նոյն աղերսագրոյ զհրաման իւր, ո-
րոյ այս է թարգմանութիւն. " Հրովարտակ մեծ (տուեալ
" եղև) զի բարձրաստիճան և գերազանցապատիւ . . . հա-
" ջի Ահմադխան քաղաքապետին Սպահանայ գիտելի լիցի,
" թէ յայսմ ժամանակի ընտրեալն ’ի հոգևորականաց քրիս-
" տոնէից Մկրտիչ վարդապետն եկեալ ’ի սպաս մեր յայտ-
" նեաց, թէ վանքական կալուածք ’ի հին ժամանակէ մինչև
" ցարդ ազատ և ապահարկ են յամենայն արքունի պահանջ-
" մանց, վասն որոյ ձեր բարձրաստիճանութիւն վերահասու

" լեցի հէն պարգեւագրաց քննելով ըստ արժանւոյն, զի եԹէ
" 'ի վաղնջուց մինչեւ ցայժմ եղեալ է այնպէս՝ ձեր գերա-
" զանցուԹիւն եւս վարեսցի ըստ այնմ կարգի, ոչ ապահան-
" ջելով զդիւանական հարկս 'ի կալուածոց անտի, առանց
" ինչ փոփոխուԹեան վարելով ըստ առաջնոյ կարգին, եւ
" արժանի հպազանդուԹեան ճանաչելով հրամանիս այսմիկ:
" Գրեցաւ յամսեանն ռամազան 1190 (1784):

ՓաԹալիշահ հաստատեաց զայն ապահարկուԹիւն խելով հրովարտակաւ յանուն վեհափառ Սօլթան Մահմուդ միրզայ Սէֆօլօվլէ որդւոյ իւրոյ քաղաքապետի Սպահանայ, գրելով 'ի Թուականի 1248 (1832): Նախ յանձնարարուԹիւն յաղագս Յովհաննէս Առաջնորդի, եւ ապա սակս վանքական կալուածոցն հրամայէ այսպէս. " Եւ հրամայեսջիք գործակա-
" տարաց Դիւանի զի հարկն արքունական որպէս էր 'ի ժա-
" մանակէ ԹագաւորուԹեանն Սաֆաֆեանց (որոց 'ի գերեզ-
" մանս լոյս փայլատակեսցի) մինչեւ ցայժմ զի ապահարկ էին
" վարդապետքն: Դուք եւս ապահարկ կացուսջիք զնոսա ա-
" ռանց խմիք նեղուԹեան, զի անդորրուԹեամբ սրտի եւ ապա-
" հովուԹեամբ պարապեսցի 'ի գործս պարտաւորուԹեան
" պաշտօնին իւրոյ, առանց երբէք վարելոյ հակառակ հրա-
" մանիս, որում արժանի հպազանդուԹեան ճանիջիք: Գրե-
" ցաւ յամսեանն րէբիօլանի, 1848 (1832):

Վերստին եւս Մահմադ շահ արքայ հաստատեաց ապահարկուԹիւն շնորհելով զհրովարտակ յամի 1835, առ Խօսրովխանն գրելով զհրաման, Նախ յանձնարարուԹիւն յաղագս Յովհաննէս Առաջնորդի եւ ապա սակս հարկին եւ կալուածոց վանքին հրամայէ. " Եւ դարձեալ վասն հարկապահանջու-
" Թեան Դիւանին՝ որպէս 'ի ժամանակէ Թագաւորացն Սա-
" ֆաֆեան (լուսաւորեալ եղիցի տեղի հանգստեան նոցին)
" եւ այլ Թագաւորացն առաջնոց տնօրինեալ եւ հաստատեալ
" էր, եւ հրամանաւ նոյն վեհափառից 262 Թուման որոշ նը-
" շանակեալ կարգադրեսցի եւ այժմ, եւ վարդապետք տեղ-
" ւոյն (ա̃ Ջուղայու վանաց) որպէս ըստ կարգին այնմիկ ա-
" զատ էին 'ի հարկաց՝ եղիցի եւ յայսմհետէ նոյնպէս զերծ

« 'ի պարտաւորութեանց Դիւանի, վասն զի նոքա են 'ի հրա-
« զանդեալ և 'ի որբամատեան ժողովրդոց. և են հպատակք
« շնորհածուալ մեծի և բարձրագոյն տէրութեան. վասն
« որոյ այս հրովարտակ կատարեալ բարեհաճութեամբ ըստ
« Աստուածանման հաստատուն հրամանի տուեալ եղև, և
« այնմ հաւատարիմ պաշտօնէի հրամայեալ լինի՝ զի վերա-
« բերելն առ յիշեալ վարդապետն ըստ ամենայն մասին ա-
« ռաջիք օգնականութիւն, զի անդորրութեամբ մնաց պա-
« րապեսցի նա 'ի գործս պարտաւորութեանն իւրոյ, աղօթե-
« լով բարեյօժար սրտի մտօք յաղագս մշտահաստատ Տէ-
« րութեան: Եւ սակս արքունական հարկին և ապահար-
« կութեան վարդապետացն վանաց Ջուղայու, ըստ օրինակին
« որ 'ի վաղուջուց կարգադրեալ է՝ հրամայեսցէ մնալ յայնմիկ
« տնօրինութեան, և առանց իրաւացի պահանջման նեղու-
« թիւն ինչ մի հասուսցեն: Տնօրինեալ եղիցի ըստ այսմիկ
« հրամանի, որում հպազանդել պարտաւոր ծանիցեն: Գրե-
« ցաւ յամսեանն ըէբիօլ առաջնոյ 1251 ամի, (1835):

Ըստ այնմ կարգի հաստատուն մնաց հրաման վերոգրեալ հրովարտակացն մինչև յամի 1848. այլ 'ի նմին ամի պահանջեցաւ հարկ կալուածոց վանիցն, զոր և ստացան երկու տարի, վասն որոյ Աստուածատուր վարդապետ գնաց 'ի Թէհրան յամի 1849 լինել խնդրամատոյց 'ի դուռն արքունի, յաղագս վերստին հաստատելոյ զբարեշնորհուն Տէրութեան, այլ 'ի քաղաքի անդ առանց վախճանելոյ զկատարումն խնդրոյ իւրոյ՝ վախճանեաց զկեանս իւր: Յետ բազում ջանից փոխանակ 262 թումանի՝ 150 թուման պարգև շնորհեցաւ վասն վանքական կալուածոցն, և 'ի գալ Սրբազան Թադէոս արքեպիսկոպոս առաջնորդի, յաղագս նոյն առարկայի խնդրամատոյց լինելով միջնորդութեամբ ազգասէր իշխանաց եղելոց 'ի Թէհրան՝ յամի 1853 ընկալաւ զհրովարտակ 'ի վեհափառ Նասրադինշահ թագաւորէ, զի 150 թուման 'ի բուն հարկէ Ջուղայու պարգև շնորհեսցի վանացն, և հարիւր թուման եւ յԱմիր եպարքոսէ հաստատեալ յամի 1851 բարդումն հարկին Ջուղայու մի երբէք պահանջեսցի, ուստի ըստ այնմ

# ՅՕԴ. Է.

Քաղուածոյ պատմութեան վանական վիճակին 'ի ժամանակս շինութեանն նորա մինչև ցարդ :

ա. Մինչ հիմնարկեցաւ վանքն առաջին անգամ՝ և պայծառ շինութեամբ կառուցաւ երկրորդ անգամ, բովանդակ ծախք նորա թէ շինութեանն և թէ տնական կառավարութեանն եղեն հանգանակութեամբ Ջուղայու հասարակութեան : Բնակացեալ բարեպաշտութիւնն 'ի սիրտս բնակչաց Ջուղայու՝ էր հիմնաւոր մուտք կամ արդիւնք վանին : Յայնմ ժամանակի, (սկսեալ 'ի 1610՝ ց 1700) հոգեբաժին՝ քառասնէից՝ լուսադին և կտակաւանդ նուէրք իշխանաց (1) էին որոշեալ հասք վանքական :

բ. Բազում էին միաբանք 'ի վանին (2) և կրօնաւորական խստակեցութեանն կարգ և կանոն պահպանեալ լինէր ճշդիւ :

գ. Ուսումնականութեան և գրականութեան ծաղիկ բարւոք առաջադիմութեամբ զօրանայր 'ի վանին : Առաջին վարժապետ կամ դասատու ուսման և գիտութեան եղև խաչատուր առաջին նախ քան զամն 1640 . սորա եղեն աշակերտք Դաւիթ, որ եղև Առաջնորդ Ջուղայու, Սիմէոն, Ոսկան վարդապետ, և այլք ոմանք :

Երկրորդ վարժապետ յետ նորա եղև Դաւիթ առաջին, որ ստացաւ զքաւան և ինն աշակերտս (3) : Յակոբ եպիսկոպոս մինն յաշակերտաց նորա ժառանգեաց զգահ կաթողիկոսութեանն սրբոյ Էջմիածնի : Յովհաննէս վարդապետ տիեզերալոյս կոչեցեալն առաւել զօրաւոր հանդիսացաւ 'ի մէջ աշա-

# ՅՕԴ. Է.

Քաղուածոյ տեղեկութեան վանական վիճակին 'ի ժամանակս շինութեան նորա մինչև ցարդ ։

ա. Մինչ հիմնարկեցաւ վանքն առաջին անգամ՝ և պայծառ շինութեամբ կառուցաւ երկրորդ անգամ, բովանդակ ծախք նորա թէ շինութեանն և թէ տնական կառավարութեանն եղեն հանգանակութեամբ Ջուղայու հասարակութեան ։ Անսակացեալ բարեպաշտութիւնն 'ի սիրտս բնակչաց Ջուղայու՝ էր հիմնաւոր մուտք կամ արդիւնք վանիցն ։ Յայնմ ժամանակի, (սկսեալ 'ի 1610՝ ց 1700) հոգեբաժին՝ քառասնէից՝ լուսագին և կտակաւանդ նուէրք իշխանաց (1) էին որոշեալ հասք վանքական ։

բ. Բազում էին միաբանք 'ի վանսին (2) և կրօնաւորական խստակեցութեանն կարգ և կանոն պահպանեալ լինէր ճշդիւ ։

գ. Ուսումնականութեան և գրականութեան ծաղիկ բարւոք առաջադիմութեամբ զօրանայր 'ի վանսին ։ Առաջին վարժապետ կամ դասատու ուսման և գիտութեան՝ եղև Խաչատուր առաջին նախ քան զամն 1640 ․ սորա եղեն աշակերտք Դաւիթ, որ եղև Առաջնորդ Ջուղայու, Սիմէօն, Ոսկան վարդապետ, և այլք ոմանք ։։

Երկրորդ վարժապետ յետ նորա եղև Դաւիթ առաջին, որ ստացաւ զքսան և ինն աշակերտս (3) ։ Յակոբ եպիսկոպոս մին յաշակերտաց նորա ժառանգեաց զգահ կաթուղիկոսութեանն սրբոյ Էջմիածնի ։ Յովհաննէս վարդապետ տիեզերալոյս կոչեցեալն առաւել զօրաւոր հանդիսացաւ 'ի մէջ աշա-

կերտակցաց իւրոց, ոչ միայն ուսաւ զհայերէն մանկ ցութիւնն՝ այլ և հմտացաւ ՚ի լեզու Պարսից և Արաբացւոց: Շահ Սէլէյման արքայ պարսից մեծաւ հանդիսիւ եկեալ ՚ի վանս այցելութիւն, հետաքրքրութեամբ արար զհարցումն վասն պատկերացն տնօրինականաց և սրբոց՝ որք նկարեալ կային ՚ի մէջ սրբոյ վանքին, վասն Աստուածութեանն Քրիստոսի՝ և վասն սրբոյ Երրորդութեանն. սոյն Յովհաննէս գիտնական վարդապետ ոչ միայն բանիւ բերանոյ պատասխանի արար նմա իմաստութեամբ ըստ հոգւոյն խօսելոյ՝ այլ և շինեաց զմատեան յաղագս նոյն առարկայիցն (4), էջ մի հայերէն գրով և էջ մի ըստ պարսից բարբառոյ, և մատոյց զայն նոյն Շահ Սէլէյման արքայի, որով յաւել զզարմանս նորա սակս իմաստութեանն իւրոյ: Յետ մեռանելոյ Շահ Սէլէյմանայ՝ յաջորդ նորա Շահ Սուլթան Հուսէյնի ունէր ներքին մտախոհութիւն շրջելոյ զայլակրօն ժողովուրդս ՚ի դէն Պարսից, որպէս և արար զայն շրջելով զկիակապաշտ պարսիկս զերացիսն Ջուղայու յօրէնս Մահմեդականութեան: Այլ մինչ կամեցաւ առնել զայն հրաման և վասն Ազգի Հայոց՝ սոյն Յովհաննէս վարդապետ ախոյեան հանդիսացեալ՝ լուսաւոր բանիւ վարդապետութեան իւրոյ զճշմարտութիւն քրիստոնէական կրօնիցն յայտնի առնելով Շահ Սուլթան Հուսէյնին՝ նանիրացոյց զխորհուրդս նորա ՚ի սրտի իւրում: Աւանդութեամբ պատմի թէ մինչ գլխաւորն ՚ի Մօլլայից արքային ՚ի հակաճառութեան բանս որ վասն հաւատոյ տկարանայր առնել զպատասխանի բանիցն Յովհաննէս վարդապետի՝ սկսաւ հայհոյութեամբ խօսել, որում Յովհաննէս վարդապետ պապանձելոյ կարդաց զհրաման, և առժամայն պապանձեցաւ լեզու նորա, յորմէ ահ անկեալ ՚ի սիրտս թագաւորին և նախարարաց նորա՝ յետս կասեցան ՚ի խորհրդոյն հաւատափոխելոյ զհայս: Թարգմանեաց նա զաւետարանն Մատթէոսի՝ Մարկոսի՝ Ղուկասու և Յովհաննու ՚ի բարբառս Պարսից (5): Յօրինեաց 1՝ զհարցուպատասխանին Շահ Սէլէյմանի, 2՝ վասն հաղորդութեան մարմնոյ և արեան Տեառն՝ 3՝ վասն Աստուածութեանն Քրիստոսի, 4՝ վասն սրբոյ Երրորդու-

թեանն, 5՝ վասն աստիճանաց հաւատոյ, 6՝ 'ի վերայ բնութեան սրբոյ երրորդութեանն 7՝ վիճաբանութիւն ընդ Մօլլային Պարսից, 8՝ քերականութիւն համառօտ, 9՝ տրամաբանութիւն (6), 10՝ կրթութիւն մանկանց, որ է հակաճառութիւն ընդդէմ պապականաց. (7)։ Յօրինեաց դարձեալ 11՝ մակացութիւն ճշմարտութեան, 12՝ համառօտ Աստուածաբանութիւն, 13՝ ճաշակեցէք (8), 14՝ մեկնութիւն երգոց երգոյն Սողոմոնի, 15՝ մեկնութի Սաղմոսի, 16՝ թուղթ առ Լուդովիկոս Լատին եպիսկոպոս, 17՝ գիրք աղօթից (9)։

Այս գիտնական վարդապետ վախճանեցաւ և ընկալաւ ըզգերեզման 'ի գիրս վարդապետաց կոչեցեալ հանգստարանին Ջուղայու ։

Այս է նորա տապանագիր ։

" Այս է տապան Ջուղայեցի տիեզերալոյս Ոհաննէս գիտնական վարդապետին, 1164 " (1715)։

Զկնի նորա եղեն անուանի Ստեփաննոս և Աղէքսանդր եպիսկոպոսք, որք առաջնորդք եղեն վանին և ապա կաթուղիկոսացան։ Սոցա ևս եղեն բազում աշակերտք, այլ զգործոց նոցա չիք առ մեզ յիշատակութիւն ինչ։

Դ. Սրբութիւն վարուց փայլէր 'ի միաբանսն յայնոսիկ ժամանակի. Կարապետ վարդապետ ոմն աղօթիւք յարոյց զորթն մատաղ, զոր զենեալ 'ի վանին մայր նորա ցաւագին բառաչէր, (որպէս աւանդութեամբ պատմի) վասն որոյ զոսկերս նորա պարուրեալ 'ի կաշին՝ աղօթեալ էր առ Աստուած շնորհել նմա զկենդանութիւն, և Աստուած լուեալ ձայնի աղօթից նորա՝ որթն կենդանացեալ վազեալ էր առ մայր իւր։ Գերեզման նորա կայ 'ի հանգստարանն Ջուղայու, և մինչև ցայսօր հասարակաբար կոչի Զօգյորոյ ։

Տապանագիրն է

" Այս է տապան Կարապետ վարդապետին, որ մակ ան-

„ուամբ ձագյարոյց կոչի 1055 „ (10)։ 'ի վերայ տապանաքարին կայ քանդակեալ պատկեր կիսակենդան որթոյն։

Ե. Մինչև ցամ Տեառն 1688 վանքն պայծառանայր թէ ըստ միաբանից լուսաւորութեան, թէ ըստ նոցին բարեբարոյութեան, և թէ ըստ տնական բարւոք տնտեսութեան, այլ 'ի նմին ամի յուզեալ խռովութեան և հակառակութեան լուսաւորչական հայոց ընդդէմ պապական Ցիտուսեան կրօնաւորացն յարձակմանց, յաղագս անօգտակար առաւելութեան ծախուց վանքն անկաւ 'ի ներքոյ հազար թումանի պարտուց, որ յընթացս իբրև երեսուն ամաց մնաց բեռն 'ի վերայ վանիցն։ Առաջնորդութիւնն Մովսէս եպիսկոպոսի (յետ Խաչատուրայ և Դաւթի) եղև նշանաւոր յոյժ ըստ օգտակարութեան մասին, զի 'ի նորա աւուրս ազատեցաւ վանքն 'ի պարտականութենէն, եղեն մասնաւոր շինութիւնք, ընդարձակեցան այգիք և կալուածք վանիցն, և ճոխացաւ եկեղեցին զարդուք և սպասուք։ Զայն ամենայն աջողակութիւնս ստացաւ նա առատ նուիրատուութեամբք բարեպաշտ համազգեացն Հնդկաստանի, որք 'ի նորա ժամանակս առաւել զօրացեալ էին 'ի վաճառականութեան իւրեանց։ Այլ երեք ամօք նախ քան զվախճան կենաց նորա յամի 1722 հեղեղ արձակման Աղուանից, որ ընդ պարսկաստան վեր 'ի վայր շրջեաց՝ ոչ սակաւ խոչ եղև առաջադիմութեան վանիցն։ Ի բռնաւորութեանց Աղուանից դարձեալ ստուերք անշքութեան տարածեցան 'ի վերայ վանիցն՝ այլ ոչ բուռն ներգործութեամբ, զի յայնոսիկ ժամանակս կառավարութիւն վանիցն ընթացաւ միջասահման կարգաւ ըստ պարագայիցն ներելոյ ցամ Տեառն 1752։ Ի նմին ժամանակի յառաջնորդութեանն Պօղոս եպիսկոպոսի, ըստ անբարեխառն բնաւորութեանց նորա ծախելով զբազում դրամս և վատնելով զբազում անօթս յընթացս երից ամաց մինչև ցընկեցիկ առնելն զնա, վանքն ենթարկեցաւ հազար թումանի պարտուց։ Բռնաւորութիւնք Նադիրշահի առաւել ևս հարուածեցին ոչ միայն զվանքն՝ այլ և զբովանդակ Ջուղայ։ Ի բուռն հալածանաց այնմ ժամանակի կառավարութիւն վանիցն տասնամեայ ժամանակ լքեալ մնաց առանց Առաջնորդի,

զի սկսեալ 'ի 1754 տարւոյ՝ ցվախճան 1763 ամի Գէորգ Առաջնորդ խոյս տուեալ յանյագ պահանջմանց բռնաւորաց վարեաց զառաջնորդութիւնն իւր 'ի Բասրայ, յորում ինքն ծնեալ էր (11)։ Յայնմիկ անխնամ ժամանակի կորեան և վատնեցան բազում ձեռագիր մատեանք, (որոց կորուստ ազգային ցաւակցութեան է արժանի) նսեմացաւ միաբանական բարեկարգութիւնն և միաբանք ցիր և ցան եղեալ սկսան նուազել։ Եկաց 'ի նմին անշքութեան մերթ սակաւ և մերթ բազում տառապանօք, մինչև յամի 1771, յԱլիմուրատխան ելուզակակերպ Թագաւորէ կողոպտեցաւ յամենայն եկեղեցական զարդուց և 'ի սպասուց, և յայնմ հետէ իբրև այգի ցանգաւեր կոխան եղև առ ժամանակ ինչ 'ի նմանէ օրինակ ելուզակաց, որք փոփոխակի յաղթանակութեամբ կորզէին զգահ Թագաւորութեանն սակաւատև իշխանութեամբ։

Զ. Թագաւորութիւնն Քէրիմխանի անդորրացոյց զվիճակ վանացն, և 'ի նորա աւուրս Մկրտիչ Առաջնորդ կարկատեաց զերբամասս մնացուց անցեալ ժամանակաց։ Այն Մկրտիչ Առաջնորդ թէպէտ քան զամենայն Առաջնորդս Ջուղայու առաւել վայելեաց զճաշակ դառն տանջանաց և բազմապատիկ նեղութեանց՝ այլ բաղդաւոր էր զի 'ի նորա ժամանակս առատութեամբ յորդէին նպաստք և օգնականութիւնք որոց հայթայթէր Ջուղայեցւոցն Հնդկաստանի, զի համբաւ վըշտաց և նեղութեանցն Ջուղայու ճմլէին զսիրտ նոցա և յաճախէին զգութ և զկարեկցութիւն նոցա առ վանն և առ Հայրենիս։

Յամի 1790. Առաջնորդութիւնն Յակոբ եպիսկոպոսի ետ զերրորդ հարուածս վանին, զի ժողովեալ կամ կողոպտելով նորա զսակաւ մնացորդս եկեղեցական գոյիցն և զարդուց վանին՝ գնաց նոքօք 'ի Բասրայ և անդէն 'ի Մադրաս։

Խմոր պարտուցն սկսեալ 'ի 1752, 'ի ժամանակէ առաջնորդութեանն Պօղոսի հետ զհետէ աճումն ստանայր, որոյ գումար զամ Տեառն 1803 'ի ժամանակս Առաջնորդութեանն Յարութիւն Եպիսկոպոսի ժամանեալ էր ցչորս հազար Թուման (12)։ Ի կալնուլն Յարութիւն Եպիսկոպոսի զգահ Ա-

առաջնորդութեան վանիցն՝ խաղաղացեալ էր Պարսկաստան յե-րեսաց արձակմանցն Թագաւորակերպ Ելուզակաց, ուստի Յա-րութիւն Առաջնորդ հօգ տարեալ յաղագս բարւոքելոյ զվի-ճակ վանիցն՝ զՆիրակոս վարդապետ առաքեաց նուիրակ 'ի Հըն-դիկս, և զՄկրտիչ վարդապետ 'ի Ռուսաստան։ Ի ձեռն աշ-խատութեան նոյն նուիրակաց և ազգային նպաստիւք եղև վը-ճարումն պարտուց յընթացս չորից ամաց։

Ի 1810 է՝ ց 1817 'ի ժամանակս Առաջնորդութեանն Յով-հաննու առաջնոյ օժանդակութեամբ նուիրակութեանն Յա-կոբոս վարդապետի եղև կրկին նորոգումն վանացս, զի եկեղե-ցականն անօթք և զգեստք յիշատակատուութեամբ ազգատե-րացն Հնդկաստանի առաքեցան 'ի վանս. վանքն իսպառ զեր-ծաւ 'ի պարտուց, և մարթացաւ ունել զտասն հազար սքայ ռուփի դրամագլուխ 'ի նուիրական գումարոյ անտի. որ մինչև ցարդ կայ և պահի 'ի սնդկի Նազարէթայ եկեղեցւոյն Հայոց Կալկաթու։

Յետ այնր կառավարութիւն վանիցն ընթացաւ միջաստահ-մանաբար, մերթ մանաւոր պարտուք և մերթ առանց այնոր։ Ի 1827 ամի ստացաւ զտասն հազար սքայ ռուփի կրկին դրա-մագլուխ 'ի կտակաւանդ գումարոյ Ջուղայեցի Աղայ Գէորգայ Մանուկեան։ Յամի 1842 յառաջնորդութեանն Խաչատրոյ եպիսկոպոսի յարեաւ միւսանգամ խռովութիւն 'ի մէջ լուսա-ւորչական Հայոց և պապականաց. դարձեալ վանքն 'ի ներ-քոյ անկաւ պարտուց։ Թէպէտ յետ այնր մտին 'ի Հնդկաս-տանէ մեծաքանակ գումարք 'ի վանսն՝ այլ ոչ վերջացաւ խը-մոր պարտուցն, որ ցամ Տեառն 1848 և 1851 ժամանեալ էր ցհազար երկու հարիւր թումանի։ Նշանաւոր եղև առաջնոր-դութիւնն Սրբազան Թադդէոս Եպիսկոպոսի, զի 'ի ժաման-նակս նորա վանքն ազատեցաւ իսպառ 'ի պարտուց, եղև նո-րոգումն շինուածոց նորա թէ արտաքին և թէ ներքին պա-րսպաց, ճոխացաւ աւանդատունն եկեղեցական սպասուք և զգեստուք, բարեկարգութիւնն սկիզբն կալաւ բարգաւա-ճիլ, և պատառեցաւ ստուերարկու քօղ անշքութեան նորին։

# ՅՕԴ. Ը.

*Վանօրէական հաս կամ արդիւնք :*

ա. Ի վեց աղբերաց ստանայ վանքն զհասոյթս իւր, որք են տոկոս դրամագլխոյ, վճարումն վիճակաւորաց՝ որ կոչի վէրգու կամ Աթոռահաս, մուտք կալուածոց, Թագաւորական պարգեւ, ժողովրդոց առանձին տուրք, եւ նուիրակութիւն :

բ. Առաջին՝ դրամագլուխ նորա է տասն հազար ոսկի ռուփի մնացեալ 'ի նուիրակական արդեանց Յակոբոս գերանկան վարդապետի, որ յամի 1815 հաւանութեամբ վանքական կառավարութեանն (1) եւ ժողովրդոցն Հնդկաստանի եդեալ է զայն 'ի պահեստ յաւանդատան Կալկաթու Նազարէթայ հայոց սուրբ եկեղեցւոյ, զի պահեսցի անդ ապահովութեամբ եւ մշտնջենաւորապէս. եւ միայն տարեկան տոկոս նորա ամ ըստ ամէ առաքեսցի 'ի վանքն ; բերէ նա զտոկոս տարեկան չորս առ հարիւր, որ բովանդակի 420 կումպանւոյ կամ 860 պարսից ռուփի : Երկրորդ՝ դրամագլուխ նորա է տասն հազար ոսկի ռուփի, յամի 1827 կտակեալ յանուն վանիս 'ի հանգուցեալ Աղայ Գէորգայ Մանուկեան Ջուղայեցւոյ, որ պահի 'ի կառավարութեան Անգղիացւոց դիւանատանն Կալկաթոյ, եւ ամ ըստ ամէ վաշխ նորա 'ի ձեռն եկեղեցպանին Կալկաթոյ Նազարէթայ սուրբ եկեղեցւոյ հասանէ վանիս : բերէ նա զտոկոս չորս առ հարիւրն, որ բովանդակի 420 կումպանւոյ կամ 860 պարսից ռուփի :

Երրորդ՝ դրամագլուխն է տարեկան արդիւնքն հիմնաւորապէս կտակաւ նշանակեալ 'ի հանգուցեալ Պարոն Փիլիպպոս Խաչկեանէ 111 եւ կէս կումպանւոյ ռուփի, կամ պարսից

234 ռուփի, զոր ստանայ վանքն 'ի կառավարութենէ Եղլեկաթու Նաւաղարէթայ Հայոց եկեղեցւոյ:

Դ. Սկիզբն հաստատելոյ զհասուցումն վիճակաւորաց է յամի 1684 հրամանաւ Ստեփաննոս Առաջնորդի: Իրաւունք ստանալոյ վանին զայն հաս յառաջ գայ անտի՝ զի վիճակ կամ քաղաքք հնդկաստանի են թեմ սրբոյ Ամենափրկչեան վանի, և Քահանայք Ջուղայու չունէին իրաւունս ինչ 'ի վերայ այնոցիկ վիճակաց, զի ուրաքանչիւր քահանայ 'ի ձեռնադրելն 'ի Ջուղայ՝ ձեռնադրի յանուն այս կամ այն եկեղեցւոյ և Թաղի Ջուղայու, վասն որոյ առաքել վանին զվիճակաւորս 'ի հնդիկս՝ է շնորհ զոր առնէ նոցա, ուստի կարգեցաւ այն տուրք իբրև նշան երախտագիտութեան. որ և կոչի պարտք ընկալեալ բարերարութեան: Այն տուրք 'ի սկզբան անդ նշանակեցաւ 20 ռուփի յուրաքանչիւր ամի, և կրկնապատկեցաւ յանցանել ժամանակաց ինչ: Իսկ 'ի ժամանակս ներկայ առաջնորդ. Սրբազան Թադէոս արք եպիսկոպոսի Քահանայք Ջուղայու 'ի 16 նոյեմբերի 1853 ըստ առաջարկելոյ Սրբազան Առաջնորդին գումարեցան 'ի ժողով, և իրաւացի համարեցին առաւելուլ զգումարս Աթոռահասին. վասն որոյ զվերջաւորութիւն ժողովոյ իւրեանց յայտնեցին Սրբազան Առաջնորդին ըստ յետագայ օրինակին:

" Նորին բարձր Սրբազնութեան Տեառն Թադէոսի Արք
" Եպիսկոպոսի և բարեկարգ Առաջնորդի սրբոյ վանացն Ա-
" մենափրկչի:

" Տեսանելով մեր զանհրաժեշտ հարկ ծախուց Աթոռոյս,
" նաև զանխոնջ աշխատակրութիւն ձերդ բարձր Սրբազնու-
" թեան յամենայն դէպս թէ վասն բարեկարգութեան եկեղե-
" ցեաց և թէ վասն պայծառութեան Ազգի, նաև զմերս պար-
" տաւորութիւն առ Աթոռս՝ առ շնորհատուր մեր մայրս,
" նոյնպէս և տեսանելով թէ աղբիւր ամենայն մտից և ար-
" դեանց ըստ տարաբաղդութեան ժամանակիս խցեալ՝ ար-
" ժան համարիմք ըստ խղճի մտաց մերոց հաստատել և
" կարգադրել եկամուտ Աթոռոյս. Թէպէտ մինչ ցայսօր ե-
" ղեալ է սովորութիւն զի ամենայն քահանայ վիճակաւորեալ

« 'ի Հնդկիս՝ տայր զվէրգու կամ բաժին Աթոռոյս, սակայն « ոչ կանոնաւոր և անտրտունջ. ուստի մեք ստորագրողքս՝ « որք մինչ ցայսօր վայելեալ եմք զարդիւնս Հնդկաբնակ ժո- « ղովրդոց շնորհիւ Մօր մերոյ Աթոռոյս՝ խոստանամք և « դաշնաւորեմք այսպէս՝ զի իւրաքանչիւր քահանայ ճանա- « չելով զտարեկան պարտիս իւր առ Մայր Աթոռս, որպէս « 'ի ներքոյ սորա որոշելով հաստատեմք հանդէպ իւրաքան- « չիւր քաղաքաց, որով գէթ դիւրութիւն ինչ լինիցի վասն « ձեր 'ի մասին կառավարութեան Աթոռոյս, և մեք և՛ս կա- « տարելագործ գտցուք Առաքելական խրատուն «Հաստա- « ցէք ամենեցուն զպարտս», եւն ».

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| « Թէհրէն քշ. քն հատուցնի Մէջլիշհի ոսկիք | | | | | 100 |
| « Շիրազ | » | » | » | » | 20 |
| « Բուշեռ | » | » | » | » | 30 |
| « Բասրայ | » | » | » | » | 20 |
| | | | | Մահմադ շահի | 170 կռ. ոսկիք 85 |
| « Բումբայի | » | » | » | » | 70 |
| « Սուրաթ | » | » | » | » | 60 |
| « Մադրաս | » | » | » | » | 70 |
| « Կալկաթա | » | » | » | » | 300 |
| « Չինչրա | » | » | » | » | 55 |
| « Դաքա | » | » | » | » | 70 |
| « Սէյդաբադ | » | » | » | » | 50 |
| « Ռանգուն | » | » | » | » | 50 |
| « Պինանգ | » | » | » | » | 50 |
| « Սինկափուր | » | » | » | » | 50 |
| « Բաթաւիա | » | » | » | » | 90 |
| | | | | Գումարանս ռուփիք. | 1000 |

« Խոստանալով ամենայն հաւաստութեամբ զվճար նը-

« շանասկերայ գումարն իւրաքանչիւր ամի հատուցանել ան-
« պատճառ մինչ լիցուք վիճակաւոր, զոր և պարտին այժ-
« մեան ամենայն վիճակաւորեալ քահանայք հատուցանել:

Ի Ջուղա 1853:
Ի 16, Նոյեմբերի:

Սրբազան Հայր՝
Ձերդ բարձր Սրբազնութեան
ամենախոնարհ ծառայք.

Տէր Յովհաննէս Տէր Մկրտչեան:
Տէր Դաւիթ Մկրտումեան:
Տէր Եղիազար Անդրէասեան:
Տէր Ստեփաննոս Բարաղամեան:
Տէր Սարգիս Խ. Տէր Մատթէոսեան:
Տէր Կարապետ Տէր Աբրահամեան:
Տէր Գէորգ Գասպարեան:
Տէր Բարսեղ Գալուստանեան:
Տէր Կարապետ Տէր Աւետեան:
Տէր Նիկողայոս Տէր Յ. Եղիայեանց:
Տէր Մարտիրոս Տէր Յովակիմեան:
Տէր Յովհաննէս Մկրտումեան:
Տէր Յարութիւն Յ. Տէր Կարապետեան:
Տէր Մարգար Ստեփաննոսեան:
Տէր Դաւիթ Ա. Բարաղամեանց:
Տէր Մինաս Բարսեղեան:
Տէր Յարութ Տէր Ս. Տէր Յարութեան:

Սոյնպէս գումար աթոռահասին բովանդակի առ ամե
հազար կումպանւոյ կամ 2200 պարսից ռուփի՝ այլ 'ի պատ-
ճառս աղքատութեան ոմանց վիճակի կամ վիճակաւորաց մնաց
մի 'ի գումարոյ անտի միայն անվճար, և յիւրաքանչիւր ամի
հազիւ 750 կզ" ռուփին հասանէ 'ի վանքն:

Դ. Կալուածք չեն 'ի թիւս հիմնաւոր արդեանց, զի մերթ նուազին և մերթ առաւելուն արդիւնք նոցա ըստ հանգամանաց տարւոյն կամ պտղոյն, և մերթ 'ի լինելն ցրտահար՝ բերեն զվնաս։ Հաստատուն օգուտն զոր ստանայ վանքն 'ի կալուածոց՝ են վարձելիքն, և խոտն վասն անասնոց՝ որոց գին հասանէ առ ամն ց80 կամ 100 թուման։ Զուտ արդիւնք քաղեալ յիւրաքանչիւր ամի 'ի կալուածոց անտի՝ ոչ լինի յաւել քան զհարիւր թուման դրամ, որ մերթ առաւելու մերթ նուազի, և երբեմն նոյնչափ վնաս ստանայ ըստ հանգամանաց իւրաքանչիւր տարւոյ։ Օգուտն զոր ունի վանքն 'ի կալուածոց՝ գլխաւորապէս է այն, զի ոչ վատնին կամ կորնչին, այլ կան և մնան հաստատուն ստացուածք վասն վանին։

Ե. Վեհափառ Տէրութիւնն Պարսից հաստատուն հրովարտակօք նախ քան զամն 1848 շնորհէր վանին ամի ամի զ262 թուման։ Իսկ 'ի 1853 հրովարտակաւ վեհափառ Նասըրատին շահ թագաւորի հաստատեցաւ 150 թուման վասն ամենայն տարւոյ։

Զ. Ժողովրդականնուէրք կամ լուսագին չունի հաստատութիւն, զի թողեալ է այն յազատ կամս բարեպաշտից, որք մինչ կամին՝ կարեկցեն, մինչ ոչ կամին՝ չառաքեն, ուստի ոչ 'ի համար մտանէ այն վանքական արդեանց։ Առատութիւն այսմիկ հասի կամ արդեանց կախի 'ի կառավարութենէ վանին կամ Առաջնորդի, զի եթէ ամենայն ինչ իցեն 'ի բարեկարգութեան՝ առատանայ նուէրն, իսկ եթէ հրատարակեսցի թէ այնոքիկ նուէրք ծախին յումպէտս՝ խապառ խցեալ մնայ այս աղբիւր արդեանց։ Ի ժամանակս արդի Սրբազան Առաջնորդի այս աղբիւր արդեանց եղև առաւել արդիւնաւոր, քան որչափ էրն նախ քան զնորա առաջնորդութիւն։

Է. Նուիրակութեան հաս կամ իրաւունք են ըստ կրկին տեսակի, զի 'ի գաւառականաց ստացեալ լինի յիւրաքանչիւր ամի, և 'ի Հնդկահայոց յետ լրանալոյ միջոցի եօթն ամաց։

Գաւառն Չարմահալայ երբեմն յաւել՝ երբեմն պակաս տայ առ ամն տասն և հինգ բեռն ալիւր (2), երեք լիտր իւղ,

Հետէ բռնաբար տիրեալ էր զայս կալուած Մէհէտ միր Ալ-
գօլվաղի եւ բարեկամ կալուած անտերունչ . այլ Մրթազան Թադդէոս
Առաջնորդ 'ի 1855 ամի բազում աշխատութեամբ յետս առա-
ցաւ զայն 'ի նմանէ ; որ կայ այժմ ընդ իշխանութեամբ Ամե-
նափրկչեան վանից :

Այս եկեղեցի չէ յայտնի քան զքառասուն ամ՝ որ Է աւե-
րակս դառնացաւ :

---

( 1 ) . Տես .

Ի .

## ՍՈՒՐԲ ՅԱԿՈԲ ԲԱՂԱԹԱՅ .

Այս եկեղեցի ըստ յիշատակացն եղելոյ 'ի նմա՝ երեւի շի-
նեալ 'ի 1115 ( 1666 ) ամի յԱւաքալեանց տոհմէ :

Ի վերայ ձախակողմ հիւսիսային դրան գրեալ կայ յիշատակս այս :

« Յիշատակ է մահտեսի Անայուն և ծնողացն Թաւլաքա-
« լին և Իբրահիմին . Թվին 1170 ( 1721 ) :

Ի վերայ դրանց շեմոյ արեւմտեան գրեալ կայ :

« Յիշատակ է պարոն Աղազարին և ծնողացն Փանոսին և Գուլ-
« նարաթին , և հանգեալ կողջն Մարիամբային , Թանկ-
« խաթունին , եկենդանի կողջն Թադուէ , որդին Օվա-

Նէօրին և դստերն թանգուհին, Թվին 1165 ։

Ի ձախոյ գմբեթին ծաղկեպատուհանոյ գրեալ կայ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՊարոն Բաղդասարն, և ծնողսն
« իւր Ցովհաննէսն, որ ետուն ծեփել և զարդել և նու-
« իրել յիշատակ իւրեանց ծնողացն՝ Թվին ՌՃԺԵ » (1666)։

Ի ձախ կողմ յորմն ծաղկեպատուհանոյ գրեալ կայ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՆարբասպետն, որ բեմի Թաղն նոր-
« ոգեց յիշատակ յաւիտենից, Թվին 1117 » (1668) ։

Շինեալ է այն կամարակապ և առանց սեան ։ Ունի չափաւոր մեծութիւն, երկայն և լայն է բոլորակ պատկերազարդ, նաև 'ի ժողովրդարանին միայն մի շար պատկերաց կայ, իսկ մնացեալն է տախտակացեալ. շինութիւնն եկեղեցւոյ կիսաւեր կայ. և շրջակայ տեղաւքն շինուածք հողոյ հաւասարեալ են ։ Կալուածք աւերակացն սորա կայ ընդ կառավարութեամբ Տէր Սիմէոն Քահանայի Թաղին Երևանայ ։ Իբրև քառասուն ամք հազիւ լինին՝ զի այս եկեղեցի ընդ անփոյթս գտանէր ։

Այս 'ի նմա տապանագիր մի կայ եկեղեցւոյն, որ ճոխ լինել 'ի փոխանակ նոյն եկեղեցւոյ լինողին, որոյ այս է տապանագիրն ։

Սա 'ի խորոց զերեզմանիս յանկեալ բարձրեալդ հօր հըն-
չեցին.
վաստակեալ անդանս նորա քոյ զգին բժշկեցի բանիւ քոյին,
'ի յարութեան յաւուր մեծին զիս զարթուցէ քո սուրբ
Հոգին.
Նիկողայոս գրող բանին, առ Տէրդ գոչեմ նորա քոյ շիրմին,
սա է որդի Ցարութիւնին Աւագալեանց մեծի տոհմին,
ըն գիտութեամբ Աստուածային, պայծառ վարուք միտոն

՚ի յերկին ․
Յամի եհաս նմին . Թուին հայոց 1179, ՚ի 6 յունվարին, Ջղէմս ՚ի յերկիր եղեալ պաղատիմ Տեառնդ Յիսուսի՝ վտակ արարչիդ կողից որ ՚ի խաչին առիս հոսեցի ։

## Ձ.

## ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ կամ ՕՀԱՆԱՅ ՎԱՆՔ

Այս եկեղեցի չունի որոշ յիշատակարան թէ երբ կամ յումմէ շինեցաւ ։ Այլ ՚ի յիշատակարանէ ձեռագիր Աւետարանի միոյ, եղելոյ յեկեղեցւոջն Երեւանայ, երեւի շինութիւնն նորա է մինն ՚ի հնագոյն եկեղեցեաց Ջուղայու . “ Գրեցաւ “ սուրբ Աւետարանս ՚ի քաղաքս Շօշ որ է Սպահան ՚ի դուռն “ սուրբ Յովհաննէս Մկրտչի, և սուրբ Հրեշտակապետին և “ սուրբ Յակոբայ և սուրբ Սարգսի զօրավարին ձեռամբ “ Յովհաննէս փըցուն աբեղայի ՚ի դառն և ՚ի նեղ ժամանա- “ կիս, ՚ի թվականիս հայոց 1058, ( 1609 ) ” ։ Արդ ՚ի բանից աստի յայտ է թէ եղեալ է ՚ի 1058 ամի ( 1609 ) եկեղեցին սրբոյն Սարգսի զօրավարին ։

Յառաջին դրան յորմնական շրջանակէ Գրեալ կայ ։

“ Քրիստոսասէր Ջաքարէն երկու դասին քաշուածն. Նը- “ կարել տվէց իւրն յիշատակ և իւր ծնողացն Միրզին և “ Վառվառին, և ամուսնեացն Մարիամին և Մամարին, և “ որդւոցն Յովհաննէսին, և հանգուցեալ որդւոցն և դըս- “ տերն Յակոբջանին և Սուլթանփաշին և եղբարցն Մաթոսին

թէ ըստ շինուածոյ մեծութեան բարձրութեան և վայելչութեանն՝ և թէ ըստ ներքին պատկերազարդ և ծաղկափթիթ նկարուցն ։ Կառուցեալ է 'ի վերայ չորից սեանց ։ Յատակն էր սալարկեալ, որոյ զքարինս 'ի 1854 ամի հանեալ տարան 'ի վանքն Ամենափրկչի պիտոյացուցանելով 'ի գործ սալայատակի ։ Ունի կից մատուռն կամ եկեղեցի ամառան, որպէս ունին երևելի եկեղեցիք Ջուղայու, և անդ կատարեն յամառան զժամերգութիւն ։

Սա է յաւէտ քան զերեսուն ամ՝ զի այս եկեղեցի դադարեալ 'ի թիւս աւերակ եկեղեցեաց, տակաւին բազումք գտանին 'ի Ջուղայ, որք տեսեալ են 'ի նմա զժամերգութիւն և զհոգևոր պաշտօնակատարութիւն ։ Շինութիւնն եկեղեցւոյ կայ ամբողջութեամբ, և 'ի ներքին կուսէ տակաւին ոչ է կորուսեալ զփառազարդութիւն բազմերանգ նկարուց, ծաղկանց և պատկերաց ։

## Դ.

## ՍՈՒՐԲ ԹՈՄԱՅ.

Այս եկեղեցի՝ ոչ միայն 'ի յիշատակարանէ զոր ունի, այլ և 'ի գրութենէ Աղայ Մարգարայ Աւետ Խալդարեան, (1) յայտնի լինի՝ թէ շինեալ է ծախիւք Խալդարեանց տոհմի ։

Ի վերայ տապանաքարի սեղանոյն գրեալ կայ յիշատակարանս այս ։

« Աստ զի լաւ է ինձ մի օր 'ի գաւիթս քո՝ քան զհազարս.
« Զյիշատակ բարի թողեալ և յիշատակ անջնջելի.
« և յիշատակ է Խալդարեանց Դաւութն՝ և հօրն խօջայ

« Ոսկանն և մօրն Բագրիկն, և պապն Խաչգար
« Մարգարին, թվին ՌՃԽԴ ( 1695 ) :

Ի շրթան Վէմ խորհրդանոցին գրեալ կայ :

« Ի Փրկութիւնն Պետրոսին՝ Թագուհէ և Տատիկին՝ թվին
« ՌՃԽ ( 1690 ) :

Կառուցեալ է այն 'ի վերայ վեց սեանց, երկայնութիւնն է 82 ոտնաչափ սկսեալ 'ի ստորոտէ սեղանոյն, և լայնութիւնն՝ 60 ոտնաչափ : Ունի գմբեթ բաւական բարձրութեամբ 'ի մէջ առաստաղի երկրորդ դասուն : Չունի նկարէն պատկերս կամ ծաղիկս ինչ, այլ սպիտակացեալ է բռով : Շինութիւնն եկեղեցւոյ յարտաքին կուսէ է շատ վայելչաշէն վասն գոյնզգոյն յախճապակեաց զետեղելոց յորմունսն : Եկեղեցին տակաւին կանգուն կայ, այլ որ ըստ օրէ յամայութեան կողմն խոնարհի : Արտաքին խուցք և բնակարանք յաւեր դարձեալ՝ պահեն միայն զորմունս :

Կոչի սա և զանգով ժամ, սակս լինելոյ 'ի նմա կտորոյ միոյ թաղադրեալ ձոյլ հրահալելեաց, որ հնչէ զձայն իբրև զանգակի, այժմ այն ձոյլն զանգ կոչեցեալ՝ գտանի յԱմենափրկչեան Դպրոցին Ջուղայու, որոյ հնչմամբն աշակերտք ժողովին կամ արձակին : Այն եկեղեցի ըստ որում մերձ է գետոյն զանդարութեայ և հեռի անկեալ իսպառ յապատոյ՝ վասն որոյ միշտ երկիւղալի է այն և վտանգաւոր, քանզի 'ի խառն ժամանակի ( որ յառաջ անպակաս էր 'ի Ջուղայ ) սիկարեան մարդիկ անդ որջացեալ մնային, գործելով զհաճոյս չար կամաց իւրեանց : Ի սիկարեանց սատանօր տարեալ սպանեցաւ Յարութիւնն Մարգարեան 'ի 1850 ամի : Այլ և արեանհեղութիւնք բազում են եղեալ 'ի նմա 'ի վտանգաւոր ժամանակս : Ամայութիւնն սոյն եկեղեցւոյ ոչ է յաւել քան զքառասուն ամ :

---

( 1 ) . Տե

## Ի.

## ՇԱՀՎԵԼԵՆՑ ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆԷՍ

Յաղագս սոյն եկեղեցւոյ ունիմք զլխաւոր տեղեկութիւնս ՚ի կտակէ շինողի նորա Աղայ Յովսեփայ Մարգարեան ( 1 )։ Ի նոյն կտակի յաղագս շինութեան սոյն եկեղեցւոյ գրէ, թէ
‘‘ ՚ի 1146 ( 1677 ) իմ եղբօր անուամբ եկեղեցին եմ շինել և
‘‘ զինչքն տեղն թաղել, խարջի ջամն է քսան հազար ռու-
‘‘ փի ,, ։

Ի վերայ շրթանց դրանց սեղանոյն գրեալ կայ յիշատակարան այս ։

‘‘ Յիշատակ է Ոուրուղլուէ Յուղիդէ Յուրիկին Թիւ ռՃխը շամս ամսին Ժ ումն ,, ։

Այն քարինս ՚ի 1855 ամի քակեալ տարան յեկեղեցին սրբոյն Մինասայ որ ՚ի Թաղն Դաւրիժու, և անդ զետեղեցին ՚ի շրթան սեղանոյն, տարան և զվիմաքարն՝ որ արդէն կայ առ դրան սուրբ Մինասայ եկեղեցւոյ ։

Ի վերայ տապանաքարի սեղանոյն գրեալ կայ ։

‘‘ Յիշատակ է զշօրք Նարապետն և Թոռն Աւետն., Եղ-
‘‘ գեարին և իւր ծնողացն, և կողակցին և իւր ընթա-
‘‘ նեացն, ամէն, Թիւն 1156 ։

Յաջ կոյս տեղւոյն գրեալ կայ :

« Յիշատակէ փառօքն՝ ծնողսն Սահրադին՝ Դիլջխունին ,
« դարձեալ յիշատակէ նաւրէ , կողակցոյն Սալթիկին
« դստերն Նունիկին եղբարերին :

Ի ձախ կոյս տեղւոյն գրեալ կայ :

« Դարձեալ յիշեցէք 'ի Քրիստոսազխաշէին և ծնողն Եղ-
« դեարն , Մարամփաշէն՝ Որդին Սաֆարն „ :

Այսոքիկ յիշատակք չեն եկեղեցի շինողէն , այլ որոց զոսկե պատճառ ծաղկունանկարել տուեալ 'ի վերայ տապանաքարի սեղանոյն :

Ըստ բանից կոռակի Աղայ Յովսէփայ Մարգարեան , կայ տակաւին 'ի մէջ պարսպի նոյն եկեղեցւոյ տապանաքար խօջայ Յովհաննիսի , յանուն որոյ շինեցաւ եկեղեցին , զորմէ 'ի ստորև :

Յորժամ էր թիւն ՌՃ ամի ,
Ղ և Թ թիւ աւելի՝
խօջայ Յովհաննէսն ցանկալի
եկեղեցւոյս շինող մեհի .
'ի սոյն աւուրս վախճանի
Ի ամեայ ժամանակի ,
յաղցաւորացս այս նա զատի ,
կարգեալ 'ի դասս հրեշտակի՝
եդեալ կա սաս 'ի տապանի ,
մինչ որ փողն հնչում լինի՝
Թողուլ զանձինս որ 'ի մարմնի
այժմ , և յաւուրն ապագայի :

Նկարեցաւ ( տապանաքարն ) ձեռամբն Տէր Նաւումիս որդի Գրիգորի , որ էր վերակացու սուրբ եկեղե-

ցուս շինութեանն ։

Արդ այս տապանագիր այնպէս ցուցանէ, որպէս թէ շի-
նողն եկեղեցւոյն է Խօջայ Յովհաննէսն, և քառասնամեայ ու-
օք վախճանեալ է նա 'ի 1099 ամի, որով շինութիւնն եկե-
ղեցւոյ պարտի լինել նախ քան զամն 1099. այլ կտակն Աղայ
Յովսէփայ՝ յայտնէ թէ շինեալ է զեկեղեցին 'ի 1146 ամի. և
զիւր եղբայր Յովհաննէսն անդ թաղեալ է, շփոթէ զբանն ։
Կարծել թէ այս ոչ է եկեղեցին յիշատակեալն 'ի կտակի Աղայ
Մարգարայ՝ ոչ է հաւանական, քանզի յիշատակ քարանց
շրթանցն սեղանոյն ունի զնոյն 1146 թուականն, և միւս յի-
շատակ նկարման պատկերացն է 1156, որովք յայտնի լինի
թէ եկեղեցին այն շինեալ է յայնոսիկ ժամանակի, և ոչ նախ
քան զամն 1099 ։ Ուստի ինձ այսպէս հաւանական թուի պար-
զաբանել, թէ 'ի տապանաքարին յիշատակեալ 1099 թուա-
կանն՝ է թուական ծննդեանն նորա, և քառասնամեայ կեցեալ
յաշխարհի՝ յաղցաւորացս նա զատի, որով թուական մահ-
ուանն նորա լինի 1139, և Աղայ Մարգար եղբայր նորա շի-
նելով զեկեղեցին զկնի եօթն ամաց մեռանելոյ նորա՝ թա-
ղեալ է զնա անդր ։ Մարթ էր երկար խօսելով 'ի բանից կը-
տակի Աղայ Յովսէփայ ապացուցանել զհաւաստիս սոյն այս իմ
կարծեաց, այլ ըստ որում առարկայն չէ հարկաւոր ինչ՝
ոչ օգուտ համարեցի և զիմ ժամանակ յայն զբաղեցուցանել,
և զպատմութեանս կարգ երկարաբանել ։ Իսկ եթէ ոմանց ևս
բնական մեկնութիւն համարիցի վերոյ պարզաբանութիւնն
իմ՝ թող իւրաքանչիւր ոք տրամաբանեսցէ ըստ իւրոյ հա-
ճոյից ։

Շինեալ է այն կամարակապ առանց սեան ։ Երկայնութիւնն
'ի ստորոտէ սեղանոյն՝ է 68, և լայնութիւնն՝ 41 ոտնաչափ ։
Ունի գմբէթ բաւական բարձրութեամբ յառաստաղի միջին
դասու ։ Սեղանն և առաջին դասն է ոսկեռանգն նկարուն, իսկ
ժողովրդատեղին՝ սպիտակացեալ առանց. ինչ պատկերաց ։
Շինութիւնն եկեղեցւոյ ամբողջութեամբ յատին կայ, իսկ ար-
տաքին շինուածք և բնակարանք զարմանիս քուանեն ։ Շըր-
ջակայ կալուածք աւերակացն սորա է մի ջրիք ։ Ի վաղուց

հետէ բռնաբար տիրեալ էր զայս կալուած Սէհիդ միր Ադ-գօլվաղի թոռն կալուած անտէրունչ. այլ Սրբազան Թադդէոս Առաջնորդ 'ի 1855 ամի բազում աշխատութեամբ յետս առա-ցեալ զայն 'ի նմանէ ; որ կայ այժմ ընդ իշխանութեամբ Ամե-նափրկչեան վանից :

Այս եկեղեցի չէ յաւել քան զքառասուն ամ՝ որ Է աւե-րակս դառնացաւ :

---

( 1 ) · Տես ։

Ի ·

ՍՈՒՐԲ ՅԱԿՈԲ ԲԱՂԱԹԱՅ ·

Այս եկեղեցի ըստ յիշատակացն եղելոյ 'ի նմա՝ երևի շի-նեալ 'ի 1115 ( 1666 ) ամի յԱւաքալեանց տոհմէ ։

Ի վերայ ճակատու հիւսիսային դրան գրեալ կայ յիշատակս այս ։

« Յիշատակ է մահդեսի Անայունն և ծնողացն Թավաքա-
« լին և Իբրահիմին · Թվին 1170 ( 1721 ) ։

Ի վերայ տապանաց շրջանաց սեղանոյն գրեալ կայ ։

« Յիշատակ է դասս Աղազարին և ծնողացն Փանասին և Գուլ-
« նաբաթին , և հանգեալ կղյն Մարխամբասին , Թանկ-
« խաթունին , և կենդանի կղյն Թադևոսէ , որդին Օվա-

՚ի յերկին ։
Յամի եհաս նմին ․ Թուին Հայոց 1179, ՚ի 6 յունվարին, Զդէմս ՚ի յերկիր եդեալ պաղատիմ Տեառնդ Յիսուսի՝ վասն արարչիդ կողից որ ՚ի խաչին առիս հոսեցի ։

## Ռ ։

## ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ կամ ՕՀԱՆԱՑ ՎԱՆՔ

Այս եկեղեցի չունի որոշ յիշատակարան թէ երբ կամ յումմէ շինեցաւ ։ Այլ ՚ի յիշատակարանէ ձեռագիր Աւետարանի միոյ, եղելոյ յեկեղեցւոջն Երևանայ, երևի շինութիւնն նորա է մինն ՚ի հնագոյն եկեղեցեաց Ջուղայու ․ “ գրեցաւ “ սուրբ Աւետարանս ՚ի քաղաքս Շօշ որ է Սպահան ՚ի դուռն “ սուրբ Յովհաննէս Մկրտչի, և սուրբ Հրեշտակապետին և “ սուրբ Յակոբայ և սուրբ Սարգսի զօրավարին ձեռամբ “ Յովհաննէս փըցուն աբեղայի ՚ի դառն և ՚ի նեղ ժամանա- “ կիս, ՚ի Թվականիս Հայոց 1058, (1609) ” ։ Արդ ՚ի բանից աստի յայտ է թէ եղեալ է ՚ի 1058 ամի (1609) եկեղեցին սրբոյն Սարգսի զօրավարին ։

Յառաջին դրան յորմանան շուրջանակի գրեալ կայ ։

“ Քրիստոսասէր Զաքարէն երկու դասին քաշուածն նոր- “ կարել տվէց իւրն յիշատակ և իւր ծնողացն Միրէին և “ Վառվառին, և ամուսնեացն Մարխամին և Մամարին, և “ որդւոցն Յովհաննէսին, և հանգուցեալ որդւոցն և դըս- “ տերն Յակոբջանին և Սոլթանփաշին և եղբարցն Մաթոսին

" Յովհաննիսին և Մարգարին և քերցն Զիպտի՝ Աննէ՝ Ա-
" նայէ՝ և այլ ամենայն արեան մերձաւորացն, Թվին 1161
" ( 1712 ) յունիս 25 " :

Այդ յիշատակարան որպէս յայտնէ՝ ինքնին է յիշատակ նկարողի պատկերին :

Ի ձողկրթափեղէն 'ի հարաւային կողմն գրեալ կայ :

" Յիշատակ է պատկերքս Օհանջանի որդի Աբեղայ Տէր
" Մարտիրոս քահանայ, Թվին 158 " ( 1772 ) :

Ի ձախոյ արեւմտեան դրանն գրեալ կայ :

" Որ վասն քո անչափ սիրին՝ բանդ 'ի կուսէն առեր մարմին,
" Թող զյանցանս մահդեսի ծառուրին, Թվին 1166 ( 17-
" 17 ) ին : Ձեռամբ Տէր Մկրտչի որդի Փանոսին :

Այդ յիշատակարան է սակս նկարեալ պատկերին սրբոյն Սարգսի զօրավարի, որ հեծեալ յերիվար յաղթանդամ կայ 'ի ճակատու դրանն : Եւ Թերևս մահտեսի Ծառուրն տուեալ է զծախսն, և Տէր Մկրտչի որդի Փանոսն նկարեալ է ըզ-պատկերն :

Սոյն այս եկեղեցի կառուցեալ ( 'ի Թաղն մեծ Ղարաշէլ, որ հասարակօրէն Ղէյնուն կոչի այժմ ) յանուն սուրբ Սարգսի զօրավարի կոչեցաւ և Օհանայ վանք, զորմէ լիագոյն խօսե-ցայ 'ի ճառ վիճակացն Ամենափրկչեան վանի :

Այս եկեղեցի իբրև հնգետասան ամօք յառաջ դասեցաւ 'ի Թիւս ամայի եկեղեցեաց, զի Թէպէտ իբրև յիսուն ամօք յառաջ վերջացան ժողովուրդք նորա՝ այլ տակաւին եկեղե-ցին պահպանեալ լինէր 'ի ձեռն միաբան վարդապետի միոյ, և ժողովուրդք հեռաւոր Թաղից ոչ խնայէին զկարևոր նը-պաստս իւրեանց : Միքայէլ վարդապետ անուն ոմն միայնու-Թեամբ բնակէր 'ի վանի անդ, և որպէս պատմի զնմանէ՝ և-

եալ է առաքինի՝ մինչև անգամ դրացի այլազգիք ականածեալ ծանեան է պատուեալ են զնա երկիւղածաբար վասն սրբութեանն նորա ։

Նա յամի 1797 գրէ առ Պարոն Գէորգ Տէր Դաւթեանն շթուղթ շնորհակալութեանն ըստ այսմ օրինակի " Յիսուսի
" Քրիստոսի ծառայ և սրբոյ Ամենափրկչի վանի վշտաթախիծ
" և մեղապարտ միաբան, այլ և սրբոյն Սարգսի որ և կոչե-
" ցեալ Յովհաննու վանի ներքակրիւք բնակօղ և եթ վար-
" դապետէ . . . այլ և զոր ինչ որ խղճալի սուրբ տանս
" կողմանէ ՅՊ Օհանայ վանիս կողմանէ կաշխատես՝ Տէրն Քրի-
" րիստոս փոխարէնն քեզ հազարապատիկ կըվարձատրէ,
" զըայ Աստուծոյ էլայ յայտնի՝ մարդոյ էլ, որ եթէ մեղաւորս
" և եթէ այս սուրբ տունս յոյժ չքաւորութեան և աղորմե-
" լութեան միջի եմք, ոչինչ և ոչ յայլ ուստեքէ եկա-
" մուտ և օգնութիւն չունեմք, այժմ չորս ամ յաւելի է՝ որ
" իմ խառջովս սուրբ տանս բնակածեմ չքաւոր և ամենայն
" կերպ աղորմելուն միջի, տունն ձիթից՝ մոմից զուրկ, և ամ
" անօթեղինաց եկեղեցնոց գոյրգինաց պակասաւոր, և միշտ մա-
" լամաթն էն ինչ կարևորայ՝ միշտ ուզումայ, զըայ էն ինչ
" ինձնէ կարելի էր՝ կամ էստեղէն էնդեղէն պարտք առնե-
" լով փարայի սուրբ տանս կարևոր մալամաթն արարէլ ամ,
" որ Տէր մի արասցէ փոքր բանն մեծ բանատեղ չդառնայ
" . . . մինչ այժմ տարէն մին ծաղիկ իմ պատուելի բարե-
" կամ Պարոն Նիկողոս Յարութիւնին կուղարկէր և ինձ կը-
" մխիթարէր ,, ։

Յետ վախճանելոյ Միքայէլ վարդապետի՝ ոչ ոք եւս բնակեցաւ ՚ի նմա, և յայնմ հետէ փակ մնաց դուռն նորա ։

Այլ ամի ամի ՚ի տօնի սրբոյն Սարգսի զօրավարին մատուցեալ լինէր անդ պատարագ ՚ի Քահանայից Երևանայ Թաղի, և ժողովուրդք Ջուղայու հաւաքէին անդ հանգիստացուցանել զօր յիշատակի սրբոյն ։ Երկիցս և ես ներկայ եմ լեալ անդր ։ Այլ ՚ի 1843 է մինչ և ցայժմ բարձաւ լայն սովորութիւն, և եկեղեցին այն խապառ դատեցաւ ՚ի թիւս ամայացելոցն ։ Եկեղեցական Հռաքաղ սպասք այնր փոխադրեցան յեկեղեցին Երևա-

նայ, և յայժմ ժամանակի հանդէս տօնի սրբոյն Սարգսի կատարի 'ի նմին եկեղեցւոյ յաղագս անուր լինելոյ Աջոյ և մասին նորին ։ Շինեալ է այն կամարակապ 43 ոտնաչափ երկայնութեամբ ցատորոտն դասու ։ Բոլանդակ շինութիւնն եկեղեցւոյ կայ յոտին կանգուն առանց բաղում խախտուածոց ։ Առաջին դասն ունի երկոտասան պատկերատունս ։ Ժողովդանոցն ունի միայն չորս պատկերատունս, և մնացեալն է բացիտակացեալ ։ Ունի փոքրիկ գմբէթ, սեղանն է փոքր, շուրջըն սեղանոյն քարաշէն, այժմ չունի խաչկալ, այլ տասն ամօք յառաջ տակաւին կայր պատկեր խաչկալին պատառեալ ։ Սոյն եկեղեցւոյն ունի փոքրիկ Զանգատուն կառուցեալ 'ի վերայ չորից քարեայ սեանց, այլ յիշատակարան ինչ չունի վասն շինութեան այնր ։ Ի մէջ Զանգատան կայ գերեզման Օհան վարդապետի, Արթանէս Աբեղայի, Ստեփաննոս վարդապետի և եօթն աշխարհականաց ։

Այս է տաղանագէր Յոհան վարդապետի ։

« Այս է տապան մեղապարտիս՝ Յոհան անուն վարդապետիս,
բիւր քանքարոյ պարտականիս՝ պատուիրանին ստանգանողիս ։
Ցանցաւոր գոլոյ թագաւորին՝ և անպատրաստ ժամ վախճանին,
հրեշտակք եկեալ զհոգիս առին՝ թափուր ունայն առեալ գնացին ։
Մուծին քաղաք սխրագործին՝ վայ և եղուկ իմում անձին ։
Րէ, զինչ տաց պատասխանին՝ և անաչառ դատաւորին,
յոյս ապաւէն Աստուածածին՝ դու ես իմ Հարն յայնմ ատենին ։
Զստինսդ բանաս ընդ սուրբ կաթին՝ բարեխօսեա քո միածնին,
Թէ գին է դա արեամբդ քոյին՝ հայեաց 'ի վէրքդ Աս-

ուածային ,
դոլաւ կթամ քո ստեղծուածին՝ ողորմեա հոգւոյ դորին ։
Ըստ Սամաւի Աւազակին՝ խառնեա 'ի Թիւ ընտրեալ դասին ,
և անկելոց տեղի նոյին՝ ուրախանալ զուարթնոց վերին ,
վասն դարձի անառակին՝ խնդրուածովք մօր քո կուսին .
Տէրն շնորհէ զյանցանս նորին , դասաւորէ սրբոց խմբին ,
և պսակէ լուսոյն երկնային , երկրպագի երրակացդ անձին,
Աստուածութեանն միակին ։ Ընկեցի վանս սուրբ Սարգսին,
ինքն Թաղեցայ վրան նորին ։ Ի Թիւն ՌՃ ամին Հք վերա-
բարձի , Հոգտեմբերի 13 վախճան սորա օրն կիրակի ։

# Է.

## ՄԷՅԴԱՆԻ ԲԵԹՂԱՀԷՄ ։

Այս եկեղեցի վայելչաշէն, բարձրակառոյց և փառազարդ-քան զամենայն եկեղեցիս Ջուղայու՝ շինեցաւ 'ի Խօջայ Պետրոսէ Խօջայ Վէլիջանեան յամի 1077 ( 1627 ) ։

Ի ձախ կոյս և յաջ կոյս առաջին դրան գրեալ կայ ։

Հազար Հ և Է Թուին ,
որ էր անցեալ , Հայոց Ազգին
աւարտեցաւ եկեղեցին ,
գերահռչակ և պանծալին ,
համանման աղին դրախտին
և կամ նոյեան սուրբ Տապանին .
'ի ժամանակս Շահբասին ,
և մեր Սրբոյ Հայրապետին

Տէր Մովսէսի քաջ հռետորին,
գիտապետի այսմ նահանգին
հեզահոգի Տէր Խաչատուրին
որ շինեցաւ ձեռամբ մեծին
Խօջայ Պետրոսն ցանկալւոյն,
Խօջայ Պօղոս որդի նորին,
սա փափագմամբ . . . յին՝
սակս յիշման հոգի նոցին,
ծնողաց սորին Վէլիջանին՝
Շուշան անուն մօրն նորին,
Տէր ողորմեսցի ամենեսին։
որք հանդիպիք տեսլեամբ սորին,
զԽօջայ Պետրոսն բաղձալւոյն,
յիշեալ լինէք միշտ արժանին,
որք յիշեն յիշեալ լիցին յաւիտենին։

Ի վերայ առաստաղի ոսկեղինոյն գրեալ կայ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զԽօջայ Պետրոսն, որ շինեցաւ ձեռամբ մեծին Պետրոս այր ցանկալւոյն, հօրն իւրոյ Վէլիջանին և մօրն Շուշանին, Տէր Աստուած ողորմեսցի սոցին, Թվին ռճէ »։

Ի վերայ ծածկոյ շրթանց ոսկեղինոյն գրեալ կայ։

« Յիշատակ է քարաշէն դասըս Խօջայ Ոհանջանին և ծնողացն Խօջայ Ոհանիսին և Մառանէ, և ուր կողակցուն և որդուն Ոհանիսին, և դստերն Բէրզադէ հանգուցեալ դստերն Շուշան բէկումին։ Թվին 1160, Ադամ 20 ումն։ »
Այս Խօջայ Ոհանջան Թոռն է Խօջայ Պետրոսի։

Յայլ կոյս որմոյ երկրորդ պատուոյն գրեալ կայ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս հեզահոգի զԽօջայ Պետրոսն և ըղ-

կողակիցն Աննային, և զորդին Խօջայ Պօղոսն՝ Մինասն՝ Ոհաննէսն՝ Ղուկասն, և զդստերքն զխօտօմխին՝ Մարիամն՝ Շուշանն ։ Դարձեալ յիշեցէք ՚ի Քն զԽօջա Պետրոսն և զերկրորդ վերջին կողակիցն Թանգմէրն և զդուստրն Վարթենին Սուֆիէն, և զհայրենի պապն Աղէջանն և զխանիկն յիշեցէք և . . . Թվին ՌՃԴ,, ։

Այս քառակուսի վիմագրերուն յիշատակ՝ իմ Բասէ Գրեալայր նկարե- լոյ նորա եկեղեցին ։

"Յիշեցէք ՚ի Քրիստոս զԽօջա Պետրոսն, և զծնողսն Վէլիջան, Շուշան, և զեղբարքն Կիրակոս՝ Մինաս՝ Ջվանին՝ Սուքիազն յիշեցէք և Աստուած ողորմի ասացէք ։ Դարձեալ յիշեցէք ՚ի Քրիստոս զԽօջա Պետրոսն և կողկցն Աննային՝ և վերջին կղկցն Թանգմէրն . . . . . . . . . . . . . . . Թվին ՌՀԷ,, ։

Ի ձախ կողմ եկեղեցւոյ դրանն գրեալ ։

"Դարձեալ յիշեցէք ՚ի Քրիստոս զԽօջայ Պետրոսն և զծնողսն Վէլիջանն, Շուշանն, և խօրեղբարքն Նուրիջանն՝ Գրիգորն՝ Քամալն՝ եղբօրորդին Գասպարն ։ Դարձեալ յիշեցէք զԽօջայ Պետրոսն և հարսներն, Մուրսն՝ Սանդուխտն՝ Ուղիդէն՝ և զԹոռներն Ակոբջանն՝ Ոհանջանն՝ Մաթոսն՝ Մասպուռն յիշեցէք ։ Եւ Աստուած ողորմի․ Տէր Առաքել գրող ։

Շուրջանակի ՚ի ՂԶ գմբեթին գրեալ ՚ի չորս կողմն կողմն փեղկն ։

"Յիշատակ Քրիստոսի՛ ծառայ զԽօջայ Պետրոսն՝ և ծնողսն իւր զՎէլիջան և զՇուշան և զեղբայրն Սուքիազ՝ և զԿիրակոս յիշեցէք ՚ի Քրիստոս ։ Դարձեալ յիշեցէք զԽօջայ Պետրոսն՝ և զկողակից իւր զԱննային և զմիւս կողակիցն իւր զԹանգմէրն․ Տէր Աստուած ողորմեսցի ։

'ի յերկին ։
Ծ ամի եհաս նմին . Թվին Հայոց 1179, 'ի 6 յունվարին, Ջղէմս 'ի յերկիր եղեալ պաղատիմ Տէառնդ Յիսուսի՝ վասն արարչիդ կողից որ 'ի խաչին առիս հոսեցի ։

## Ձ.

## ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ կամ ՕՀԱՆԱՑ ՎԱՆՔ

Այս եկեղեցի չունի որոշ յիշատակարան թէ երբ կամ յումմէ շինեցաւ ։ Այլ 'ի յիշատակարանէ ձեռագիր Աւետարանի միոյ, եղելոյ յեկեղեցւոջն Երևանայ, երևի շինութիւնն նորա է մինն 'ի հնագոյն եկեղեցեաց Ջուղայու . “ Գրեցաւ
“ սուրբ Աւետարանս 'ի քաղաքս Շօշ որ է Սպահան 'ի դուռն
“ սուրբ Յովհաննէս Մկրտչի, և սուրբ Հրեշտակապետին և
“ սուրբ Յակոբայ և սուրբ Սարգսի զօրավարին ձեռամբ
“ Յովհաննէս փըցուն աբեղայի 'ի դառն և 'ի նեղ ժամանա-
“ կիս, 'ի թվականիս Հայոց 1058, (1609)” ։ Արդ 'ի բանից աստի յայտ է թէ եղեալ է 'ի 1058 ամի (1609) եկեղեցին սրբոյն Սարգսի զօրավարին ։

Յառաջին դրան յորմանան շուրջանակի գրեալ կայ ։

“ Քրիստոսասէր Ջաքարէն երկու դասին քաշուածն նը-
“ կարել տվէց իւրն յիշատակ և իւր ծնողացն Միրին և
“ Վառվառին, և ամուսնոյն Մարիամին և Մամարին, և
“ որդւոցն Յովհաննէսին, և հանգուցեալ որդւոցն և դըս-
“ տերն Յակոբջանին և Սօլթանփաշին և եղբարցն Մաթոսին

" Յովհաննիսին և Մարգարին և քերցն Զիպտի՝ Աննէ՝ Ա-
" նայէ՝ և այլ ամենայն արեան մերձաւորացն, Թվին 1161
" ( 1712 ) յունիս 25 „ :

Այդ յիշատակարան որպէս յայտնէ՝ ինքնին է յիշատակ նկարողի պատկերին :

Ի ժողովրդապետէն 'ի հարաւային կողմն գրեալ կայ :

" Յիշատակ է պատկերքս Օհանջանի որդի Աբեղայ Տէր
" Մարտիրոս քահանայ, Թվին 158 „ ( 1772 ) :

Ի ձախոյ արեւմտեան դրանն գրեալ կայ :

" Որ վասն քո անչափ սիրին՝ բանդ 'ի կուսէն առեր մարմին,
" Թող զյանցանս մահդեսի Ծատուրին, Թվին 1166 ( 17-
" 17 ) ին : Ձեռամբ Տէր Մկրտչի որդի Փանոսին :

Այդ յիշատակարան է սակս նկարեալ պատկերին որոյն Սարգսի զօրավարի, որ հեծեալ յերիվար յաղթանդամ կայ 'ի ճակատու դրանն : Եւ Թերեւս մահտեսի Ծատուրն տուեալ է զծախսն, և Տէր Մկրտչի որդի Փանոսն նկարեալ է ըզ-պատկերն :

Սոյն այս եկեղեցի կառուցեալ ('ի Թաղն մեծ Ղարագէլ, որ հասարակօրէն Ղէյնուն կոչի այժմ) յանուն սուրբ Սարգսի զօրավարի կոչեցաւ և Օհանայ վանք, զորմէ լռագոյն խօսե-ցայ 'ի ճառ վիճակացն Ամենափրկչեան վանի :

Այս եկեղեցի իբրև հնգետասան ամօք յառաջ դասեցաւ 'ի Թիւս ամայի եկեղեցեաց, զի Թէպէտ իբրև յիսուն ամօք յառաջ վերջացան ժողովուրդքն որա՝ այլ տակաւին եկեղե-ցին պահպանեալ լինէր 'ի ձեռն միաբանի վարդապետի միոյ, և ժողովուրդք հեռաւոր Թաղից ոչ խնայէին զկարևոր նը-պաստս իւրեանց : Միքայէլ վարդապետ անուն ամն միայնա-Թեամբ բնակէր 'ի վանի անդ, և որպէս պատմի զնմանէ՝ և-

ղեալ է առաջինին՝ մինչև անգամ դըրացի այլազգիք ակնածեալ զնմանէ պատուեալ են զնա երկիւղածաբար վասն սրբութեանն նորա ։

Նա յամի 1797 գրէ առ Պարոն Գէորգ Տէր Դաւթեանն զԹուղթ շնորհակալութեանն ըստ այսմ օրինակի "Յիսուսի
" Քրիստոսի ծառայ և սրբոյ Ամենափրկչի վանի վշտաթախիծ
" և մեղապարտ միաբան, այլ և սրբոյն Սարգսի որ և կոչե-
" ցեալ Յովհաննու վանի նեղսակրիւք բնակօղ և եթ վար-
" դապետէ . . . այլ և զոր ինչ որ խղճալի սուրբ տանս
" կողմանէ ձր Օհանայ վանիս կողմանէ կաշխատես՝ Տէրն Քը-
" րիստոս փոխարէնն քեզ հազարապատիկ կըվարձատրէ,
" զըայ Աստուծոյ էլայ յայտնի՝ մարդոյ էլ, որ եթէ մեղաւորս
" և եթէ այս սուրբ տունս յոյժ չքաւորութեան և ողորմե-
" լութեան միջի եմք, ոչինչ և ոչ յայլ ուստեքէ եկա-
" մուտ և օգնութիւն չունեմք, այժմ չորս ամ յաւելի է՝ որ
" իմ խառջովս սուրբ տանս բնակածեմ չքաւոր և ամենայն
" կերպ ողորմելաւ միջի, տունն ծիթից՝ մոմից զուրկ, և ամ
" անօթեղէնից եկղեցինց գոյեղինաց պակասաւոր, և միշտ մա-
" լամաթն էն ինչ կարևորայ՝ միշտ ուզումայ, զըայ էն ինչ
" ինձնէ կարելի էր՝ կամ էստեղէն էնդեղէն պարտք առնե-
" լով փարայի սուրբ տանս կարևոր մալամաթն արարել ամ,
" որ Տէր մի արասցէ փոքր բանն մեծ բանատեղ չդառնայ
" . . . մինչ այժմ տարէն մին ծաղիկ եմ պատուելի բարե-
" կամ Պարոն Նիկողոս Յարութիւնին կուղարկէր և ինձ կը-
" մխիթարէր ,, ։

Յետ վախճանելոյ Միքայէլ վարդապետի՝ ոչ ոք ևս բնակեցաւ ՚ի նմա, և յայնմ հետէ փակ մնաց դուռն նորա ։

Այլ ամի ամի ՚ի տօնի սբյն Սարգսի զօրավարին մատուցեալ լինէր անդ պատարագ ՚ի Քահանայից Երևանայ Թաղի, և ժողովուրդք Ջուղայու հաւաքէին անդ հանդիսացուցանել զօր յիշատակի սրբոյն ։ Երկիցս և ես ներկայ եմ լեալ անդր ։ Այլ ՚ի 1843 է մինչ և ցայժմ բարձաւ՝ այն սովորութիւն, և եկեղեցին այն իսպառ դատեցաւ ՚ի Թիւս ամայացելոցն ։ Եկեղեցական Հռաքաղ սպասք այնր փոխադրեցան յեկեղեցին Երևա-

նայ, և յայսմ ժամանակի հանդէս տօնի սրբոյն Սարգսի կատարի 'ի նմին եկեղեցւոյ յաղագս անդր լինելոյ Աջոյ և մասին նորին ։ Շինեալ է այն կամարակապ 43 ոտնաչափ երկայնութեամբ ցստորոտն դասու ։ Բովանդակ շինութիւնն եկեղեցւոյ կայ յոտին կանգուն առանց բազում խախտուածոց ։ Առաջին դասն ունի երկոտասան պատկերատունս ։ Ժողովրդանոցն ունի միայն չորս պատկերատունս, և մնացեալն է սպիտակացեալ ։ Ունի փոքրիկ գմբէթ, սեղանն է փոքր, շուրթըն սեղանոյն քարաշէն, այժմ չունի խաչկալ, այլ տասն ամօք յառաջ տակաւին կայր պատկեր խաչկալին պատռեալ ։ Նոյն եկեղեցւոյն ունի փոքրիկ Զանգատուն կառուցեալ 'ի վերայ չորից քարեայ սեանց, այլ յիշատակարան ինչ չունի վասն շինութեան այնր ։ Ի մէջ Զանգատան կայ գերեզման Օհան վարդապետի, Աբթանէս Աբեղայի, Ստեփաննոս վարդապետի և եօթն աշխարհականաց ։

Այս է տապանագիր Յօհան վարդապետի ։

« Այս է տապան մեղապարտիս՝ Յոհան անուն վարդապետիս,
Բիւր քանքարոյ պարտականիս՝ պատուիրանին ստունգանօղիս ։
Ցանցաւոր գտայ Թագաւորին՝ և անպատրաստ ժամ վախճանին,
Հրեշտակք եկեալ զհօգիս առին՝ Թափուր ունայն առեալ գնացին ․
Մուծին քաղաք ախրագործին՝ վա՜յ և եղուկ իմումս անձին ։
Ըէ, զի՞նչ տաց պատասխանին՝ և անաչառ դատաւորին,
Յոյս ապաւէն Աստուածածին՝ դու ես իմ Ճարն յայնմ ատենին ։
Զստինսդ բանաս ընդ ուրբ կաթին՝ բարեխօսեա քո միածնին,
Թէ գին է դա արեամբդ քոյին՝ հայեաց 'ի վէրքդ Աս-

ուածային ,
դովաւ պեծ քո ստեղծուածին՝ ողորմեա հոգւոյ դորին ։
Ըստ Սամասի Աւազակին՝ խառնեա 'ի թիւ ընտրեալ դասին ,
և անկելոց տեղի նոյին՝ ուրախանալ զուարթնոց վերին ,
վասն դարձի անառակին՝ խնդրուածովք մօր քո կուսին ։
Տէրն շնորհէ զյանցանս նորին , դասաւորէ սրբոց խմբին ,
և պսակէ լուսովն երկնային , երկրպագի երրակացդ անձին,
Աստուածութեանն միակին ։ Ընկեցիկ վանս սուրբ Սարգսին,
ինքն թաղեցաւ դրան նորին ։ Ի թվին ՌՃ ամին Հք վերաբարդի , հոգտեմբերի 13 վախճան սորա օրն կիրակի ։

## Ի·

## ՄԷՅԴԱՆԻ ԲԵԹՂԱՀԷՄ ։

Այս եկեղեցի վայելչաշէն , բարձրակառոյց և փառաղարդ քան զամենայն եկեղեցիս Ջուղայու՝ շինեցաւ 'ի խօջայ Պետրոսէ խօջայ Վէլիջանեան յամի 1077 ( 1627 ) ։

Ի ՅԱԽ ԿՈՅՍ ԵՒ ՅԱՋ ԿՈՅՍ ԱՌԱՋԷՆ ԴՐԱՆՆ ԳՐԵԱԼ ԿԱՅ ։

Հազար Հ և Է թուին ,
որ էր անցեալ , Հայոց Ազգին
աւարտեցաւ եկեղեցին ,
գերահռչակ և պանծալին ,
համանման ադին դրախտին
և կամ Նոյեան սուրբ Տապանին ։
'ի ժամանակս Շահբասին ,
և մեր Սրբոյ Հայրապետին

Տէր Մովսէսի քաջ հռետորին,
դիտապետի այսմ նահանգին
հեզահոգի Տէր Խաչատրին
որ շինեցաւ ձեռամբ մեծին
Խօջայ Պետրոսն ցանկալին,
Խօջայ Պօղոս որդի նորին,
ու փափագմամբ . . . յին՝
սակս յիշման հոգի նոցին,
ծնողաց սորին Վէլիջանին՝
Շուշան անուն Մօրն նորին,
Տէր ողորմեսցի ամենեսին:
որք հանդիպիք տեսլեամն սորին,
զԽօջայ Պետրոսն բաղձալին,
յիշեալ լինէք միշտ արժանին,
որք յիշեն յիշեալ լիցին յաւիտենին:

Ի Վերայ տապանաքարէ սեղանոյն գրեալ կայ:

“ Յիշեցէք 'ի Քրիստոս զԽօջայ Պետրոսն, որ շինեցաւ ձեռամբ մեծին Պետրոս այր ցանկալին, հօրն իւրոյ Վէլիջանին և մօրն Շուշանին, Տէր Աստուած ողորմեսցի սոցին, Թիվն ռհէ,, :

Ի Վերայ ձորեայ շրջանաց սեղանոյն գրեալ կայ:

“ Յիշատակ է քարաշէն դասըս Խօջայ Ոհանջանին և ծնողացն Խօջայ Ոհանիսին և Մառանէ, և ուր կողակցուն և որդուն Ոհանիսին, և դստերն Բէրզադէ հանգուցեալ դստերն Շուշան բէկումին: Թիվն 1160, Ադամ 20 ումն:,,
Սոյն Խօջայ Ոհանջան Թոռն է Խօջայ Պետրոսի:

Յաջ կոյս որմոյ երկրորդ դրանն գրեալ կայ:

“ Յիշեցէք 'ի Քրիստոս հեզահոգի զԽօջայ Պետրոսն և բը-

կողակիցն Աննային, և զորդին Խոջայ Պօղօսն՝ Մինասն՝
Ոհաննէսն՝ Ղուկասն, և զդստերքն զխօռօմմիմն՝ Մարիամն՝
Շուշանն : Դարձեալ յիշեցէք 'ի Քս զխօջա Պետրոսն և ըզ-
վերջին կողակիցն Թանգմէրն և զդուստրն վարթենին Սու-
ֆիէն, և զհայրենի պապն Աղիջանն և զխանիկն յիշեցէք և
. . . Թւին ՌՃԴ ,, :

Այս Թուականս վերոյգրեալ յիշատակ՝ ինչ Լուսէ գրեալ յետ նորոգե-
լոյ նորա զեկեղեցին :

“ Յիշեցէք 'ի Քրիստոս զխօջա Պետրոսն, և զծնօղսն Վէ-
լիջան, Շուշան, և զեղբարքն նիրակոս՝ Մինաս՝ Ջվանին՝
Սուքիազն յիշեցէք և Աստուած ողորմի ասացէք : Դար-
ձեալ յիշեցէք 'ի Քրիստոս զխօջա Պետրոսն և կողկցն Ան-
նային՝ և վերջին կղկցն Թանգմէրն . . . . . . . . . . .
. . . . Թւին ՌՃԵ ,, :

Ի ձախ կողմ եկեղեցւոյ դրանն գրեալ :

“ Դարձեալ յիշեցէք 'ի Քրիստոս զխօջայ Պետրոսն և
զծնօղսն Վէլիջանն, Շուշանն, և խօրեղբարքն Նուրի-
ջանն՝ Գրիգորն՝ Քամալն՝ եղբօրորդին Գասպարն : Դար-
ձեալ յիշեցէք զխօջայ Պետրոսն և հարսնէրն, Մուրսն՝
Սանդուխտն՝ Ուլիգէն՝ և զթոռնէրն Ակոբջանն՝ Ոհանջանն՝
Մաթոսն՝ Մասպուրն յիշեցէք : Եւ Աստուած ողորմի. Տէր
Առաքել գրող :

Հարաւակողմն 'ի դէմ գմբեթին գրեալ 'ի չորս սորայն սորայն փեղկս :

“ Յիսուսի Քրիստոսի ծառայ զխօջայ Պետրոսն՝ և ծնօղսն
իւր զՎէլիջան և զՇուշան և զեղբայրն Սուքիազ՝ և զնի-
րակոս յիշեցէք 'ի Քրիստոս : Դարձեալ յիշեցէք զխօջայ
Պետրոսն՝ և զկողակից իւր զԱննային և զմիւս կողակիցն
իւր զԹանգմէրն. Տէր Աստուած ողորմեսցի :

Կայ և յիշատակարան մի 'ի Սրբակրօն Տէր Յովհաննէ Գալստանեան փորագրեալ 'ի վերայ քարի, որ զետեղեալ կայ 'ի ճակատ հիւսիսային դրան եկեղեցւոյն, որոյ այս են բանք։

« Յիշել 'ի Տէր զՄահդեսին
Խօջայ Պետրոս այր ցանկալին,
զՎէլիջան Հայրն Նորին
ընդ տիկին Մօր իւր Ռուշանին։
Եկեղեցիս Բեթղահէմին,
որ շինեցաւ արդեամբ Նորին,
'ի յիշատակ իւրոյ տոհմին
և զաւակաց իւր տօնելին։
Ի Թուին Հայոց 1077։

Արձանացաւ 'ի Տէր Յովհաննիսէ Գալստանեան 1293 ամի։ Սոյն այս մեծակառոյց եկեղեցի և վայելչաշէնն քան զամենայն եկեղեցիս Ջուղայու՝ է կամարակապ յօրինեալ, որոյ երկայնութիւնն 'ի ստորոտէ սեղանոյն 80՝ և լայնութիւնն է 43 ոտնաչափ։ Գմբեթ նորա բարձր քան զգմբեթս ամենայն եկեղեցեաց Ջուղայու կրկին առաստաղօք է շինեալ, յորում ութ լուսամուտ պատուհանք կան, և ութն պատկերատուն շուրջանակի։ 1՝ սրբոց երկոտասանից հայրապետաց պատկեր։ 2՝ դնալն Պետրոսի 'ի վերայ ծովուն առ Յիսուս։ 3՝ սեղանն յետ յարութեանն։ 4՝ շօշափելն Թովմայի զկողն Յիսուսի։ 5՝ ոտնալուայն։ 6՝ ստեղծումն Ադամայ և Եւայի։ 7՝ հարսանիքն 'ի կանայ Գալիլեացւոց։ 8՝ անառակ որդին։ Առաստաղ գմբեթին համակ է ոսկենկար ծաղկօք զարդարեալ։ Սեղանն համեմատութեամբ եկեղեցւոյ մեծութեանն՝ է փոքրադիր, ունի երկոտասան պատկերատունս։ 1՝ պատկեր անցից սրբոյն Գէորգայ չարչարանաց։ 2՝ պատկեր անցից սրբոյն Մինասայ նահատակութեան։ 3՝ արկանելն զՅօնան 'ի ծովն։ 4՝ պատկեր արքայութեանն, և ութն պատկերատունքն են նկարք Մարգարէից։ Առաստաղն է կապուտերանգ ոսկենկար ծաղկազարդեալ։ Ի դրան առաջին կայ պատկերա-

տուն չորս ։ 1՝ Ծնունդ փրկչին ։ 2՝ Մկրտութիւնն ՚ի Յով-հաննէ ։ Նկարք Մարգարէից ։ Յերկրորդ և յերրորդ դասն կամ ՚ի ժողովրդատեղին կան յիսուն պատկերատուն, բա-ժանեալ յերկու կարգ ։ 1՝ զաւուրքն Մարիամ տալն առ Քա-հանայապետն ։ 2՝ Աւետումն սրբոյ կուսին ։ 3՝ Ծնունդն Քր-իստոսի ։ 4՝ քառասնօրեայ տաճարն ։ 5՝ այլակերպութիւնն ։ 6՝ Ծաղկազարդն ։ 7՝ ընթրիսն ։ 8՝ խաչելութիւնն ։ 9՝ իջու-ցանելըն ՚ի խաչէն ։ 10՝ պատանումն Յիսուսի ։ 11՝ Յարու-թիւնն Քրիստոսի ։ 12՝ համբարձումն ։ 13՝ գալըստն Հոգ-ւոյն սրբոյ ։ 14՝ վերափոխումն Մարիամու ։ Սոքա են առա-ջին կարգ պատկերատանցն, և սոյն այսոքիկ Նկարք պա-տուականագոյն են յոյժ ըստ արհեստին ճարտարութեան, վասն զի կենդանի գծագրութիւնք պատկերացն գովաբանութեան են արժանի ։ Այսոքիկ պատկերք ըստ արհեստին նրբութեան վերադասելի ինձ թուեցան քան զպատկերսն սրբոյ Ամենա-փրկչի վանին ։ Երկրորդ կարգ պատկերատան. 1՝ կինն Սամա-րացի ։ 2՝ պատկեր առն արդարոյ ։ 3՝ կին պոռնիկ ։ 4՝ մեծա-տունն ՚ի խնջոյս ։ 5՝ մահ աղքատ Ղազարու ։ 6՝ մահ մեծա-տանն ։ 7՝ բժշկել կուրին ։ 8՝ Յարութիւնն Ղազարու ։ 9՝ Ցարուցումն միամօր որդւոյ ։ 10՝ դրախտն ։ 11՝ դժոխքն ։ 12՝ արտաքսիլն Ադամայ ՚ի դրախտէն ։ 13՝ Ծովն տիբերա-կան ։ 14 քարկոծիլն սրբոյն Ստեփաննոսի ։ 15՝ տալն զվարձս մշակաց մետասան ժամու աշխատողաց ։ 16՝ կոյր կուրի ա-ռաջնորդ և 17՝ Նկարագիր առն մեղաւորի ։ Չորեքտասան պատկերք չարչարանաց Լուսաւորչի, երեք պատկերք զօրա-վարացն, և երկոտասան պատկերք Առաքելոց ։ Միայն երկու պատկեր առաջին դասու գործ է անհմուտ Նկարչի, իսկ մնա-ցեալքն բովանդակն քաջարուեստ Նկարեալ ։ Ի մէջ դրախ-տի պատկերին Նկարագիր Աղայ Պետրոսի շինողի եկեղեցւոյն կայ Նկարեալ, յաղօթս զբաղեալ ՚ի մէջ Թաւախիտ ծառոց ։ Իներքոյ իւրաքանչիւր պատկերաց գրեալ կան անուանք Նկարուցն ։

Ըստ աւանդութեանն ծերոց այս եկեղեցի շինեցաւ Նա-խանձաւորութեամբ, զի շինողն Աստուածածնի եկեղեցւոյ՝

ըստ ոմանց՝ պատուէր տուեալ էր ծառային իւրում զխօջայ Պետրոսն ոչ թողուլ մտանել յեկեղեցին յաւագ շաբաթու զի գրգիռ լիցի նմա շինելոյ զեկեղեցի. իսկ ըստ ոմանց՝ յաւագ շաբաթս բազմութիւն ժողովրդեան լինելով ՚ի մէջ եկեղեցւոյն Աստուածածնի՝ ՚ի գալն խօջայ Պետրոսի ոչ է եղեալ տեղի կամ անցք մտանելոյ նորա յեկեղեցին, ուստի շինեալ է նա զյիշեալ եկեղեցին չքեղ վայելչութեամբ կից եկեղեցւոյն սուրբ Աստուածածնի: Արդի վիճակ սոյն պայծառաշէն եկեղեցւոյ յանշքութեանն կողմն իջանի, վասն զի չունի իւր սեփհական ժողովուրդ և խոնարհեալ կայ դուռն նորա, իսկ ՚ի տարին երեք ամիս յամառան ժամանակի սակս առաւել հով լինելոյ սոյն եկեղեցւոյ՝ քահանայք սուրբ Աստուածածնի եկեղեցւոյ անդ կատարեն զժամերգութիւնն: Դամբարն հարաւային յարևմտեան կուսէ բեկեալ կայ, և եթէ անհոգութիւն եղիցի ամրացուցանելոյ զայն՝ ունի զկնի քանի ամաց անկանիլ, յայնժամ հետէ սոյն այս փառաւոր եկեղեցի՝ որ կարեմ ասել թէ պարծանք համարի Ջուղայու՝ ՚ի թիւս ամայացելոցն ունի դասիլ: Բայց ՚ի սոյն միոյ խախտեալ կամարէն՝ մնացեալ շինութիւնն եկեղեցւոյ է անվնաս: Սոյն եկեղեցի ունի երկու հին ձեռագիր Աւետարան՝ գրեալ ՚ի վերայ մագաղաթի, միոյն մեծագիր ՚ի ՈԻԵ (625) թուին Հայոց, և միւսն փոքրագիր ՚ի ՈԼԶ (636) թուին Հայոց գրեալ:

Յարևմտեան կողմն սոյն եկեղեցւոյ ՚ի սենեկի միում, որ հանդէպ եկեղեցւոյն է, կան գերեզմանք խօջայ Պետրոսի շինողի եկեղեցւոյն՝ խօջայ Ղուկաս որդւոյ նորա՝ և որդւոյ խօջայ Ղուկասի:

Աճեայ տապանաքար խօջայ Պետրոսի ունի զայս դամբանագիր:

Ի տապանի աստ զետեղի
դի մահդսի մեծ խօջայի,
որոյ անուն Պետրոս կոչի,
այր մեծաշուք և անուանի:
Ըստ անուանակցին իւրոյ վիմի՝

կարծր հաւատով՝ գործօք բարի
քան զկար մարդոյ ողորմածի,
և սրբութեան հետևողի։
Եւ այլ գործօք անթերի լի՝
որ Հաիպաստուն վկայ լինի,
որոյ գործոցն արդիւնք յայտնի
եկեղեցեաւս հրաշալի։
կացեալ մաքուր 'ի յաշխարհի.
սուրբ Յարութեան մէջ գիշերի,
'ըստ հաճոյից մերոյն փրկչի,
որպէս գործօք՝ ալեօք ծաղկի։
Մինչ սա հասեալ կէտ կոչողի՝
'ի նոյն Տեառնէ մեր հրաւիրի,
ընդ անմահիցն դասակցի։
Խնդրեմք զԱստուած կենդանի,
սորա գործեալ մեղցն թողցի,
և յիշողացն ամենի։
Թիւն ռճէ։
Ի յաւուր մեծի պասեքի։

Ը.

## ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ։

Այս եկեղեցի Թէպէտ չունի յիշատակ շինողին իւրոյ՝ այլ 'ի հին ձեռագիրս կոչէ այն եկեղեցի խօջայ Նազարի և այժմ իսկ հասարակօրէն կոչէ խօջէնց ժամ, զի մեծ և անուանի էր յոյժ խօջայ Նազար, որում հասարակօրէն մեծ խօջայ անուանն կարդային։

Թուական շինելոյ այնր յայտնի լինի 'ի ներքոյգրեալ յի-շատակարանէ :

Ի ներքոյ վիմաքարի ծեփին կան երեք ոսկեայ խաչեր, և 'ի միջոցի նոցա գրեալ կան :

" Խաչս յիշատակ է Աւետին . և կողակցին Փաշէ :
" Խաչս յիշատակ է Խաւջէ Նորվալէ կղկց Գուլէ-
" խասին Պետրոսին :
" Խաչս յիշատակ է Խօջայ Նազարին :
" Խաչս յիշատակ է Սաւէլ Թափաշէ :
" Սուրբ Խաչս բարեխօս է առ Քրիստոս Խանըբէկին :
" Թւին 1060 :
" Սուրբ Խաչս բարեխօսական առ Քրիստոսին , Թւին
" 1060 :

Թուականք վերոյգրեալ յիշատակարանաց յայտնի առնեն, Թէ եկեղեցին այն շինեալ է 'ի 1060 ( 1611 ) Թուականի , որ է մինն 'ի հնագոյն եկեղեցեաց Ջուղայու :

Ի վերայ ճակատու հարաւային դրան գրեալ կայ :

" Այս դուռն Տեառն է և արդարք մտանեն ընդ այս :
" Ո՛վ որ մտանէ՝ սորա Նկարեալ տուողն յիշէ : Թւին
" 1168 շամս 1 :

Այդ յիշատակարան որպէս ինքնին յայտնէ՝ է յիշատակ շինողի յախճապակեայ պատկերին, որ է գալն մոգուց յերկրպագութի Նորածին Միածնին , և կայ 'ի ճակատու նոյն դրան :

Ի վերայ փոխարկեալ տապէճանի սեղանայն գրեալ կայ :

" Յիշատակ է Ըռամազի Դուստր Տատկումին , Թւին
" 1100 ամի :

Այդ ևս է յիշատակ շինողի նոյն տախտակեայ բեմին :

Յաջնոյս և յահեկ նոյս խորհրդանոցաց սեղանոյն գրեալ կան ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս Եաւլարի, որ ետ ծաղկել
" սուրբ սեղանս յիշատակ իւրն և ծնողացն, և կո-
" ղկցն իւր Մարիամին և որդի Յովհաննիսին՝ Մկրր-
" տումին՝ և Դստերացն Զարիֆխանին՝ Խաթունին՝
" Թաջլուխանին, Թվին 1117 ։

Նոյն ևս է յիշատակ նկարողի երից պատկերացն՝ որք կան 'ի վերայ սեղանոյն ։

Ի վերայ խաչքարի գեղեցկելոյ յորմն խորանին գրեալ կայ ։

" Ի թվին 1096 շինեցաւ վկայարանս Խաչատուր
" վարդապետին հոգեբարձրութիւն Պարոն Նազա-
" րբէթին " ։

Շինեալ է կամարակապ երկայնութիւնն 'ի ստորոտէ սեղանոյն՝ 70, և լայնութիւնն՝ 33 ոտնաչափ ։ Բայց 'ի սեղանոյն չունի նկարէն պատկերս, այլ կից ընդ միմեանս շուրջանակի յորմն 'ի մի շար միայն մածուցեալ կան պատկերք սրբոց 'ի թերթս թղթոց նկարեալ ։

Շինութիւնն եկեղեցւոյ խախտեալ մերձ է յաւերն, խոնարհեալ է դուռն նորա և 'ի տարին գոգջիր ամիս մի 'ի վերայ միմեանց հաշուելով՝ հազիւ լինի 'ի նմա ժամերգութիւն ։ Ըստ որում գտանի այս 'ի փողոցն կոչեցեալ Ղարիբէնց, որ է մերձ գետոյն և հեռի 'ի Ջուղայոյ՝ վասն որոյ չէք յոյս միւսանգամ վերանորոգութեան կամ հաստատութեան նոյն եկեղեցւոյ ։ Այժմ թէպէտ կան յայնմ փողոցի չորս կամ հինգ տուն աղքատ գերդաստանք՝ այլ սակս բացակայութեանն իւրեանց յապաստոյ չէք յոյս թէ ունին մնալ անդ ընդ երկար, ուստի դասիլ սոյն եկեղեցւոյ 'ի շարս ամայացելոցն՝ չէք տարակոյս ինչ ։ Ի վաղուց հետէ լինելոց էր նա ամայի, որպէս եղեն միւս եկեղեցիք, որք շինեալ էին յայն կողմն պողոտային

Խօջայ Նազարին, այլ ըստ որում հրաշագործութիւնք սր-բոյն Գէորգայ 'ի համբաւի է 'ի Ջուղայ, և բազում ուխտա-ւորք կան նոյն եկեղեցւոյ, վասն որոյ դժուարութեամբ պահ-պանեցաւ այն մինչև ցարդ :

Ի մէջ պարսպի սոյն եկեղեցւոյ կան քարինքն սրբոյ Էջմի-ածնի առաքեալքն 'ի Շահաբասայ առաջնոյ :

Ունի սա մատուռն կամ եկեղեցի ամառան :

Ունի ձեռագիր Աւետարան գրեալ 'ի վերայ մագաղաթի 'ի թուականի հայոց 685 :

Այս եկեղեցի ունի զխաչ մի փայտեայ քանդակափորեալ զանազան պատկերօք տնօրինականօք, որ է գործ նրբար-ուեստ ճարտարապետի : Ոչ աւելորդ ինչ համարեմ զմանրա-մասն նկարագրութիւն յիշեալ խաչին նշանակել 'ի կարգի պատմութեանս, որ վկայ լիցի թէ Ջուղայեցիք ոչ միայն բա-րեպաշտ էին 'ի շինել զեկեղեցիս, այլ և գիտէին զյարգ ճար-տարահիւս ձեռագործաց. զորս և պահեալ են 'ի մէջ եկե-ղեցւոյ իբրև յապահով տեղւոջ : Ո՞վ գիտէ թէ որչափ թան-գագին և հազուագիւտ իրութիւնք անհետացան ընդ աւե-րակացն Ջուղայու :

Փայտ նորա թուի լինել անտառայ, կարմրերանգ է և կարծր. Երկայնութիւն խաչին է երեսուն գարեհատ, լայն-ութիւն թևոցն՝ տասն և ինն (ոչ մտանելով 'ի թիւ սոյն չա-փուց խոյակաձև պսակքն). լայնութիւն երկայնութեանն է հինգ և կէս, լայնութիւն լայնութեան թևոցն՝ վեց, և թանձ-րութիւնն՝ չորս և կէս գարեհատ :

Ի վերայ գագաթան խաչին և՛ յերկուս ծայրս թևոցն կան խոյակաձև պսակք, չեն այնուքիկ 'ի բուն խաչէն, այլ 'ի-նոյն տեսակ փայտէ յօրինեալ զատաբար և մածուցեալ յայ-նոսիկ տեղիսն : Յերկու անկիւնս թևոց լայնութեանն ցվերն կոյս՝ կան երկու փոքրիկ խոյակաձև զարդք 'ի բուն խաչա-փայտէն հանեալ : Որպէս (ոչ 'ի բուն խաչափայտէն) ցառ-րոտ խաչին յերկուց կողմանց իջանեն երկայն կորաձև զար-դարանք : Պատկերք փորագրեալք 'ի մէջ նոցին՝ է Յակոբ Նահապետ, յորմէ շառաւիղեալ ելանեն երկոտասան նահա-

պնտաքն 'ի վերայ ուրոյն ուրոյն շառաւիղեալ սստոց ։

Սոյն պատկեր է յերկու երեսս խաչին և յերկու կողմն Թևոցն ։ Ի մէջ երկու փոքրիկ խոյակաձև զարդուցն 'ի վեր յիշելոց՝ 'ի միումն եզն՝ և 'ի միւսումն գտանի գառն մի ։ Յերկու երեսս խաչին գտանին բովանդակ քսան և չորս պատկերատուփք , կէսն 'ի մի՝ և կէսն 'ի միւս կողմն ։ Ամենայն պատկերատուփք չեն հաւասարաչափ բաժանեալ, այլ ըստ յարմարութեան պատկերացն՝ չորս պարունակեն յինքեանս ։ Խաչաձև ծաղիկք կցորդեալք յիրեարս՝ զարդարեն զեզերս խաչին ըստ երկայնութեանն և ըստ լայնութեանն , որոց չափ լայնութեան է երրորդ մասն միոյ գարեհատի ։

Առաջին պատկերագրութիւն , ( է ու խոյակաձև պսակին գագաթան խաչին ) ։

Ի ծայր խոյակաձև պսակին՝ պատկեր միոյ յԱւետարանչացն ։ Գնալն Յիսուսի յաւուր ծաղկազարդին յԵրուսաղէմ, հեծեալ 'ի վերայ իշոյ , հանդէպ ճանապարհին ընդ որ ուղղեալ են գնացք Յիսուսի՝ երևի կիսամասնեայ շէնքն քաղաքին Երուսաղէմի , յորմէ իբրև ընդ առաջ ելանեն Յիսուսի արք վեց ․ 'ի Թիկանց կուսէ երևի կիսամասնեայ շինութիւն գեղջն՝ ուստի ելեալ Յիսուսի գնաց յԵրուսաղէմ ։ Արք երեքտասան ընդ կողմն Յիսուսի ուղեկցին 'ի նմա ։ Թուի ինձ թէ երկոտասանքն իցեն աշակերտքն , և միւսն յարուցեալն Ղազարոս ։

Երկրորդ պատկերագրութիւն, ( է ու 'ի վերայ գագաթան բուն խաչափայտին ) ։

Աւետիքն է Գաբրիէլի առ Մարիամ կոյս , ապարան մի մեծ երկկողմեան՝, իջանէ հրեշտակ յերկնից՝ և ընդ ուղի նորա լոյս փայլատակեալ իջանի 'ի վերայ սուրբ կուսին , սուրբ կոյսն կացեալ յոտին՝ հրեշտակն ընդ աջմէ , որոց միջի եդեալ սեղան մի ։

Երրորդ պատկերատան, (է սա 'ի արտաքին կողմն լուսնաձևեան թևոյ խաչին) ։

Փոքր մի բեկեալ են պատկերքս սորա, ուստի ոչ երևին բացորոշապէս, այլ ինձ հաւանական թուի ասել մկրտութիւն Տեառն ։ Երևի ծառ մի արմաւենւոյ, ընդ նովաւ այր մի, և 'ի միւս կողմն վեց մարդիկ, պատկերն որ ընդ մէջ սոցա՝ բեկեալ է, 'ի վերայ նոյն բեկեալ տեղւոյն նշմարի հետք իջանելոյ հոգւոյն սրբոյ յերկնից ։

Չորրորդ պատկերատան, (է սա 'ի ներքոյ երրորդ պատկերատանն) ։

Կինն Սամարացի ջուր հանէ 'ի ջրհորոյ, Յիսուս կայ ընդ աջմէ ջրհորոյն բազմեալ, արմաւենի մի բարձրացեալ ընդ կողով ջրհորոյն, 'ի թիկանց Յիսուսի կանգնեալ մետասան աշակերտք ։ Երևի քաղաքն Սամարիայ՝ իբրև փոքր մի հեռի վասն գեղաւորութեան պատկերատանն ։

Հինգերորդ պատկերատան, ('ի ներքոյ չորրորդին) ։

Ապարան մի արձակ, Յիսուս 'ի միջի նորա կալեալ զձեռանէ Առն միոյ, երկոտասան աշակերտքն յայսկոյս և յայնկոյս Յիսուսի 'ի մէջ սրահի ապարանին ։

Վեցերորդ պատկերատան, (է վերջին ծայր պատուանդանի խաչին) ։

Յարութիւնն է Ղազարու ։ Փոքր մի գեղաւոր երևին շինուածք ապարանից, Յիսուս արտաքոյ քան զշինուածսն կայ 'ի միջի, զառաջեաւ նորա երկու կանայք անկեալ երկրպագանեն, գերեզմանն Ղազարու՝ երկոտասան առաքեալքն կանգնեալք են զհետ Յիսուսի ։

ըստ ոմանց՝ պատուէր տուեալ էր ծառային իւրում զխօջայ Պետրոսն ոչ թողուլ մտանել յեկեղեցին յաւագ շաբաթու՝ զի գրգիռ լիցի նմա շինելոյ զեկեղեցի. իսկ ըստ ոմանց՝ յաւագ շաբաթս բազմութիւն ժողովրդեան լինելով 'ի մէջ եկեղեցւոյն Աստուածածնի՝ 'ի գալն խօջայ Պետրոսի ոչ է եղեալ տեղի կամ անցք մտանելոյ նորա յեկեղեցին, ուստի շինեալ է նա զսիշեալ եկեղեցին չքեղ վայելչութեամբ կից եկեղեցւոյն սուրբ Աստուածածնի: Արդի վիճակ սոյն պայծառաշէն եկեղեցւոյ յանշքութեանն կողմն իջանի, վասն զի չունի իւր սեփհական ժողովուրդ և խոնարհեալ կայ դուռն նորա, իսկ 'ի տարին երեք անգամ յամառան ժամանակի սակս առաւել հով լինելոյ սոյն եկեղեցւոյ՝ քահանայք սուրբ Աստուածածնի եկեղեցւոյ անդ կատարեն զժամերգութիւնս: Գմբէթն հարաւային յարևմտեան կուսէ բեկեալ կայ, և եթէ անհոգութիւն եղիցի ամրացուցանելոյ զայն՝ ունի զկնի քանի ամաց անկանիլ, յայնժամ հետէ սոյն այս փառաւոր եկեղեցի՝ որ կարեմ ասել թէ պարծանք համարի Ջուղայու՝ 'ի թիւս ամայացելոցն ունի դասիլ: Բայց 'ի սոյն միոյ խախտեալ կամարէն՝ մնացեալ շինութիւնն եկեղեցւոյ է անվնաս: Սոյն եկեղեցի ունի երկու հին ձեռագիր Աւետարան՝ գրեալ 'ի վերայ մագաղաթի, մինն մեծագիր 'ի ՈԻԵ (625) թուին Հայոց, և միւսն փոքրագիր 'ի ՈԼԶ (636) թուին Հայոց գրեալ:

Յարևմտեան կողմն սոյն եկեղեցւոյ 'ի սենեկի միում, որ հանդէպ եկեղեցւոյն է, կան գերեզմանք խօջայ Պետրոսի շինողի եկեղեցւոյն՝ խօջայ Ղուկասու որդւոյ նորա՝ և որդւոյ խօջայ Ղուկասու:

Աճեայ տապանաքար խօջայ Պետրոսի ունի զայս դամբանագիր:

Ի տապանիս աստ զետեղի
դի մահդսի մեծ խօջայի,
որոյ անուն Պետրոս կոչի,
այր մեծաշուք և անուանի:
Ըստ անուանակցին իւրոյ վիմի՝

կարծր հաւատով՝ գործօք բարի
քան զկար մարդոյ ողորմածի,
և սրբութեան հետևողի ։
Եւ այլ գործօք անթերի լի՝
որ Հախաստուն վկայ լինի,
որոյ գործոցն արդիւնք յայտնի
եկեղեցեաւս հրաշալի ։
կացեալ մաքուր 'ի յաշխարհի.
սուրբ Յարութեան մէջ գիշերի,
'քստ հաճոյից մերոյն փրկչի,
որպէս գործօք՝ այեօք ծաղկի ։
Մինչ սա հասեալ կէտ կոչողի՝
'ի նոյն Տեառնէ մեր հրաւիրի,
ընդ անմահիցն դասակցի ։
խնդրեմք զԱստուած կենդանի,
սորա գործեալ մեղօն Թողցի,
և յիշողացն ամենի ։
Թւին ռղըի ։
Ի յաւուր մեծի պասեքի ։

Բ.

ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ ։

Այս եկեղեցի Թէպէտ չունի յիշատակ շինողին իւրոյ՝ այլ 'ի հին ձեռագիրս կոչի այն եկեղեցի խօջայ Նազարի և այժմ եւս հասարակօրէն կոչէ խօջէնց ժամ, զի մեծ և անուանի էր յոյժ խօջայ Նազար, որում հասարակօրէն մեծ խօջայ անուանէին կարդային ։

Թուական շինելոյ այնր յայտնի լինի 'ի ներքոյգրեալ յի- շատակարանէ ։

Ի ներքոյ վիմաքարի բեմին կան երեք աստիճանք քարեայ, և 'ի վերայ նո- ցա գրեալ կան ։

« Խաչս յիշատակ է Աւետին . և կողկծն փաշէ ։
« Խաչս յիշատակ է Խաւջէ Նորվալէ կողկց Գուլի-
« խանին Պետրոսին ։
« Խաչս յիշատակ է Խօջայ Նազարին ։
« Խաչս յիշատակ է Աւէլ Թափաշէ ։
« Սուրբ Խաչս բարեխօս է առ Քրիստոս Խանըքէկին ։
« Թիվն 1060 ։
« Սուրբ Խաչս բարեխօսական առ Քրիստոսին, Թիվն
« 1060 ։

Թուականք վերոյգրեալ յիշատակարանաց յայտնի առնեն, թէ եկեղեցին այն շինեալ է 'ի 1060 ( 1611 ) Թուականի, որ է մինն 'ի հնագոյն եկեղեցեաց Ջուղայու ։

Ի վերոյ ճակատու հարաւային դրան գրեալ կայ ։

« Այս դուռն Տեառն է և արդարք մտանեն ՚ի սայ ։
« Ով որ մտանէ՝ սորա նկարեալ տուողն յիշէ ։ Թվին
« 1168 շամն 1 ։

Այդ յիշատակարան որպէս ինքնին յայտնէ՝ է յիշատակ շինողի յախճապակեայ պատկերին, որ է գալն մողուց յերկրպագութիւն Նորածին Միածնին, և կայ 'ի ճակատու նոյն դրան ։

Ի վերոյ փոխարկելոյ աստիճանի սեղանոյն գրեալ կայ ։

« Յիշատակ է Ըռամազի Դուստր Տաւկուլին, Թվին
« 1100 ամի ։

Այդ և ս է յիշատակ շինողի նոյն տախտակեայ բեմին ։

Յաջակոյս և յահեակ կոյս խորհրդանոցաց սեղանոյն գրեալ կան ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս Եավարի, որ եմ ծաղկել
" սուրբ սեղանս յիշատակ իւրն և ծնողացն, և կո-
" ղկցն իւր Մարիամին և որդի Յովհաննիսին՝ Մկրը-
" տումին՝ և Դստերացն Զարիֆխանին՝ Խաթունին՝
" Թաջլուխանին, Թվին 1117 ։

Դարձ ևս է յիշատակ նկարողի երից պատկերացն՝ որք կան 'ի վերայ սեղանոյն ։

Ի վերայ խաչքարի գեղեցկելոյ յորմն խորանին գրեալ կայ ։

" Ի թվին 1096 շինեցաւ վկայարանս խաչատուր
" վարդապետին հոգեբարձութիւն Պարոն Նազա-
" րէթին " ։

Շինեալ է կամարակապ երկայնութիւնն 'ի ստորոտէ սեղանոյն՝ 70, և լայնութիւնն՝ 33 ոտնաչափ ։ Բայց 'ի սեղանոյն չունի նկարէն պատկերս, այլ կից ընդ միմեանս շուրջանակի յորմն 'ի մի շար միայն մածուցեալ կան պատկերք սրբոց 'ի թերթս թղթոց նկարեալ ։

Շինութիւնն եկեղեցւոյ խախտեալ մերձ է յաւերն, խոնարհեալ է գուռն նորա և 'ի տարին գոգջիր ամիս մի 'ի վերայ միմեանց հաշուելով՝ հազիւ լինի 'ի նմա ժամերգութիւն ։ Ըստ որում գտանի այս 'ի փողոցն կոչեցեալ Ղարիբէնց, որ է մերձ գետոյն և հեռի 'ի Ջուղայոյ՝ վասն որոյ չէք յոյս միւսանգամ վերանորոգութեան կամ հաստատութեան նորին եկեղեցւոյ ։ Այժմ թէպէտ կան յայնմ փողոցի չորս կամ հինգ տուն աղքատ գերդաստանք՝ այլ սակս բացակայութեանն իւրեանց յապատոյ չէք յոյս թէ ունին մնալ անդ ընդ երկար, ուստի դասիլ սոյն եկեղեցւոյ 'ի շարս ամայացելոցն՝ չէք տարակոյս ինչ ։ Ի վաղուց հետէ լինելոց էր նաև ամայի, որպէս և այլն միւս եկեղեցիք, որք շինեալ էին յայն կողմն պողոտային

խօջայ Նազարին, այլ ըստ որում հրաշագործութիւնք սըր-բոյն Գէորգայ 'ի համբաւ է 'ի Ջուղայ, և բազում ուխտա-ւորք կան նոյն եկեղեցւոյ, վասն որոյ դժուարութեամբ պահ-պանեցաւ այն մինչ և ցարդ։

Ի մէջ պարսպի սոյն եկեղեցւոյ կան քարինքն սրբոյ Էջմի-ածնի առաքելոցն 'ի Շահաբասայ առաջինոյ։

Ունի սա մատուռն կամ եկեղեցի ամառան։

Ունի ձեռագիր Աւետարան գրեալ 'ի վերայ մագաղաթի 'ի թուականի հայոց 685։

Այս եկեղեցի ունի զխաչ մի փայտեայ քանդակափորեալ զանազան պատկերօք տնօրինականօք, որ է գործ նրբար-ուեստ ճարտարապետի։ Ոչ աւելորդ ինչ համարեմ զմանրա-մասն նկարագրութիւն յիշեալ խաչին նշանակել 'ի կարգի պատմութեանս, որ վկայ լիցի թէ Ջուղայեցիք ոչ միայն բա-րեպաշտ էին 'ի շինել զեկեղեցիս, այլ և գիտէին զյարգ ճար-տարահիւս ձեռագործաց, զորս և պահեալ են 'ի մէջ եկե-ղեցւոյ իբրև յապահով տեղւոջ։ Ո՛վ գիտէ թէ որչափ թան-գագին և հազուագիւտ գոյութիւնք անհետացան ընդ աւե-րակացն Ջուղայու։

Փայտ նորա թուի լինել անտառայ, կարմրերանգ է և կարծր։ Երկայնութիւն խաչին է երեսուն գարեհատ, լայն-ութիւն թևոցն՝ տասն և ինն (ոչ մտանելով 'ի թիւ սոյն չա-փուց խոյակաձև պատկերն)։ լայնութիւն երկայնութեանն է հինգ և կէս, լայնութիւն լայնութեան թևոցն՝ վեց, և թանձ-րութիւնն՝ չորս և կէս գարեհատ։

Ի վերայ գագաթան խաչին և* յերկուս ծայրս թևոցն կան խոյակաձև պատկք, չեն այնոքիկ 'ի բուն խաչէն, այլ 'ի-նոյն տեսակ փայտէ յօրինեալ զատաբար և մածուցեալ յայ-նոսիկ տեղիսն։ Յերկու անկիւնս թևոց լայնութեանն ցվերն կոյս՝ կան երկու փոքրիկ խոյակաձև զարդք 'ի բուն խաչա-փայտէն հանեալ։ Սոյնպէս (՞ 'ի բուն խաչափայտէն) ստո-րոտ խաչին յերկուց կողմանց իջանեն երկայն կորաձև զար-դարանք։ Պատկերք փորագրեալք 'ի մէջ նոցին՝ է Յակոբ Նահապետ, յորում շառաւիղեալ ելանեն երկոտասան նահա-

պետաքն 'ի վերայ ուրոյն ուրոյն շառաւիղեալ սատոց ։

Այն պատկեր է յերկու երեսս խաչին և յերկու կողմն Թև֊
ոցն ։ Ի մէջ երկու փոքրիկ խոյակաձև զարդուցն 'ի վեր յե֊
շեալոց՝ 'ի միումն եզն՝ և 'ի միւսումն գտանի գառն մի ։ Յերկու
երես խաչին գտանին բոլանդակ քսան և չորս պատկերա֊
տունք , կէսն 'ի մի՝ և կէսն 'ի միւս կողմն ։ Ամենայն պատկե֊
րատունք չեն հաւասարաչափ բաժանեալ , այլ ըստ յարմա֊
րութեան պատկերացն՝ զորս պարունակեն յինքեանս ։ Խաչա֊
ձև ծաղիկք կցորդեալք յերեարս՝ զարդարեն զեզերս խաչին
ըստ երկայնութեանն և ըստ լայնութեանն , որոց չափ լայ֊
նութեան է երրորդ մասն միոյ գարեհատի ։

Առաջին պատկերագան , ( է սա խոյակաձև պսակն գագաթան խաչին ) ։

Ի ծայր խոյակաձև պսակին՝ պատկեր միոյ յԱւետա֊
րանչացն ։ Գնալն Յիսուսի յաւուր ծաղկազարդին
յԵրուսաղէմ , հեծեալ 'ի վերայ իշոյ , համդէպ ճա֊
նապարհին ընդ որ ուղղեալ են գնացք Յիսուսի՝ երևի
կիսամասնեայ շէնքն քաղաքին Երուսաղէմի , յորմէ
երբև ընդ առաջ ելանեն Յիսուսի արք վեց ․ 'ի Թի֊
կանց կուսէ երևի կիսամասնեայ շինութիւն գեղջն՝
ուստի ելեալ Յիսուսի գնաց յԵրուսաղէմ ։ Արք ե֊
րեքտասան ընդ կողմն Յիսուսի ուղեկցին 'ի նմա ։
Թուի ինձ Թէ երկոտասանքն իցեն աշակերտքն , և
միւն յարուցեալն Ղազարոս ։

Երկրորդ պատկերագան , ( է սա 'ի վերայ գագաթան բուն խաչափայտին ) ։

Յարութիւն է Գաբրիէլի առ Մարիամ կոյս , ապարան
մի մեծ երկկողմեան , իջանէ հրեշտակ յերկնից՝ և
ընդ ուղի նորա լոյս փայլատակեալ իջանի 'ի վերայ
սուրբ կուսին , սուրբ կոյսն կացեալ յոտին՝ հրեշտակն
ընդ աջմէ , որոց միջի եդեալ սեղան մի ։

Երրորդ պատկերատան, (է առ 'ի տաճարէն հողմն լուսաւորեան բնոյ խաչին):

Փոքր մի բեկեալ են պատկերք սորա, սակայն ոչ երևին բացորոշապէս, այլ ինձ հաւանական թուի ասել մկրտութիւն Յիսուսի: Երևի ծառ մի արմաւենւոյ, ընդ նովաւ այր մի, և 'ի միւս կողմն վեց մարդիկ, պատկերն որ ընդ մէջ սոցա՝ բեկեալ է, 'ի վերայ նորա բեկեալ տեղւոջ նշմարի հետք իջանելոյ հոգւոյն սրբոյ յերկնից:

Չորրորդ պատկերատան, (է առ 'ի ներքոյ երրորդ պատկերատանն):

Կինն Սամարացի ջուր հանէ 'ի ջրհորոյ, Յիսուս կայ ընդ աջմէ ջրհորոյն բազմեալ, արմաւենի մի բարձրացեալ ընդ կողմ ջրհորոյն, 'ի թիկանց Յիսուսի կանգնեալ մետասան աշակերտք: Երևի քաղաքն Սամարիայ՝ իբրև փոքր մի հեռի վասն զօրաւորութեան պատկերատանն:

Հինգերորդ պատկերատան, ('ի ներքոյ չորրորդին):

Ապարան մի արձակ, Յիսուս 'ի միջի նորա կալեալ զձեռանէ Առն միոյ, երկոտասան աշակերտքն յայսկոյս և յայնկոյս Յիսուսի 'ի մէջ սրահի ապարանին:

Վեցերորդ պատկերատան, (է վերջին ծայր պատուանդանի խաչին):

Յարութիւնն է Ղազարու: Փոքր մի գոգաւոր երևին շինուածք ապարանից, Յիսուս արտաքոյ քան զշինուածսն կայ 'ի միջի, զառաջեաւ նորա երկու կանայք անկեալ երկրպագանեն, գերեզմանն Ղազարու՝ երկոտասան առաքեալքն կանգնեալք են զհետ Յիսուսի:

փոքրիկ պատկերատուն՝ հեծեալք երեք ( մոգքն ) գան 'ի միոյ կողմանէ, հրեշտակ 'ի բարձանց առաջնորդէ նոցա ։ Ընդ միւս կողմն հրեշտակ մի իջեալ 'ի բարձանց, ծառ մի արմաւենւոյ ընդ որով և այր մի, ( կարծեմ՝ 'ի հովուացն ) ապա չորս արք ( հովիւքն ) եկեալ են 'ի տեսանել զմանուկն ։ Այս պատկերատուն առաւել զարմանարհեստ երևի քան զայլսն ըստ նըրբութեան արհեստին ։

Մետասաներրորդ, ( կէս ընդ դուռն ) ։

Ապարան մի մեծակառոյց երկյարկեան, 'ի վերնատանն երևի այր մի ։ և 'ի միւս դատիկոնին՝ միւս այր մի, առ ստորոտով նոցա արք տասն ։ Ի միւս կողմն՝ Տաճարն է Սողոմոնի, Յիսուս նստեալ 'ի վերայ աթոռոյ ուսուցանէ ։ Վեց մարդիկ առ ստորոտով Աթոռոյն կան ։

Երկոտասաներրորդ, ( 'ի միոյ ծայր լուսաւորեան խաչին ) ։

Ապարան մի մեծ զօգաւոր շինուածովք մի զհետ միւսոյ, յորս երևին արք վեց ։

Ի միւս կողմն խաչափայտին ։

Առաջին պատկերատուն, ( 'ի վերայ խոյակաձև պատկի գագաթան ) ։

Ի ծայր պատկերին նկար միոյ յԱւետարանչացն ։ Ի մէջն՝ լեառն մի՝ յորում Յիսուս կամի համբառնալ, 'ի վերայ լերանն երեք արք՝ յորոց երկուքն են գլխիվայր, յայսկոյս և յայնկոյս լերանցն երկոտասան մարդիկ կացեալ զարմացմամբ, ծառք երկու յայսկոյս և յայնկոյս ։

Երկրորդ ՚ի վերայ գագաթան բուն խաչափայտին։

Համբարձումն Յիսուսի. երևի բազմեալ ՚ի յերկինս, չորս հրեշտակք՝ երկուքն ՚ի միոյ՝ և երկուքն ՚ի միւսէ կողմանէ ծառայեն, առ ստորոտով սոցին բազմութիւն հրեշտակաց և մարդկան իբրև ՚ի հիացման կան։ Բազմութիւն ասեմ, զի պատկերք հինգ երևին կատարելապէս, չորս թևք հրեշտակաց, տասն երեք գլուխք մարդոյ և վեց ձեռ՛ք մարդկան ծափահարութեամբ բարձրացեալ։

Երրորդ առ ստորոտով բնոյ լայնաբերան խաչին։

Իջուցեալ զՅիսուս ՚ի խաչէն. արք երկու կալեալ զնա կամին հանգուցանել ՚ի վերայ գետնի; կին մի և այր մի համբուրեն զձեռսն։ Փոքր մի զուգաւոր երևին խաչն՝ սանդուղն՝ ապարանք յերկուս կողմն խաչին, և մարդիկ երեք՝ որք տեսանեն զպատրաստութիւն խնկելոյ զմարմինն Տէրունական։

Չորրորդ հետ Երրորդին։

Ապարան մի երկկուսի, ՚ի վերայ վերնատանցն իւրաքանչիւր կողման կան երկու երկու հրեշտակք, հրեշտակ մի վեցթևեան՝ երևի ՚ի մէջ զուգաւոր խորութեանն։ Յիսուս կացեալ ՚ի մէջ ապարանիցն ձևով խոնարհութեան, բազմութիւն խուռն պատեալ զնովաւ։ Բազմութիւն ասեմ, զի վեց մարդիկք երևին կանգնեալ, և երեսուն գլուխք մարդկան յայսկոյս և յայն կոյս սեանցն ապարանից։ Առ ստորոտով Յիսուսի ձգեալ կամարաձև խորան յերկու կողմն, յորս կան մարդիկ երկու։

ՀԻՆԳԵՐՈՐԴ՝ ՀԵՏ ՉՈՐՐՈՐԴԻՆ :

Վերնատուն մի երեքյարկեան՝ յորում է ընթրիք Տեառն, փոքր մի գոգաւոր երևի բազմեալ Յիսուս, աշակերտքն՝ վեց յայսկոյս և վեց յայնկոյս նորա բազմեալ. սուրբն Յովհաննէս անկեալ կայ զլանջօքն Յիսուսի. սեղան պատրաստեալ զառաջեաւ, յորում երևին գառն մի խորովեալ, բաժակք, և այլն :

ՎԵՑԵՐՈՐԴ՝ Է ՕԹԱՐՈՑ ԽՈՒՑԻՆ ԸՆԴ ԵՐՋԱՆԿՈՒԹԵԱՆ :

Յարութիւնն է Յիսուսի, ապարան մի երկկուսի և երկյարկեան, սիւնազարդ և գմբեթաւոր, հրեշտակ մի նստեալ ՚ի մէջ միջին սրահի ապարանիցն, առաջեաւ հրեշտակին՝ գերեզմանն դատարկ, յորում երևին կտաւք ծալեալ, ՚ի թիկունս հրեշտակին կան երկու կանայք, որոց՝ որպէս թէ դարձեալ հրեշտակին ցուցանէ զգերեզմանն դատարկ :

ԵՕԹՆԵՐՈՐԴ՝ ՚Ի ՎԵՐԱՅ ԽՈՅԱԿԱՇԻՋՆ ՊԱՏԿԵՐՆ՝ ՈՐ ՚Ի ԾԱՅՐ ԸՆԴԱՆԷ. ԼԵՌԱՆՆ :

Հարսանիքն ՚ի Կանայ Գալիլեացւոց, սեղան խնճոյից, ՚ի վերայ նորա եդեալ չորս սրուակս, և այլ պատրաստութիւնք սեղանոյ, վեց բազմականք շուրջ զնովաւ : Առ ստորոտով սեղանոյն շարեալք թակոյկ վեց, և այր մի զթակոյկ բարձեալ ՚ի յուս հեղու ըզջուր ՚ի թակոյկսն :

ՈՒԹԵՐՈՐԴ՝ ՀԵՏ ԸՆԴ ԵՕԹՆԵՐՈՐԴԻՆ :

Յիսուս բժշկէ մատամբ զաչս կուրին, աշակերտքն մի, շփոթեալք իբրև թէ ՚ի հիացմանէ երևեալ, մարդիկ վեց շուրջ զՅիսուսիւ :

Իններորդ ։

Վերափոխումն սուրբ Աստուածածնի, ապարան մի երկնային սքանչազարդ ։ Մարիամ հանգուցեալ ՚ի վերայ բազմոցի, կերոն վառեալ զկողմն նորա. Առաքելական մարդիկ շուրջ ընդ նմա ։ ՚Ի վերոյ քան զայն էր ՚ի բարձունս՝ այր մի գրկեալ զմանուկ՝ յայսկոյս և յայնկոյս նորա մի մի Հրեշտակք ։

Տասներորդ՝ ՚ի կէտերն լուսնաթեան Լուսոյն ։

Խաչելութիւն Քրիստոսի, աւազակք երկու ՚ի խաչին յաջ և յահեակ կողմն խաչին Քրիստոսի, հրեշտակ մի բաժակ, ՚ի ձեռին ՚ի կողէն Յիսուսի զջուր և զարիւնն ընդունի ։ Հրեշտակ մի կայ ՚ի վերայ թևոց խաչի աջակողմեան աւազակին, երեք Մարիամունք և չորեքտասան մարդիկք կան առ ստորոտով խաչին ։

Մետասաներորդ ։

Ապարան մի՝ որահ սքանչելազարդ արտաքոյ քան զապարանն. այր մի ՚ի մէջ նորին որահի բազմեալ բազկատարած ունի ՚ի վերայ բազկացն զիր ինչ ( որպէս կնքահարք զանոն իւրեանց ) . յայսկոյս և յայնկոյս ՚ի մէջ դահլճի կան բազմեալ մարդիկ երկոտասան ։ Նից այնմ յայլում որահի՝ ապարանն Պիղատոսի երեքյարկեան և չորեք դահլիճ, Պիղատոս յառաջնում յարկին բազմեալ ՚ի վերայ Աթոռոյ զձեռան լուանայ, Յիսուս կանգնեալ զառաջեաւ նորա, աղախին մի ՚ի թիկանց կուսէ Պիղատոսի՝ որպէս թէ խօսի ընդ նմա՝ ինն մարդիկ կանգնեալ կան շուրջ զՅիսուսիւ ։

Ներքնատանն երրորդ վերջին ծայր Ըստոյ խաչին ։

Ապարան մի մեծ երեքյարկեան և բազմասենեակ. 'ի մէջ նորա ջրհոր մի՝ առ որով կանգնեալ երեք մարդիկ, առաջի ջրհորոյն միւս դահլիճ մի՝ յորում կայ այր մի զգաւազան բարձեալ 'ի յուս. 'ի միւս կողմանէ Յիսուս՝ որպէս թէ խօսի ընդ մարդոյն այնմիկ, ութն մարդիկ 'ի թիկանց Յիսուսի կանգնեալ կան ։
Ի ներքոյ իւրաքանչիւր պատկերատան գտանի գրեալ Յունարէն, անշուշտ զինչ լինելն պատկերացն. Ի վերայ գլխոյ Յիսուսի տարածեալ կայ պատկեր լուսոյ, որով որոշի նա 'ի հասարակ մարդկանց ։

Ի հովը խաչին գրեալ կան տունք բառք ինչ օտար Աշխոյ ։

Յաղագս փորագրութեան այսոցիկ բազմարհեստ պատկերաց՝ ոմանց կարծիք են թէ ուրոյն ուրոյն քանդակեալ զետեղեալք են յիւրաքանչիւր պատկերատունս, որ թէպէտ հաւանական իցէ՝ այլ չիքնշան ինչ սակս այնր՝ զի ըստ նուրբ հետազօտութեան՝ 'ի բուն 'ի խաչափայտէն ձեռն ներհուն քանդակործին փորագծեալ է զայնոսիկ պատկերս ։

Այդ խաչ բերեալ եղև 'ի սուրբ վանս Ամենափրկչի, ուրանօր և պահպանի խնամով ։

Մինչև ցայս վայր խօսեցաք զեկեղեցեաց՝ որք ամայացեալ են և առ ամայանալն խոնարհին. իսկ արդ եկեղեցիքն զորոց ստորագրութիւն 'ի ներքոյ գրեմ՝ են շէն և 'ի հաստատութեան եղեալ եկեղեցիք Ջուղայու ։

## Թ.

## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ :

Ասենի յիշատակարան գրեալ շուրջանակի 'ի մէջ գմբեթի ներքնակամարին :

" Շնորհօքն Յիսուսի Քրիստոսի գերանկար շինեցաւ
" բարձրագոյն նմանաւ սուրբ եկեղեցի, և ձեռամբ
" մահջլեսի Աւետքին կարողութեամբ Աստուծոյ ա-
" ւարտ եղև յիշատակ իւր հոգւոյն և ծնողաց իւրոց,
" նա և զհայրն Խօջայ Բաբաքին, և մայրն Ուլուխա-
" թունն, կողակից լխսին փաշէն, և որդիքն Յակոբ-
" ջանն՝ Ալէքսանին, և դստերքն Նալաֆն՝ Պաղտա-
" ղութլու՝ և Սոֆիէն. և եղբայրն Մարգարն՝ Յա-
" կոբն՝ և քոյրն Սմուանն՝ Անայն ":
" Շինեցաւ 'ի Թագաւորութեան Շահաբասին, շի-
" նեցաւ սուրբ եկեղեցիս Հայրապետութեան Տէր
" Դաւթին. Թվին ՌԿԲ :

Ի վերայ սեան ձեմատարէն գրեալ կայ 'ի չորեսին կողմանս :

" Խաչս յիշատակ է Խօջայ Նուրվէլ՝ և կողակցին
" Գուլխանն. և որդւոցն Պետրոսն՝ Ղազարն :
" Յիշեցէք 'ի Քրիստոս Խօջայ Սոլթանվէլի կենկցն
" Սանդուխտն, և որդին Յովհաննէսն ":
" Սուրբ Խաչս յիշատակ է Խօջայ Աւետքին, և կո-
" ղակցն Լխսինփաշէն և որդւոցն Յակոբջանն Ալէքսա-
" մնին :

" Խաչս յիշատակ է Խօջա Բաբաքին, և կողակցն Թա-
" լութխաթունին, և որդւոցն Աւետին՝ Մարգարին ".

Ի ձախակողմն կամարի տաճարին դրան գրեալ կայ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զՎերջին նկարողս խորանիս,
" զՊաւլինն՝ և զհայրն իւր զՊարոն Մարգարն, և
" զմայր իւր զՄարիամն, և զՊարոն Մկրտիչն, և զԸ-
" հանիկն Գուլբեկէ, և զկողակցն Զէրիֆէն, եղբարքն
" Փանոսն՝ Ներսէսն՝ Աւետիքն, քորն Մարիամն
" Եղսաբեթն ".

Յորժամ հիւսիսային կից կամարին տաճարին դրան գրեալ կայ։

" Որք հանդիպիք այսմ տեսութեան նկարչս խո-
" րանիս սրբութեան՝ յիշել յաղօթս ձեր մաքրական
" նկարող զԱպոնն երեցփոխան, հարք և ծնողքն իւր
" ամենայն, հայրն իւր Մարութն և զմայրն իւր Ալ-
" ւէրն . . . . . . . . . . . . . և եղ-
" բարքն իւր Որմզոն՝ Գրիգորն՝ Թադալն՝ և կին
" Ծաղիկ՝ և զքորսն։ Թվին ՌՃԺԵ։

Հարաւային յորմն կից կամարին տաճարին դրան գրեալ կայ (որ գրեցա-
'ի Տէր Յովհաննէսէ Գողթանեան 'ի 1841 ամի 'ի ժամանակի Երրորդ
նորոգութեան նորին եկեղեցւոյ)։

" Առաջին և երկրորդ դասուց շինութիւնն էր Թվին
" 1059. որ եղծաւ, և երրորդն էր 1062 Թուին փոքր,
" որ 'ի կաթուղիկոսութեան Դաւթի։ Երրորդ ան-
" գամ վերանորոգումն սորայ տանս համայն եղև 1841։

Ընկերընցին շարջանակի 'ի յատակէ եկեղեցւոյն երեք կանգ-
նաչափ յորմն զետեղեալ ունի ընտիր սալայատակի, 'ի վերայ
որոյ սալայատակի զրոյլ գրեալ կայ յիշատակ շինողացն նոյն

...ախճապակեաց ։ Ի 1841 ամի 'ի նորոգել զայն եկեղեցի 'ի-
...ներքին տեղիս եղծան այնոցիկ ախճապակեայ շինութիւնք,
...լոր 'ի յիշատակագրութեանս կետանշանաւ որոշեմ ։

[illegible]

« Պարծեալ յիշեցէք 'ի Քրիստոս զՓանոսն զՀայրն
« մՀդեսի Մարտիրոսն, եղբարսն Ալավերդին՝ քուրն
« Ոսկանէն և ընտանեացն իւր, թվին ՌՃ ։ Յիշեցէք
« 'ի Քրիստոս զՈվասափն կողակիցն Մարկամն ծնօղսն
« Գալուստն՝ եղբարսն իւր եղբար Առաքելն ։ Յիշե-
« ցէք 'ի Քրիստոս Բալթամն՝ զծնօղքն մահդեսի
« Ծատուրն՝ Գալուստն՝ Նազարէթն՝ Սասկն՝ Պետ-
« րոսն՝ Ղազամզութին, եղբարսն Մուրատն՝ Թուշ-
« խատէ՝ Մուրասէ՝ Դշխօէ ։ Յիշեցէք 'ի Քրիստոս
« Ղաչինն՝ կողակիցն Կատանն՝ Աւետիքն՝ Մնացականն ։
« Յիշեցէք 'ի Քրիստոս Գուլվարի՝ Մարկոսն՝ Կոս-
« տանդն՝ Մուսէսն՝ կողակիցն Փէքանն՝ Հարսն
« Աշի . ։ . . . . . . . . . Յիշեցէք
« 'ի Քրիստոս Առսին կողակիցն Թաքուէն՝ որդին
« Նազարէթն՝ Դսեր Ֆարնաթինին՝ Ջաղամն, Յի-
« շեցէք 'ի Քրիստոս Վաթանն՝ զծնօղքն Մահդեսի
« Ծատուրն, Գալստան . . . . . . . . . .
« Յիշեցէք 'ի Քրիստոս Եղիազարն կողակիցն Գօզալ
« որդին Ծատուրն ։
« Պարծեալ յիշատակ Սաֆարին կողակիցն Աստղիկն
« պարծանքին ։ Յիշեցէք 'ի Քրիստոս Յովհաննէսն
« կողակիցն Զինիկն ։ Յիշեցէք 'ի Քրիստոս Դինարին,
« կողակիցն Միրզաբէկի, եղբարցն Սարուկն Պաւղոսն
« քոյրն Շուշանն Յովհանն, թվին ՌՃԺԲ ։ Յիշեցէք
« 'ի Քրիստոս մահդեսի Մկրտ . . . . . . .
« 'ի Քրիստոս գդուրեկն կողակիցն Խոսրովմիրզի, որդ-
« ւոյն Յովհանն՝ Յարութիւնն՝ Մաթոսն Սքուլ . . . .
'ի Քրիստոս Քաթամազն ծնօղքն մահդեսի Ծատուրն՝

« գաղուստն՝ Նազարէթն՝ Սարուկն՝ Պետրոսն ։ Յի-
« շեցէք 'ի Քրիստոս Մուքէլն կողակիցն Եղսաբերն ։
« Յիշեցէք 'ի Քրիստոս փանոսն՝ մահդեսի Աստուա-
« ծին, մայրն իւր եղսաբերքն եղբարքն Ալաւէրդին ։
« Յիշեցէք 'ի Քրիստոս Աղաբաբէն՝ եղբայր Դա-
« թին և ծնօղ . . . . . . . . . .

Ի ստորոտ ոտնանոյն Փրկչին կայ ։

« Օմեղաւոր գաղուստն զծնօղսն իւր մահտեսի Ծա-
« տուրն զմայրն Ղաղամղութիլուն, եղբարքն՝ Փանթ-
« մասն՝ Աւետն՝ Նազարէթն՝ Պետրոսն՝ Սարուկն՝
« քորքն Հռիփսիմէն, կողակիցն Շուշանն որդէ Վա-
« թանն Գուլնասն, Պէրաբէն, Խանփէրճմալին,
« Թուին ՌՃԸ ։

Յորմ որբոյ ոտնանոյն Փրկչին կայ շուրջանակի ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՏէր Յակոբն՝ զՏէր Մկրր-
« տիչն՝ Տէր Պօղոսն՝ և զՏէր Կիրակոսն և զաւաք-
« էրէց . . . . Յիշատակ է Տէր Մկրտչին՝ Տէր
« Պօղոսին՝ Տէր Սահակին՝ Տէր Կարապետին՝ Տէր
« Պետրոսին՝ Տէր Մարկոսին, Տէր Յովհաննիսին,
« Թուին ՌՃ ,, ։ Սոքա եղեալ են վիճակաւոր քահա-
նայք նոյն եկեղեցւոյ 'ի ՌՃ ամի ։

Յորմ ոտնանոյն՝ յարևելեան կողմն Փրկչին կայ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՏէր Յովհաննէսն գալըս-
« տանեան որ եղև պատճառ վերանորոգման որբոյ
« տանս հանգոյն, յամի Տեառն 1841, յամսեանն Հոկ-
« տեմբերի 21 ին աւարտեցաւ որ 'ի կաթուղիկոսու-
« Թեանն Յովհաննիսի ,, ։

Ճակատն — արեւելեան դրան վերեւ կայ ։

« Յօրինեցաւ այս սուրբ եկեղեցի՝ յանուն Տիրամօր սուրբ Աստուածածնի.
Իսկ շինող այս տան էր այր մահի՝ Խօճայ Աւետիք Բարաքեան ասի.
շինեաց արդեամբ նոյն տաստաձեռնի՝ առ ՚ի յիշատակ իւրոցն տոհմի.
՚ի թուին հայոց միոյ հազարի, և վաթսուն երկուցն ՚ի նմին ամի։
Վերանորոգումն սորին կրկնակի՝ ձեռամբ բարեջան Տէր Յովհաննիսի։
որդի լինելով սա Գալատանի՝ նոյն եկեղեցւոյ վիճակաւորի.
՚ի թուին հայոց միոյ հազարի, և երկու հարիւր իննսուն սոյն ամի.
զոր նա նորոգեաց զայս եկեղեցի, Տէր բարեխօսաց յաւէտ զթասցի։

Յօրմունս սորա ՚ի խորանս պատկերատանց կան մի քանի յիշատակք, որք գրեալք են կապոյտ՝ կարմիր՝ և սպիտակ երանգ գրով, և այնոքիկ գրութիւնք խառնեալք զոլով ընդ միմեանս դժուարավերծանելի են։ Թէպէտ կարելի էր երկար աշխատանօք որոշելով զնոսա յերերաց՝ ընթեռնուլ այլ փոքր մի աշխատեալ ընթերցայ և տեսի թէ դարձեալ յիշատակք են այնոքիկ շինողի եկեղեցւոյն և ազգատոհմի նորա, վասն որոյ յաղագս յայտնի լինելոյ յիշատակի շինողին և թուական շինութեան այնր, ոչ առաւել հարկաւոր ինչ համարեցի կորուսանել զժամանակ վասն օրինակելոյ զայնոսիկ։

Ըստ վերոյգրեալ յիշատակարանաց, շինեցաւ այս եկեղեցի յամի 1613, նկարեցաւ ՚ի 1666, յախճապակի զարդարեցաւ յորում հետ զհետէ ՚ի 1651է ց1666, և երկրորդ անգամ եղև նորոգութիւն նորա ՚ի 1841։ Ըստ հաւաստի տեղեկութեան առաջին նորոգումն այնր եղև ծախիւք Գէորգ Աղայի ՚ի ժա-

մանակի կենդանութեանն նորա ։

Շինեալ է այն կամարակապ, երկայնութիւնն է 68՝ և լայնութիւնն 35 ոտնաչափ ։ Յառաստաղի նորա կան պատկերք ըստ տարազու պատկերացն հին եկեղեցեաց որ չեն վայելուչ ըստ արհեստին ։ Յորմն ժողովրդատեղւոյ կան քանի պատկերք որք երկրորդ անգամ նկարեցան՝ և են կատարելագործք ըստ արհեստին քան առաստաղացն պատկերս ։ Յորմն հիւսիսայնոյ և հարաւայնոյ կողմանց կան երկու պատկերք՝ գործ ներհուն պատկերահանի զոր ՚ի Վենետիկ ՚ի վերայ կտաւոյ ետ նկարել Գէրաք Աղայն ըստ չափաւոր և ըստ յարմարութեան նոյն որմոյ, և բերեալ աստ զետեղեաց ՚ի տեղիսն յայնոսիկ ։ Պատկերն հիւսիսայնոյ որմոյն է պալատն Հերովդէի և գլխատումն սրբոյն Յովհաննու ։ Ի ներքոյ այնր կայ պատկեր Գէրաք Աղայի որ ձեռնամածեալ յաղօթս կայ. և ՚ի մէջ ձեռնամածութեանն գրեալ կայ ՙՙ Գէրաք ՚՚ պատկերն հարաւայնոյ որմոյ է տաճարն քառասնօրեայ, և ՚ի ներքոյ այնր՝ կայ պատկեր կնոջն Աղայ Գէրաքի և երկու որդւոցն նորա ։

Իսկ այս եկեղեցի՝ վասն լինելոյ յանուն Տիրամօր առաւել ջերմեռանդ են կանայք, և բազումք են ուխտաւորք սորա ։ Ի չորեքշաբաթ աւուրս խուռն բազմութիւն կանանց ՚ի հեռաւոր թաղից Ջուղայու դիմեն անդ. և ՚ի չորեքշաբաթու զատկին առաւել բազմութեամբ և ոմանք բոկոտն ընթանան, որպէս թէ խնդակից լեալ աւետիք տան Տիրամօրն վասն Յարութեանն Յիսուսի ։

Նախքան զգալն ներկայ Առաջնորդ Սրբազան Թադդէոս արքեպիսկոպոսի, այս եկեղեցի թէպէտ ունէր զպահանջ ինչ յումանց, այլ չունէր առ ձեռն պատրաստ դրամս. նմանաւորապէս պարտական եւս էր, իսկ յետ հաստատելոյ նորին Սրբազնութեանն զկարգադրութիւնս ՚ի մէջ եկեղեցեաց Ջուղայու՝ կարգելով և զերեսփոխանս, յընթացս վեց ամաց բովանդակեցաւ ՚ի մէջ նոյն եկեղեցւոյ երկերիւր և յիսուն թումանաչափ գումար, ստանալով և զհին պահանջս իւր բարեջանութեամբն Սրբազան Առաջնորդին ։

Իսկ յայնմանէ Տէր Դաւիթ Մկրտչեան վիճակաւոր Քահանայն նոյն եկեղեցւոյ կտակեալ է զմի հազար կումպանու ռուփի յանուն սոյն եկեղեցւոյ, որոյ տարեկան տոկոս չորս առ հարիւրն, ձեռամբ գերապատիւ Աբգարեանց ընկերութեանն որ 'ի Կալկաթայ՝ հասանէ սոյն եկեղեցւոյ։ Նոյնպէս և Պարոն Գրիգոր Աբգարեան կտակեալ է տարեկան զերկու թումանս հասուցանել առ սոյն եկեղեցի։

Ի հիւսիսային յարկին պարսպի սոյն եկեղեցւոյ կայ մատուռն մի փոքրիկ սուրբ Յակոբ կոչեցեալ, որ շինեցաւ նախ քան զեկեղեցին յաղքատ ժամանակի ժողովրդեանն, ուրանոր կատարէին զաղօթս իւրեանց մինչև կառուցաւ եկեղեցին սուրբ Աստուածածնի։

Կայր սովորութիւն մինչև քանի ամօք յառաջ, զի 'ի տօնի սրբոյն Յակոբայ կատարէին անդ զպատարագ և ըզժամերգութիւն։

Խօջայ Աւետիք շինող այնր եկեղեցւոյ կայ ամփոփեալ յարևմտեան կողմն նոյն եկեղեցւոյ, որոյ այս է տապանագիր։

Այս է տապան՝ մահդեսի Աւետքին
որ փոխեցաւ յաշխարհս վերին։
Թւին ՌՃԾԸ ամին։

Այս եկեղեցի մինչև ցամն 1848 ունէր կոչնակ, իսկ 'ի 1848 ամի Տէր Բարսեղ Գալստանեան 'ի վերադառնալն իւր 'ի Հնդկաստանէ եբեր զանգ և 'ի ժամանակէ անտի կախեցաւ զանգ 'ի փոքրիկ զանգատան որ 'ի վերայ առաստաղէ եկեղեցւոյն կայ շինեալ։

## Ժ.

## ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ:

Այս եկեղեցի չունի որոշ յիշատակարան թէ յումմէ շի-նեցաւ, և որպէս տեղեկանամք պատճառ չունելոյ յիշատա-կարանին՝ է այն զի յամի 1790 նորոգեցաւ այն եկեղեցի ձե-ռամբ Տէր Յարութիւն քահանայի Յակոբեան, որոյ անփոյթ լեալ զյիշատակարանօք թաղեաց զայնոսիկ 'ի ներքոյ ծեփոյ:
Ի վերայ առաստաղի սեղանոյն գրեալ կայ « Թիվն ՌՃՀԸ (1729) որ է թուական շինութեան նոյն եկեղեցւոյ, որպէս և այլ ձեռագիր հատուկոտոր թուղթք վկայեն զայնմանէ:

Ի վերայ որմոյ սեղանոյն աւագ խորանի կայ պատկեր սուրբ հաղորդութեան և 'ի ներքոյ նորա գրեալ կայ:

« Ջուր մաքրութիւն մեղաց, արիւն հաղորդութիւն
« սրբոց »:

Ի միւս կողմն որմոյ սեղանոյն՝ կայ պատկեր աւետեաց, և 'ի ներքոյ նորա գրեալ կայ « Յիշատակ Տէր Յարութիւնի, և իւր կողակից Ցաննայուն 175 » (1790):

Յաջ և յահեակ կողմն հարաւային դրան կան երկու խաչքարինք 'ի վերայ որոց գրեալ կան:

Թիվն ՌՃԾԴ Ովկան 27:
« Ամենապատուական և երկրպագելի խաչիդ քո ա-
« ռաջի անկեալ իմ, ես Դաւիթ մեղամակարդ մեղօք

«« Վախճանեալ Քահանայս՝ և յուսով քո սպասեմ զի
«« ՚ի Նորոգութեան աւուրն ոգւա՞ հանդիպեցայց փա-
«« ռաց փեսայիդ ․․։
«« Տէր իմ Յիսուս ամենօրհնեալ՝ երրորդութեանդ
«« երկրպագեալ,
«« Տէր Յարութիւն Յակոբեան լեալ՝ որպէս ճնճղուկ
«« միայն եղեալ,
«« յայս կենիս հանգիստ չգտեալ՝ ՚ի տապանի աստ
«« ամփոփեալ։
«« Թուին ՌՃՂԴ, շամս 5։

Շինեալ է այն կամարակապ, որոյ երկայնութիւնն ՚ի ստորոտէ անդամոյն է 57՝ և լայնութիւնն 29 ոտնաչափ։ Եկեղեցին չունի պատկեր, այլ սպիտակացեալ է կրով, արտաքին պարիսպ նորա պէտս ունի նորոգութեան։

Կից եկեղեցւոյն ՚ի հարաւային կողմն ունի մատուռն կամ եկեղեցի ամառան, որ շինեալ է ՚ի 1163 (1714) ՚ի Պարոն Թարխանէ։

Ի վերայ դրանդոյն սեղանոյն գրեալ կայ։

«« Յիշեցէք ՚ի Քրիստոս զշինող սբ եկեղեցւոյս զՊա-
«« րոն Թարխանն, և եղբայրն իւր Աւետիքն և Սար-
«« հաղն, և ծնողսն խօջայ Քամալն և Սամբարն, և քեռն
«« իւր ընկուածն՝ Մատլինայ՝ և Մուրասէ՝ և զաւակացն
«« Մարիամ․ . . . յիշեցէք և Աստուած ողորմի,
«« Թուին ՌՃԿԳ։

## ԺԲ.

## ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՆՈՍ.

Էր սա մինն 'ի մեծաշէն և 'ի բարձրակառոյց եկեղեցեաց Ջուղայու ։ Յիշատակարան գրչեալ ճաշոցի մի եղելոյ 'ի նմին եկեղեցւոջ տայ մեզ յետագայ տեղեկութիւնն ։

.“ Եւ արդ ես ամենայնի տրուպ և նուաստ ծառայս Ա-
“ ստուծոյ խօջայ Մարգարէս գրել տուի զԱստուածաշունչ
“ գիրքս և ետու ընծայ և նուէր 'ի դուռն սրբոյն Ստեփան-
“ նոսի նախավկայի ,, ։ . . . Գրեցաւ սուրբ տառս 'ի յեր-
“ կիրն պարսից 'ի մայրաքաղաքն Շօշ 'ի մէջ նորաշէն Ջու-
“ ղայու 'ի թուականութեանս Հայոց ՌԿԴ ամի. ( ) . . . . 'ի ծննդ-
“ դենէն Քրիստոսի մինչև Յարութիւնն Պարոն Մարգարէ սե-
“ նեակի մէջն եմ գրեր , և յարութիւնէն Քրիստոսի մինչև
“ աւարտն 'ի սուրբ Ստեփաննոսի դուռն եմ գրեր , վասն զի
“ շինեաց մօտ առ եկեղեցին խուց և գրատուն վասն պատ-
“ ճառի գրոցս և անդ նստեալ կատարեցի . . . . աւարտե-
“ ցաւ ձեռամբ նուաստ անուն Սարգիս Դպրի Մարգուանցւոյ։
“ Ի Հայրապետութեան Տէր Մելքիսեթ կաթուղիկոսին և
“ յառաջնորդութեան Ջուղայու Տէր Մեսրոբ արք եպիսկո-
“ պոսի ,, ։

Ըստ վերոգրեալ յիշատակարանին յայտնի լինի թէ յի-
շեալ եկեղեցին սուրբ Ստեփաննոսի շինեցաւ 'ի ՌԿԴ թուա-
կանի , վասն զի ասելով թէ “ 'ի ծննդենէն Քրիստոսի մինչև
“ Յարութիւնն Պարոն Մարգարի սենեակի մէջն եմ գրեր ”
յայտնի առնէ թէ տակաւին չև էր աւարտեալ շինութիւնն
եկեղեցւոյ , իսկ յասելն թէ և “ յարութենէն Քրիստոսի

« մինչեւ աւարտն ՚ի սուրբ Մովսիսեան դուռն եմ գրեր.
« վասն զի շինեաց մօտ առ եկեղեցին խուց և գրատուն »
յայտնի առնէ թէ յետ շինութեան եկեղեցւոյն՝ շինեցաւ և կից այնր խուց և գրատուն ։

Եկեղեցին ունի միայն յիշատակ ՚ի վերայ վիմաքարին, այլ բառ որուս գետեղեալ է այն ՚ի ներքուոյ խորան, երևի միայն Թուականն որ է ՌՃԺԵ ։

Ի վերայ դրանդւոյն եղելոյ առաջնոյ վէմաքարի ուղղանց կայ փորագրեալ յիշատակարան այս,

« Եկեղեցի կանգնեալ խորան՝ ՚ի սմա կայացեալ է
« սուրբ սեղան,
« յօրինուածով յոյժ զանազան. ձեռամբ մաղապարտ
« Հիւսն անպիտան ։
« Աբրահամ ապիկար և սուտ անուամբ ։ Յորժամ մատ-
« չիք ՚ի սուրբ զինման,
« անդ յիշեցէք զիս անարժան՝ Թուին ՌՃ և մնացն ։
« Եւս Տէր Սարգիս աւագերէցն յիշեցէք ՚ի Քրիս-
« տոս, Տէր Աբխառակէս եղբայրականն ։

Կարծել թէ ժամանակ շինութեանն սոյն եկեղեցւոյ է Թըւականն 1111, կամ 1115, բնաւ ոչ լինի հաւանական, քանզի յիշատակ ճաշոցին պարզապէս յայտնի առնէ զժամանակն, և գրեալն ՚ի նմին թէ « շինեաց մօտ առ եկեղեցին խուց և գրատուն », պարզ ապացոյց է հաստատութեան բանի նորա, քանզի կից եկեղեցւոյն կայ խուցն՝ յորում արդէն իսկ կայ նկատեալ Ամենափրկչեան Դպրոցի ։

Եթէ շինութիւնն նոյն եկեղեցւոյ՝ որպէս կարծիք են ոմանց, տուեալ լիցի Խօջայ Յակոբջանին՝ որ թաղեալ կայ ՚ի հարաւային դասու մատրանն նոյն եկեղեցւոյ, հակառակ ելանէ նոյն կարծեաց Թուականն վախճանի նորա, որ է 1186, զի եթէ շինութիւն եկեղեցւոյն իցէ 1063 Թուականին՝ 123 ամօք զկնի այնր է վախճանն Խօջայ Յակոբջանի. եթէ կալցի շինու-

« գաւառան՝ Նազարէթն՝ Սարուկն՝ Պետրոսն ։ Յի-
« շեցէք 'ի Քրիստոս Մուքէլն կողակիցն Եղսաբերն ։
« Յիշեցէք 'ի Քրիստոս փանոսն՝ մահդեսի Աստուա-
« ծին, մայրն իւր Նազարեթին եղբայրն Ալավէրդին ։
« Յիշեցէք 'ի Քրիստոս Աղաբաբէն՝ եղբայր Դաւ-
« թին և ծնող . . . . . . . . . .

Ի սորին սեղանոյն գրեալ կայ ։

« Մեղաւոր գաւառանս զծնողսն իւր մահտեսի Դա-
« ւութն զմայրն Ղադամղութլուն, եղբարքն՝ Փանթ-
« ամսն՝ Աւետն՝ Նազարէթն՝ Պետրոսն՝ Սարուկն՝
« քորքն Հռիփսիմէն, կողակիցն Շուշանն որդի Աւ-
« թանին Գուլնասն, Պէրպարէն, Խանփէրէմալին,
« թվին ՌՃԸ ։

Յորմն սրբոյ սեղանոյն գրեալ կայ շարաբանդին ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՏէր Յակոբն՝ զՏէր Մկրտ-
« իչն՝ Տէր Պօղոսն՝ և զՏէր Սիրակոսն և զաւակ-
« էրէց . . . . Յիշատակ է Տէր Մկրտչին՝ Տէր
« Պօղոսին՝ Տէր Սահակին՝ Տէր Կարապետին՝ Տէր
« Պետրոսին՝ Տէր Մարկոսին, Տէր Յովհաննիսին,
« թվին ՌՃ ,, ։ Սոքա եղեալ են վիճակաւոր քահա-
նայք նոյն եկեղեցւոյ 'ի ՌՃ ամի ։

Յորմն սեղանոյն՝ յարեւելեան կողմն գրեալ կայ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՏէր Յովհաննէսն Գալա-
« տանեան որ եղև պատճառ վերանորոգման սորա
« տանս Հայկայն, յամի Տեառն 1841, յամսեանն Հոկ-
« տեմբերի 21 ին աւարտեցաւ որ 'ի կաթուղիկոս-
« թեանն Յովհաննիսի ,, ։

[illegible] արեւելեան դրան վերեւն է այս։

« Յօրինեցաւ այս սուրբ եկեղեցի՝ յանուն Տիրամօր
սուրբ Աստուածածնի.
իսկ շինող այս տան էր այր մահի՝ խօջայ Աւետիք
Բաբաքեան ասի.
շինեալ արդեամբ նոյն աստուածերանի՝ առ ՚ի յիշա-
տակ իւրոյն տոհմի.
՚ի թուին հայոց միոյ հազարի, և վաթսուն եր-
կուցն ՚ի նմին ամի։
Վերանորոգումն սորին կրկնակի՝ ձեռամբ բարե-
ջան Տէր Յովհաննիսի։
որդի լինելով սա Գալստանի՝ նոյն եկեղեցւոյ վի-
ճակաւորի.
՚ի թուին հայոց միոյ հազարի, և երկու հարիւր
իննսուն սոյն ամի.
զոր նա նորոգեաց զայս եկեղեցի, Տէր բարեսիրաց
յաւէտ գթասցի։

Յորմունս սորա ՚ի խորանս պատկերատանց կան այլ և յիշատակիք, որք գրեալք են կապոյտ՝ կարմիր՝ և սպիտակերանգ գրով, և այնոքիկ գրութիւնք խառնեալք գոլով ընդ միմեանս դժուարաւ ընթեռնլի են։ Թէպէտ կարելի էր երկար աշխատանօք որոշելով զնոսա յիրերաց՝ ընթեռնուլ, այլ փոքր մի աշխատեալ ընթերցայ և տեսի թէ դարձեալ յիշատակք են այնոքիկ շինողի եկեղեցւոյն և ազգատոհմի նորա, վասն որոյ յաղագս յայտնի լինելոյ յիշատակի շինողին և թուականի շինութեան այնր, ոչ առաւել հարկաւոր ինչ համարեցի կորուսանել զժամանակ վասն օրինակելոյ զայնոսիկ։

Ըստ վերոյգրեալ յիշատակարանաց, շինեցաւ այս եկեղեցի յամի 1613, նկարեցաւ ՚ի 1666, յախճապակիք զետեղեցաւ յորմն հետ զհետէ ՚ի 1651է ց1666, և երկրորդ անգամ եղև նորոգութիւն նորա ՚ի 1841։ Ըստ հաւաստի տեղեկութեան առաջին նորոգումն այնր եղև ծախիւք Գէրաք Աղայի ՚ի ժա-

մանակի կենդանութեանն նորա։

Լայնեալ է այն կամարակապ, երկայնութիւնն է 68՝ և լայնութիւնն 35 ոտնաչափ։ Յառաստաղի նորա կան պատկերք ըստ տարազու պատկերացն հին եկեղեցեաց որ չեն վայելուչ ըստ արհեստին։ Յորմն ժողովրդարանին կան քանի պատկերք որք երկրորդ անգամ նկարեցան՝ և են կատարելագործք ըստ արհեստին քան առաստաղացն պատկերս։ Յորմն հիւսիսայնոյ և հարաւայնոյ կողմանց կան երկու պատկերք՝ գործ ներհուն պատկերահանի զոր 'ի Վենետիկ 'ի վերայ կտաւոյ ետ նկարել Գէրաք Աղայն ըստ չափաւոր և ըստ յարմարութեան նոյն որմոյ, և բերեալ աստ զետեղեցաւ 'ի տեղիսն յայնոսիկ։ Պատկերն հիւսիսայնոյ որմոյն է պալատն Հերովդէի և գլխատումն սրբոյն Յովհաննու։ Ի ներքոյ այնր կայ պատկեր Գէրաք Աղայի որ ձեռնամածեալ յաղօթս կայ, և 'ի մէջ ձեռնամածութեանն գրեալ կայ " Գէրաք "։ պատկերն հարաւայնոյ որմոյ է տաճարն քառասնօրեայ, և 'ի ներքոյ այնր՝ կայ պատկեր կնոջն Աղայ Գէրաքի և երկու որդւոցն նորա։

Առ այս եկեղեցի՝ վասն լինելոյ յանուն Տիրամօր առաւել ջերմեռանդ են կանայք, և բազումք են ուխտաւորք սորա։ Ի չորեքշաբաթ աւուրս խուռն բազմութիւն կանանց 'ի հեռաւոր թաղից Ջուղայու դիմեն անդ. և 'ի չորեքշաբաթու զատկին առաւել բազմութեամբ և ոմանք բոկոտն ընթանան, որպէս թէ խնդակից լեալ աւետիք տալ Տիրամօրն վասն Յարութեանն Յիսուսի։

Նախքան զգալն ներկայ Առաջնորդ Սրբազան Թադդէոս արք եպիսկոպոսի, այս եկեղեցի թէպէտ ունէր զպահանջ ինչ յոմանց, այլ չունէր առ ձեռն պատրաստ դրամս. նմանաւորապէս պարտական եւս էր, իսկ յետ հաստատելոյ Նորին Սրբազնութեանն զկարգադրութիւնս 'ի մէջ եկեղեցեաց Ջուղայու՝ կարգելով և զերեսփոխանս, յընթացս վեց ամաց բովանդակեցաւ 'ի մէջ նոյն եկեղեցւոյ երկերիւր և յիսուն թումանաչափ գումար, տանելով և զհին պահանջս իւր բարեջանութեամբն Սրբազան Առաջնորդին։

Բաց յայնմանէ Տէր Դաւիթ Մկրտչեան վիճակաւոր Քահանայն նոյն եկեղեցւոյ կտակեալ է զմի հազար կումպանու ռուփի յանուն սոյն եկեղեցւոյ, որոյ տարեկան տոկոս չորս առ հարիւրն, ձեռամբ գերապատիւ Աբգարեանց ընկերութեանն որ 'ի Կալկաթայ՝ հասանէ սոյն եկեղեցւոյ։ Նոյնպէս և Պարոն Գրիգոր Աբգարեան կտակեալ է տարեկան զերրիս թումանս հասուցանել առ սոյն եկեղեցի։

Ի հիւսիսային յարմն պարսպի սոյն եկեղեցւոյ կայ մատուռն մի փոքրիկ սուրբ Յակոբ կոչեցեալ, որ շինեցաւ նախ քան զեկեղեցին յաղքատ ժամանակի ժողովրդեանն, ուրանօր կատարէին զաղօթս իւրեանց մինչև կառուցաւ եկեղեցին սուրբ Աստուածածնի։

Կայր սովորութիւն մինչև քանի ամօք յառաջ, զի 'ի տօնի սրբոյն Յակոբայ կատարէին անդ զպատարագ և ըզժամերգութիւն։

Խօջայ Աւետիք շինող այնր եկեղեցւոյ կայ ամփոփեալ յարևմտեան կողմն նոյն եկեղեցւոյ, որոյ այս է տապանագիր։

Այս է տապան՝ մահդեսի Աւետքին
որ փոխեցաւ յաշխարհ վերին։
Թւին ՌՃԶԸ ամին։

Այս եկեղեցի մինչև ցամն 1848 ունէր կոչնակ, իսկ 'ի 1848 ամի Տէր Բարսեղ Գալստանեան 'ի վերադառնալն իւր 'ի Հնդկաստանէ եբեր զանգ և 'ի ժամանակէ անտի կախեցաւ զանգ 'ի փոքրիկ զանգատան որ 'ի վերայ առաստաղի եկեղեցւոյն կայ շինեալ։

ԺԱ.

## ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ։

Այս եկեղեցի չունի որոշ յիշատակարան թէ յումմէ շի-նեցաւ, և որպէս տեղեկանամք պատճառ չաւնելոյ յիշատա-կարանին՝ է այն զի յամի 1790 նորոգեցաւ այն եկեղեցի ձե-ռամբ Տէր Յարութիւն Քահանայի Յակոբեան, որոյ անփոյթ լեալ զյիշատակարանօք թաղեաց զայնոսիկ 'ի ներքոյ ծեփոյ։ Ի վերայ առաստաղի սեղանոյն գրեալ կայ « Թւին ՌՃՀԸ (1729) որ է թուական շինութեանն նոյն եկեղեցւոյ, որպէս և այլ ձեռագիր հատուկոտոր թուղթք վկայեն զայնմանէ։

Ի վերայ որմոյ սեղանոյն առաջ խորանի կայ պատկեր սուրբ հաղորդու-թեան և 'ի ներքոյ նորա գրեալ կայ։

« Սուրբ մաքրութիւն մեղաց, արիւն հաղորդութեան
« սրբոց »։

Ի միւս կողմն որմոյ սեղանոյն՝ կայ պատկեր աւետեաց, և 'ի ներքոյ նորա գրեալ կայ « Յիշատակ Տէր Յարութիւնի, և իւր կողակից Ցաննայուն 175 » (1790)։

Յաջ և յահեակ կողմն հարաւային դրան կան երկու խաչքարինք 'ի վերայ որոց գրեալ կան։

Թւին ՌՃԾԴ Ովկան 27։
« Ամենապատուական և երկրպագելի խաչիդ քո ա-
« ռաջի անկեալ իմ, ես Դաւիթ մեղսամակարդ մերք

« Վախճանեալ քահանայս՝ և յուսով քո սպասեմ զքե
« 'ի Նորոգութեան աւուրն ստոյգ հանդերձեցայց փա-
« ռաց փեսայիդ »:
« Տէր իմ Յիսուս ամենօրհնեալ՝ երրորդութեանդ
« երկրպագեալ,
« Տէր Յարութիւն Յակոբեան լեալ՝ որպէս ճնճղուկ
« միայն եղեալ,
« յայս կենիս հանգիստ չգտեալ՝ 'ի տապանի աստ
« ամփոփեալ:
« Թուին ՌՃՂԳ, շամս 5:

Շինեալ է այն կամարակապ, որոյ երկայնութիւնն 'ի ստո- րոտէ սեղանոյն է 57՝ և լայնութիւնն 29 ոտնաչափ: Եկեղեցին չունի պատկեր, այլ սպիտակացեալ է կրով, արտաքին պարիսպ նորա պէտս ունի նորոգութեան:

Կից եկեղեցւոյն 'ի հարաւային կողմն ունի մատուռն կամ ե- կեղեցի ամառան, որ շինեալ է 'ի 1163 (1714) 'ի Պարոն Թարխանէ:

Ի վերայ ստորոտոյ սեղանոյն գրեալ է այս:

« Յիշեցէք 'ի Քրիստոս զշինող սբ եկեղեցւոյս զՊա-
« րոն Թարխանն, և եղբայրն իւր Աւետիքն և Սար-
« հադն, և ծնողսն Խօջայ Քամանն և Սամբարն, և քեռն
« իւր բէկումն՝ Մատլինայ՝ և Մարասէ՝ և զաւակացն
« Մարիամ. . . . յիշեցէք և Աստուած ողորմի.
« Թուին ՌՃԿԳ:

# ԺԲ.

## ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՆՈՍ.

Էր սա մինն 'ի մեծաշէն և 'ի բարձրակառոյց եկեղեցեաց Ջուղայու ։ Յիշատակարան գրչեալ ճաշոցի մի եղելոյ 'ի նմին եկեղեցւոջ տայ մեզ յստակագոյն տեղեկութիւնս ։

« Եւ արդ ես ամենայնի տրուպ և նուաստ ծառայս Աս-
« տուծոյ խօջայ Մարգարէս գրել տուի զԱստուածաշունչ
« գիրքս և ետու ընծայ և նուէր 'ի դուռն սրբոյն Ստեփան-
« նոսի նախավկային » ։ . . . . Գրեցաւ սուրբ տառս 'ի յեր-
« կիրն պարսից 'ի մայրաքաղաքն Շօշ 'ի մէջ Նորաշէն Ջու-
« ղայու 'ի թուականութես հայոց ՌԿԴ ամի. ( ) . . . . 'ի ծնըն-
« դենէն Քրիստոսի մինչև Յարութիւնն Պարոն Մարգարի սե-
« նեակի մէջն եմ գրեր, և յարութենէն Քրիստոսի մինչև
« աւարտն 'ի սուրբ Ստեփաննոսի դուռն եմ գրեր, վասն զի
« շինեաց մօտ առ եկեղեցին խուց և գրատուն վասն պատ-
« ճառի գրոցս և անդ նստեալ կատարեցի . . . . աւարտե-
« ցաւ ձեռամբ նուաստ անուն Սարգիս Դպրի Մարզուանցւոյ ։
« ի հայրապետութեան Տէր Մելքիսեթ կաթուղիկոսին և
« յառաջնորդութեան Ջուղայու Տէր Մեսրոբ արք եպիսկո-
« պոսի » ։

Ըստ վերոյգրեալ յիշատակարանին յայտնի լինի թէ յիշեալ եկեղեցին սուրբ Ստեփաննոսի շինեցաւ 'ի ՌԿԴ թուականի, վասն զի ասելով թէ « 'ի ծննդենէն Քրիստոսի մինչև « Յարութիւնն Պարոն Մարգարի սենեակի մէջն եմ գրեր » յայտնի առնէ թէ տակաւին չև էր աւարտեալ շինութիւնն եկեղեցւոյ, իսկ յասելն թէ և « յարութենէն Քրիստոսի

« մինչեւ առաւօտն 'ի սուրբ Ոսկեփամինոսի դուռն եմ գրեր.
« վասն զի շինեաց մատառ եկեղեցին խուց եւ գրատուն »
յայտնի առնէ թէ յետ շինութեան եկեղեցւոյն՝ շինեցաւ եւ կից այնր խուց եւ գրատուն։

Եկեղեցին ունի միայն յիշատակ 'ի վերայ վիմաքարին, այլ բառ որում զետեղեալ է այն 'ի տեղւոջ իւրում, երեւի միայն Թուականն որ է ՌՃԺԵ։

Ի վերայ տախտակի եդելոյ առաջնոյ վիմակոխի սեղանոյն կայ փորագրեալ յիշատակարանս այս,

« Եկեղեցի կանգնեալ խորան՝ 'ի սմա կայացեալ է
« սուրբ սեղան,
« յօրինուածով յոյժ զանազան. ձեռամբ մեղապարտ
« Հիւանն անպիտան։
« Աբրահամ ապիկար եւ սուտ անուամբ։ Յորժամ մատ-
« չիք 'ի սուրբ զինման,
« անդ յիշեցէք զիս անարժանս՝ Թուին ՌՃ եւ մեռան։
« Ես Տէր Մարգիս աւագերէցս յիշեցէք 'ի Քրիս-
« տոս, Տէր Աբրահամկես եղբայրակաւն։

Կարծել թէ ժամանակ շինութեանն սոյն եկեղեցւոյ է թըւականն 1111, կամ 1115, ինձ ոչ լինի հաւանական, քանզի յիշատակ ճաշոցին պարզապէս յայտնի առնէ զժամանակն. եւ գրեալն 'ի նմին թէ « շինեաց մատառ եկեղեցին խուց եւ գրատուն », պարզ ապացոյց է հաստատութեան բանին նորա, քանզի կից եկեղեցւոյն կայ խուցն՝ յորում արդէն իսկ կայ նկատել Ամենափրկչեան Դպրոցի։

Եթէ շինութիւնն նորին եկեղեցւոյ՝ որպէս կարծիք են ոմանց, տուեալ լիցի Խօջայ Յակոբջանին՝ որ թաղեալ կայ 'ի հարաւային դրան մատրանն նորին եկեղեցւոյ, հակառակ ելանէ նոյն կարծեաց թուականն վախճանի նորա, որ է 1186, զի եթէ շինուածն եկեղեցւոյն իցէ 1063 թուականն՝ 123 ամօք զկնի այնր է վախճանն Խօջայ Յակոբջանի. եթէ կալցի շինու-

թիւն եկեղեցւոյն 'ի 1115 Թուականին, 71 ամօք զկնի լինի վախճանն նորա. որովք լինի հետեւեցուցանել թէ Խօջայ Յակոբջանն ոչ է շինող նոյն եկեղեցւոյ: Իսկ յաղագս լինելոյ նորա աւագամեծար իշխան՝ ընկալեալ զգերեզման իւր 'ի դասու մատրանն՝ որպէս անդ կան այլ և ս գերեզմանք ննջեցելոց: Երկրորդ ապացոյց, զի 'ի տապանաքարի նորին անալի կրկնաքանութեամբ երկարութիւն է բանին (        ) վասն լցուցանելոյ զերես տապանաքարին, յորմէ լինի հետեւեցուցանել զի եթէ իցէր նա շինող եկեղեցւոյ, անշուշտ յիշատակեալ լինէր այն բարեգործութիւն նորա 'ի շարս գովեստից նորին: Թուի ինձ թէ շինեցաւ այս եկեղեցի ծախիւք հասարակութեան ժողովրդոցն նորին, և յայն սակս չեղև յիշատակութիւն անուան շինողի այնր:

Ի հարաւային դրան ճակատու նորին կայ պատկեր Փրկութեան, և 'ի ներքոյ նորա գրեալ:

«Յիսուս խոնարհեալ՝ առ ծառայն եկեալ. Թիւն ՌՃՀա:

Եկեղեցին ունի վերնայարկ՝ վերնակ կոչեցեալ հասարակօրէն, որոյ 'ի ճակատուն գրեալ կայ «Յիշատակ է Յակոբջա-
«նին կողակից Նաշխունին, և որդի Սահրադին, Թիւն ՌՃկբ,
« դամայ 8»:

Կառուցեալ է այն 'ի վերայ չորից սեանց, որոյ երկայնութիւնն 'ի ստորոտէ սեղանոյն է 81, և լայնութիւնն 58 ոտնաչափ: Եկեղեցին սպիտակացեալ է բռով: Ի սեղանն 'ի դասն և 'ի ժողովրդատեղին կան միայն չորեքտասան պատկերք, յորոց ոմանց 'ի ներքոյ կան յիշատակարանք նկարողացն: Կան և պատկերատունք՝ յորս ոչ են նկարեալ տակաւին պատկերք: Ի սեղանն 'ի դասն և 'ի նմին ժողովրդատեղւոյ երեք կանգնաչափ կան յախճապակիք: Երեք դրունս են նորա, արևելեան՝ հիւսիսային և հարաւային:

Ունէր եկեղեցին զկախտուածս յառաստաղն և յորմունս, որ նորոգեցաւ 'ի 1848 ամի վերակացութեամբ Տէր Յովսէփ քարեշնորհ քահանայի Տէր Գրիգորեան, հանգանակու-

Թեամբ բարեպաշտ մերազնէից Հնդկաստանի ։

Ունին մատուռն 'ի հարաւային կողմն յանուն սուրբ Աստուածածնի շինեալ, որ չունի յիշատակ ժամանակի շինութեանն իւրոյ ։

Ի վերջոյ վէմ խորհրդանոցի նորին գրեալ կայ անուն շինողին ։

“ Շինեցաւ սուրբ եկեղեցիս 'ի սէրն սուրբ Աստուա-
“ ծածնի ընչիւք և արդեամբք Միրզաբէկին, Տէր
“ Յիսուս յիշեա 'ի քում արքայութեան բարեխօ-
“ սութեամբ ծնողի քո զՄիրզաբէկն և պապքն Տէր
“ Սարգիսն՝ և Մկրտիչն՝ և սոցին կողակիցքն Նուրմ-
“ հլը և Գուլնաբաթն, և զծնօղսն իւր Մկրտումն և
“ Թագուհի ։

Ի յիշատակարանի վերոյգրեալ Ճաշոցին գրէ զանուանս քահանայիցն նոյն եկեղեցւոյ եղելոյ 'ի նմին ժամանակի, որք են “ Տէր Պետրոս ալեօք ծերացեալ՝ և իմաստութեամբ՝ բա-
“ րի գործովք՝ և առաքինութեամբ զարդարեալ՝ դասավար
“ և աւագերէց․ Տէր Զաքարեայ՝ Տէր Մարտիրոս՝ Տէր Ա-
“ լէքսանոս՝ Տէր Սահակ՝ Տէր Միքայէլ՝ Տէր Աւետիս՝ Տէր
“ Խաչատուր՝ Տէր Մատթէոս՝ Տէր Հայրապետ՝ և Տէր Մա-
“ նուէլ” ։

## ԺԲ.

## ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ։

Ունի այս եկեղեցի յիշատակ շինութեանն իւրոյ գրեալ 'ի վերայ թղթոյ, որ հնացեալ և պատառեալ կայ, յորում յիշատակի թէ կառուցաւ այն յանուն սուրբ Աստուածածնի։

Այլ 'ի պատճառս աջոյն սրբոյն Յովհաննու որ նուիրեցաւ 'ի խօջայ Եղիազարէ, փոխանակ սուրբ Աստուածածնի՝ կոչեցաւ յանուն սուրբ Յովհաննու Մկրտչի։

" Ի թագաւորութեան պարսից Շահաբասին, 'ի հայրա-
" պետութեան Հայոց Տեառն Մովսէս կաթուղիկոսի, և ա-
" ռաջնորդութեան նորս Ջուղայու գեղաքաղաքին Տեառն
" Խաչատուր Վարդապետի, 'ի թվականութեանս Հայոց հազար
" (1621) հիմնարկեցաք զՏաճար Տէրունեան ամենօրհնեալ
" Տիրամայր սուրբ Աստուածածին, և զարդարեցաք ջահիւք
" և լապտերօք, և արարաք տեղի պատարագի և փառաբա-
" նութեան երկնաւոր թագաւորին, զոր և բազկատարած
" մաղթանօք հայցեմք առ միածին որդին զի հաստատուն և
" անշարժ պահեսցէ հաշտարար պատարագօք մինչ 'ի կա-
" տարած, 'ի վայելումն քահանայից և սարկաւագաց, հա-
" լածումն դիւաց, հերքումն թշնամեաց, փարատումն ցա-
" ւոց, բժշկութիւն հիւանդաց՝ առողջութիւն կենաց՝ 'ի քա-
" ւութիւն մեղաց՝ յերգս օրհնութեան եղանակաց՝ և քաղցր
" և քաղցրաձայն նուագարանաց և պաշտօնէից, նուէրքս
" պատարագաց 'ի հոտ անոյշ խնկոց 'ի պայծառութիւն կան-
" թեղաց և ջահից, զոր և Տէր Յիսուս իւր ամենազօր խնա-
" մօքն տայ վայելել որօք և յիշատակօք։ Եւս Աստուած
" Ամիրասաթէնց Եղիազարին հոգին լուսաւորէ, որ եւ մին

սուրբ աջ որ է սուրբ Յովհաննիսի , որ լինի օգնական ամենայն աշխարհի , ամէն :

« Արդ ով ընթերցող յիշեցէք զաղիթ նորոգման սորին , որ եմ տրուպ և նուաստ անուն անարժան Մինաս ժամարար . . . որ եմ որդի Տէր Յովհաննիսին , որ նորոգեցի 'ի թվին հայոց ՌՃԼԲ . 'ի փոքր թուին մին հարիւր երեսուն երկու , 'ի շամս ամսուն Ժ և Ը ումն : Ով հարք և եղբարք գրուս եւեւ պակասն ներումն շնորհեցէք և անմեղաւորիս լերուք » :

Խաչքար շրջանակ [illegible] [illegible] յեղափոխակս այս :

« Սուրբ խաչս յիշատակ է Տէր Արիստակիսին և ծը-
« նողացն Գրիգորին՝ Մարուհէ և քոյրին Եղսաբերին
« և կողակցին Նանաջանին թվին 1133 ( 1684 ) ամին :

Ի ճակատու խաչքարին Գրեալ կայ :

« Յաւիտենական յիշատակն արդարոց օրհնութեամբ
« եղիցի , թվին 1189 ( 1740 ) :

Կան քանի խաչքարինք որք ունին զթուական 1076 , 1083 : ( 1627 ) ( 1634 ) :

Ի ճակատու Վերնատան կամ վերնակին [illegible] Գրեալ կայ :

« Մահդեսի վաթանի որդի Խաղուլի 'ի թիվ 1142 :

Ի ճակատու արևելեան դրան Գրեալ կայ :

« Մաղթանօք սրբոյն Յովհաննու Տէր Յիսուս լեր
« պահապան Պարոն Յովհաննէս Քեալանթարին և
« կենակցին Մարիամին , և որդւոյն Զաքարին , եղև
« թվին 1180 ( 1731 ) դամայ 29 :

Ի վերոյ դրան դրոյն գրեալ կայ :

« Այս է դուռն կենաց և ճանապարհ յաւիտեան փրկու-
« թեան : Ձեռն քո արարին և ստեղծին զիս 'ի հողոյ
« դարձեալ ձեռամբդ քո կեցոյ 'ի կորստեանս ժամոյ
« Թվին փոքր 114, (1729) :

Վերոյգրեալ յիշատակարանք (որպէս յայտ է 'ի բուն յիշատակարանէ շինութեան եկեղեցւոյն) չեն յիշատակ ժամանակի շինութեան այնր, այլ միայն է յիշատակ խաչկալէն, միւս յիշատակ վերնակին, և գրեալն 'ի ճակատու դրանն է յիշատակ կրկին շինելոյ սեմոցն և դրան : Կառուցեալ է այն 'ի վերայ քառեակ սեանց, երկայնութիւնն 'ի ստորոտէ սեղանոյն է 53՝ և լայնութիւնն 56 ոտնաչափ : Չունի զպատկերանկարեալ յորմունս, այլ սպիտակացեալ է բռով :

Այս եկեղեցի պէտս ունի նորոգութեան, զի առաստաղն 'ի տեղիս տեղիս 'ի ժամանակս անձրևոց կաթեցուցանէ զջուր, և եկեղեցին կորուսեալ է զսպիտակութիւնն իւր, և 'ի տեղիս տեղիս սևացեալ է և մրոտեալ, յաղագս որոյ եղեն երիցս խնդրարկութիւն առ ժողովրդականսն նոյն եկեղեցւոյ՝ որք 'ի Հնդկաստան, մանաւանդ 'ի Ջաւայ, շնորհիւն Աստուծոյ առաջադէմ վաճառականք են (և եթէ կամիցին՝ կարօղ են պայծառացուցանել զայն վերստին նորոգութեամբ). այլ չեղև ուրեք մտադրութիւն սակս այնր խնդրոյ, թերևս ըստ չարախօսութեան ումանց անհաւատի կարծելով զհարկաւորութիւնն նորոգութեան եկեղեցւոյն, կամ թէ համարելով զի փոխանակ եկեղեցւոյ նորոգութեանն՝ նորոգեսցին քսակք նոցա՝ առ որս առաքեալ լիցի դրամն օգնականութեան : Այլ ես խոնարհ պաշտօնեայս սոյն եկեղեցւոյ կրկին անգամ հրապարակաւ մատուցանեմ զխնդիր իմ առ գերապատիւ համազգիսն մեր՝ առ ժողովրդականսն սոյն եկեղեցւոյ որք են 'ի Ջաւայ, զի բարեպաշտաբար արասցեն զմտադրութիւն յաղագս այնր խնդրոյ, սիրելով զպայծառութիւն Տանն Աստուծոյ յորում ծնան ինքեանք հոգևորապէս, զի պայծառութիւն

ինր  պատիւ է նոքեանց, եւ եթէ խորշեցին ՚ի վերոյգրեալ երկուց պատճառաց, վասն առաջնոյն հաւաստի առնեմ ի հարկաւոր է նորոգումն այնր, և յաղագս երկրորդին ասեմ թէ կարող են գտանել զհաւատարիմ ոք՝ եթէ կամիցին ի նորոգեացի եկեղեցին հայրենեաց իւրեանց ։

Ունի նա ՚ի հարաւային կողմն զեկեղեցի ամառան շինեալ յամի 1774 ։ Ի ճակատու նորա կայր յիշատակարան եկեղեցի շինողին, այլ ՚ի 1847 ամի եղեւ մանաւոր նորոգութիւն այսմիկ մատրան, վասն որոյ այն յիշատակագիր քակեալ անհետացաւ ։

Բազում ուխտաւորք լինին սոյն եկեղեցւոյ, և հիւանդք ոմանք եկեալ բնակին ՚ի խուցս նորա, յորոց ոմանք ըստ իւրեանց հաւատոյ ստանան զառողջութիւն ։ Յամի 1841 կառուցաւ զանգակատունն ծախիւք և արդեամբ Պարոն Պօղոսի Անդրէասեան որ է ՚ի ժողովրդոց նոյն եկեղեցւոյ և վաճառականութեամբ համբաւեալ ՚ի Ջուղայ, և ՚ի ժամանակէ անտի փոխանակ կոչնակի զանգն եղեւ հրաւիրօղ ժողովրդեանն ։ Յիշատակարան նորա յամի 1857 ոսկեգիր քանդակեալ զետեղեցաւ յորմն նոյն զանգակատան ՚ի յիշատակ բարեգործութեան շինողի նորին ։

ԺԳ.

## ՍՈՒՐԲ ՆԻԿՈՂԱՅՈՍ ՀԱՅՐԱՊԵՏ ։

Չունի յիշատակագիր թէ երբ կամ յումմէ շինեցաւ, այլ անուն նորա յիշատակի ՚ի շարս եկեղեցեաց ՚ի հատուկոտոր թուղթս որք ունին զթուական 1670, որով յայտ է թէ շի-

նութիւն նորա է նախ քան զամն 1670 ։ Զայն 'ի նմին քանի
խաչքարինք յորս կան թուականն ՌՂԹ ( 1630 )․ որով մարթ
է կարծել թէ շինեցաւ եկեղեցին այն կամ 'ի նմին 1630 ամի
կամ քանի ամօք նախ քան զայն ։ Իսկ թէ յումմէ կառուցա-
չիք տեղեկութիւն ինչ ։ Անուն նորա կոչի 'ի հին ձեռագիր-
սուրբ Աստուածածին․ իսկ այժմ կոչի սուրբ Նիկողայոս ։
Ի յիշատակարանէ մաշտոցի գրեալ 'ի Տէր Պետրոս Քահանայէ
նոյն եկեղեցւոյ յամի 1228 (——) յայտնի լինի թէ շինեցաւ
'ի նմին ամի Ա Ջ յորում եդեալ եղև մասն սրբոյն Նիկողայոսի,
վասն որոյ 'ի ժամանակէ անտի եկեղեցին կոչեցաւ յանուն
սրբոյն Նիկողայոսի ։

Այս է յիշատակարանն այն ։

" Ես և անթերի ծախիւք սրբոյ Նիկողայոսի մասն և
" Աջն շինել տուի հանդերձ մէկ պատիկ աւետարա-
" նաւ և երեք ձեռք զգեստուք ինն հաս ռանկին
" շապկով՝ մէկ մեծ արծաթ, ոսկեջրած սկինով և
" երեք սկնի աղլը խով յօժար կամօք ետու յիշա-
" տակի 'ի դուռն սրբոյ Աստուածածնի և սրբոյ Ստե-
" փաննոսի ( է այն մատուռն կամ եկեղեցի ամառան)
" անուամբ շինեալ հռչակապատում եկեղեցւոյ, որ
" է Դարաբեղէ " ։

Շինեալ է այն կամարակապ փոքր քան զամենայն եկեղե-
ցիս Ջուղայու 39 ոտնաչափ երկայնութիւն 'ի ստորոտէ սեղա-
նոյն, և 22 լայնութիւն է նորա․ սեղանն և առաջին դասն է
առանց պատկերաց․ իսկ ժողովրդարանն և կանանոցն ունի
պատկերս անհմուտ նկարչի ըստ պատկերացն որք երևին 'ի
հին եկեղեցիս ։

Սենի մատուռն կամ եկեղեցի ամառան շինեալ յամի 1774
յանուն սրբոյն Ստեփաննոսի որ համեմատութեամբ եկեղե-
ցւոյն՝ առաւել վայելչագէն է ։ Նորոգեցաւ այն մանաւորապէս
յամի (—) բարեպաշտ տրօք քերցն երկուց որք են 'ի բթա-

ւեալ, Տիկին Մարիամու Յակոբ Յարութիւնեան, և օրիորդ Թագուհւոյ Մանուկեան, վերատեսչութեամբ նորին եկեղեցւոյ Քահանայ Տէր Կարապետի Տէր Աւետեան :

Այս եկեղեցի գտանի յաղքատ դրութեան 'ի պատճառս սակաւութեան և աղքատութեան ժողովրդոց նոյն թաղի, և է առանց եկեղեցական պաշտօնէից, ուստի սակս միայնութեանն դժուարութիւն է քահանային նորա : Կառուցեալ կայ այն 'ի Թաղն Ղարագէլ :

## ԺԳ.

## ՍՈՒՐԲ ԱՒԵՏԵԱՑ ԿԱՄ ՍՈՒՐԲ ՆԵՐՍԷՍ

Այս եկեղեցի որ կառուցեալ է 'ի Թաղն Քօչերայ, չունի յինքեան որոշ յիշատակագիր թէ երբ կամ յումմէ կառուցաւ : Այլ 'ի կոնդակէ Աղէքսանդր կաթուղիկոսի, 'ի Թուականի Հայոց ՌՃԿԱ (1712) 'ի 4 մարտի գրեալ առ Ջուղայեցիս 'ի պատճառս չհաս ամուսնութեանց, քաղի յետագայ ծանօթութիւնն :

« Ի ժամանակս մեր քառասուն և վեց ամ է, լսենք Մելիասարն իւր որդի Ստեփաննին կինն մեռաւ, այն ժամանակն Ստեփաննն այլ ձախ չէր ճանաչեր, հայրն աղայ (կոյս) աղջիկ տարաւ տղայիս, լուսաւոր հոգի վարդապետքն բանիւ արարին, յետ զղջման և դառնալոյն բազում միջնորդս ձգեաց, և յանձն էառ շինել զԳաղզեցոց եկեղեցին, զոր և շինեաց իսկ, ապա արձակեցին : Նա և Գիլանէնց Աւետիքն Արբաքէնց Աղէքջանին տարաւ, մէկ հարցուցէք թէ

« որչափ էր նորա չհասութիւնն, քանզի արարին գաւառա-
« պատու եկեղեցին շինեաց, այլ արձակեցաւ ,, ։

Գաւառապատու եկեղեցին է սոյն Աւետեաց կամ սուրբ Ներսէս եկեղեցին, զի թաղն փոքր կոչիւր և Գաւառապատ, որպէս ցուցաք յիւրում տեղւոջ ։ Արդ 'ի բանից սորա մարթ է առնուլ թէ եկեղեցին այն շինեցաւ (քառասուն և վեց ամօք նախ քան զթուականն Հայոց (1162) յամի 1116, (1666)· 'ի Գիլանէնց Աւետաքէ, 'ի քաւել զմեղս չհաս ամուսնութեանն իւրոյ ։

Ի հին ձեռագիրս 'ի բազում տեղիս կոչի այն եկեղեցի Աւետեանց, առեալ զայն անուն յանուանէ շինողի նորա, զի կայր 'ի Ջուղայ սովորութիւն այնպիսի, զի ոմանք շինողք եկեղեցեաց յիւրեանց անուն կոչէին զայն ։ Իսկ յետ տանելոյ յայն եկեղեցի զԱջն մասանց սրբոյն Ներսիսի մեծի, կոչեցաւ յանուն սրբոյն Ներսիսի ։

Ի ճակատու հարաւային դրան Գրեալ կայ յետագայ յիշատակարանն ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս Ուստայ Շուքուրն և իւր
« կողակից Մարգարիտն, որդիքն Միրզախանն, Սա-
« րուխանն՝ Ալլահն՝ Դստերքն Ռօկին, Նուրիխանն ։
« Դարձեալ յիշեցէք 'ի Քրիստոս Ուստայ Ալլահն,
« կողակիցն Վարթխաթունն, որդիքն Հերապետն՝
« Կարապետն՝ Յակոբն՝ Ուղիւէն՝ Հարանկրին ։ Թիւ
« ՌՃԺԹ (1670) ։

Ըստ իմոյ դիտողութեան այդ յիշատակարան է շինողացն քարեայ սեմոց և վերնախարսխի նոյն դրան, զի ըստ որում բնակիչք նոյն թաղի էին քարագործք, վասն որոյ Ուստայ Շուքուրն և Ուստայ Ալլահն շինելով 'ի քարէ զսեամս և զվերնախարիսխ այնր դրան և ծաղկանց քանդակօք գեղեցկացուցանելով զայն, գրեցին զյիշատակ իւրեանց ։

Ի յիշատակարանէ աստի հաստատի եղեալն մեր թէ շինեցաւ եկեղեցին այն յամի 1116, զի մինչև լցաւ շինութիւն

եկեղեցւոյն յընթացս չորից ամաց, ձգեցան վերնախարիսխն քարեայ և սեամքն յամի 1120։

Երկայնութիւն նորա է 62, և լայնութիւնն 35 ոտնաչափ։ Երկայնութիւնն չափի 'ի ստորոտոյ սեղանոյն։ Չունի զնկարս պատկերաց կամ ծաղկանց, այլ միայն սեղանն ունի զքանի խաչկարհեստ պատկերս։ Նորոգեցաւ այն և 'ի հարաւային կողմն ձգեցաւ սենեակ և խուց յամի(—)։ Կան 'ի պարսպի այնր գերեզմանունք Վրացւոց, որք թաղեցան անդր 'ի ժամանակս քեալանթար Սարգսի՝ որոյ թերևս լեալ են ծառայք։

## ԺԱ.

## ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԿԱՄ ՍՈՒՐԲ ՄԻՆԱՍ։

Ի ներքնակամար գմբեթին շուրջանակի կայ գրեալ յիշատակարան շինութեանն նորա՝ ըստ այսմ օրինակի,

" Արդ եղև սկիզբն շինութեան և հիմնարկութեան
" սուրբ եկեղեցւոյս (որ ըստ) անուն սրբոյն Գրի-
" գորի Լուսաւորչին 'ի թուականութեան հայասե-
" ռին 1108 (     ) ամի 'ի թագաւորութեան Շահ-
" աբաս սանի (երկրորդի) և 'ի հայրապետութեան
" Տեառն Յակոբայ սուրբ Աթոռոյն Էջմիածնի, և
" յառաջնորդութեան Ջուղայոյ և մերոյ նահանգիս
" Դաւթի արհի եպիսկոպոսի, և աջողութեամբն
" Աստուծոյ և առաջնորդութեամբ սուրբ հոգւոյն,
" և միաբանութեամբ սուրբ Գրիգորի եկեղեցւոյ
" ժողովրդեանս Թավրիզեցւոց և Նախիջևանցւոցն
" կատարեցաւ շինուած սուրբ եկեղեցւոյս, թվին

" 1112 ամէն ։ Զոր և Տէրն Քրիստոս իւր ամենա-
" զօր խնամօքն տացէ վայելել մինչ 'ի գալուստն իւր,
" ամէն ։ Զոր և բազում չանիւք և աշխատութեամբ
" շինեցաք սուրբ զեկեղեցիս „ ։

Ի յիշատակարանէ աստի յայտնի լինի թէ շինեցաւ եկեղե-ցին այն հանգամանակութեամբ ժողովրդեանն նոյն թաղի ։ Այլ որոց առաւելեալ են սուրբ 'ի նպաստ շինութեանն, գրեալ կան յիշատակք նոցա 'ի վեց ուրոյն խորանս, փոքր մի 'ի վե-րոյ քան զվերոյգրեալ յիշատակարանն ։

Խորան առաջին ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զխօջայ Աւետ և զաւագ եղ-
" բայր Գիլանշին և Միքայելն, և զծնօղսն և զորդիսն
" և զամենայն մերձաւոր աշխատողս 'ի վերայ եկեղե-
" ցւոյս յիշեցէք առ Աստուած „ ։

Խորան երկրորդ ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զխօջայ Աղազարն, և զծը-
" նօղսն Մանուկն և զՄարիամն, և հանգուցեալ որ-
" դին Ալեքսէն, և Նորաքաղքօջ Մանուկն և զկենա-
" կից բատուենն, որ ետուն զսուրբ կաթուղիկէն
" ծածկել, յիշեցէք առ Աստուած „ ։

Խորան երրորդ ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զՏէր Սարգիսն՝ զՏէր Յով-
" սէփն՝ զՏէր Բարսեղն, և զՏէր Ներսէսն Սարկա-
" ւագունսն և զԴպիրսն և զմանկունս յիշեցէք առ
" Աստուած ողորմի ասացէք „ ։

" 1112 ամէն ։ Զոր և Տէրն Քրիստոս իւր ամենա-
" զօր խնամօքն տացէ վայելել մինչ 'ի գալուստն իւր,
" ամէն ։ Զոր և բազում ձանիւք և աշխատութեամբ
" շինեցաք սուրբ զեկեղեցիս ,, ։

Ի յիշատակարանէ աստի յայտնի լինի թէ շինեցաւ եկեղեցին այն հանգանակութեամբ ժողովրդեանն նոյն թաղի ։ Այլ որոց առաւելեալ են տուրք 'ի նպաստ շինութեանն, գրեալ կան յիշատակք նոցա 'ի վերայ ուրոյն խորանս, փոքր մի 'ի վերոյ քան զվերոյգրեալ յիշատակարանն ։

Խորան առաջին ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զխօջայ Աւետ և զաւագ եղ-
" բայր Գիլանշին և Միքայէլն, և զծնօղս և զորդիսն
" և զամենայն մերձաւոր աշխատողս 'ի վերայ եկեղե-
" ցւոյս յիշեցէք առ Աստուած ,, ։

Խորան երկրորդ ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զխօջայ Աղազարն, և զծը-
" նօղսն Մանուկն և զՄարիամն, և հանգուցեալ որ-
" դին Ալիքչէն, և նորաբողբոջ Մանուկն և զկենա-
" կից բատուննն, որ ետուն զտուրս կաթուղիկէն
" ծածկել, յիշեցէք առ Աստուած ,, ։

Խորան երրորդ ։

" Յիշեցէք 'ի Քրիստոս զՏէր Սարգիսն՝ զՏէր Յով-
" սէփն՝ զՏէր Բարսեղն, և զՏէր Ներսէսն Սարկա-
" ւագունսն և զԴպիրսն և զմանկունս յիշեցէք առ
" Աստուած ողորմի տացէք ,, ։

…ՈՐԱՆ ՉՈՐՐՈՐԴ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զշինօղս սուրբ եկեղեցւոյս
« զվարպետ Թորոսն՝ զՄկրտիչն՝ զՍարգիսն՝ եւ զԴա-
« ւիթն՝ եւ զաշակերտաւնս նոցին եւ զաշխատաւորսն
« զեօղնս, յիշեցէք առ Աստուած, ողորմի տա-
« ցէք »։

ԽՈՐԱՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զմահճի Աղանին եւ զծնօղս ըզ-
« Մարտիրոսն՝ զխանբէգին՝ եւ զկենակիցն իւր Հո-
« ռոմսիմէն, որ զ3 խորանն ծածկեաց, եւ զ2 դու-
« քանն վախմ ետ սուրբ եկեղեցւոյս. յիշեցէք առ
« Աստուած ողորմի »։

ԽՈՐԱՆ ՎԵՑԵՐՈՐԴ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՊարոն Ջէյնին եւ զծնօղս
« Շամիրայ եւ Վալին եւ զեղբարքն Ապլաթն զԴաւիթ
« եւ կենակից Մարիամն եւ զորդին Խաչխանն, Ջիպի-
« ամէն որ ետուն զսուրբ կաթուղիկէն գաճել եւ
« ծաղկել. յիշատակ հանգուցելոցն, յիշեցէք առ
« Աստուած ողորմեա »։

Ի ՎԵՐԱՅ [illegible] [illegible] ՍԵՂԱՆՈՅՆ ԳՐԵԱԼ ԷՐ ։

« Յիշեցէք 'ի Քրիստոս զՊարոն Ջէյնին, եւ զծնօղսն
« զՇմաւոն եւ Վալին, եւ զհանգուցեալ եղբարսն Հրմզն՝
« եւ Մըրզաջէն եւ միւս եղբարսն (ոչ կենդանի եղեւ ալ-
« սըն) Ալլահաթն, եւ զԴաւութն, եւ որդիքն Խա-
« չխանն եւ դուստրն Ջիրիդէն, եւ կենակիցն Մա-
« րիամն, Թուին 1115 (      ) »։

նութիւն նորա է նախ քան զամն 1670 ։ Կան 'ի նմա քանի խաչքարինք յորս կան թուականք ՌՀԹ ( 1630 )․ որով մարթ է կարծել թէ շինեցաւ եկեղեցին այն կամ 'ի նմին 1630 ամի, կամ քանի ամօք նախ քան զայն ։ Իսկ թէ յումմէ կառուցաւ չիք տեղեկութիւն ինչ ։ Անուն նորա կոչի 'ի հին ձեռագիրս սուրբ Աստուածածին․ իսկ այժմ կոչի սուրբ Նիկողայոս ։ Ի յիշատակարանէ մաշտոցի գրեալ 'ի Տէր Պետրոս Քահանայէ նոյն եկեղեցւոյ յամի 1228 (———) յայտնի լինի թէ շինեցաւ 'ի նմին ամի ԱՋ յորում եդեալ եղև մասն սրբոյն Նիկողայոսի, վասն որոյ 'ի ժամանակէ անտի եկեղեցին կոչեցաւ յանուն սրբոյն Նիկողայոսի ։

Այս է յիշատակարանն այն ։

“ Մի և անթերի ծախիւք սրբոյ Նիկողայոսի մասն և
“ Աջն շինել տուի հանդերձ մէկ պատիկ աւետարա-
“ նաւ և երեք ձեռք զգեստուք ինձ հաւատանկին
“ շապկով մէկ մեծ արծաթ, ոսկեջրած սկինով և
“ երեք սկնի աղլըխով յօժար կամօք եւտու յիշա-
“ տակի 'ի դուռն սրբոյ Աստուածածնի և սրբոյ Ստե-
“ փաննոսի ( է այն մատուռն կամ եկեղեցի ամառան)
“ անուամբ շինեալ հռչակապատում եկեղեցւոյ, որ
“ է Դարադեղի ” ։

Շինեալ է այն կամարակապ փոքր քան զամենայն եկեղեցիս Ջուղայու 39 ոտնաչափ երկայնութիւն 'ի ստորոտէ սեղանոյն․ և 22 լայնութիւն է նորա․ սեղանն և առաջին դասն է առանց պատկերաց․ իսկ ժողովրդարանն և կանանցն ունի պատկերս անհմուտ նկարչի ըստ պատկերացն որք երևին 'ի հին եկեղեցիս ։

Սոյն մատուռն կամ եկեղեցի ամառան շինեալ յամի 1774 յանուն սրբոյն Ստեփաննոսի որ համեմատութեամբ եկեղեցւոյն' առաւել վայելչաշէն է ։ Նորոգեցաւ այն մանաւորապէս յամի (—) բարեպաշտ տրօք քերցն երկուց որք են 'ի բթա

ւեայ. Տիկին Մարիամու Յակոբ Յարութիւնեան, և որդւոյ Շապուհւոյ Մանուկեան. վերատեսչութեամբ նորին եկեղեցւոյ Քահանայ Տէր Նահապետի Տէր Աւետեան:

Այս եկեղեցի գտանի յաղքատ դրութեան 'ի պատճառս սակաւութեան և աղքատութեան ժողովրդոց նորին թաղի, և է առանց եկեղեցական պաշտօնէից, ուստի սակս միայնութեանն դժուարութիւն է քահանային նորա: Կառուցեալ կայ այն 'ի թաղն Ղարադէլ:

## ԺԴ.

## ՍՈՒՐԲ ԱՒԵՏԵԱՑ ԿԱՄ ՍՈՒՐԲ ՆԵՐՍԵՍ

Այն եկեղեցի որ կառուցեալ է 'ի թաղն Քօշէրայ. չունի յինքեան որոշ յիշատակագիր թէ երբ կամ յումմէ կառուցաւ: Այլ 'ի կոնդակէ Աղէքսանդր կաթուղիկոսի, 'ի թուականի Հայոց ՌՃԿԱ (1712) 'ի 4 մարտի գրեալ առ Ջուղայեցիս 'ի պատճառս չհաս ամուսնութեանց, քաղի յետագայ ծանօթութիւնն:

“ Ի ժամանակս մեր քառասուն և վեց ամ է, լսնիկ Մխա-
“ թարն իւր որդի Ստեփաննին կինն մեռաւ, այն ժամանակն
“ Ստեփանն այլ ձախս չէր ճանաչեր, հայրն աղայ (կոյս)
“ աղջիկ տարաւ տղային, ըստ աւուր հոգի վարդապետքն բա-
“ նիւ տարարին, յետ զղջման և դառնալոյն բազում մխիթարդս
“ ձգեաց, և յանձն էառ շինել զԳաղզեցոց եկեղեցին, զոր
“ և շինեաց իսկ, ապա արձակեցին: Նա և Գիլանեցոց Աւե-
“ տիքն Աբրաբէնց Ալեքճանին տարաւ, մէկ հարցուցէք թէ

« որչափ էր նորա չհասութիւնն, բանիւ արարին գաւառ-
« պատու եկեղեցին շինեաց, ապա արձակեցաւ »:

Գաւառապատու եկեղեցին է սոյն Աւետեաց կամ սուրբ Ներսէս եկեղեցին, զի Թաղն Քօչէր կոչիւր և Գաւառապատ, որպէս ցուցաք յիւրում տեղւոջ։ Արդ 'ի բանից աստի մարթ է առնուլ թէ եկեղեցին այն շինեցաւ (քառասուն և վեց ամօք նախ քան զԹուականն Հայոց (1162) յամի 1116, (1666)· 'ի Գիլանէնց Աւետիքէ, 'ի քաւել զմեղս չհաս ամուսնութեանն իւրոյ։

Ի հին ձեռագիրս 'ի բազում տեղիս կոչի այն եկեղեցի Աւետեանց, առեալ զայն անուն յանուանէ շինողի նորա, զի կայր 'ի Ջուղայ սովորութիւն այնպիսի, զի ոմանք շինողք եկեղեցեաց յիւրեանց անուն կոչէին զայն։ Իսկ յետ տանելոյ յայն եկեղեցի զԱջն մասանց սրբոյն Ներսիսի մեծի, կոչեցաւ յանուն սրբոյն Ներսիսի։

Ի ճակատու հարաւային դրան գրեալ կայ յետագայ յիշատակարանն :

« Յիշեցէք 'ի Քրիստոս Աստուծոյ Շուքուրն և իւր
« կողակից Մարգարիտն, որդիքն Միրզախանն, Սա-
« րուխանն՝ Աղլանն՝ Դստերքն Ոսկին, Նուրիխանն:
« Դարձեալ յիշեցէք 'ի Քրիստոս Աստուծոյ Աղլանն,
« կողակիցն Վարթխաթունն, որդիքն Հերապետն՝
« Եարապետն՝ Յակոբն՝ Ուղուբէկն՝ Հարսներին : Թիվն
« ՌՃԺԹ (1670) :

Ըստ իմոյ դիտողութեան այդ յիշատակարան է շինողացն քարեայ սեմոց և վերնախարսխի նոյն դրան, զի ըստ որում բնակիչք նոյն թաղի էին քարագործք, վասն որոյ ուստայ Շուքուրն և ուստայ Աղլանն շինելով 'ի քարէ զսեամս և զվերնախարիսխ այնր դրան և ծաղկանց քանդակօք գեղեցկացուցանելով զայն, գրեցին զյիշատակ իւրեանց։

Ի յիշատակարանէ աստի հաստատի եղեալն մեր թէ շինեցաւ եկեղեցին այն յամի 1116, զի մինչև լցացաւ շինութիւն

եկեղեցւոյն յընթացս չորից ամաց, ձգեցան վերնախարիսխն քարեայ և սեամքն յամի 1120։

Երկայնութիւն նորա է 62, և լայնութիւնն 35 ոտնաչափ։ Երկայնութիւնն չափի 'ի ստորոտոյ սեղանոյն։ Չունի ընկարս պատկերաց կամ ծաղկանց, այլ միայն սեղանն ունի զքանի խաչկարհեստ պատկերս։ Նորոգեցաւ այն և 'ի հարաւային կողմն ձգեցաւ սենեակ և խուց յամի (—)։ Կան 'ի պարսպի այնր գերեզմանք Վրացւոց, որք թաղեցան անդր 'ի ժամանակս քեալանթար Սարգսի՝ որոյ թերևս լեալ են ծառայք։

## ԺՆ.

## ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԿԱՄ ՍՈՒՐԲ ՄԻՆԱՍ։

Ի ներքնակամար գմբեթին շուրջանակի կայ գրեալ յիշատակարան շինութեանն նորա՝ ըստ այսմ օրինակի,

“ Արդ եղև սկիզբն շինութեան և հիմնարկութեան
“ սուրբ եկեղեցւոյս (որ ըստ) անուն սրբոյն Գրի-
“ գորի Լուսաւորչին 'ի թուականութեան հայասե-
“ ռիս 1108 (     ) ամի 'ի թագաւորութեան Շահ-
“ աբաս սանի (երկրորդի) և 'ի հայրապետութեան
“ Տեառն Յակոբայ սուրբ Աթոռոյն Էջմիածնի, և
“ յառաջնորդութեան Ջուղայոյ և մերոյ նահանգիս
“ Դաւթի արհի եպիսկոպոսի, և աջողութեամբն
“ Աստուծոյ և առաջնորդութեամբ սուրբ հոգւոյն,
“ և միաբանութեամբ սուրբ Գրիգորի եկեղեցւոյ
“ ժողովրդեանս Թավրիզեցւոց և Նախիջևանցւոցն
“ կատարեցաւ շինուած սուրբ եկեղեցւոյս, թվին

« 1112 ամէն ։ Զոր և Տէրն Քրիստոս իւր ամենա-
« զօր խնամօքն տացէ վայելել մինչ ՚ի գալուստն իւր,
« ամէն ։ Զոր և բազում ջանիւք և աշխատութեամբ
« շինեցաք սուրբ զեկեղեցիս ,, ։

Ի յիշատակարանէ աստի յայտնի լինի թէ շինեցաւ եկեղեցին այն հանգամանակութեամբ ժողովրդեանն նորին թաղի ։ Այլ որոց առաւելեալ են սուրբ ՚ի նպաստ շինութեանն, գրեալ կան յիշատակք նոցա ՚ի վերայ ուրոյն խորանս, փոքր մի ՚ի վերոյ քան զվերոյգրեալ յիշատակարանն ։

Խորան առաջին ։

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զխօջայ Աւետ և զաւագ եղ-
« բայր Պիլանշին և Միքայէլն, և զծնօղս և զորդիս
« և զամենայն մերձաւոր աշխատողս ՚ի վերայ եկեղե-
« ցւոյս յիշեցէք առ Աստուած ,, ։

Խորան երկրորդ ։

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զխօջայ Աղազարն, և զծը-
« նօղսն Մանուկն և զՄարիամն, և հանգուցեալ որ-
« դին Ալիդէն, և նորաբողբոջ Մանուկն և զկենա-
« կից բատուլնն, որ ետուն զսուրբ կաթուղիկէն
« ծածկել, յիշեցէք առ Աստուած ,, ։

Խորան երրորդ ։

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զՏէր Սարգիսն՝ զՏէր Յով-
« սէփն՝ զՏէր Բարսեղն, և զՏէր Ներսէսն Մարկա-
« ւագունան և զԴավիթն և զմանկունս յիշեցէք առ
« Աստուած ողորմի ասացէք ,, ։

Խորան չորրորդ :

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զշինօղս սուրբ եկեղեցւոյս
« զվարդապետ Թորոսն՝ զՄկրտիչն՝ զՍարգիսն՝ և զԴա-
« ւիթն՝ և զաշակերտունս նոցին և զաշխատաւորսն
« զեօղին , յիշեցէք առ Աստուած , ողորմի տաս-
« ցէք » :

Խորան հինգերորդ :

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զմահսի Աղանն և զծնօղս ըզ-
« Մարտիրոսն՝ զԽանբէգին՝ և զկենակիցն իւր Հո-
« ռոմսիմէն , որ զ3 խորանն ծածկեաց , և զ2 դու-
« քանն վախմ ետ սուրբ եկեղեցւոյս ․ յիշեցէք առ
« Աստուած ողորմի » :

Խորան վեցերորդ :

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զՊարոն Ջէյնին և զծնօղս
« Շամինայ և Վալին և զեղբարքն Ապլաթն զԴաւիթ
« և կենակից Մարիամն և զորդին Իսախանն , Ջիպի-
« տէն որ ետուն զսուրբ կաթուղիկէն գաճել և
« ծաղկել յիշատակ հանգուցելոցն , յիշեցէք առ
« Աստուած ողորմեա » :

Ի վերայ ստորոտոյ որբոյ [illegible] [illegible] է այս :

« Յիշեցէք ՚ի Քրիստոս զՊարոն Ջէյնին , և զծնօղսն
« զՇամամն և Վալին , և զհանգուցեալ եղբարսն Հոմզն՝
« և Մրքջանն և միւս եղբարսն ( ՚ի կենդանի եղեալ-
« սըն ) Աբլահաթն , և զԴաւութն , և որդիքն Ի-
« սախանն և դուստրն Ջիբիլէն , և կենակիցն Մա-
« րիամն , Թւին 1115 (       ) » :

Ժողովուրդք սոյն եկեղեցւոյ կամ որ նոյն է բնակիչք Թաղին Գաւրիժոյ էին նոյն ժողովուրդք զորս առաջին Շահաբաս արքայ բնակեցոյց 'ի Շամսապատ, իսկ յետ տեղափոխութեանն որ եղև հրամանաւ Շահաբասայ երկրորդի յամի հայոց 1105, զաղթեցաննոքա յայն Թաղ, և յամի 1108 հիմնարկեցին զայն եկեղեցի ։

Ի սոյն եկեղեցւոջ կայ յիշատակագիր շինութեանն եկեղեցւոյն 'ի Շամսապատ Թաղի. ('որոյ անունն լեալ է սուրբ Աստուածածին) գրեալ 'ի վերայ Թղթոյ գալարածոյ (որ կպրիանոս կոչի) յորում կան անուանք յիշատակաւորաց եկեղեցւոյն կառուցելոյ 'ի Շամսապատ ։ Զունի թուական ։ Իսկ մինչ զաղթեցան յայն Թաղ. և կառուցին զնոր եկեղեցին, գրեցին դարձեալ 'ի միւս կողմն նոյն Թղթոյ զանուանս յիշատակաւորաց նորին եկեղեցւոյ ։

Երկարաբանութիւն ոչ համարեմ 'ի յիշատակագրոյ անտի յառաջ բերել զհարկաւոր ծանօթութիւնս, որով առաւել պարզութիւն ստանայ պատմութեանն շարունակութիւն ։

Մեծ յիշատակաւորք նորին եկեղեցւոյ լուսաւորչի՝ են տոհմն Աղազարեանց և Շմաւեանց ։

Գրի 'ի յիշատակագրին այսմիկ " Աստուած օրհնէ Շմաւոն
" օրդիքն, զՊարոն Զէյնէն, Արլահաթն, Դաւութն և զոր-
" դին Իսախանն, որ ետուն Բ. շուրջառ, Բ. ուրար, Բ.
" բազպան, Բ. շապիկ, Բ. սաղաւարտ իւր խաչովն, Ա.
" զունար, Գ. բօղչայ, Ա. մեծ վարագոյր, Ա. խաչկալ, Ա.
" ճաշուգիրք, Ա. ոսկի սուրբ նշան, Ա. ջահ, Զ. մոմդան
" պատի, Բ. մեծ սուրահի շամդան, Ա. պղնձէ պատկեր,
" Ա. մեծ խաչ, Ա. Թավլան փանջարայ, ԺԵ. Թուման ե-
" կեղեցւոյ շինելոյ նաղդ փող, Ա. ալուխ, սուրբ խորանի
" ծածկելոյ եկեղեցին բովանդակ ծածկելէ իէ Թուման, Ա.
" խալիչայ ։ Երկու կարմունջ կապեց Մարֆրազի բազարգա-
" հումն, Ա. կարմունջ, Աւետէնց բազարգահումն ,, ։ Աստ-
" ուած ողորմի Խօջայ Մանուկին՝ Աստուած օրհնէ իւր որ-
" դի Աղազարին որ ետ Է. Թուման կաթուղիկէն ծածկելէ ,, ։
" Դարձեալ, " Աստուած օրհնէ Պարոն Աղազարին և իւր կո-

ղանկից Բաստրին, և որդիքն Աղայ Մանուկն Աղայ Սաֆարն,
« որ ետուն յիշատակի սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյն, ա. զառ
« Թիրվանդայ շուրջառ, ա. զառ սաղաւարտ իւր խաչովն,
« ա. քաշած զառ ուրար, ա. Ջուխտ զառ բազբանդ, ա.
« շապիկ, ա. զառ աղլուխ, սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյ
« մուհաջարն քաշէց, վերնատուն շինէց . . . Աստուած
« որհնէ Պարոն Աղազարն, կողակիցն Բաէլին և զվարդինին,
« և զորդիքն Մանուկ և զՍաֆարն, որ ետ եկեղեցւոյն ա.
« մեծ դիվանի խալի, ա. բանաֆշ ատլաս նաշի ծածկոց.
« է. պղնձէ պատկեր, ա. չիթ սուզանի . . . . Մի բեմի
« ծածկոց. մի արծաթէ բխորւան . . . մի խաքի խալիլայ
« զառ շուրջառ, մի չլնիմաչինի զառ ուրար ա. Ջուխտ
« բազբանդ, ա. զունար, ա. Չերմակ զառ փակաս, ա. շա-
« պիկ և սարկաւագի քաշած կարմիր զառ ուրար, ա. բաս-
« մայ Աւետարան երկու երեան արծաթէ կոստղած, է. քա-
« թան աղլուխ »:

Եկեղեցին է կառուցեալ 'ի վերայ չորից սեանց. երկայնութիւնն 'ի ստորոտոյ սեղանոյն է 65 և լայնութիւնն 52 ոտնաչափ: Սեղանն՝ դասն՝ ժողովրդատեղին և առաստաղքնոցա են պատկերազարդ և ծաղկազարդ:

Ունի փոքրիկ զանգատուն կառուցեալ 'ի վերայ առաստաղի եկեղեցւոյն, և ունի զմի զոյգ քաղցրաձայնչիւն զանգ, որ ըստ աւանդութեան ծերոց տուեալ է 'ի տոհմայնոց Խօջայ Աղազարի:

Իբրև երեսուն ամօք նախ քան զԹուականն 1857, եղև նորոգութիւն նոյն եկեղեցւոյ արդեամբ Աղայ Յովսէփայ Ամիրեան որ 'ի Սմարանդ էր երևելի մեծատուն: Իսկ 'ի 1853 ամի ևս եղև կրկին վերանորոգումն, արդեամբ Պարոն Մարգարայ Սուքիասեան և Պարոն Եղիազարու Գ. Գասպարեան, որք են 'ի ժողովրդոց նոյն եկեղեցւոյ՝ այժմ 'ի Ջաւայ 'ի Տէրութեան Հոլանդացւոց:

Այս եկեղեցի նախ քան զամն 1850 չէր այնչափ համբաւաւոր ըստ եկեղեցական զարդուց կամ բարեկարգութեան: Իսկ 'ի յառաջադէմն նկրտիլ Տէր Մարտիրոս Տէր Յովակիմեան

Քահանայի նոյն եկեղեցւոյ, ըստ վայելչութեան մտաւոր առաջադիմութիւն ստացաւ և սոյն եկեղեցի:

Սոյն այս Տէր Մարտիրոս Քահանայ (որ ընկալաւ զաստիճան քահանայութեան 'ի 1843 ամի) վիճակաւորեալ յամի 1845 Կալկաթայ քաղաքին Հնդկաստանի, բարեջան յորդորանօք իւրով ընկալաւ 'ի ժողովրդոց նոյն եկեղեցւոյ եղելոց 'ի Հնդկաստան և 'ի Ջուղայ զբազում յիշատակս որք էին արծաթի սպասք և թանկագին կերպասեայ զգեստք, և նոքօք 'ի 1850 ամի 'ի վերադարձման իւր 'ի Ջուղայ ճոխացոյց զեկեղեցին: Արժանի յիշատակաց անուանք յիշատակի տուողացն են այսոքիկ, Գարոնայք Մարգար, Դաւիթ և Բեթղահէմ եղբարք Աւքիմեան, Եղիազար Գ. Գասպարեան, Մանուկ Ջօրաբեան, և այլք ամենք: Յամի 1852, դարձեալ ըստ խնդրոյ նոյն բարեմիտ Տէր Մարտիրոս Քահանայի, և արդեամբ քերցն բարեպաշտից եղելոց 'ի Բթաւիայ Տիկին Մարիամու Յակոբ Յարութիւնեան, և օրիորդ Թագուհւոյ Մանուկեան տարածեցան նոր սփռոցք 'ի մէջ եկեղեցւոյն:

Նորոգութիւնն որ եղև յամի 1853, եղև նոյնպէս ըստ յորդորանաց նոյն Քահանայի:

Սկսեալ 'ի 1851 տարւոյ յետ կարգ և կանոն հաստատելոյ Սրբազան Թադդէոս արք եպիսկոպոս ներկայ Առաջնորդի, և կարգելոյ զերեցփոխանս վասն իւրաքանչիւր եկեղեցեաց. այս եկեղեցի շնորհիւն Աստուծոյ որ ըստ օրէ ստացաւ առաջադիմութիւն ըստ արդեանց մասին, և յընթացս միջավայ ժամանակի, ազատ յամենայն մեծամեծ ծախսարարութեանց. հաշիւ եկեղեցւոյն ունի արդ զդրամագլուխ ինչ, ոչ շատ ճոխ և ոչ շատ մանաւոր, և սա է այժմ ճոխն 'ի մէջ եկեղեցեաց Ջուղայու:

Նոյն ճոխանալոյն ըստ գոյից, վայելչացաւ և ըստ հոգևոր բարեկարգութեանց, սահմանադրեալ կարգօք Սրբազան Թադդէոս Արք եպիսկոպոս Առաջնորդի, և բարւօք սպասաւորութեամբ Տէր Մարտիրոս Քահանայի:

Սոյն եկեղեցի ամառան, որում չիք յիշատակագիր ինչ, բաց 'ի խաչկալէն որում այս է յիշատակարան:

" Յիշատակ է Հերումի Որդի Պարոն Սարգսին, և
" կողակցին Գուլաղին, և իւրեանց ծնողացն, Թւին
" ՌՃԿԲ շամն Ի ,, :

Իսկ Գերեզման շինողին նոյն մատրան կայ 'ի դրան նորին, որոյ այս է տապանագիր :

" Այս տապանս է առն բարեպաշտի,
Սարգսիս անուն վաճառականի,
Որդի գոլով սա Հերումի,
տեղեաւն գոլով սա Դաշտեցի,
շինօղ մատրանս և պարսպի,
որք հանդիպիք յայս սուրբ տեղի,
լի բերանով տուք ողորմի,
հանգեաւ սա 'ի Թւին ՌՃԿԲ ,, :

Ի գաւիթ սորա կայ Դպրոցն անուանեալ սուրբ Մինաս՝ որ սկզբնաւորեցաւ յամի 1853, այլ նախ քան զայն ևս եղեալ է անդ ընդ ժամանակս ժամանակս դպրոց և դասատուութիւն :

Ի սմին եկեղեցւոջ կայ ձեռագիր Աւետարան մի որոյ վերջին Թերթք ի̃ Աւետարանն որ ըստ Յովհաննու պակասի, ուստի և չունի յիշատակարան կամ պԹուական, այլ ըստ իմոյ դիտողութեան լինելոց է մի 'ի հնագոյն ձեռագիր Աւետարանաց :

Ի վերջն Աւետարանին որ ըստ Մարկոսի յետ ասելոյն " զի " երկնչէին ,, որոշ 'ի գլխոյ անտի գրեալ կայ : " Եւ այս ըստ " Աղեքսանդրիացւոց օրինակին բերեալ 'ի յետ ասելոյն եԹէ երկնչէին ,, : Ի բանից աստի յայտնի լինի Թէ այն վերջին յաւելուած Աւետարանին որ ըստ Մարկոսի, զոր ոմանք 'ի հին ձեռագիր Աւետարանաց ունին, առեալ են յօրինակէ Աղեքսանդրացւոց, իսկ ոմանք չունին զայն յաւելուած վասն Թերևս ըստ այլ օրինակաց գաղափարելոյ :

Ի նոյն յաւելուածս . որ գտանի 'ի նմին Աւետարանի՝ ընդ տպագրոյն որ 'ի Վէնէտիկ՝ կայ տարբերութիւն բառից, այլ ըստ գլխաւոր նիւԹոցն նոյն է իմաստն :

## Ժ. Օ.

## ՍՈՒՐԲ ԱՄԵՆԱՓՐԿԻՉ

Շինեցաւ այս եկեղեցի 'ի ժողովրդեանէ որք Երեւանցիք կոչէին, և էին գաղթականք քաղաքին Երեւանայ։ Ունի այս եկեղեցի պատմութիւն շինութեանն իւրոյ. յորում և գրեալ կան անուանք ամենայն յիշատակի տուողաց։ Ծաղկաքաղ նըշանակեմ զհարկաւորսն պատմութեանս կարգի։

“ Իբրու (Շահաբաս առաջին) զմեզ վշտօք և նեղութեամբ
“ երբեր 'ի պանդուխտ և օտար աշխարհս, և էր նոր փոխեալ
“ թուականն հայոց և մտեալ ՌԾԴ (1605). յառաջնում
“ ամսեանն հայոց Նաւասարդի որ քշեցին զերկիրն Արարա-
“ դայ և բերեալ թարում խալխալ և Ահար Մուշկի մինչև
“ սաստիկ ձմեռն էանց, և յետ-աւուրց 'ի գարնան բերեալ
“ 'ի քաղաքս որ կոչի Սպահան . . . . և աստ բնակեցոյց
“ 'ի յերզն Նարընդալային, և շինեցաք խնամօքն Աստուծոյ
“ տունս և զեկեղեցիս . . . և անուանեցաք զանուն նորա
“ Ամենափրկիչ . . . և. շնորհօքն Աստուծոյ վայելեցաք մին-
“ չև 'ի ժամանակս յետին Շահաբասին զամս յիսուն և մի, և
“ յետ այսորիկ փարձեալ գթացաւ Աստուած 'ի վերայ ազգիս
“ հայոց և էարկ 'ի սիրտս թագաւորին յետին Շահաբասին,
“ և հրաման ետ հանել զազգս Հայոց 'ի քաղաքէն և որո-
“ շեաց զմեզ 'ի միջոյ պարսից, և ետ մեզ տեղի վայելուչ
“ 'ի վերայ գետոյն Զանդարու 'ի վերին կողմն Ջուղայու 'ի
“ յարևմտեան կողմն 'ի տեղիս որ կոչի Մարունան 'ի թուա-
“ կանիս հայոց ՌՃԵ (       ) ամի 'ի Հայրապետութեան ամե-
“ նայն Հայոց Տեառն Յակոբայ Սրբասնեալ կաթուղիկոսի և

" յԱռաջնորդութեան Ջուղայու և մերոյ նահանգիս Դաւթի
" արհի եպիսկոպոսի, և կարողութեամբն Աստուծոյ աստ.
" շինեցաք տունս գեղեցիկս, այգիս և պարտէզս և բուրաս-
" տանս . . . և հիմնարկեցաք եկեղեցի: Սկիզբն եղև շինու-
" թեան նորա 'ի թվականիս ՌՃԸ ամին մինչև 'ի թիւն ՌՃԺԲ
" ամին աւարտ եղև բարձրաբերձ և լայնակառոյց և անուա-
" նեցաք սուրբ Ամենափրկիչ:

Ի Ճակատու հարաւային դրան գրեալ կայ:

" Յիշատակ է Խոջայ Յուսէփին և կողակցուն Բի-
" բուն, որ է Նփրանենց Մուրատ Հասիլի որդի Ալ-
" ֆաթունին և կողակցույն Մարալունին, և Աղաքի
" որդի Բաղդասարին, և Աստուրի որդի Վարդա-
" նին, զոր ցանկացան ամէնն ջերմեռանդ սիրով սուրբ
" Ամենափրկչին: Գրեցաւ թվին 1154 յուլիսի
" տասն":

Ի կարգի պատմութեանն նոյն եկեղեցւոյ շինութեան յա-
ղագս սոյն Ալֆաթունին գրեալ կայ, "Աստուած ողորմի
" Ալֆաթունին . . . որ եկեղեցւոյ որմի կրաքանն և ֆարշի
" կէսն, եկեղեցւոյ շեմի քարիքէքն ( քարինքն ) և այլ միւս
" կողմի քարիքոյն շինեց":

Ի վերոյ հարաւային սեան ծաղկեզարդեալ գրեալ կայ:

" Թվին ՌՃԺԷ սուրբ եկեղեցիս թամամեցաւ Հռոմ-
" ճայեցւոց ամսոյ 8 ումն և Ազարիայ Շամս ամսոյ
" 20 ումն, յիշատակ է մեղաւորիս, ուստայ Խէչա-
" տուրս իւր ծնողացն, ամէն" (1):

Շինեցաւ այս եկեղեցի ծախուք ժողովրդեանն և ոչ ա-
ռատաձեռնութեամբ միոյ անհատի, զոր պատմութիւն նորա
յայտնէ յասելն "Աստուած ողորմի երևանցւոց առ հասարակ

« ժողովրդոցն, թէ այր և թէ կին, որ տուն եկեղեցւոյն շինե-
« լոյ, փողի ջանն այ կէ թուման . . . . Աստուած ողորմի
« Ուլուխանին և Հայրաթին որ տուն եկեղեցւոյն շինելոյ
« երկու անգամ փող, որ ջանեայ իէ թուման զխ. դեան . . .
« Աստուած օրհնէ սուրբ Ամենափրկչի վա. Հասարակ ժողո-
« վուրդն որ եկեղեցւոյ կլտուրն (տանիսն) փարշեցին, թէ
« գաջի և թէ աջօրին տուն Ժ, թուման : . . Աստուած
« ողորմի աղէնց Աւետիկին որ եա եկեղեցւոյս գաճելէ, և թէ
« խաթ քաշելէ ը թուման,, (2) ։

Շինեալ է այն 'ի վերայ չորից լայնախարիսխ սեանց. Երկայնութիւնն 'ի ստորոտոյ սեղանոյն է 65' և լայնութիւնն 60 ոտնաչափ ։ Ունի գմբէթ փառաւոր ։ Ի շրջապատն 'ի յատակէ գետնոյն ունի չորս կանգնաչափ յախճապակի ։

Յառաջին դասու կան ոգեղագիծ պատկերք, որոց իւրաքանչիւրոցն 'ի ներքոյ կան յիշատակ նկարել տուողացն նոցին ։ Ի ժողովրդանոցն շուրջանակի կայ շար մի ոգեղ պատկերաց, 'ի մնացեալ տեղիսն կան որոշմունք պատկերառանց առանց ինչ նկարուց, որք թերևս մնացեալ են անկատար յետ 'ի վերայ հասանելոյ բռնաւորութեանցն 'ի Ջուղայ ։ Իսկ գըմբեթն է ծաղկազարդ նկարուք ։

Խաչքարանորէն է դրակէք մաւրէ Առաքելոցէն, որ ունի յետոյն յիշատակն ։

« Յիշատակ է խաչկալս Յակոբին և կողակից Սառայխանումին և որդին Մկրտումին և դուստր Հոռոմսիմէն, և Մկրտումի կղկից Գուլյարն և որդին Միքայէլն և կղկից Խաթունն և որդիքն Յակոբջնն՝ Մկրտումն՝ և Յովհաննէսն՝ և դստերքն Հոռոմսիմէն՝ կատանն Մադլինէն՝ և Մկրտումի դուստր մուլքքին ։ Գրեցաւ թուն 1174 մայիսի 21,, ։

Ունի 'ի կողմն հարաւայնոյ եկեղեցի անուամբ շինեալ յանուն սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի ։

Ի կարգի պատմութեանց եկեղեցւոյ շինութեանն գրեալ

...կայ « Աստուած օրհնէ դաշտցի Սարգսի որդի Պարոն Դիլան-
« չին , Աստուած պահէ իւր որդի Ստեփաննի՝ որ նախակայի
« սուրբ Ստեփաննոսի եկեղեցին Թամամին ( բովանդակապէս )
« շինեց իւր գանձիւ » :

Ի Ճակատ նոյն մատրան գրեալ կայ :

« Երկնաքատակ և սխրալի ,
եկեղեցուս սրաձևս յօրինի ,
յանուն սրբոյն Ստեփաննոսի :
Է յիշատակ Դիլանչեցի ,
Տեառն երկիւղած բարեպաշտի ,
և ծնողացն Սարգսին և Մարիամի ,
և կենակցոյն Թանգխաթունի ,
որդւոցն իւրեանց դեռաբուսի ,
Ստեփաննոս Մարեամ խանում վերաձայնի ,
յորս մաղթեմք աղերսալի ,
յորժամ գայ Տէրն ամենի ,
դատողական աթոռ նստի ,
արժանս առնել յիշատակի :
Ի Թուին հազար հարիւրորդի ,
յիսնակ Թուով , եռեակ ամի ( 3 )
Տեառն մերոյ Աղէքսանդրի ,
Աստուած ողորմի գրող Տէր Յովհաննին » :

Սոյն եկեղեցի ունեցեալ է երեսուն ձեռագիր Աւետարանս , որոց յիշատակի տուողաց անուանք կամ որոշակի գրեալ : Ի մէջ նոյն ձեռագիր Աւետարանաց մի հատ եղեալ է կարի հնագոյն ( ըստ պատմելոյ ոմանց մինչև հազար և հարիւր ամաց ): Զայն Թանգագին հնութիւն Պարոն Ըմիրխան Յ. Ամիրեանց բառնայ յեկեղեցւոյ անտի , որոյ վասն հարցումն արար 'ի Տէր Սիմէօն քահանայէ նոյն եկեղեցւոյ՝ ներկայ առաջնորդ Սըբազան Թադդէոս Արք եպիսկոպոսն , և նա 'ի 18 փետրվարի 1852 գրաւոր յայտարարութեամբ արար պատասխանի « իբրև

Ժողովուրդք սոյն եկեղեցւոյ կամ որ նոյն է բնակիչք Թաղին Դաւրիժոյ էին նոյն ժողովուրդք զորս առաջին Շահ. աբաս արքայ բնակեցոյց 'ի Շամախայա, իսկ յետ տեղափո. խութեանն որ եղև հրամանաւ Շահաբասայ երկրորդի յամի հայոց 1105, գաղթեցան նոքա յայն Թաղ, և յամի 1108 հիմ. նարկեցին զայն եկեղեցի ։

Ի սոյն եկեղեցւոջ կայ յիշատակագիր շինութեանն եկե. ղեցւոյն 'ի Շամախայա Թաղի. ('որոյ անունն լեալ է սուրբ Աստուածածին) գրեալ 'ի վերայ Թղթոյ գալարածոյ (որ կայրխանա կոչի) յորում կան անուանք յիշատակատուաց ե. կեղեցւոյն կառուցելոյ 'ի Շամախայա ։ Զանի Թուականն ։ Իսկ մինչ գաղթեցան յայն Թաղ, և կառուցին զնոր եկեղեցին, գրեցին դարձեալ 'ի միւս կողմն նոյն Թղթոյ զանուանս յիշա. տակատուաց նորին եկեղեցւոյ ։

Երկարաբանութիւն ոչ համարեմ 'ի յիշատակագրոյ անտի յառաջ բերել զհարկաւոր ծանօթութիւնս, որով առաւել պարզութիւն ստանայ պատմութեանն շարունակութիւն ։

Մեծ յիշատակատուք նորին եկեղեցւոյ լուսաւորչի՝ են տոհմն Աղազարեանց և Շմաւոնեանց ։

Գրի 'ի յիշատակագրին այսպէս "Աստուած օրհնէ Շմաւի
" որդիքն, զՊարոն Ջէյնին, Աբլահաթն, Դաւութն և զոր.
" դին Խաչխանն, որ ետուն Ը. շուրջառ, Բ. ուրար, Բ.
" բազպան, Բ. շապիկ, Բ. սաղաւարտ իւր խաչովքն, Ա.
" զունար, Դ. բօղչայ, Ա. մեծ վարագոյր, Ա. խաչկալ, Ա.
" ճաշուգիրք, Ա. ոսկի սուրբ նշան, Ա. ջահ, Զ. մոմդան
" պատի, Բ. մեծ սուրահի շամդան, Ա. պղնձէ պատկեր,
" Ա. մեծ խաչ, Ա. Թավլեան փանջարայ, ԺԵ. Թումանն ե.
" կեղեցւոյ շինելոյ նաղդ փող, Ա. աղլուխ, սուրբ խորանի
" ծաղկելը եկեղեցին բովանդակ ծաղկելէ ԻԷ Թուման, Ա.
" խալիչայ ։ Երկու կարմունջ կալէց Սարֆրազի բազարգա.
" հումն, Ա. կարմունջ, Աւետէնց բազարգահումն " ։ Աստ.
" ուած ողորմի Խօջայ Մանուկին՝ Աստուած օրհնէ իւր որ.
" դի Աղազարն որ ետ Ճ. Թուման կաթուղիկէն ծածկելէ " ։
" Դարձեալ, " Աստուած օրհնէ Պարոն Աղազարն և իւր կո.

‚ ղանկից Բասրին, և որդիքն Աղայ Մանուկն Աղայ Սաֆարն,
‚ որ եւ տուն յիշատակի սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյն, ա. զառ
‚ Թիրվանդայ շուրջառ, ա. զառ սաղաւարտ իւր խաչովն,
‚ ա. քաշած զառ ուրար, ա. ջուխտ զառ բազբանդ, ա.
‚ շապիկ, ա. զառ աղլուխ, սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյ
„ մուհասպարն քաշէց, վերնատուն շինէց . . . Աստուած
„ որհնի Պարոն Աղազարն, կողակիցն Բաղրին և զվարդինին,
„ և զորդիքն Մանուկ և զՍաֆարն, որ եւս եկեղեցւոյն ա.
„ մեծ դիվանի խալի, ա. բանաֆշ ատլաս նաշի ծածկոց.
„ է. պղնձէ պատկեր, ա. չիթ սուզանի . . . : Մի բեմի
„ ծածկոց. մի արծաթէ բխօրդան . . . մի խաքի խալիլայ
„ զառ շուրջառ, մի չինիմաշինի զառ ուրար ա. ջուխտ
„ բազբանդ, ա. զունար, ա. Ճերմակ զառ վակաս, ա. շա-
„ պիկ և սարկաւագի քաշած կարմիր զառ ուրար, ա. բաս-
„ մայ Աւետարան երկու երեսն արծաթէ կազմած, է. քա-
„ թան աղլուխ „ :

Եկեղեցին է կառուցեալ ՚ի վերայ չորից սեանց. երկայ-
նութիւնն ՚ի ստորոտոյ սեղանոյն է 65 և լայնութիւնն 52 ոտ-
նաչափ : Սեղանն՝ դասն՝ ժողովրդարանքն և առաստաղքնոցա
են պատկերազարդ և ծաղկազարդ :

Սենի փոքրիկ զանգատուն կառուցեալ ՚ի վերայ առաստաղի
եկեղեցւոյն, և ունի զմի զոյգ քաղցրաձայնչիւն զանգ, որ ըստ
աւանդութեան ծերոց տուեալ է ՚ի տոհմայնոց խօջայ Աղա-
զարի :

Իբրև երեսուն ամօք նախ քան զԹուականն 1857, եղև
նորոգութիւն նոյն եկեղեցւոյ արդեամբ Աղայ Յովսէփայ Ամի-
րեան որ ՚ի Սմարանդ էր երևելի մեծատուն : Իսկ ՚ի 1853 ա-
մի ևս եղև կրկին վերանորոգումն, արդեամբ Պարոն Մարգա-
րայ Սուքիասեան և Պարոն Եղիազարու Գ. Գասպարեան, որք
են ՚ի ժողովրդոց նոյն եկեղեցւոյ՝ այժմ ՚ի Ջաւայ ՚ի Տէրու-
Թեան Հոլանդացւոց :

Այս եկեղեցի նախ քան զամն 1850 չէր այնչափ համբա-
ւաւոր ըստ եկեղեցական զարդուց կամ բարեկարգութեան :
Իսկ ՚ի յառաջադէմն նկրտիւ Տէր Մարտիրոս Տէր Յովակիմեան

Քահանայի նոյն եկեղեցւոյ, ըստ վայելչութեան մասին առա-
ջադիմութիւն ստացաւ և այն եկեղեցի ։

Նոյն այս Տէր Մարտիրոս Քահանայ (որ ընկալեալ զաստի-
ճան քահանայութեան 'ի 1843 ամի) վիճակաւորեալ յամի
1845 Նալկաթայ քաղաքին Հնդկաստանի, բարեջան յորդո-
րանօք իւրով ընկալաւ 'ի ժողովրդոց նոյն եկեղեցւոյ եղելոց
'ի Հնդկաստան և 'ի Ջուղայ զբազում յիշատակիս որք էին
արծաթի սպասք և թանկագին կերպասեայ զգեստք, և նո-
քօք 'ի 1850 ամի 'ի վերադառնալն իւր 'ի Ջուղայ ճոխացոյց
զեկեղեցին ։ Արժանի յիշատակաց անուանք յիշատակի տուո-
ղացն են այսոքիկ, Պարոնայք Մարգար, Դաւիթ և Բեթղա-
հէմ եղբարք Սուքիասեան, Եղիազար Գ. Գասպարեան, Մա-
նուկ Զօրաբեան, և այլք անանք ։ Յամի 1852, դարձեալ
ըստ խնդրոյ նոյն բարեմիտ Տէր Մարտիրոս Քահանայի, և
արդեամբ քերցն բարեպաշտից եղելոց 'ի Բաթաւիայ Տիկին
Մարիամու Յակոբ Յարութիւնեան, և օրիորդ Թագուհւոյ
Մանուկեան տարածեցան նոր սփռոցք 'ի մէջ եկեղեցւոյն ։

Նորոգութիւնն որ եղև յամի 1853, եղև նոյնպէս ըստ
յորդորմանց նոյն Քահանայի ։

Սկսեալ 'ի 1851 տարւոյ յետ կարգ և կանոն հաստատելոյ
Ուրբազան Թադդէոս արք եպիսկոպոս ներկայ Առաջնորդի, և
կարգելոյ զերեցփոխանս վասն իւրաքանչիւր եկեղեցեաց. այս
եկեղեցի շնորհիւն Աստուծոյ որ ըստ օրէ ստացաւ առաջադի-
մութիւն ըստ արդեանց մասին, և յընթացս վերջամեայ ժամա-
նակի, ազատ յամենայն մեծամեծ ծախսարարութեանց, հա-
չիւ եկեղեցւոյն ունի արդ զդրամագլուխ ինչ, ոչ շատ ճոխ և
ոչ շատ մանաւոր, և աս է այժմ ճոխն 'ի մէջ եկեղեցեաց
Ջուղայու ։

Ինչ ճոխանալոյն ըստ դոյից, վայելչացաւ և ըստ հոգևոր
բարեկարգութեանց, առհմանադրեալ կարգօք Սրբազան
Թադդէոս Արք եպիսկոպոս Առաջնորդի, և բարւօք ստա-
սաւորութեամբ Տէր Մարտիրոս Քահանայի ։

Սունի եկեղեցի անուան, որում չիք յիշատակագիր ինչ,
բաց 'ի խաչկալէն որում այս է յիշատակարան ։

" Յիշատակ է Հէրումի Որդի Պարոն Սարգսին , և
" կողակցին Գուլաղին , և իւրեանց ծնողացն , Թւին
" ՌՃԿԲ շամս Ի ,, :

Իսկ Գերեզման շինողին նոյն մատրան կայ 'ի գաւթի նորին , որոյ այս է տապանագիրը :

" Այս տապանս է առն բարեպաշտի ,
Սարգսիս անուն վաճառականի ,
Որդի գոլով սա Հէրումի ,
տեղեաւն գոլով սա Դաշտեցի ,
շինող մատրանս և պարսպի ,
որք հանդիպիք յայս սուրբ տեղի ,
լի բերանով տուք ողորմի ,
հանգեաւ սա 'ի Թւին ՌՃԿԲ ,, :

Ի գաւիթ սորա կայ Դպրոցն անուանեալ սուրբ Մինաս՝ որ սկզբնաւորեցաւ յամի 1853 , այլ նախ քան զայն ևս եղեալ է անդ ընդ ժամանակս ժամանակս դպրոց և դասատուութիւն :

Ի սմին եկեղեցւոջ կայ ձեռագիր Աւետարան մի որոյ վերջին թերթք ցյ Աւետարանն որ ըստ Յովհաննու պակասի, ուստի և չունի յիշատակարան կամ թուական , այլ ըստ իմոյ դիտողութեան լինելոց է մի 'ի հնագոյն ձեռագիր Աւետարանաց :

Ի վերջն Աւետարանին որ ըստ Մարկոսի յետ ասելոյն " զի " երկնչէին ,, որոշ 'ի գլխոյ անտի գրեալ կայ : " Իսկ այս ըստ " Աղեքսանդրիացւոց օրինակին բերեալ 'ի յետ ասելոյն եթէ երկնչէին ,, : Ի բանից աստի յայտնի լինի թէ այն վերջին յաւելուած Աւետարանին որ ըստ Մարկոսի , զոր ոմանք 'ի հին ձեռագիր Աւետարանաց ունին , առեալ են յօրինակէ Աղեքսանդրացւոց , իսկ ոմանք չունին զայն յաւելուած վասն թերևս ըստ այլ օրինակաց գաղափարելոյ :

Ի նոյն յաւելուածս . որ գտանի 'ի նմին Աւետարանի՝ ընդ տպագրոյն որ 'ի Վէնէտիկ՝ կայ տարբերութիւն բառից , այլ ըստ գլխաւոր նիւթոցն նոյն է իմաստն .

# Ժ.Օ.

## ՍՈՒՐԲ ԱՄԵՆԱՓՐԿԻՉ

Շինեցաւ այս եկեղեցի 'ի ժողովրդենէ որք Երեւանցիք կոչէին, և էին գաղթականք քաղաքին Երեւանայ։ Ունի այս եկեղեցի պատմութիւն շինութեանն իւրոյ, յորում և գրեալ կան անուանք ամենայն յիշատակի տուողաց։ Ծաղկաքաղ նը-շանակեմ զհարկաւորան պատմութեանս կարգի։

" Նոյն ( Շահաբաս առաջին ) զմեզ վշտօք և նեղութեամբ
" եբեր 'ի պանդուխտ և օտար աշխարհս, և էր նոր փոխեալ
" թուականն Հայոց և մտեալ ՌԾԴ ( 1605 ). յառաջնումն
" ամսեանն Հայոց Նաւասարդի որ քշեցին զերկիրն Արարա-
" դայ և բերեալ Թարում խալխալ և Ահար Մուշկի մինչև
" սաստիկ ձմեռն էանց, և յետ-ուուրց 'ի գարնան բերեալ
" 'ի քաղաքս որ կոչի Սպահան . . . . և տուտ բնակեցոյց
" 'ի յեզր Նարընդալային, և շինեցաք խնամօքն Աստուծոյ
" տունս և զեկեղեցիս . . . և անուանեցաք զանուն նորա
" Ամենափրկիչ . . . և շնորհօքն Աստուծոյ վայելեցաք մին-
" չև 'ի ժամանակս յետին Շահաբասին զամս յիսուն և մի, և
" յետ այսորիկ փարձեալ գթացաւ Աստուած 'ի վերայ ազգիս
" Հայոց և էարկ 'ի սիրտս թագաւորին յետին Շահաբասին,
" և հրաման ետ հանել զազգս Հայոց 'ի քաղաքէն և որո-
" շեաց զմեզ 'ի միջոյ պարսից, և ետ մեզ տեղի վայելուչ
" 'ի վերայ գետոյն Զանդարու 'ի վերին կողմն Ջուղայու 'ի
" յարևմտեան կողմն 'ի տեղւս որ կոչի Մարունան 'ի Թուա-
" կանիս Հայոց ՌՃԵ ( ) ամի 'ի Հայրապետութեան ամե-
" նայն Հայոց Տեառն Յակոբայ Սրբասնեալ կաթուղիկոսի և

« յԱռաջնորդութեան Ջուղայու և մերոյ նահանգիս Դաւթի
« արհի եպիսկոպոսի , և կարողութեամբն Աստուծոյ աստ․
« շինեցաք տունս գեղեցիկս , այգիս և պարտէզս և բուրաս-
« տանս . . . և հիմնարկեցաք եկեղեցի ։ Սկիզբն եղև շինու-
« թեանս նորա 'ի թվականիս ՌՃԸ ամին մինչև 'ի թիւն ՌՃԺԲ
« ամին աւարտ եղև բարձրաբերձ և լայնակառոյց և անուա-
« նեցաք սուրբ Ամենափրկիչ ։

Ի ճակատու հարաւային դրան գրեալ կայ ։

« Յիշատակ է խաչս Յուսէփին և կողակցուն Բի-
« բուն , որ է Նփրանէնց Մուրատ Հասիլի որդի Ալ-
« ֆաթունին և կողակցոյն Մարալուին , և Ավաքի
« որդի Բաղդասարին , և Աստուրի որդի Վարդա-
« նին , զոր ցանկացան ամէնն ջերմեռանդ սիրով սուրբ
« Ամենափրկչին ։ Գրեցաւ թվին 1154 յուլիսի
« տասն ” ։

Ի կարգի պատմութեանս նոյն եկեղեցւոյ շինութեան յա-
ղագս սոյն Ալֆաթունին գրեալ կայ , « Աստուած ողորմի
« Ալֆաթունին . . . որ եկեղեցւոյ որմի կրաքանն և փարշի
« կէսն , եկեղեցւոյ շեմի քարիքէքն ( քարինքն ) և այլ միւս
« կողմի քարիքոյն շինեց ” ։

Ի վերայ հարաւային սեան ժողովրդարանոյ գրեալ կայ ։

« Ի թվին ՌՃԺԷ սուրբ եկեղեցիս թամամեցաւ Հռով-
« մայեցւոց ամսոյ 8 ումն և Աշարիայ Շամս ամսոյ
« 20 ումն , յիշատակ է մեղաւորիս , ուստայ խէչա-
« տուրս իւր ծնողացն , ամէն „ ( 1 ) ։

Շինեցաւ այս եկեղեցի ծախուք ժողովրդեանն և ոչ ա-
ռատաձեռնութեամբ միոյ անհատի , զոր պատումութեն նորա
յայտնէ յասելն « Աստուած ողորմի երևանեցւոց առ հասարակ

« ժողովրդոցն, թէ այր և թէ կին, որ տուեալ են եկեղեցւոյս շինե-
« լոյ, փոխ ի ջանիս այս կը թողութիւն . . . . Աստուած ողորմի
« Ուլուխանին և Հայրաթին որ տուեալ են եկեղեցւոյս շինելոյ
« երկու անգամ փող, որ ջանիցն իւր թողութիւն գտ. ցեան . . .
« Աստուած որ հանէ սուրբ Ամենափրկչի առ հասարակ ժողո-
« վուրդն որ եկեղեցւոյ կլտուրն (տանիսն) փարշեցին, թէ
« դաջի և թէ աջորին տուեալ Ժ, թողութիւն : . . Աստուած
« ողորմի աղէնց Ա. տէրկին որ տէր եկեղեցւոյս գանձել է, և թէ
« խաթ քաշել է ի թողութիւն » (2)։

Շինեալ է այն ՚ի վերայ չորից լայնախարիսխ սեանց . եր-կայնութիւնն ՚ի ստորոտոյ սեղանոյն է 65՝ և լայնութիւնն 60 ոտնաչափ։ Ունի գմբէթ փառաւոր։ Ի շրջապատն ՚ի յատակէ գետնոյն ունի չորս կանգնաչափ յախճապակի։

Յառաջին դասու կան ոսկեզարդ պատկերք, որոց իւրա-քանչիւրոցն ՚ի ներքոյ կան յիշատակ նկարել տուողացն նո-ցին։ Ի ժողովրդանոցն շուրջանակի կայ շար մի ոսկեղ պատկե-րաց, ՚ի մնացեալ տեղիսն կան որոշմունք պատկերատանց ա-ռանց ինչ նկարուց, որք թերևս մնացեալ են անկատար յետ ՚ի վերայ հասանելոյ բռնաւորութեանցն ՚ի Ջուղայ։ Իսկ գմբէթն է ծաղկազարդ նկարուք։

Խաչկալ նորին է դուռնէր սուրբ Աստուածածնի, որ ունի յետագայ յիշատակն։

« Յիշատակ է խաչկալս Յակոբին և կողակից Սառայ-խանումին և որդին Մկրտումին և դուստր Հոռոմ-սիմէն, և Մկրտումի կողակից Գուլյարն և որդին Մի-քայէլն և կողակից Խաթունն և որդիքն Յակոբջանն՝ Մկրտումն՝ և Յովհաննէսն՝ և դստերքն Հոռոմսիմէն՝ կատանն Մադլինէն՝ և Մկրտումի դուստր մուլե-քին։ Գրեցաւ թուին 1174 մայիսի 21 »։

Սուրբ ՚ի կողմն հարաւայնոյ եկեղեցի անուան շինեալ յա-նուն սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի։

Ի կարգի պատմութեանց եկեղեցւոյ շինութեանն գրեալ

կայ ‘‘ Աստուած օրհնէ դաշտցի Սարգսի որդի Պարոն Գիլան-
‘‘ չին, Աստուած պահէ իւր որդի Ստեփաննն՝ որ նախավկայի
‘‘ սուրբ Ստեփաննոսի եկեղեցին Թամամին (բովանդակապէս)
‘‘ շինեց իւր քսակին ,, :

Ի Ճաշոցս նոյն ձեռքոն գրեալ կայ :

‘‘ Երկնաքատակ և սխրալի,
եկեղեցուս սրահս յօրինի,
յանուն սրբոյն Ստեփաննոսի ։
Է յիշատակ դիլանչեցի,
Տեառն երկիւղած բարեպաշտի,
և ծնողացն Սարգսին և Մարիամի,
և կենակցոյն Թանգխաթունի,
որդւոցն իւրեանց դեռաբուսի,
Ստեփաննոս Մարեամ խանում վերաձայնի ։
յորս մաղթեմք աղերսալի,
յորժամ գայ Տէրն ամենի,
դատողական աթոռ նստի,
արժանի առնել յիշատակի ։
Ի թուին հազար հարիւրորդի,
յիսնակ թուով, եռեակ ամի (3)
Տեառն մերոյ Աղեքսանդրի,
Աստուած ողորմի գրող Տէր Յովհաննին ,, :

Այն եկեղեցի ունեցեալ է երեսուն ձեռագիր Աւետարանս, որոց յիշատակի տուողաց անուանք կան որոշակի գրեալ ։ Ի մէջ նոյն ձեռագիր Աւետարանաց մի հատ եղեալ է կարի հնա- գոյն (ըստ պատմելոյ ոմանց մինչև հազար և հարիւր ամաց)։ Զայն Թանգագին հնութիւն Պարոն Ըմիրխան Յ. Ամիրեանց բառնայ յեկեղեցւոյ անտի, որոյ վասն հարցումն արար 'ի Տէր Սիմէօն քահանայէ նոյն եկեղեցւոյ՝ ներկայ առաջնորդ Սրբա- զան Թադգէոս Արք եպիսկոպոսն, և նա 'ի 18 փետրվարի 1852 գրաւոր յայտարարութեամբ արար պատասխանի ‘‘ եթէ

« քան ամօք յառաջ քան զայս (յՆախ․ քան զամն 1852),
« Պարոն Ամիրխանն յաւուր միում եկն 'ի տունն մեր և առաջ
« Տէր Մատթէոս Հօրն իմում թէ՝ լուեալ եմ ես զի գտանի
« յեկեղեցւոջ ձերում մի հատ հնագոյն ձեռագիր Աւետարան.
« տուր ինձ զայն և ես գրեցից Աղայ Յովսէփ եղբօրն իմ զի
« նա առաքեսցէ վասն եկեղեցւոյ ձեր զերկու հարիւր ռուփի
« լուսապին, Հայրն իմ 'ի բանից յայնմանէ ետ առ Պարոն Ա-
« միրխանն զհնագոյն ձեռագիր Աւետարանն զայն և Պարոն
« Ամիրխանն առ ժամն այն հատոյց Հօրն իմ ութն ռուփի լու-
« սապին և առեալ զայն Աւետարան գնաց ,, . . . ։

Զայն Աւետարան Պարոն Ամիրխանին առաքէ 'ի սուրբ Ղա-զարու վանքն մխիթարեան միաբանութեան ։ Յետ առաքման այնր՝ կրկին տեղեկութիւն պատմի. մի՝ թէ ծովասոյզ եղև, և միւս՝ թէ ժամանեցաւ այն 'ի վանքն այն, բազում այնօրինակ հնութիւնք կորեան 'ի Ջուղայոյ ։

Այժմ թէպէտ կան 'ի նմա քանի ձեռագիր Աւետարանք, այլ չեն շատ հնագոյն ։

Բարեպաշտ քորքն որք 'ի Բթաւիայ, Տիկին Մարիամ Յակոբ Յարութիւնեան և Օրիորդ Թագուհի Մանուկեան լինելով 'ի ժողովրդոց սոյն եկեղեցւոյ, հեռաստէ առատաձեռն տրօք իւրեանց բարեպաշտաբար օգնական եղեն սոյն եկեղեցւոյ ։

Յամի 1850 գնեցին զմի այգի խաղողոյ մի Ջրիբաշափ, յամի 1853 գնեցին զմի տուն և ընծայ ետուն եկեղեցւոյն այնմիկ ։ Յամի 1850 արարին զմասնաւոր Նորոգութիւն, և 'ի 1852՝ 53՝ և 54, չինեցին զարծաթի յիշատակս զսկիհ զխաչ՝ զբուրվառ, և այժմ եւս շնորհիւ Նոցա եկեղեցին ունի զմասնաւոր գրամագլուխ որով հոգացեալ լինի ծախք եկեղեցւոյն ։

---

(1). Ի պատմութեան եկեղեցւոյ Շինութեան գրի ՛՛ Թէ Ջուղա 'ի թուին 1112 ամին աւարտ եղև ,, իսկ այս յիշատակարան ասէ թէ 'ի 1117 ամին աւարտեցաւ ։

Բ. Սնկեղեցին կամարակապ յօրինուածով կառուցեալ կայ 'ի միջակիտի. յանուն սրբուհւոյն Կատարինեայ, ունելով երկայնութիւն 35 ցատօրոտ սեղանոյն, և լայնութիւն 22 ոտնաչափ: Չունի յիշատակագիր յաղագս շինութեանն 'իւրոյ, չունի և որոշեալ դաս վասն ժողովրդոց կամ կանանց, յաղագս ոչ գոլոյ այնր ժողովրդական եկեղեցի: Կէս մասն եկեղեցւոյն ունի զպատկերս տնօրինականացն Յիսուսի, իսկ առաստաղն է ծաղկազարդեալ այլ ոչ գեղարուեստիւ:

Խաչկալն է պատկեր խաչելութեանն Յիսուսի:

Գ. Յարևելեան 'ի հիւսիսային և 'ի հարաւային կողմանս եկեղեցւոյն կան խուցք թուով երեսուն և երեք շինեալ յաղագս միաբանութեանն կուսանաց: Շինութիւն նոյն խցից են կարի նեղ և անձուկ, մինչև անգամ թէ երկայնահասակ ոք մտցէ 'ի խուցն յայնոսիկ՝ չկարէ կանգնել առանց գլխոյն յառաստաղն ոչ հասանելոյ: Ըստ նմին օրինակի են և գաւիթք յորս են ճանապարհք մտանելոյ 'ի խուցն յայնոսիկ: Գաւիթք այնոքիկ հասարակաբար 'ի կուսանաց կոչին " փողրակ ": Թուի ինձ թէ խորհրդով են շինեալ զյիշատակեալ խուցն նովին նեղ և անձուկ դրութեամբ, թերևս 'ի միտ ածելով զՏէրունականն բան թէ, նեղ և անձուկ է ճանապարհն որ տանի 'ի կեանս յաւիտենականս: Յամի 1842 բարերարութեամբ Աղայ Յակոբայ Պետրոսեան (3), նորոգեցան մասնաւորապէս եկեղեցին և շրջակայ շինուածք այնր, և շինեցաւ արձակ սենեակ մի յաղագս ընդունելոյ անդ զհիւրս: Շինութիւն սոյն անապատի ըստ հիւսիսային կողման կցորդ է ընդ եկեղեցւոյն սուրբ Յովհաննու Մկրտչի 'ի Թաղն Չարսու:

Կառավարի եկեղեցին յԱւագ լուսարարէ և յերկու լուսարարաց: Արդի աւագ լուսարարն է կոյս Սանդուխտ Տէր Գաբրիէլեան, և Տալիթայ և Եղիսաբեթ կուսանք են օգնական նմա կամ փոքր լուսարարք:

Դ. Աւանդութեամբ պատմեն կուսանք թէ 'ի Հայաստանեայ ընդ ժողովրդեանն փոխադրեցան աստ երեք կուսանք՝ Ռուսուփամեայ՝ Թագուհի՝ և Հռիփսիմէ անուամբք (4): Ի մէջ եկեղեցւոյ Անապատին կան երկու կուսանաց պատկերք, նը-

[…]արեալ 'ի վերայ կտաւոյ, զորոց աւանդութեամբ լուեալ է Ծերոց՝ պատմեն արդի կուսանք, թէ մինն է պատկեր Ուռուփսիմեայ կուսի և Մայրապետի՝ և միւսն թագուհի գործակցի նորա կամ յաջորդի :

Ե. Միաբանութիւնն կուսանաց կառավարեալ լինէր 'ի Մայրապետէ 'ի Յաջորդէ՝ և 'ի խորհրդական գրագրէ, իսկ յամի 1853, ըստ կարգադրութեանն Ներսիսի Սրբազան Թադ-դէոս արք եպիսկոպոս Առաջնորդի՝ յաւելան և վեց հոգաբարձուք կարգեալ 'ի նոյն միաբանութենէ կուսանաց :

Ունին զգովելի Կարգս տնտեսական կառավարութեան, և հաստատեալ 'ի վերայ հաւասարութեան սկզբան, որով չըլինելով որոշումն կամ խտիր 'ի միաբանութեանն միջի խաղաղութիւնն 'ի նոսա անխռով շարունակի : Անապատն տայ զհաց և զկերակուր միաբանութեանն, և յորժամ ձեռնհաս լինի բաշխել զդրամս՝ ամի ամի տուեալ լինի միաբանութեանն հանդերձագին սակաւագումար : Իւրաքանչիւր միաբանի տան երեսուն լիտր ալիւր վասն տարեկան հացի, և զօրհանապազ Անապատն պատրաստելով զկերակուրս բաշխէ ամենեցուն հաւասարութեամբ : Յաղագս տնական կառավարութեանն երեք տնտեսք են կարգեալ 'ի միաբանից անտի, մինն է տնտեսապետ և երկուքն օգնական նորա : Արդի տնտեսապետն է կոյս Սարրայ կամ Սառան, և օգնականք նորա կոյս Հռիփսիմէ և կոյս Գայիանէ : Յաշխարհական կանանց ունեն զմի դռնապան, և զմի խոհարար, և բաց յերկուց անտի չունին զայլ ծառայ կամ զաղախին : Փոքր լուսարարն 'ի մէջ գիշերի զարթուցեալ հարկանէ զկոչնակ (որ նշանաւոր է և համբաւի հարեալ սակս երկար հարկանելոյն և ձայնին) և միաբանութիւնն ընդ ձայն կոչնակին հաւաքին յեկեղեցին, և զոյգ զոյգ կանգնեալ առաջի սեղանոյ՝ առնեն զսաղմոսերգութիւն մինչև լրանայ բոլորակ սաղմոսն, և ապա սկիզբն առնեն ինքեանք առնել զժամերգութիւնն ըստ իւրաքանչիւր աւուրց կարգին, որ և աւարտի նախ քան զծագելն արևու կամ 'ի շառագունիլ ծայրիցն լերանց :

Իւրաքանչիւր ոք 'ի միաբանից ունի ձեռագործ, որք ըստ մեծի մասին են գործել զգուլպայս. յորում այսօրայն՝ մինչ աւարտեն զաղօթս իւրեանց և զժամերգութիւն: Վաճառեն զձեռագործս իւրեանց և գնով նոյին հոգան զպէտս հանդերձից իւրեանց թէ ըմպելեաց և թէ այլ անձնականն մանաւոր ծախուց. և եթէ իցեն ձեռնահաս՝ զաւելորդսն բաշխեն աղքատ կարօտաւորաց: Մեծ մխիթարութիւն է նոցա ջրհորն զոր ունին, զի ջուր նորա առաւել վճիտ պարզութեամբ և սառնութեամբ քան զջուրս ամենայն ջրհորոց Ջուղայու՝ յամառան զովութիւն յոյժ տայ միաբանութեանն: Բաղձամք յաղագս ըմպելոյ զջուր 'ի ջրհորոյ անտի յոլով անգամ գնան յԱնապատն այն յայցելութիւն ջրհորոյն:

Իւրաքանչիւր միաբան ունի զմի կամ զերկու և ոմանք յաւելի ևս աշակերտս՝ 'ի մատաղ որբորդաց, որոց տան 'ի բերան ուսանել զփոխս. զեկեղեցական երգս և զսաղմոսս: Իւրաքանչիւր միաբան գուն գործէ զմի ոք կամ զերկուս 'ի ձեռնասուն աշակերտաց իւրոց առնել կուսակրօն. մխիթարութիւն համարելով թողուլ զնոսա զկնի իւրեանց հոգևոր յիշատակ, ուստի միաբանութիւնն նոցա միշտ է հարուստ ըստ թուոյ: Յետ վախճանելոյ միոյ միաբանի, եթէ ինչքն ունիցի 'ի պէտս յուղարկաւորութեանն իւրոյ պատրաստեալ զումար՝ առնեն նովաւ զծախսն, իսկ եթէ աղքատ իցէ վախճանեալն՝ Անապատն կատարէ զծախս թաղման նորա: Ինչք կամ ստացուածք միաբանից յետ մահուան իւրեանց՝ Անապատին սեփհականեալ լինին, և ոչ ումեք ազգականացն: Ոչ ընդունին յուխտ միաբանութեան կամ կուսակրօնութեան զօրիորդս զաշակերտեալսն ինքեանց նախ քան զլինելն նոցա քսանամեայ, զի մի թեթևութեամբ հասակին ապաշաւ լիցի նոցա յետ զըղջակեցութեան ուխտն ընդունելոյ: Յառաջ քան զժամանակ առաջնորդութեանն ներկայ Թադդէոս Սրբազան արք եպիսկոպոսի, ընդունէին նորընծայքն 'ի կուսակրօնութիւն զընթեսին եկեղեցական ստորին աստիճանս, և խարազնազգեցեալ համարեալ լինէին 'ի թիւ կրօնաւոր կուսանաց. իսկ յամի 1851 'ի 29 Սեպտեմբերի արդի Առաջնորդ Սրբազան

Թադդէոս Եպիսկոպոսն շնորհեաց նոցա զաստիճանս աւագ-սարկաւագութեան, պատուէր տալով որպէս սարկաւագ ըս-պասաւորել 'ի ժամ պատարագի՝ զգենլով զշապիկս դպրաց, և կրելով 'ի գլուխ զքօղ սպիտակ։

Յամի 1702, կամ 'ի Թուականին Ազարիայի 87, եղեալ են երեսուն և երեք կուսանք միաբանք սոյն Անապատի, որոց անուանք են, Տալիթայ՝ Մայրապետ, մեծ Մարիամ յաջորդ, Իպրաքսէ, Եղինար, երեք Վառվառք, չորս Մարիամք, Տա-լիթայ, Թագուհի, Գարան, երեք Եղիսաբեթք, Վարդենի, Կատան, Նիկլիէ, երկու Հռիփսիմէ, Սողոմէ, Կատարինէ, Աննայ, Նունիա, Մանիա, Գրիսէս, Փեփրոնիա, Սանդուխտ, փոքր Վառվառ, Սոփիա և փոքր Եղիսաբեթ (5)։ Իսկ ար-դի միաբանութիւն նոցա բաղկանայ 'ի վեշտասան կուսանաց, որոց անուանք են՝ Եղիսաբեթ կամ Ջօջ կոչեցեալ Մայրապետ, Վառվառ Յաջորդ, Լուկիայ՝ Կատարինէ՝ Սանդուխտ՝ Հռիփսի-մէ՝ և Վարդենի Հօգաբարձուք (6), Մանիայ, Սարրայ, Մա-րիամ, Սանդուխտ, Թեկղի, Եղիսաբեթ, Հռիփսիմէ, Տալի-թայ, և Եղիսաբեթ։

Դ. Արդիւնք կամ հասք սոյն Անապատի են 1, ողորմու-թիւն արքային Պարսից. 2 տոկոս դրամագլխոյ. 3, նուէրք 'ի-գիւղօրէից. 4. լուսագին. 5, արդիւնք կալուածոց. 6, նուէրք կամ պարգև բարեպաշտից։

1. Սկսեալ 'ի ժամանակէ Թագաւորութեանն Ֆաթալի-շահի յամի 1833 մինչև ցայսօր ժամանակի վեհափառ Տէրու-թիւնն Պարսից շնորհէ նոցա ամի ամի զերեսուն և հինգ Թու-ման պարգև, որով ապահարկ լինին կալուածք Անապատի նոցա։ Ի շնորհս միաբանութեանն կուսանաց, շնորհէ նոյն-պէս վեհափառ Տէրութիւնն Պարսից Սրբակրօն Տէր Սարգիս քահանային Տէր Մատթէոսեան զտարեկան տասն Թուման, յաղագս լինելոյ նորա երբեմն գրագիր նոյն Անապատի, և համարեալ լինելոյ քահանայ կուսանաց։

2. Ունին 'ի Կալկաթայ 'ի կառավարութեան Բրիտանիկեան ընկերութեանն Հնդկաստանի հինգ հազար սիքայ ռուփի, որ է կտակեալ նուէր հանգուցելոյ Աղայ Գէորգայ Մանուկեան.

Ջուղայեցւոյ, սկսեալ 'ի 1827 տարւոյ, որոյ զտարեկան տոկոս ընդունեն երկու հարիւր կումպանի ռուփիս, ձեռամբ եկեղեցպանի Կալկաթու Հայոց Նազարէթայ սբ. եկեղեցւոյ։

Ունին դարձեալ 'ի Կալկաթայ 'ի կառավարութեան Հայոց եկեղեցւոյն զմի հազար և հինգ հարիւր կումպանի ռուփիս, որ է կտակեալ գումար հանգուցեալ Տիկին Աննայ Յովհաննէս Յ. Տէր Կարապետի, սկսեալ 'ի 1851 տարւոյ, որոյ տարեկան տոկոս ստանան վաթսուն ռուփիս կումպանւոյ։

Ի սնդկէ Մադրասայ եկեղեցւոյ Հայոց, ստանան տարեկան ( ) ռուփիս, որք են վաշխ կտակեալ գումարոց։

3. Հասանեն նուէրք ալիւր՝ իւղոյ՝ պանրի, և չորաթանի 'ի գաւառացն Չարմահալայ՝ Փերիոյ՝ Բուրվարոյ՝ և Քեազազայ՝ այլ ոչ կարի առաւելութեամբ։

4. Յառաջ քան զժամանակ առաջնորդութեան Ներկայ Սրբազան Թադդէոս արք եպիսկոպոսի ունէին սովորութիւն 'ի տնտեսութիւնս ժողովրդոց առաքելոյ զմոմ, և գնալոյ 'ի տնօրհնէք ժողովրդոց, այլ Ներկայ Սրբազան Առաջնորդն խափանեաց զայնոսիկ, վասնորոյ ամի ամի չընչեցուցանեն 'ի Ջուղայ զթուղթ վասն լուսագնոյ, որոյ բովանդակեալ գումարաւ, լինի ծախք լուսավառութեանն եկեղեցւոյ։

5. Կալուածք նոցա են Ղարամէնց՝ Ղարապէտի (7). միջի և Տէր Պետրոսէնց այգիք, որք ընդ ամենայն բովանդակին 'ի 18 ջրիք։ Վարձու տուեալ լինին յիշեալ կալուածք, վասնորոյ կապալառուքն՝ զկէս մասն վարձուն հազիւ հատուցանեն Անապատին, իսկ վասն կէս մասին՝ տան զմատնահաչիւ և զգութ ողորմութեան կուսանացն խնդրելով՝ անհատոյց թողուն զմնացորդն, ուստի 'ի կալուածոց ոչ ունին հիմնաւոր կամ հաստատուն արդիւնս։

6. Ի կարի հարկաւոր դէպս տնական հարկաւորութեան և ծախուց արձակեն զխնդրագիր 'ի Հնդիկս կամ յայլ ուրեք առ այս կամ այն ոք բարեպաշտս և ստանան զկարևոր գումարս նպաստից։

Օգոստափառ Նիկոլայ Կայսրն Ռուսաց յամի 1851 բարեջնորհելոյ Նիխաչ Դիմետր Իվանիչ Դոլղորուկով Դեսպա-

նէին . շնորհեաց սոյն Անապատին զ170 թումանս Պարսից ։

Խօսրովեան Տէր Սամուէլեան մինչ կենդանին էր, առնէր տացս երբեմն երբեմն շնորհս ողորմածութեան, մերթ հարիւր և մերթ 50) թուման գումարօք ։

Նոյն 'ի վերոյ նշանակեալ արդեանց, ունին իրաւունս արձակելոյ 'ի Հնդիկս հրամանաւ Առաջնորդին Ջուղայու ըզնպաստս հաւաք 'ի խնդիր օգնականութեան ժողովրդոց ։

Ունին և զհաս ուխտաւորաց՝ ծնունդ օրհնելոյ երեխայոց՝ յուղարկաւորութեան ննջեցելոց և ժամոյ՝ որք մանաւոր են յոյժ ։

Է. Ծախք սոյն Անապատի լինի ոչ միայն 'ի պէտս միաբանութեանն, այլ և չքաւոր կանայք՝ որբացեալ աղջկունք աղքատաց, և բազում կարօտաւորք ստանան զմխիթարութիւն ողորմածութեամբ Անապատին, վասնորոյ ծանրանայ ծախքն՝ և նուազի գումար արդեանցն, ուստի միաբանութիւնն կենցաղավարի նեղութեամբ, և երբեմն պարտաւորի անկանիլ 'ի ներքոյ պարտուց ։ Իսկ եթէ տնական խոհեմ կառավարութիւն նոցա չեցէ զօրավիգ, վաղուբեմն աղքատութիւն և պարտականութիւն շուրջ պատէր զնոսօք ։

Ը. Պարոն Մանուկ Յարդանանեան Ջուղայեցի այժմ բընակեալ 'ի Սուրբայիա, յամի 1857 արար խոստումն բանալոյ 'ի սոյն Անապատի դպրոց մի վասն Որբորդաց, որ վասն լինի կարգադրութիւն յաղագս յայամ ամի բանալոյ դպրոցն զայն ։

Թ. Նորին Սրբազան Առաջնորդն ունի կարի բարեհաճութիւն և շնորհ առ միաբանութիւնն սոյն Անապատի, յաղագս բարեհամբաւութեամբ պահելոյ մինչև ցայսօր ժամանակի զանուն և զկարգ միաբանութեանն իւրեանց, վասնորոյ 'ի 20 Օգոստոսի 1855 ամի արար յաղագս սոյն Անապատի զբարեկարգութեան իւր կանոնադրութիւն ըստ յետագայ կարգին ։

Ջուղայեցւոյ, սկսեալ 'ի 1827 տարւոյ, որոյ զտարեկան տո-կոս ընդունէին երկու հարիւր կումպանի ռուփիս. ձեռամբն եկեղեցպանի Կալկաթու Հայոց Նազարէթայ սբ. եկեղեցւոյ:

Նոյին պարձեալ 'ի Կալկաթայ 'ի կառավարութեան Հայոց եկեղեցւոյն զմի հազար և հինգ հարիւր կումպանի ռուփիս, որ է կտակեալ գումար հանգուցեալ Տիկին Աննայ Յովհաննէս Յ. Տէր Կարապետի, սկսեալ 'ի 1851 տարւոյ, որոյ տարե-կան տոկոս տասնեան վաթսուն ռուփիս կումպանւոյ:

Ի մնդկէ Մադրասայ եկեղեցւոյ Հայոց, տասնեան տարեկան ( ) ռուփիս, որք են վաշխ կտակեալ գումարոց:

3. Հասանեն նուէրք ալիւր՝ իւղոյ՝ պանրի, և չորաթանի 'ի գաւառացն Զարմահալայ՝ Փէրիոյ՝ Բուրվարոյ՝ և Քեազա-զայ՝ այլ ոչ կարի առատութեամբ:

4. Յառաջ քան զժմնկ առաջնորդութե Ներկայ Սրբազան Թադդէոս արք եպիսկոպոսի ունէին սովորութիւն 'ի տնա-խմբութիւնս ժողովրդոց առաքելոյ զմոմ, և գնալոյ 'ի տուն-օրհնել ժողովրդոց, այլ Ներկայ Սրբազան Առաջնորդն խափանեաց զայնոսիկ, վասնորոյ ամի ամի շրջեցուցանէն 'ի-Ջուղայ զթուղթ վասն լուսագնոյ, որոյ բովանդակեալ գու-մարաւ, լինի ծախք լուսավառութեանն եկեղեցւոյ:

5. Կալուածք նոցա են Ղարամէնց՝ Ղարապէլի (7). մի-ջի և Տէր Պետրոսէնց այգիք, որք ընդ ամենայն բովանդա-կին 'ի 18 ջրիք: Վարձու տուեալ լինին յիշեալ կալուածք, վասնորոյ կապալառուքն՝ զկէս մասն վարձուն հազիւ հատու-ցանեն Առաջնորդին, իսկ վասն կէս մասին՝ տան զմատնահա-չիւ և զգութ ողորմութեան կուսանացն խնդրելով՝ անհա-տոյց թողուլ զմնացորդն, ուստի 'ի կալուածոց ոչ ունին հիմնաւոր կամ հաստատուն արդիւնս:

6. Ի կարի հարկաւոր դէպս տնական հարկաւորութեան և ծախուց արձակին զխնդրագիր 'ի Հնդիկս կամ յայլու-րեք առ այս կամ այն ոք բարեպաշտս և տանան զկարևոր գումարս նպաստից:

Օգոստափառ Նիկոլայ Կայսրն Ռուսաց յամի 1851 ըստ միջնորդելոյ Կնեազ Դիմետր Իվանիչ Դոլղորուկով Դեսպա-

նէին․ շնորհեաց սոյն Անապատին զ170 Թումանս Պարսից։

Խօսրովեան Տէր Սամուէլեան մինչ կենդանին էր, առնէր տօգս երբեմն երբեմն շնորհ ողորմածութեան, մերթ հարիւր և մերթ 5) Թուման գումարօք։

Ռուսաց 'ի վերայ նշանակեալ արդեանց, ունին իրաւունս արձակելոյ 'ի Հնդիկս հրամանաւ Առաջնորդին Ջուղայու ըղնպաստահաւաք 'ի խնդիր օգնականութեան ժողովրդոց։

Սենեկն և զհաս ուխտաւորաց՝ ծնունդ օրհնելոյ երեխայոց՝ յուղարկաւորութեան ննջեցելոց և ժամոյց՝ որք մանաւորեն յոյժ։

Է․ Ծախք սոյն Անապատի լինի ոչ միայն 'ի պէտս միաբանութեանն, այլ և չքաւոր կանայք՝ որբացեալ աղջկունք աղքատաց, և բազում կարօտաւորք ստանան զմխիթարութիւն ողորմածութեամբ Անապատին, վասնորոյ ծանրանայ ծախքն՝ և նուազի գումար արդեանցն, ուստի միաբանութիւնն կենցաղավարի նեղութեամբ, և երբեմն պարտաւորի անկանիլ 'ի ներքոյ պարտուց։ Իսկ եթէ տնական խոհեմ կառավարութիւն նոցա չէցէ զօրաւոր, վաղուց երբեմն աղքատութիւն և պարտականութիւն շուրջ պատէր զնոքօք։

Ը․ Պարոն Մանուկ Յարդանանեան Ջուղայեցի այժմ բնակեալ 'ի Ռուբբայիա, յամի 1857 արար խոստումն բանալոյ 'ի սոյն Անապատի դպրոց մի վասն Օրիորդաց, որ վասն լինի կարգադրութիւն յաղագս յայսմ ամի բանալոյ դպրոցն զայն։

Թ․ Արդէն Սրբազան Առաջնորդն ունի կարի բարեհաճութիւն և շնորհ առ միաբանութիւնն սոյն Անապատի, յաղագս բարեհամբաւութեամբ պահելոյ մինչև ցայսօր ժամանակի դանուն և զկարգ միաբանութեանն իւրեանց, վասնորոյ 'ի 20 Օգոստոսի 1855 ամի արար յաղագս սոյն Անապատի զբարեկարգութեան իւր կանոնադրութիւն ըստ յետագայ կարգին։

Բարեկրօն միաբանութեանն կուսանաց եղելոց 'ի Ջուղայ 'ի սուրբ Կատարինէ Անապատին ։



Նուէրք հոգևոր սիրով ողջոյն օրհնութեան ։

Մեր Եպիսկոպոսական և Առաջնորդական պարտաւորութիւն՝ ըստ որում վասն ամենայն հաւատացեալ հօտին մեր տեսչութեանն յանձն եղելոց՝ պատասխանատու է առ Աստուած, վասն որոյ պարտ համարեցաք հոգևոր խրատաբանութեամբ ձեզ ազդ առնել՝ ձեր կրօնաւորութեանն վերաբերեալ նախազգուշութիւնքն՝ զի չլինի թէ աշխարհիս փորձութիւնքն զձեզ ձգեսցեն նոյն առիւծոյ բերանն որ ըստ առաքելոյն բանի՝ շրջի և խնդրէ թէ զո՛ կլանիցէ, և ըստ սաղմոսերգողին կերակուրք նորա միշտ ընտիրքն են ։

Յակոբոս Սրբազան Առաքեալն կրօնաւորութեան համար այսպէս կըգրէ " կրօնաւորութիւն սուրբ և անարատ՝ առ 'ի յԱստուծոյ և 'ի Հօրէ՝ այս է . . . . . անարատ պահել զանձն յաշխարհէ „ աշխարհ ըստ որում միշտ մեղաց առաջկայից ծնօղ է, և մարդկային մեղաց չարութիւնքն միշտ յարաբերութիւն ունին ժամանակին ընթացից հետ, վասնորոյ Սրբազան առաքեալն կրօնաւոր եղողներուն համար պատուէր տուաւ " անարատ պահել զանձն յաշխարհէ „ ։ Եթէ մէկ աղտեղի նիւթից որ ոք մարդ անարատ մնալ կըցանկայ՝ այն նիւթիցն հրաժարելով կըհեռանայ . վասն զի որչափ մերձ մնայ այն նիւթին՝ նորա աղտեղութեաններից անարատ մնալ չի կարող ։ Այս պատճառի համար Սրբազան Հարք կանոնադրեցին և հաստատեցին զի նոքա որք կրօնաւորութեան վիճակ կըզօրոշին իւրեանց կենաց համար, անապատում բնակեն՝ աշխարհիս վայելչութիւններից հեռանալով, զի կատարեն առաքելոյ ասածն՝ " թէ անարատ պահեսցեն զանձն յաշխարհէ „ ։

Յիշեալ Սրբազան Յակոբոս Առաքեալն բաւական չի համարում կրօնաւորաց միայն անձամբ մնալն 'ի մէջ անապա-

որ, եթէ նոցա միտքն աշխարհի բաներին վերայ զբաղուած լինին, վասնորոյ պատուէր տայ ասելով. եթէ ոք կամիցի կրօնաւոր լինել և ոչ սանձահարիցէ զլեզու իւր՝ այլ զբաղեցուցանիցէ զսիրտն իւր, այնպիսւոյն վայրապար է կրօնաւորութիւնն.. Որով ուսուցանումայ թէ կրօնաւորն ոչ թէ միայն անձամբ այլև բոլորով սրտիւ և մտօք պարտի զինքն հեռացուցանել աշխարհի զբաղմունքներից :

Նոյն Առաքելոյ բանից համեմատ՝ սուրբ Հարքն կանոնադրեցին և հաստատեցին զի կրօնաւոր եղողքն աշխարհայինն ձևոյ զգեստն մերկանան և սքեմ կամ ուխտ և մաղեղէն հանդերձ զգենուցուն, որ նշան է՝ թէ նոքա աշխարհի զգեստն մերկանալով՝ հեռացան աշխարհի զբաղմունքներից, և կրօնաւորութեան զգեստովն իբրև որոշեալ համարվին աշխարհիս մէջն եղող բնակիչներից :

Կրօնաւորութիւնն՝ է կամաւորութեամբ նուիրել զանձն 'ի պաշտօն Աստուծոյ ընդ ամենայն ժամանակս կենաց : Վասն այսր կըպահանջի՝ ուխտադրութիւնն վասն անձնի կամաւոր նուիրման առ Աստուած : Իսկ վասն կատարեալ պահպանելոյ զնոյն վիճակս՝ կըպահանջի ուխտ աղքատութեան, ուխտ ողջախոհութեան և ուխտ հաստատուն մնալոյ 'ի պատուիրանս Աստուծոյ, մեղքերից և նորին պատճառներիցն հրաժարելով :

Արդ՝ որովհետև ձեր բարեկրօն միաբանութիւնն կամաւոր ընտրութեամբ ընտրեալ է կրօնաւորութեան վիճակն, ուխտադրեալ է առ Աստուած՝ զուխտն աղքատութեան, ողջախոհութեան և պատուիրանապահութեան, վասնորոյ և մեք սուրբ Հարց կանոնադրութեանցն համեմատ՝ հոգևոր պարտաւորութեամբ մերով և սիրովն Աստուծոյ կարգադրեմք վասն ձեր գլխաւորագոյն կանոնսն բարեկարգութեանց :

ա. Առաքելոյ նման ասացէք և դուք, մեզ աշխարհ 'ի խաչ ելեալ է և մեք աշխարհի. վասնորոյ զաշխարհս մերժեալ համարելով վասն ձեր՝ միմիայն ձեր Անապատն ընտրեցէք ձեզ տեղի օթագայելոյ ընդ ամենայն ժամանակս :

Բ. Եկեղեցին կամարակապ յօրինուածով կառուցեալ կայ 'ի միջակէտս. յանուն սրբուհւոյն Կատարինեայ, ունելով երկայնութիւն 35 ցստորոտ սեղանոյն, և լայնութիւն 22 ոտնաչափ։ Չունի յիշատակագիր յաղագս շինութեանն իւրոյ, չունի և որոշեալ դաս վասն ժողովրդոց կամ կանանց, յաղագս ոչ գոլոյ այնր ժողովրդական եկեղեցի։ Այս մասն եկեղեցւոյն ունի զպատկերս տնօրինականացն Յիսուսի, իսկ առաստաղն է ծաղկազարդեալ այլ ոչ գեղարուեստիւ։

Խաչկալն է պատկեր խաչելութեանն Յիսուսի։

Գ. Յարևելեան 'ի հիւսիսային և 'ի հարաւային կողմանս եկեղեցւոյն կան խուցք թուով երեսուն և երեք շինեալ յաղագս միաբանութեանն կուսանաց։ Շինութիւն նոյն խցից են կարի նեղ և անձուկ, մինչև անգամ թէ երկայնահասակ ոք մտցէ 'ի խուցսն յայնոսիկ՝ չկարէ կանգնել առանց գլխոյն յառաստաղն ոչ հասանելոյ։ Ըստ նմին օրինակի են և գաւիթք յորս են ճանապարհք մտանելոյ 'ի խուցսն յայնոսիկ։ Գաւիթք այնոքիկ հասարակաբար 'ի կուսանաց կոչին «փողրակ»։ Թուի ինձ թէ խորհրդով են շինեալ զյիշատակեալ խուցսն նովին նեղ և անձուկ դրութեամբ, թերևս 'ի միտ ածելով զՏէրունականն բան թէ, նեղ և անձուկ է ճանապարհն որ տանի 'ի կեանս յաւիտենականս։ Յամի 1842 բարերարութեամբ Աղայ Յակոբայ Պետրոսեան (3), նորոգեցան մասնաւորապէս եկեղեցին և շրջակայ շինուածք այնր, և շինեցաւ արձակ սենեակ մի յաղագս ընդունելոյ անդ զհիւրս։ Շինութիւն սոյն անապատի ըստ հիւսիսային կողման կցորդէ ընդ եկեղեցւոյն սուրբ Յովհաննու Մկրտչի 'ի Թաղն Զարուս։

Կառավարի եկեղեցին յԱւագ լուսարարէ և յերկու լուսարարից։ Արդի աւագ լուսարարն է կոյս Ռանդուխտ Տէր Գաբրիէլեան, և Տալիթայ և Եղիսաբեթ կուսանք են օգնական նմա կամ փոքր լուսարարք։

Դ. Աւանդութեամբ պատմեն կուսանք թէ 'ի Հայաստանեայ ընդ ժողովրդեանն փոխադրեցան աստ երեք կուսանք՝ Ռուտուփսանայ՝ Թագուհի՝ և Հռիփսիմէ անուամբք (4)։ Ի մէջ եկեղեցւոյ Անապատին կան երկու կուսանաց պատկերք, նը-

լարեալ 'ի վերայ կտաւոյ, զորոց աւանդութեամբ լուեալ է ծերոց՝ պատմեն արդի կուսանք, թէ մինն է պատկեր Ռու-փսիմեայ կուսի և Մայրպետի՝ և միւսն թագուհի գործակցի նորա կամ յաջորդի ։

Ե. Միաբանութիւնն կուսանաց կառավարեալ լինէր 'ի Մայրպետէ 'ի Յաջորդէ՝ և 'ի խորհրդական գրագրէ, իսկ յամի 1853, ըստ կարգադրութեանն Ներսիսի Սրբազան Թադ-դէոս արք եպիսկոպոս Առաջնորդի՝ յաւելան և վեց հոգաբարձուք կարգեալ 'ի նոյն միաբանութիւնն կուսանաց ։

Սեփին զգովելի կարգս տնտեսական կառավարութեան, և հաստատեալ 'ի վերայ հաւասարութեան սկզբան, որով չը-լինելով որոշումն կամ խտիր 'ի միաբանութեանն միջի խաղաղութիւնն 'ի նոսա անխռով շարունակի ։ Անապատն տայ զհաց և զկերակուր միաբանութեանն, և յորժամ ձեռնհաս լինի բաշխել զդրամս՝ ամի ամի տուեալ լինի միաբանութեանն հանդերձագին սակաւագումար ։ Իւրաքանչիւր միաբանի տան երկուսն լիտր ալեւր վասն տարեկան հացի, և զոր-հանապազ Անապատն պատրաստելով զկերակուրս բաշխէ ամենեցուն հաւասարութեամբ ։ Յաղագս տնական կառավարութեանն երեք տնտեսք են կարգեալ 'ի միաբանից անտի, մինն է տնտեսապետ և երկուքն օգնական նորա ։ Արդի տնտեսապետն է կոյս Սարրայ կամ Սառան, և օգնականք նորա կոյս Հռիփսիմէ և կոյս Գայիանէ ։ Յաշխարհական կանանց ունեն զմի դռնապան, և զմի խոհարար, և բաց յերկուց անտի չունին զայլ ծառայ կամ զաղախին ։ Փոքր լուսարարն 'ի մէջ գիշերի զարթուցեալ հարկանէ զկոչնակ (որ նշանաւոր է և համբաւի հարեալ սակս երկար հարկանելոյն և ձայնին) և միաբանութիւնն ընդ ձայն կոչնակին հաւաքին յեկեղեցին, և զոյգ զոյգ կանգնեալ առաջի սեղանոյ՝ առնեն զաղմկաերգութիւն մինչև լրանալ բոլորակ սաղմոսն, և ապա սկիզբն առնեն ինքեանք առնել զժամերգութիւնն ըստ իւրաքանչիւր աւուրց կարգին, որ և աւարտի նախ քան զծագելն արեւու կամ 'ի շառագունիլ ծայրիցն լերանց ։

Իւրաքանչիւր ոք 'ի միաբանից ունի ձեռագործ, որք ըստ մեծի մասին են գործել զգուլպայս. յորում այսպիսի՝ մինչ աւարտեն զաղօթս իւրեանց և զժամերգութիւն: Այս-ճառեն զձեռագործս իւրեանց և զնով նոցին հոգան զպէտս հանդերձից իւրեանց թէ ըմպելեաց և թէ այլ անձնական մա-նաւոր ծախուց. և եթէ իցեն ձեռնահաս՝ զաւելորդսն բաշ-խեն աղքատ կարօտաւորաց: Մեծ մխիթարութիւն է նոցա ջեր-հորն զոր ունին, զի ջուր նորա առաւել վճիտ պարզութեամբ և սառնութեամբ քան զջուրս ամենայն ջրհորոց Ջուղայու՝ յամառան զովութիւն յոյժ տայ միաբանութեանն: Բազումք յաղագս ըմպելոյ զջուր 'ի ջրհորոյ անտի յոլով անգամ գնան յԱնապատն այն յայցելութիւն ջրհորոյն:

Իւրաքանչիւր միաբան ունի զմի կամ զերկու և ոմանք յաւելի ևս աշակերտս՝ 'ի մատաղ որբոց, որոց տան 'ի բե-րան ուսանել զփոխս. զեկեղեցական երգս և զաղմոսս: Իւրա-քանչիւր միաբան գունն գործէ զմի ոք կամ զերկուս 'ի ձեռ-նասուն աշակերտաց իւրոց առնել կուսակրօն. մխիթարութիւն համարելով թողուլ զնոսա զկնի իւրեանց հոգևոր յիշատակ, ուստի միաբանութիւնն նոցա միշտ է հարուստ ըստ թուոյ: Յետ վախճանելոյ միոյ միաբանի, եթէ ինքն ունիցի 'ի պէտս յուղարկաւորութեանն իւրոյ պատրաստեալ գումար՝ առնեն նովաւ զծախսն, իսկ եթէ աղքատ իցէ վախճանեալն՝ Անա-պատն կատարէ զծախս թաղման նորա: Ինչք կամ ստաց-ուածք միաբանից յետ մահուան իւրեանց՝ Անապատին սեփ-հականեալ լինին, և ոչ ումեք ազգականացն: Ոչ ընդունին յաւխտ միաբանութեան կամ կուսակրօնութեան զօրիորդս զաշակերտեալսն ինքեանց նախ քան զլինելն նոցա քսանամեայ, զի մի թերութեամբ հասակին ապաշաւ լիցի նոցա յետ զղջ-բակեցութեան ուխտն ընդունելոյ: Յառաջ քան զժամանակ առաջնորդութեանն ներկայ Թադդէոս Սրբազան արք եպիս-կոպոսի, ընդունէին նորընծայքն 'ի կուսակրօնութիւն զըն-թեսլին եկեղեցական ստորին աստիճանս, և խարազնազգեստ լեալ համարեալ լինէին 'ի թիւ կրօնաւոր կուսանաց. իսկ յամի 1851 'ի 29 Սեպտեմբերի արդի Առաջնորդ Սրբազան

Թադդէոս եպիսկոպոսն շնորհեաց նոցա զաստիճան աւագսարկաւագութեան, պատուէր տալով որպէս սարկաւագ ընթերցաւորք լ'ի ժամ պատարագի՝ զգենլով զշապիկս դպրաց, և կրելով 'ի գլուխ զքօղ սպիտակ:

Յամի 1702, կամ 'ի Թուականին Ազարիայի 87, եղեալ են երեսուն և երեք կուսանք միաբանք սոյն Անապատի, որոց անուանք են, Տաւրիթայ՝ Մայրապետ, մեծ Մարիամ յաջորդ, Իպրաքսէ, Եղինար, երեք Վառվառք, չորս Մարիամք, Տաւրիթայ, Թագուհի, Գարան, երեք Եղիսաբեթք, Վարդենի, Կատան, Նիկլիէ, երկու Հռիփսիմէ, Ռողովմէ, Կատարինէ, Աննայ, Նունիա, Մանիա, Դրիսէս, Փեփրոնիա, Սանդուխտ, փոքր Վառվառ, Սոփիա և փոքր Եղիսաբեթ (5): Իսկ արդի միաբանութիւն նոցա բաղկանայ 'ի վեշտասան կուսանաց, որոց անուանք են՝ Եղիսաբեթ կամ Ջօջ կոչեցեալ Մայրապետ, Վառվառ Յաջորդ, Լուկիայ՝ Կատարինէ՝ Սանդուխտ՝ Հռիփսիմէ՝ և Վարդենի Հոգաբարձուք (6), Մանիայ, Սառրայ, Մարիամ, Սանդուխտ, Թեկղի, Եղիսաբեթ, Հռիփսիմէ, Տաւրիթայ, և Եղիսաբեթ:

Դ. Արդիւնք կամ հասք սոյն Անապատի են 1, ողորմութիւն արքային Պարսից. 2 տոկոս դրամագլխոյ. 3, նուէրք 'ի գիւղօրէից. 4, լուսագին. 5, արդիւնք կալուածոց. 6, նուէրք կամ պարգև բարեպաշտից:

1. Սկսեալ 'ի ժամանակէ Թագաւորութեանն Ֆաթալի-շահի յամի 1833 մինչև ցայսօր ժամանակի վեհափառ Տէրութիւնն Պարսից շնորհէ նոցա ամի ամի զերեսուն և հինգ թուման պարգև, որով ապահարկ լինին կալուածք Անապատի նոցա: Ի շնորհս միաբանութեանն կուսանաց, շնորհէ նոյնպէս վեհափառ Տէրութիւնն Պարսից Սրբակրօն Տէր Սարգիս քահանային Տէր Մատթէոսեան զտարեկան տասն թուման, յաղագս լինելոյ նորա երբեմն գրագիր նոյն Անապատի, և համարեալ լինելոյ քահանայ կուսանաց:

2. Ունին 'ի Կալկաթայ 'ի կառավարութեան Բրիտանիկեան ընկերութեանն Հնդկաստանի հինգ հազար ռուփի, որ է կտակեալ նուէր հանգուցեալ Աղայ Գէորգայ Մանուկեան.

Ջուղայեցւոյ, սկսեալ 'ի 1827 տարւոյ, որոյ զտարեկան տո-
կոս ընդունենն երկու հարիւր կումպանի ռուփիս, ձեռամբ
եկեղեցպանի Նալկաթու Հայոց Դադարէթայ սբ եկեղեցւոյ:

Մնունն դարձեալ 'ի Նալկաթայ 'ի կառավարութեան Հայոց
եկեղեցւոյն զմի հազար և հինգ հարիւր կումպանի ռուփիս,
որ է կտակեալ գումար հանգուցեալ Տիկին Աննայ Յովհաննէս
Յ. Տէր Նարապետի, սկսեալ 'ի 1851 տարւոյ, որոյ տարե-
կան տոկոս ստանան վաթսուն ռուփիս կումպանւոյ:

Ի մնդկէ Մադրասայ եկեղեցւոյ Հայոց, ստանան տարեկան
(   ) ռուփիս, որք են վաշխ կտակեալ գումարոց:

3. Հասանեն նուէրք ալիւր՝ իւղոյ՝ պանրի, և չորաթանի
'ի գաւառացն Չարմահալայ՝ Փէրիայ՝ Բուրվարոյ՝ և Քեազա-
զայ՝ այլ ոչ կարի առատութեամբ:

4. Յառաջ քան զժմնկ առաջնորդութեան Ներկայ Սրբազան
Թադէոս արք եպիսկոպոսի ունէին սովորութիւն 'ի տօնա-
խմբութիւնս ժողովրդոց առաքելոյ զմոմ, և գնալոյ 'ի տուն-
օրհնէք ժողովրդոց, այլ Ներկայ Սրբազան Առաջնորդն
խափանեաց զայնոսիկ, վասնորոյ ամի ամի շրջեցուցանեն 'ի
Ջուղայ զԹուղԹ վասն լուսագնոյ, որոյ բովանդակեալ գու-
մարաւ, լինի ծախք լուսավառութեանն եկեղեցւոյ:

5. Կալուածք Նոցա են Դարամէնց՝ Դարապէլի (7). մի-
ջի և Տէր Պետրոսենց այգիք, որք ընդ ամենայն բովանդա-
կին 'ի 18 ջրիք: Վարձու տուեալ լինին յիշեալ կալուածք,
վասնորոյ կապալառուքն՝ զկէս մասն վարձուն հազիւ հատու-
ցանեն Առաջնորդին, իսկ վասն կէս մասին՝ տան զմատնահա-
շիւ և զգութ ողորմութեան կուսանացն խնդրելով՝ անհա-
տոյց թողուն զմնացորդն, ուստի 'ի կալուածոց ոչ ունին
հիմնաւոր կամ հաստատուն արդիւնս:

6. Ի կարի հարկաւոր դէպս տնական հարկաւորութեան
և ծախուց արձակեն զխնդրագիր 'ի Հնդիկս կամ յայլ ու-
րեք առ այս կամ այն ոք բարեպաշտս և ստանան զկարեւոր
գումարս նպաստից:

Օգոստափառ Նիկոլայ Կայսրն Ռուսաց յամի 1851 ըստ
միջնորդելոյ Կնեազ Դիմետր Իվանիչ Դոլղորուկով Դեսպա-

նէն . շնորհեաց սոյն Անապատին զ170 Թումանս Պարսից ։

Խօսրովեան Տէր Սամուէլեան մինչ կենդանին էր, առնէր սոցա երբեմն երբեմն շնորհ ողորմածութեան, մերթ հարիւր և մերթ 50 թուման զումարօք ։

Նոցա 'ի վերոյ նշանակեալ արդեանց, ունին իրաւունս արձակելոյ 'ի Հնդիկս հրամանաւ Առաջնորդին Ջուղայու ըղ-նպաստահաւաք 'ի խնդիր օգնականութեան ժողովրդոց ։

Ունին և զհաս ուխտաւորաց՝ ծննդոց օրհնելոյ երեխայոց՝ յուղարկաւորութեան ննջեցելոց և ժամոց՝ որք մասնաւորեն յոյժ ։

Է. Նշանք սոյն Անապատի լինի ոչ միայն 'ի պէտս միաբանութեանն, այլ և չքաւոր կանայք՝ որքայեալ աղջկունք աղքատաց և բազում կարօտաւորք ստանան զմխիթարութիւն ողորմածութեամբ Անապատին, վասնորոյ ծանրանայ ծախքն՝ և նուազի զումար արդեանցն, ուստի միաբանութիւնն կենցաղաւորէ նեղութեամբ, և երբեմն պարտաւորի անկանել 'ի ներքոյ պարտուց ։ Իսկ եթէ տնական խնհեմ կառավարութիւն նոցա չէցէ զօրաւոր, վաղուրեմն աղքատութիւն և պարտականութիւն շուրջ պատէր զնոսօք ։

Ը. Պարոն Մանուկ Յարդանանեան Ջուղայեցի այժմ բընակեալ 'ի Սուրբայիա, յամի 1857 արար խոստումն բանալոյ 'ի սոյն Անապատի դպրոց մի վասն Որբորդաց, որ վասն լինի կարգադրութիւն յաղագս յայամ ամի բանալոյ դպրոցն զայն ։

Թ. Նորին Սրբազան Առաջնորդն ունի կարի բարեհաճութիւն և շնորհ առ միաբանութիւնն սոյն Անապատի, յաղագս բարեհամբաւութեամբ պահելոյ մինչև ցայսօր ժամանակի ղանուն և զկարգ միաբանութեանն իւրեանց, վասնորոյ 'ի 20 Օգոստոսի 1855 ամի արար յաղագս սոյն Անապատի զբարեկարգութեան իւր կանոնադրութիւն ըստ յետագայ կարգին ։

'Բարեկրօն միաբանութեանն կուսանաց եղելոց 'ի Ջուղայ 'ի սուրբ Կատարինէ Անապատին :



Սուէրբ հոգևոր սիրով ողջոյն օրհնութեան :

Մեր Եպիսկոպոսական և Առաջնորդական պաշտօնութիւն՝ ըստ որում վասն ամենայն հաւատացեալ հօտին մեր տեսչութեանն յանձն եղելոց՝ պատասխանատու է առ Աստուած, վասն որոյ պարտ համարեցաք հոգևոր խրատաքանութեամբ ձեզ ազդ առնել՝ ձեր կրօնաւորութեանն վերաբերեալ նախազգուշութիւնքն՝ զի չլինի թէ աշխարհիս փորձութիւնքն զձեզ ձգեսցեն նոյն առիւծոյ բերանն որ ըստ առաքելոյն բանի՝ շրջի և խնդրէ թէ զո՛ կլանիցէ, և ըստ սաղմոս երգողին կերակուրք նորա միշտ ընտիրքն են :

Յակոբոս Սրբազան Առաքեալն կրօնաւորութեան համար այսպէս կըգրէ " կրօնաւորութիւն սուրբ և անարատ առ 'ի յԱստուծոյ և 'ի Հօրէ՝ այս է . . . . անարատ պահել զանձն յաշխարհէ ,, աշխարհ ըստ որում միշտ մեղաց առարկայից ծնօղ է, և մարդկային մեղաց չարութիւնքն միշտ յաբաքերութիւն ունին ժամանակին ընթացից հետ, վասն որոյ Սրբազան առաքեալն կրօնաւոր եղողներուն համար պատուէր տուաւ " անարատ պահել զանձն յաշխարհէ ,, : Եթէ մէկ աղտեղիչ նիւթից որ ոք մարդ անարատ մնալ կըցանկայ՝ այն նիւթիցն հրաժարելով կըհեռանայ . վասն զի որչափ մերձ մնայ այն նիւթին՝ նորա աղտեղութեաններիցն անարատ մնալ չի կարող : Այս պատճառի համար Սրբազան Հարք կանոնադրեցին և հաստատեցին զի նոքա որք կրօնաւորութեան վիճակ կըտրուշեն իւրեանց կենաց համար, անապատում բնակուեն՝ աշխարհիս վայելչութիւններիցն հեռանալով, զի կատարուի առաքելոյ աւանդն՝ " թէ անարատ պահեսցեն զանձն յաշխարհէ ,, :

Յիշեալ Սրբազան Յակոբոս Առաքեալն բաւական չի համարում կրօնաւորաց միայն անձամբ մնալն 'ի մէջ անապա-

տի, եթէ նոցա միտքն աշխարհի բաներին վերայ զբաղուած լինին, վասնորոյ պատուէր տայ ասելով ․․ եթէ ոք կամիցի կրօնաւոր լինել և ոչ սանձահարիցէ զլեզու իւր՝ այլ զբաղեցուցանիցէ զսիրտն իւր, այնպիսւոյն վայրապար է կրօնաւորութիւնն ․․ ։ Որով ուսուցանումայ թէ կրօնաւորն ոչ թէ միայն անձամբ այլև բոլորով սրտիւ և մտօք պարտի զինքն հեռացուցանել աշխարհի զբաղմունքներից ։

Այս Առաքելոյ բանից հասկնմամբ՝ սուրբ Հարքն կանոնադրեցին և հաստատեցին զի կրօնաւոր եղողքն աշխարհային ձևոյ զգեստն մերկանան և սքեմ կամ սեաւ և մազեղէն հանդերձ զգենուցուն, որ նշան է՝ թէ նոքա աշխարհի զգեստն մերկանալով՝ հեռացան աշխարհի զբաղմունքներից, և կրօնաւորութեան զգեստովն իբրև որոշեալ համարվին աշխարհիս մէջն եղող բնակիչներից ։

Կրօնաւորութիւնն՝ է կամաւորութեամբ նուիրել զանձն 'ի պաշտօն Աստուծոյ ընդ ամենայն ժամանակս կենաց ։ Վասն այսր կըպահանջի՝ ուխտադրութիւնն վասն անձնի կամաւոր նուիրման առ Աստուած ։ Իսկ վասն կատարեալ պահպանելոյ զնոյն վիճակս՝ կըպահանջի ուխտ աղքատութեան, ուխտ ողջախոհութեան և ուխտ հաստատուն մնալոյ 'ի պատուիրանս Աստուծոյ, մեղքերից և նորին պատճառներիցն հրաժարելով ։

Արդ՝ որովհետև ձեր բարեկրօն միաբանութիւնն կամաւոր ընտրութեամբ ընտրեալ է կրօնաւորութեան վիճակն, ուխտադրեալ է առ Աստուած՝ զուխտն աղքատութեան, ողջախոհութեան և պատուիրանապահութեան, վասնորոյ և մեք սուրբ Հարց կանոնադրութեանցն հասկնմամբ՝ հոգևոր պարտաւորութեամբ մերով և սիրովն Աստուծոյ կարգադրեմք վասն ձեր զյետագայ կանոնսն բարեկարգութեանց ։

ա. Առաքելոյ նման ասացէք և դուք, մեզ աշխարհ 'ի խաչ ելեալ է և մեք աշխարհի․ վասնորոյ զաշխարհս մեռեալ համարելով վասն ձեր՝ միմիայն ձեր Անապատն ընտրեցէք ձեզ տեղի օթագայելոյ ընդ ամենայն ժամանակս ։

1. Մի՛ շատաշրջիկութեամբ ելանիջիք 'ի սուրբ Անապատէն ։
2. Մի՛ 'ի տունս ընտանեաց շատ երթևեկութիւն արասջիք, զի որ սիրէ զընտանիս՝ զհայրս՝ կամ զեղբայրս իւր՝ առաւել քան զՔրիստոս, չէ արժանի Քրիստոսին ։
3. Մի՛ մնասջիք 'ի գիշերին արտաքոյ քան զԱնապատն՝ 'ի տունս ընտանեաց ձերոց՝ անդ ննջելով, այլ յառաջ քան զմտանելն արեւու պարտիք ամենեքեան լինել 'ի մէջ սուրբ Անապատի՝ իւրաքանչիւր ոք իւր աղօթիցն պատրաստելով ։
4. Մի՛ առանց հրաւիրելոյ կամ առանց հոգևոր հարկին պահանջելոյ երթիջիք 'ի տունս ժողովրդոց ։

Բ. Որպէս 'ի մեղաց խորշելի է, նոյնպէս և նոցին պատճառանէրիցն արժան է զգուշանալ յորոց մեղք կը ծնանին, վասն որոյ,
1. Մի՛ պատանի կամ մարդ ոք՝ յաճախ երթևեկութիւն արասցէ 'ի վանս ձեր, թէ և ընտանի իցէ ձեր ։
2. Մի՛ այր ոք 'ի գիշերի ննջիցէ 'ի մէջ Անապատին, կամ մնասցէ 'ի խուցս ուրուք մինչև ցժամն երեկոյեան ։
3. Բացեալ լիցի դուռն Անապատին ընդ ծագմանն արեւու, փակեսցի յետ արեւուն մտանելոյ ։
4. Մարդ ոք մի մտցէ առանձին 'ի սենեակ ուրուք՝ անդ մնալով և խօսակից լինելով ընդ երկար. այլ թէ ընտանի իցէ և թէ օտարական՝ յետ կէս ժամու տեսութեանն ելանիցէ 'ի սուրբ Անապատէն, և մինչ մտանէ 'ի խուցս ուրուք՝ ներկայ լիցին անդ կուսանք երկու ։

Գ. Արտաքին պարկեշտութիւնն՝ է հայելի ներքին առաքինութեանն, վասն որոյ,
1. Մի՛ լինիջիք ընդ միմեանս շատախօս 'ի վերայ դատարկաբանութեան առարկայի, այլ փոխանակ այնմիկ, աղօթից ձերոց պարապեցէք ։
2. Մի՛ երբէք բոկոտն լիջիք ընդ ամենայն ժամանակս՝ թէ 'ի մէջ եկեղեցւոյ թէ 'ի մէջ պարսպի Անապատին՝ թէ 'ի սենեակս ձեր՝ և թէ յելանելն 'ի տանէ, այլ ընդ ամենայն ժամանակս լիցի զուլպայ յոտն ձեր ։

3 . Մի՛ իւիք ինչ երեւեսցի նշանն մարմնոյ ձերոյ (բաց 'ի յերեսաց և 'ի ձեռաց) վասնորոյ լայնեսցին լանջապանակք ձեր վասն ոչ երեւելոյ ստեանց կամ լանջից, երկարեսցին հանդերձք ձեր՝ զի մի՛ երեւեսցի միսն ոտին ձերոյ կամ եզերքն հանդերձից :

4 . Պատիւն ձեր և կանգնիլն լիցի այնպիսի սքողմնօք՝ զի մի՛ նշան ինչ անհամեստութեան երեւեսցի :

Դ . Յոր կոչումն կոչեցայք՝ 'ի նմին կացջիք, վասնորոյ,

1 . Ըստ նախկին սովորականին անխափան կատարեսջիք ըզկարգ գիշերային սաղմոսերգութեանն :

2 . Ամենեքեան զարթիջիք 'ի գիշերին 'ի լսել զձայնն կոչնակի՝ և միագումար պատրաստ լիջիք յեկեղեցւոջն վասն աղօթելոյ, այլ 'ի հիւանդացն մի՛ պահանջեսցի այդ՝ որչափ չիցեն ողջացեալ :

3 . Ի ցերեկս՝ սաղմոսերգութեան և աղօթից նուիրեսջիք զժամանակ ձեր :

4 . Յերեկոյեան ժամերգութեանն՝ նոյնպէս ներկայ լիջիք ամենեքեան, և յետ երեկոյեան ժամերգութեանցն՝ զկնի կէս ժամու պասսջիք զխաղաղականն գիշերոյ :

Ե . Վասն փառաւոր կացուցանելոյ զպաշտօնն Աստուծոյ,

1 . Յեկեղեցւոջն զդաստակարգութիւնն անխախտ պահեսջիք, առանց յաճախ ելոյ և մուտ առնելոյ, զի ժամ է պաշտել զՏէր :

2 . Մի՛ խօսակից լիջիք անդ ընդ միմեանս, այլ մտադրութեամբ և երկիւղիւն Աստուծոյ կատարեսջիք զաղօթսն :

3 . Մի՛ մտցէ ոք յեկեղեցին՝ առանց առ դուրսն ձգելոյ ըզփիլոնն :

4 . Առանց խնայելոյ կամ ճշդելոյ զլուսավառութիւնն եկեղեցւոյ շարունակեսջիք :

Զ . Որովհետև Անապատն ձեր շինեալ է 'ի մէջ քաղաքի և ժողովրդոց, և դուք ևս սովորութիւն չէք ունեցեալ իբրև միայնակեաց անապատական վարիլ, վասնորոյ կարգադրեմք զի երթևեկութիւն ձեր եղիցի ըստ յետագայ կարգին :

1. Վասն տեսութեան արենակից մերձաւոր ընտանեաց ձե-րոց՝ թոյլտուութիւն լիցի ձեզ գնալ յերկու ամիսն մի անգամ, այլ յորժամ երթալ կամիցիք՝ երեք միաբանք և ընկերակից լիցին ձեզ վասն առաւել ևս պատուոյ ձերոյ, և մնալն ձեր 'ի տան ընտանեաց մի երկարեսցի առաւել քան զմի օր, այլ նախ քան զմտանել արևու ան-խափան պարտիք վերադառնալ 'ի սուրբ Անապատն՝ առանց երբէք 'ի գիշերին մնալոյ արտաքոյ Անապատին։

2. Եթէ հանդէս մկրտութեան, հարսանեաց կամ այլ ու-րախութեան մինչ իցէ 'ի տան ընտանեաց ձերոց, միայն 'ի նոյն աւուրն պարտ է ձեզ գնալ և մնալ անդ իբրև հիւր, զի պատիւ սարկաւագութեան ձերոյ ոչ ներէ ձեզ իբրև անտես կամ իբրև տանուտէր վերակացու լինել աշխարհային գործոց, այլ գնալն ձեր լիցի յառա-ւօտուն՝ և վերադառնալն 'ի սուրբ Անապատն նախ քան զմտանել արևու։

3. Եթէ ննջեցեալ պատահիցի 'ի տան ընտանեաց իւրաքան-չիւր ումեք, թոյլտուամբ զի երեք միաբանիւք 'ի գիշերին մնասցեն 'ի տան ննջեցելոյն ոչ վասն տնտեսութեան կամ վերակացութեան, այլ վասն մխիթարելոյ զընտանիսն ննջեցելոյն հոգևոր խրատաբանութեամբ. իսկ այս մնալն միայն մի գիշեր եղիցի, և ոչ այլ յաւելցի։

4. Եթէ ընտանի ումեք հիւանդ իցէ՝ արժան է գնալ նմա տեսութիւն՝ այլ ոչ ստէպ ստէպ. և յորժամ երթալ կամիցին՝ երեք միաբանիւք երթիցեն 'ի պատիւ իւ-րեանց, և առանց 'ի գիշերին մնալոյ անդ՝ նախ քան զմ-տանել արևու դարձջիք 'ի սուրբ Անապատն։

5. Ընտանի ուրուք եթէ կամիցի գալ 'ի սուրբ Անապատն՝ և մնալ անդ իբրև հիւր, թոյլտուութիւն լիցի կանանցն մնալ միայն մի գիշեր, և 'ի հետևեալ աւուրն գնալ 'ի-տունն իւր, իսկ արք նախ քան զմտանել արևու պարտ-են գնալ 'ի տունս իւրեանց՝ առանց յամելոյ 'ի սուրբ Անապատին։

6. Այս ոք եթէ հիւանդանայցէ՝ միաբան քորք նորա խնամ

տարցեն նմա, և ընտանեացն մի լիցի ներողութիւն վասն դարմանելոյ զհիւանդն, այլ մայր՝ կամ քոյր հիւանդին կարէ մնալ առ հիւանդն երկու օր և երկու գիշեր միայն՝ վասն բնական սիրով մխիթարելոյ զհիւանդն ։

7. Ի գալ այլազգի իշխանաց 'ի տեսանել զԱնապատն՝ միայն Մայրապետն և երեք ծերագոյն կուսանք ընկալցին զնա, իսկ դեռահասակ կուսանք մի երբէք երևեսցին յաչս նոցա ։

8. Այս ամենայն կարգադրութիւնք սահմանեցան վասն ամենեցուն առ հասարակ, զի Մայրապետն՝ Յաջորդն և ծերագոյն կուսանքն ինքեանք իսկ հաստատուն պահպանելով զայս ամենայն՝ օրինակ լիցին կրսերնոց փոքրագունից. և փոքրագոյնքն հնազանդ եղիցին իւրեանց մեծաւորաց ։

Աղաչեսցուք զՀոգին սուրբ անարատ պահել զհոգեւոր միաբանութիւնն ձեր, հաստատուն պահպանել զսուրբ Անապատն ձեր, սուրբ առնել զկոչումն ձեր, և Աստուծոյ հաճելի կացուցանել զուխտն կրօնաւորութեան ձերոյ, առաքինութեամբ զարդարելով զհոգի ձեր ամենեցուն ։
Շնորհք Հոգւոյն սրբոյ ըստ ամենայն բարեաց մասին և ընդ ամենայն ժամանակս եղիցի ընդ հոգւոյդ ձերում, ամէն ։

Ի Ջուղայ [illegible] 'ի 20 Օգոստոսի 1855, և 1304 ։ համար 451 ։

Ժ. Շնորհիւն Աստուծոյ, սկսեալ 'ի հիմնարկութենէ սոյն Անապատի մինչև ցայսօր ժամանակի ոչ է եղեալ վատահամբաւութիւն ինչ յաղագս միաբանից սոյն կուսանոցի, այլ ընդ ամենայն ժամանակս գովելի հանդիսացեալ է ողջախոհութիւն՝ պարկեշտութիւն և սրբասիրութիւն սոյն միաբանութեան, իսկ յաչս այլազգեաց զարմանալի իմն համարի ուխտն կուսութեան սոցա, վանորոյ և պատկառելի է ամենեցուն սոցին միաբանութիւն ։ Յամի 1780 հրամանաւ վատշուէր բռնակալին Ալիմաղիխանի տարեալ եղեն 'ի կուսանաց Անապատէ երկու ողջկուսանք 'ի լրումն իւրոյ բղջախոհութեան կրից, յո-

րոց մինն էր դուստր Տէր Անդրէաս Քահանայի, և միւսն դուստր Սափրճի Ուսեփի, այլ նոքա տակաւին չէին ստացեալ զկրօնն կուսակեցութեան, այլ էին օրիորդք՝ զանձինս իւրեանց ընծայեալ վասն ուխտի կուսութեան ։ Բայց 'ի բռնաւորական գարշութենէ անտի, չեղև այլ ինչ ծագումն վատահամբաւութեան ։

Յամի 1834 երկու կուսանք 'ի միաբանութենէ աստի մինն Վառվառ անուն դուստր Աւետիկի Սափրճի, և միւսն Ռուստեմանէ՝ դուստր Պետրոս մոմչոյ, թելադրութեամբ և հրապուրանօք պապական ազգականաց իւրեանց՝ ելեալ յանապատէ աստի գնացին 'ի վանքն պապականաց, կելով անդ 'ի միասին ընդ վարդապետին և ընդ երթևեկ հիւրոց. ուրանօր մեռաւ Վառվառն, և յամի 1856 առաքեցաւ Ռուստեմանէն 'ի Պօլիս 'ի կուսանոցն պապականաց ։

---

(1). "Թուին ՌՃԷ . . . սուրբ Մովսէս հոգևոր Տէր և պատ-
" րիարքն ամենայն աշխարհաց (Եւ ամենայն Հայոց) նոր արեգական ծա-
" գեաց և 'ի յերկիրս դարուց եհաս, եղաւմ կարգ և ուղղափառ քրիստո-
" նէից ուղղեաց, որպէս և ջանանց վանք էր հաստատեաց, որ և
" Աստուածատուր մահէ խօջայ Եղիազարին հրամայեաց շինանալ եկեղե-
" ցին, նա իւր հալալ արդեամբքն շինեաց, շնորհօք և կարողու-
" թեամբն Աստուծոյ հիմնարկեաց փառաւոր վերանորոգեալ յանուն սուրբ
" հօրն Կարապետին, և զարդարեալ ջահեօք և լապտերօք որպէս վայելէ
" պատարագել և փառաբանութեան անմահ Թագաւորին Քրիստոսի . . . .", ։
Այս արձանագիր գրեալ 'ի վերայ գալարածոյ թղթոյ կայ և պահի 'ի նոյն կուսանոցէ ։

(2). Լինելն սոյն խօջայ Եղիազարու պապ Եղիշխանազարեան Եղիազարեանց սատէ Լինե յայտ, զի 'ի նորին արձանագրութեան յետ եկեղեցւոյ շինու-
թեանն յայտնելոյ՝ յիշատակէ " Աստուած օրհնէ նախ զխօջայ Եղիազարն
" որ շինեաց զեկեղեցին խնդրելով և փափագանօք, և եւ զհայր և
" յիշատակ եկեղեցւոյն զիւր խաչ՝ զիւր Աւետարան՝ զիւր Այսմաւուրք, զիւր
" սկիհ՝ զիւր շուրջառ՝ զիւր սաղաւարտ զիւր սեղանի ծածկոց, եպի-
" մամբան, զիւր ոսկեայ ազնալուխ ։

# ԳԼՈՒԽ Գ.

Մտանէ եկեղեցին ընդ լծով հարկատուութեան ։

ա. Ի Թուականի Հայոց 1120 (1671) 'ի սուրբ Աստուածածին վանքն Հաղարջրիք գեղջ՝ որ 'ի գաւառին Փերիա նստէր առաջնորդ Ստեփաննոս եպիսկոպոս, և ունէր զքանի միաբան վարդապետս ։

Մինն 'ի վարդապետաց անտի Յոհան անուն կամեցաւ ըստանալ զաստիճան եպիսկոպոսութեան, այլ Ստեփաննոս Առաջնորդ 'ի լսելն զայն՝ արգել զնա յայնմանէ սակս իւրոյ անարժանութեանն ։ Տեսեալ Յոհան վարդապետի թէ ոչ կարէ յայտնի ճանապարհաւ հասանել իւրում նպատակին՝. գաղտ յօրինեաց զմահուարն իւր՝ ժողովրդոց ոմանց վկայել տալով 'ի նմա, և արար զկնիք ըստ կնքոյ Առաջնորդին և կնքեաց զայն, և պատրաստելով զընծայս վասն Հայրապետին՝ գաղտ ել 'ի վանաց անտի և եկեալ 'ի Ջուղայ գնաց 'ի Պօլիս, և անդ ընկալեալ զաստիճան եպիսկոպոսութեան 'ի Յակոբ կաթողիկոսէ՝ վերադարձաւ 'ի Ջուղայ և գնաց 'ի Փերիայ ։ Ի լսելն Ստեփաննոս Առաջնորդի զհասանելն նորա 'ի Փերիայ 'ի գեօղն Խօջիղալայ՝ առաքեաց առ նա պատգամաւորս և ասաց թէ որովհետև գաղտագողի ստացար զկարգն եպիսկոպոսութեան, վասնորոյ մի՛ եկեսջիր 'ի վանքն, այլ նորա անլուր գտեալ առաջարկութեանն այնմիկ՝ գնաց 'ի վանքն, վասնորոյ Առաջնորդն հրամայեաց կալնուլ զնա և պահել 'ի փոնատան իբրև 'ի բանտի, իսկ 'ի գիշերին եկեալ ազգականաց նորա քակեցին զդուռն փոնատան և փախուցին անդէն զվարդապետն ։ Իբրև արձակեցաւ նա յարգելանաց անտի դիմեաց արշաւակի յԱսպահան քաղաք՝ գնաց 'ի դուռն Մօլլա-բաշի գլխաւորին՝ և ուրացաւ զՔրիստոս ։ †

Զայս գրեմ՝ հետեւելով բանիցն Ստեփաննոս երիցու որ է
նոյն Հազարջրիբ գեղջէ ։ Իսկ յԱնապատն կուսանց 'ի Ջուղայ ,
իշխանկարան ձեռագիր ճառընտրի միոյ այսպէս պատմէ յա-
ւագս այնր ։ « Այս երջանիկ վարդապետս ( Դաւիթ եպիսկո-
« պոս Ջուղայու ) ունէր աշակերտ մի Ստեփաննոս անուն , և
« սա եպիսկոպոս գոլով և սոցա ունէին աշակերտեալս բա-
« զում , և մի աշակերտ անուն գոլով Յոհան , և սա ապըս-
« տամբ գոլով գնաց 'ի Ստամբօլ սակս իշխանութիւն ( իմն
« եպիսկոպոսութիւն ) առնելոյ , և առաւ իշխանութիւն 'ի
« ձեռացն Սրբազան կաթուղիկոսի Յակոբայ , և եկաւ 'ի Սպա-
« հան ( յամի 1120, կամ 1671 ) և սոքա Ստեփաննոսն և
« Դաւիթն , վասն ինչ պատճառի եսուն 'ի ձեռս Դատաւո-
« րաց և զնա տուժեցին տանջանօք , և այս Յոհան նոր վար-
« դապետն 'ի սիրտ ելեալ գնաց տաճկացաւ , և բազում չարիս
« հասոյց վարդապետացն Դաւթի և Ստեփաննոսի , և գնաց
« առ Թագաւորն ( Շահսլէման ) և եդ զվարդապետսն 'ի զըն-
« դան , քանզի վեց ամիս է որ կան 'ի զընդան , և բազում
« տուգանս տուեալ են , դեռեւս չեն ազատեալ » ։

Թէպէտ կայ մանաւոր տարբերութիւն ընդ բանս Ստե-
փաննոս երիցու և սոյն յիշատակարանի , այլ գոգջիր նոյն են
իմաստքն ըստ նիւթոյն ։

Բ. Իբրև ուրացաւ Յոհան՝ չարախօսեցաւ առաջի Շահ-
սլէյման Թագաւորին և յայտնեաց թէ եկեղեցիք ունին զճոխ
զարդս ոսկւոյ և արծաթոյ՝ և գրգռեաց զնա թշնամանել
ընդդէմ Հայոց ։

Ի թեւալէրութենէ սնոտի 'ի նմին ամի հրամայեաց Թա-
գաւորն զհարկս 'ի վերայ ամենայն եկեղեցեաց՝ գրելով ըզ-
հրովարտակ յայն սակս , որոյ այս է թարգմանութիւն ։

« Հրաման հանրահռչակ , զի Քահանայք և Վարդապետք
« Հայոց որք կան յԱրքայանիստ քաղաքն Սպահան և յայլս
« գումար չորս հարիւր քսան և չորս թումանն 'ի կողմանէ
« հարկի թանգուզիւ ✝✝ տարւոյ՝ ( և յամենայն տարւոջ )
« յեկեղեցեացն Հայոց որք կան յԱսպահան և 'ի սահմանա-
« կիցսնորա՝ պահանջեսցի , ըստ նշանակեալ քանակութեանն

Բարեկրօն միաբանութեանն կուսանաց եղելոց 'ի Ջուղայ 'ի սուրբ Կատարինէ Անապատին։



Սուրբ հոգւոր սիրով ողջոյն օրհնութեան։

Մեր Եպիսկոպոսական և Առաջնորդական պարտաւորութիւն՝ ըստ որում վասն ամենայն հաւատացեալ հօտին մեր տեսչութեանն յանձն եղելոց՝ պատասխանատու է առ Աստուած, վասն որոյ պարտ համարեցաք հոգւոր խրատաբանութեամբ ձեզ ազդ առնել՝ ձեր կրօնաւորութեանն վերաբերեալ նախազգուշութիւնքն՝ զի չլինի թէ աշխարհիս փորձութիւնքն զձեզ ձգեցեն նոյն առիւծոյ բերանն որ ըստ առաքելոյն բանի՝ շրջի և խնդրէ թէ զո՛ կլանիցէ, և ըստ սաղմոս երգողին կերակուրք նորա միշտ ընտիրքն են։

Յակոբոս Սրբազան Առաքեալն կրօնաւորութեան համար այսպէս կըգրէ " կրօնաւորութիւն սուրբ և անարատ՝ առ 'ի յԱստուծոյ և 'ի Հօրէ՝ այս է . . . . անարատ պահել զանձն յաշխարհէ ,, աշխարհ ըստ որում միշտ մեղաց առարկայից ծնօղ է, և մարդկային մեղաց չարութիւնքն միշտ յարաբերութիւն ունին ժամանակին ընթացից հետ, վասն որոյ Սրբազան առաքեալն կրօնաւոր եղողներուն համար պատուէր տուաւ " անարատ պահել զանձն 'յաշխարհէ ,, ։ Եթէ մեկ աղտեղի նիւթից որ ոք մարդ անարատ մնալ կըցանկայ՝ այն նիւթիցն հրաժարելով կըհեռանայ. վասն զի որչափ մերձ մնայ այն նիւթին՝ նորա աղտեղութեաններից անարատ մնալ չի կարող։ Այս պատճառի համար Սրբազան Հարք կանոնադրեցին և հաստատեցին զի նոքա որք կրօնաւորութեան վիճակ կըորոշեն իւրեանց կենաց համար, անապատում բնակուեն՝ աշխարհիս վայելչութիւններից հեռանալով, զի կատարուի առաքելոյ ասածն՝ " թէ անարատ պահեսցեն զանձն յաշխարհէ ,, ։

Յիշեալ Սրբազան Յակոբոս Առաքեալն բաւական չի համարում կրօնաւորաց միայն անձամբ մնալն 'ի մէջ անապա-

տի, եթէ նոցա միտքն աշխարհի բաներին վերայ զբաղուած լինին, վասնորոյ պատուէր տայ ասելով. «Եթէ ոք կամիցի կրօնաւոր լինել և ոչ սանձահարիցէ զլեզու իւր՝ այլ զբաղեցուցանիցէ զսիրտն իւր, այնպիսւոյն վայրապար է կրօնաւորութիւնն»: Որով ուսուցանումս թէ կրօնաւորն ոչ թէ միայն անձամբ այլև բոլորով սրտիւ և մտօք պարտի զինքն հեռացուցանել աշխարհի զբաղմունքներից:

Այն Առաքելոյ բանից համեմատ՝ սուրբ Հարքն կանոնադրեցին և հաստատեցին զի կրօնաւոր եղողքն աշխարհային ձևոյ զգեստն մերկանան և սքեմ կամ սևս և մազեղէն հանդերձ զգենուցուն, որ նշան է՝ թէ նոքա աշխարհի զգեստն մերկանալով՝ հեռացան աշխարհի զբաղմունքներից, և կրօնաւորութեան զգեստովն իբրև որոշեալ համարվեն աշխարհիս մէջն եղող բնակիչներից:

Կրօնաւորութիւնն՝ է կամաւորութեամբ նուիրել զանձն 'ի պաշտօն Աստուծոյ ընդ ամենայն ժամանակս կենաց: Վասն այսր կըպահանջի՝ ուխտադրութիւնն վասն անձնի կամաւոր նուիրման առ Աստուած: Իսկ վասն կատարեալ պահպանելոյ զնոյն վիճակս՝ կըպահանջի ուխտ աղքատութեան, ուխտ ողջախոհութեան և ուխտ հաստատուն մնալոյ 'ի պատուիրանս Աստուծոյ, մեղքերից և նորին պատճառներիցն հրաժարելով:

Արդ՝ որովհետև ձեր բարեկրօն միաբանութիւնն կամաւոր ընտրութեամբ ընտրեալ է կրօնաւորութեան վիճակն, ուխտադրեալ է առ Աստուած՝ զուխտն աղքատութեան, ողջախոհութեան և պատուիրանապահութեան, վասնորոյ և մեք սուրբ հարց կանոնադրութեանցն համեմատ՝ հոգևոր պարտաւորութեամբ մերով և օրինօք Աստուծոյ կարգադրեմք վասն ձեր զյետագայ կանոնսն բարեկարգութեանց:

ա. Առաքելոյ նման ասացէք և դուք, մեզ աշխարհ 'ի խաչ ելեալ է և մեք աշխարհի. վասնորոյ զաշխարհս մեռեալ համարելով վասն ձեր՝ միմիայն ձեր Անապատն ընտրեցէք ձեզ տեղի օթագայելոյ ընդ ամենայն ժամանակս:

1. Մի՛ շատաշրջկութեամբ ելանիջիք ՚ի սուրբ Անապատէն :
2. Մի՛ ՚ի տունս ընտանեաց շատ երթևեկութիւն արասջիք, զի որ սիրէ զընտանիս՝ զհարս՝ կամ զեղբարս իւր՝ առաւել քան զՔրիստոս, չէ արժանի Քրիստոսին :
3. Մի՛ մնասջիք ՚ի գիշերին արտաքոյ քան զԱնապատն՝ ՚ի տունս ընտանեաց ձերոց՝ անգնաջելով, այլ յառաջ քան զմտանելն արևու պարտիք ամենեքեան լինել ՚ի մէջ սուրբ Անապատի՝ իւրաքանչիւր ոք իւր աղօթիցն պարապելով :
4. Մի՛ առանց հրաւիրելոյ կամ առանց հոգևոր հարկին պահանջելոյ երթիջիք ՚ի տունս ժողովրդոց :

Բ. Որպէս ՚ի մեղաց խորշելի է, նոյնպէս և նոյն պատճառաներիցն արժան է զգուշանալ՝ յորոց մեղք կը ծնանին, վասն որոյ,

1. Մի՛ պատանի կամ մարդ ոք՝ յաճախ երթևեկութիւն արասցէ ՚ի վանս ձեր. թէ և ընտանի իցէ ձեր :
2. Մի՛ այր ոք ՚ի գիշերի ննջիցէ ՚ի մէջ Անապատին, կամ մնասցէ ՚ի խուցս ուրուք մինչև ցժամն երեկոյեան :
3. Բացեալ լիցի դուռն Անապատին ընդ ծագմանն արեւու, փակեսցի յետ արևուն մտանելոյ :
4. Մարդ ոք մի՛ մտցէ առանձին ՚ի սենեակ ուրուք՝ անգմնալով և խօսակից լինելով ընդ երկար. այլ թէ ընտանի իցէ և թէ օտարական՝ յետ կէս ժամու տեսութեանն ելանիցէ ՚ի սուրբ Անապատէն, և մինչ մտանէ ՚ի խուց ուրուք՝ ներկայ լիցին անդ կուսանք երկու :

Գ. Արտաքին պարկեշտութիւնն՝ է հայելի ներքին առաքինութեանն, վասն որոյ,

1. Մի՛ լինիջիք ընդ միմեանս շատախօս ՚ի վերայ դատարկաբանութեան առարկայի. այլ փոխանակ այնմիկ, աղօթից ձերոց պարապեցէք :
2. Մի՛ երբէք բոկոտն լիջիք ընդ ամենայն ժամանակս՝ թէ ՚ի մէջ եկեղեցւոյ թէ ՚ի մէջ պարսպի անապատին՝ թէ ՚ի սենեակս ձեր՝ և թէ յելանելն ՚ի տանէ, այլ ընդ ամենայն ժամանակս լիցի գուլպայ յոտն ձեր :

3. Մի՛ թուլք ինչ երեւեսցի նշանն մարմնոյ ձերոյ ( բաց 'ի յերեսաց և 'ի ձեռաց ) վասնորոյ լայնեսցին լանջապանակք ձեր վասն ոչ երեւելոյ սոսանց կամ լանջաց, երկարեսցին հանդերձք ձեր՝ զի մի՛ երեւեսցի միսն ոտին ձերոյ կամ եզերքն հանդերձից ։

4. Պսակն ձեր և կանգնելն լիցի այնպիսի սքողմամբ՝ զի մի՛ նշան ինչ անհամեստութեան երեւեսցի ։

Դ. Յոր կոչումն կոչեցայք՝ 'ի նմին կացջիք, վասնորոյ,

1. Ըստ նախկին սովորականին անխափան կատարեսջիք ըղկարգ գիշերային սաղմոսերգութեանն ։

2. Ըմենեքեան զարթիջիք 'ի գիշերին 'ի լսել զձայնն կոչնակի՝ և միագումար պատրաստ լիջիք յեկեղեցւոջն վասն աղօթելոյ, այլ 'ի հիւանդացն մի՛ պահանջեսցի այդ՝ որչափ չիցեն ողջացեալ ։

3. Ի ցերեկս՝ սաղմոսերգութեան և աղօթից նուիրեսջիք զժամանակ ձեր ։

4. Յերեկոյեան ժամերգութեանն՝ նոյնպէս ներկայ լիջիք ամենեքեան, և յետ երեկոյեան ժամերգութեանցն՝ զկնի կէս ժամու տասջիք զխաղաղականն գիշերոյ ։

Ե. Վասն փառաւոր կացուցանելոյ զպաշտօնն Աստուծոյ,

1. Յեկեղեցւոջն զդասակարգութիւնն անխախտ պահեսջիք, առանց յաճախ ել և մուտ առնելոյ, զի ժամ է պաշտել զՏէր ։

2. Մի՛ խօսակից լիջիք անդ ընդ միմեանս, այլ մտադրութեամբ և երկիւղիւն Աստուծոյ կատարեսջիք զաղօթսն ։

3. Մի՛ մտցէ ոք յեկեղեցին՝ առանց առ դուրսն ձգելոյ ըղփիլոնն ։

4. Առանց խնայելոյ կամ ճշդելոյ զլուսավառութիւնն եկեղեցւոյ շարունակեսջիք ։

Զ. Որովհետև Անապատն ձեր շինեալ է 'ի մէջ քաղաքի և ժողովրդոց, և դուք ևս սովորութիւն չէք ունեցեալ իբրև միայնակեաց անապատական վարիլ, վասնորոյ կարգաւորեմք զի երթևեկութիւն ձեր եղիցի ըստ յետագայ կարգին ։

1. Այսն տեսութեան արենակից մերձաւոր ընտանեաց ձե-
րոց՝ թոյլտուութիւն լիցի ձեզ գնալ յերկու ամիսն մի
անգամ, այլ յորժամ երթալ կամիջիք՝ երեք միաբանք
և ընկերակից լիցին ձեզ վասն առաւել ևս պատուոյ
ձերոյ, և մնալն ձեր 'ի տան ընտանեաց մի՛ երկարեսցի
առաւել քան զմի օր, այլ նախ քան զմտանել արեւու ան-
խափան պարտիք վերադառնալ 'ի սուրբ Անապատն՝
առանց երբէք 'ի գիշերին մնալոյ արտաքոյ Անապատին։

2. Եթէ հանդէս մկրտութեան, հարսանեաց կամ այլ ու-
րախութեան մինչ իցէ 'ի տան ընտանեաց ձերոց, միայն
'ի նոյն աւուրն պարտ է ձեզ գնալ և մնալ անդ իբրև
հիւր, զի պատիւ սրբակրօնութեան ձերոյ ոչ ներէ
ձեզ իբրև տնտես կամ իբրև տանուտէր վերակացու
լինել աշխարհային գործոց, այլ գնալն ձեր լիցի յառա-
ւօտուն՝ և վերադառնալն 'ի սուրբ Անապատն նախ քան
զմտանել արեւու։

3. Եթէ ննջեցեալ պատահիցի 'ի տան ընտանեաց իւրաքան-
չիւր ումեք, թոյլտամբ զի երեք միաբանիւք 'ի գիշերին
մնասցեն 'ի տան ննջեցելոյն ոչ վասն տնտեսութեան կամ
վերակացութեան, այլ վասն մխիթարելոյ զընտանիսն
ննջեցելոյն հոգևոր խրատաբանութեամբ. իսկ այս մնալն
միայն մի գիշեր եղիցի, և ոչ այլ յաւելի։

4. Եթէ ընտանի ումեք հիւանդ իցէ՝ արժան է գնալ նմա
տեսութիւն՝ այլ ոչ ստէպ ստէպ. և յորժամ երթալ
կամիցին՝ երեք միաբանիւք երթիցեն 'ի սպասու իւ-
րեանց, և առանց 'ի գիշերին մնալոյ անդ՝ նախ քան ըզ-
մտանել արեւու դարձջիք 'ի սուրբ Անապատն։

5. Ընտանի ուրուք եթէ կամիցի գալ 'ի սուրբ Անապատն՝ և
մնալ անդ իբրև հիւր, թոյլտուութիւն լիցի կանանց
մնալ միայն մի գիշեր, և 'ի հետևեալ աւուրն գնալ 'ի
տուննս իւր, իսկ արք նախ քան զմտանել արեւու պարտ-
են գնալ 'ի տուն իւրեանց՝ առանց յամելոյ 'ի սուրբ
Անապատին։]

6. Այս ոք եթէ հիւանդանայցէ՝ միաբան քոյր նորա խնամ

տարցեն նմա, և ընտանեացն մի՛ լիցի նեղութիւն վասն դարմանելոյ զհիւանդն, այլ մայր՝ կամ քոյր հիւանդին կարէ մնալ առ հիւանդն երկու օր և երկու գիշեր միայն՝ վասն բնական սիրով մխիթարելոյ զհիւանդն ։

Է. Իգալ այլազգի իշխանաց 'ի տեսանել զԱնապատն, միայն Մայրապետն և երեք ծերագոյն կուսանք ընկալցին զնա, իսկ դեռահասակ կուսանք մի՛ երբէք երևեսցին յաչս նոցա ։

Ը. Այս ամենայն կարգադրութիւնք սահմանեցան վասն ամենեցուն առ հասարակ, զի Մայրապետն՝ Յաջորդն և ծերագոյն կուսանքն ինքեանք իսկ հաստատուն պահպանելով զայս ամենայն՝ օրինակ լիցին իւրեանց փոքրագունից. և փոքրագոյնքն հնազանդ եղիցին իւրեանց մեծաւորաց ։

Աղաչեցուք զՀոգին սուրբ անպարատ պահել զհոգեւոր միաբանութիւնն ձեր, հաստատուն պահպանել զսուրբ Անապատն ձեր, սուրբ առնել զկոչումն ձեր, և Աստուծոյ հաճելի կացուցանել զուխտն կրօնաւորութեան ձերոյ, առաքինութեամբ զարդարելով զհոգի ձեր ամենեցուն ։
Շնորհք Հոգւոյն սրբոյ ըստ ամենայն բարեաց մասին և ընդ ամենայն ժամանակս եղիցի ընդ հոգւոյդ ձերում, ամէն ։

Ի Ջուղայ [illegible] 'ի 20 Օգոստոսի 1855, և 1304 ։ համար 451 ։

Թ. Շնորհիւն Աստուծոյ, սկսեալ 'ի հիմնարկութենէ սոյն Անապատի մինչև ցայսօր ժամանակի ոչ է եղեալ վատահամբաւութիւն ինչ յաղագս միաբանից սոյն կուսանոցի, այլ ընդ ամենայն ժամանակս գովելի հանդիսացեալ է ողջախոհութիւն՝ պարկեշտութիւն և սրբասիրութիւն սոյն միաբանութեան, իսկ յաչս այլազգեաց զարմանալի իմն համարի ուխտն կուսութեան սոցա, վասնորոյ և պատկառելի է ամենեցուն սոցին միաբանութիւն ։ Յամի 1780 հրամանաւ վատշուէր բռնակալին Ալիմաղիխանի տարեալ եղեն 'ի կուսանաց Անապատէ երկու աղջկունք 'ի լռումն իւրոյ բղջախոհութեան կրից, յո-

# ԳԼՈՒԽ Գ.

Մտանելն եկեղեցեաց ընդ լծով հարկատուութեան ։

Ա. Ի Թուականի Հայոց 1120 (1671) 'ի սուրբ Աստուածածին վանքն Հազարջրիբ գեղջ՝ որ 'ի գաւառին Փերիա, նստէր առաջնորդ Ստեփաննոս եպիսկոպոս, և ունէր զքանի միաբան վարդապետս ։

Մինն 'ի վարդապետաց անտի Յոհան անուն կամեցաւ ըստանալ զաստիճան եպիսկոպոսութեան, այլ Ստեփաննոս Առաջնորդ 'ի լսելն զայն՝ արգել զնա յայնմանէ սակս իւրոյ անարժանութեանն ։ Տեսեալ Յոհան վարդապետի թէ ոչ կարէ յայտնի ճանապարհաւ հասանել իւրում նպատակին՝. գաղտ յօրինեաց զմանսարն իւր՝ ժողովրդոց ոմանց վկայել տալով 'ի նմա, և արար զկնիք ըստ կնքոյ Առաջնորդին և կնքեաց զայն, և պատրաստելով զընծայս վասն Հայրապետին՝ գաղտ ել 'ի վանաց անտի և եկեալ 'ի Ջուղայ գնաց 'ի Պօլիս, և անդ ընկալեալ զաստիճան եպիսկոպոսութեան 'ի Յակոբ կաթուղիկոսէ՝ վերադարձաւ 'ի Ջուղայ և գնաց 'ի Փերիայ ։ Ի լսել լինելն Ստեփաննոս Առաջնորդի զհասանելն նորա 'ի Փերիայ 'ի գեօղն Խօջիղալայ՝ առաքեաց առ նա պատգամաւորս և ասաց թէ որովհետև գաղտագողի ստացար զկարգն եպիսկոպոսութեան, վասնորոյ մի՛ եկեսջիր 'ի վանքն, այլ նորա անլուր գտեալ առաջարկութեանն այնմիկ՝ գնաց 'ի վանքն, վասնորոյ Առաջնորդն հրամայեաց կալնուլ զնա և պահել 'ի փռնատան իբրև 'ի բանտի, իսկ 'ի գիշերին եկեալ ազգականաց նորա բացին զդուռն փռնատան և փախուցին անդէն զվարդապետն ։ Իբրև արձակեցաւ նա յարգելանաց անտի դիմեաց արշաւակի յԱսպահան քաղաք՝ գնաց 'ի դուռն Մօլլաբաշի դիւանպետին՝ և ուրացաւ զՔրիստոս ։ †

Ապա գրեմ՝ հետեւելով բանից Ստեփաննոս երիցու որ է 'ի նոյն Հաղարջերը գեղջէ ։ Իսկ յԱնապատն կուսանց 'ի Ջուղայ, յիշատակարան ձեռագիր Ճառընտրի միոյ այսպէս պատմէ յաղագս այնր ։ " Այս երջանիկ վարդապետս (Դաւիթ եպիսկո-
" պոս Ջուղայու) ունէր աշակերտ մի Ստեփաննոս անուն, և
" սա եպիսկոպոս գոլով և սոցա ունէին աշակերտեալս բա-
" զում, և մի աշակերտ անուն գոլով Յոհան, և սա ապըս-
" տամբ գոլով գնաց 'ի Ստամբօլ սակս իշխանութիւն (իմա
" եպիսկոպոսութիւն) առնելոյ, և առաւ իշխանութիւն 'ի-
" ձեռացն Սրբազան կաթուղիկոսի Յակոբայ, և եկաւ 'ի Սպա-
" հան (յամի 1120, կամ 1671) և սոքա Ստեփաննոսն և
" Դաւիթն, վասն ինչ պատճառի ետուն 'ի ձեռս Դատաւո-
" րաց և զնա տուժեցին տանջանօք, և այս Յոհան Նոր վար-
" դապետն 'ի սիրտ ելեալ գնաց տաճկացաւ, և բազում չարիս
" հասոյց վարդապետացն Դաւթի և Ստեփաննոսի, և գնաց
" առ Թագաւորն (Շահսուլէման) և եդ զվարդապետսն 'ի զըն-
" դան, քանզի վեց ամիս է որ կան 'ի զընդան, և բազում
" տուգանս տուեալ են, դեռեւս չեն ազատեալ ,, ։

Թէպէտ կայ մասնաւոր տարբերութիւն ընդ բանս Ստեփաննոս երիցու և սոյն յիշատակարանի, այլ գոգջիր նոյն են իմաստքն ըստ նիւթոյն ։

Բ. Իբրև ուրացաւ Յոհան՝ չարախօսեցաւ առաջի Շահսուլէյման Թագաւորին և յայտնեաց թէ եկեղեցիք ունին զճոխ զարդս ոսկւոյ և արծաթոյ՝ և գրգռեաց զնա թշնամանել ընդդէմ Հայոց ։

Ի թեւլաբրութենէ անտի 'ի նմին ամի հաստատեաց Թագաւորն զհարկս 'ի վերայ ամենայն եկեղեցեաց՝ գրելով ըզհրովարտակ յայն սակս, որոյ այս է թարգմանութիւն ։

" Հրաման հանրահռչակ, զի Քահանայք և Վարդապետք
" Հայոց որք կան յԱրքայանիստ քաղաքն Սպահան և յայլս,
" գումար չորս հարիւր քսան և չորս թուման 'ի կողմանէ
" հարկի Թանգուզիլ †† տարւոյ՝ (և յամենայն տարւոջ)
" յեկեղեցեացն Հայոց որք կան յԱսպահան և 'ի սահմանա-
" կիցսնորա՝ պահանջեսցի, ըստ նշանակեալ քանակութեանն

« որք 'ի ներքոյ գրեցան յանուն իւրաքանչիւր եկեղեցեաց,
« և յանձնեցի այն գիր գանձարանին Տէրուն, ստանալով
« 'ի նմանէ զանդորրագիր: Դիւանադպիրք Տէրութեան՝ զա-
« տացեալ գումարն բաժանեսջիք 'ի վերայ քահանայից և
« վարդապետաց ըստ նշանակեալ կանոնին, որ թէ ոչ կատա-
« րեսցի, պահանջեսցի ստիպով»: Գրեցաւ յամսեանն Սա-
« ֆար, յամի 1085» (1671):

Ցուցակն, եկեղեցիք հին Ջուղայու

| | | |
|---|---|---|
| Վանքն Ամենափրկչի | Թուման | 50: |
| Մէյդանի եկեղեցի, 1 | » | 20: |
| Մուրատէնց, 2 | » | 25: |
| Խօջէմալէնց, 3 'ի Մէյդան Թաղի | » | 6: |
| Խօջայ Աւետքի, 4 | » | 15: |
| Խօջայ Նազարէնց, 5 | » | 12: |
| Խօջայ Կարապետի, 6 | » | 14: |
| Խօջայ Միրան, 7 | » | 8: |
| Խօջայ Շահվէլէնց, 8 | » | 20: |
| Խօջայ Ղարիբ, 9 | » | 20: |
| Խօջայ Ղահրամէնց, 10 | » | 30: |
| Սուրբ Յովհաննէս, 11 | » | 10: |
| Օհանայ վանք | » | 5: |
| Կուսանաց վանք | » | 30: |
| | | 265: |

Եկեղեցիք Նոր Ջուղայու:

| | |
|---|---|
| Յակոբջան, 12 | 15: |
| Իւետ Սամրդուղ, 13 | 12: |
| Խօջանէնց, 14 | 6: |
| Մէյդանի սուրբ Յակոբ, 15 | 5: |
| Խօջայ Աւետէնց կից տան, 16 | 5: |
| Պշահանայի, 17 | 5: |
| | 48: |

Եկեղեցիք Փերիոյ գաւառի ։

| | |
|---|---|
| Դարամաշայ . . . . . . . . . . . . . . | 1 ։ |
| Նամակերտ . . . . . . . . . . . . . . | 5 ։ |
| Թանգհալվայի . . . . . . . . . . . . . | 3 ։ |
| Ակեանդարի . . . . . . . . . . . . . . | 2 ։ |
| Նէկրոյ . . . . . . . . . . . . . . | 2 ։ |
| Սընկերտ . . . . . . . . . . . . . . | 1 . 5 ։ |
| Մղանակ . . . . . . . . . . . . . . | 1 ։ |
| Խօյեգան . . . . . . . . . . . . . . | 1 ։ |
| Միլակերտ . . . . . . . . . . . . . . | 2 ։ |
| Սրըշկան . . . . . . . . . . . . . . | 3 ։ |
| Շահբուլաղ . . . . . . . . . . . . . . | 1 ։ 5 ։ |
| Սանգիբարան . . . . . . . . . . . . . . | 3 ։ |
| Խունգ . . . . . . . . . . . . . . | ,, ։ 7 ։ |
| Վերին Խօյգանայ . . . . . . . . . . . . | 2 . 5 ։ |
| Ջամին . . . . . . . . . . . . . . | ,, ։ 5 ։ |
| Տաշքէշան . . . . . . . . . . . . . . | 1 . 5 ։ |
| Նոլորան . . . . . . . . . . . . . . | 2 ։ |
| Փընըստան . . . . . . . . . . . . . . | 1 ։ |
| Մէյտանակ . . . . . . . . . . . . . . | ,, ։ 7 ։ |
| Հազարջրիբ, վանքն 30, և եկեղեցին 1 . . . . | 31 ։ |
| Եզգօլայ . . . . . . . . . . . . . . | 1 . 2 ։ |
| Մէվըլըստան . . . . . . . . . . . . . . | ,, ։ 5 ։ |
| | 67 . 6 ։ |

Եկեղեցիք Բուրվարու նահանգի ։

| | |
|---|---|
| Փարչէս գեղջ . . . . . . . . . . . . . | 3 ։ |
| Փահրայ ,, . . . . . . . . . . . . . | 2 ։ |
| Ջումայ ,, . . . . . . . . . . . . . | 1 ։ |
| Բռահէլ ,, . . . . . . . . . . . . . | 1 ։ |
| Գավարդ ,, . . . . . . . . . . . . . | 1 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Զամախիրս գեղջ | . . . . . . . . . . | 2 : | |
| Ղաշկըրըզ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Դուղի զանկ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Կէյինով | „ . . . . . . . . . | 1 : | 4 : |
| Զայլուայ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Փերալէ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Կուբահարայ | „ . . . . . . . . . | 4 : | |
| Ինաֆշ | „ . . . . . . . . . | 3 : | |
| Իօռք | „ . . . . . . . . . | 2 : | |
| Ղարմշան | „ . . . . . . . . . | 2 : | |
| Շավրավայ | „ . . . . . . . . . | 1 : | 5 : |
| Խօսրովապատ | „ . . . . . . . . . | 1 : | 5 : |
| Մուրատխանի | „ . . . . . . . . . | 1 : | |
| Սէվերեցի | „ . . . . . . . . . | 1 : | |
| Դանխօշ | „ . . . . . . . . . | 2 : | |
| Զէշմփառայ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Դանի | „ . . . . . . . . . | 1 : | |
| Շարեֆայ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Զարբաղ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Հալֆարունակ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Զարթաղ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Ղըրթ | „ . . . . . . . . . | 2 : | |
| Շահբուլաղ | „ . . . . . . . . . | 1 : | |
| Դհանակ | „ . . . . . . . . . | 1 : | |
| | | 43 . | 4 : |

| | | |
|---|---|---|
| Գումար Հին Ջուղայու եկեղեցեաց հարկի . . . | 265 : | „ |
| Գումար Նոր Ջուղայու եկեղեցեաց հարկի . . | 48 : | „ |
| Գումար Փէրիու գաւառի եւ եւ . . . . . . | 67 . | 6 : |
| Գումար Բուրվարու եւ եւ . . . . . . . | 43 : | 4 : |
| Գումար . . . | 424 : | „ |

Դ. Այդ հարկատուութիւն եղև կարի վնասաւոր սակս Ջուղայու, նախ՝ զի ոչ միայն գումար հարկին 424 թումանն վճարեալ լինէր, այլ ընդ տասանորդին և ընդ այլ ծախուցն ՚ի պէտս արքունի հարկահանից, այն գումար ժամանէր ց800 թուման, երկրորդ՝ զի բազում ծախսարարութիւնք ե֊ղեն յաղագս հանելոյ զհրովարտակս սակս խափանելոյ զայն, այլ յետ ստանալոյ հրովարտակին՝ դարձեալ լինէր պահան֊ջումն այնր՝ և ՚ի դերև ելանէին ծախսարարութիւնքն, և երրորդ՝ զի բազում կաշառք տուեալ լինէին նախարարաց յաղագս զբարիս խօսելոյ առաջի թագաւորին զի բարձցի այն հարկատուութիւն, այլ յաջորդք Շահսուլէյման թագաւորի յաւէտ իւրեանց օգտից քան թէ ժողովրդախնամ իրաւա֊րութեան ուշ ունելով՝ պահանջէին զայն հարկ իբրև իրա֊ւունք կանոնաւոր հարկի ըստ սահմանելոյն նախորդ թագա֊ւորաց։

Կարգեմ ՚ի ներքոյ զթարգմանութիւնս քանի մի հրովար֊տակաց ըստ այնմ մասին տուեցելոց ՚ի Շահսուլթան Հուսէյնէ։

Ա.

" Հրաման հանրահռչակ, այն թէ՝ որովհետև յառաջ
" քան զայս ՚ի ժամանակս թագաւորութեանն Հօրն իմոյ
" (արքայութեանն արժանացելոյ որոյ ՚ի գերեզմանի լոյս
" ծագեսցէ) զհարկս եկեղեցեացն Ջուղայու (18) թողեալ
" էր յապահարկութեան, և երկրորդապէս եղեալ էր տնօ֊
" րէնութիւն զի ըստ կարգի միւս եկեղեցեացն՝ ստասցի հարկն
" նոցա, և յայսմիկ ժամանակի թախանձաբար աղաչեցաւ և
" խնդրեալ եղև՝ թէ որովհետև հին Ջուղայ յամենայն տարի
" վճարեալ է, և ոգոստափառուհի . . . . Հանիին իմ խընդ֊
" րեաց զի զհարկս նոյն եկեղեցեաց ըստ առաջնոյ կարգին
" բաշխեսցէ, յայն սակս ՚ի շնորհս յարգելի միջնորդութեան
" թագուհւոյն իսկզբանէ ինն ամսոյ Լուիլ (19) տարւոյ ըզ֊
" հարկս յիշեալ եկեղեցեացն բաշխելով՝ տնօրինեմք զի մի
" պահանջեսջիք։ Մեծ Դիւանադպիրք զայս հրովարտակ

" 'ի հաստատուն Դիւանական մատեանս օրինակեսջիք, ըզ-
" հարկս յիշեալ եկեղեցեացն մի՛ եւս պահանջեսջիք, եւ առ-
" ժամն հպազանդութեան համարեսջիք զայս արգելական
" հրաման: Գրեցաւ յամսեանն զիջաթօլ հարամ, յամի 1111
" ( 1695 ).

Բ.

" Հրաման հանրահռչակ, զի ըստ անվախճան արքայական
" շնորհացն եղելոյ վասն վարդապետաց՝ քահանայից՝ Թա-
" ղապետաց եւ ժողովրդականաց հին Ջուղայու Սպահանայ,
" հարկն եկեղեցեաց յիշեալ մասին որ պարգեւեցաւ. յառաջ
" քան զայս. եւ դարձեալ հրամանաւ հրովարտակի տնօրինե-
" ցաւ զի ստացի, վերստին 'ի սկզբանէ 7 ամսոյն Թանգու-
" զիլ տարւոյ 'ի շնորհս գլխոյ Թագաւորի՝ բաշխեցաւ, եւ
" հրամայեմք զի յետ այսու սակս հարկի յիշեալ եկեղեցեաց
" 'ի վարդապետաց՝ 'ի քահանայից եւ 'ի Թաղապետաց յի-
" շեալ Ջուղայու ոչինչ պահանջեսցեն, եւ յայն սակս մի նե-
" ղեսցեն, այլ զկրիչ եւ զքայլ ամփոփեալ կարճեսցեն:
" Բարձրապատիւ . . . . Ամիրախոռբաշի ստտիկան Ջուղայու,
" հաստատուն իմասջիք զ'ի սմա գրեալսն, եւ զհարկս եկե-
" ղեցեացն ըստ առաջնոյ պարգեւաբաշխ տնօրէնութեանն՝
" բաշխեալ համարեսջիք, եւ մի թոյլ տասջիք ումեք յայն
" սակս զնեղութիւն հասուցանել վարդապետաց՝ քահանա-
" յից եւ Թաղապետաց Ջուղայու, եւ ծանիջիք զայս հրա-
" ման անդիմադարձ հակառակելոյ, զի լինելոց է առիթ պա-
" տուհասից, վասնորոյ զգուշութեան պէտք են: Դիւանա-
" դպիրք մեծի Տէրութեան զգրեալսն 'ի սմա 'ի վաւերական
" Դիւանական մատեանս ձեր օրինակեսջիք, եւ ըստ այսմ մա-
" սին մի եւս արասջիք զպահանջումն:

" Գրեցաւ յերկրորդ Ջամադիօլ, յամի 1119 ,, ( 1703 ):

Գ.

" Հրաման հանրահռչակ, առ այն որովհետև քահանայք
" Նոր Ջուղայու՝ Փերիու՝ Բուրվարու՝ և Գեանդիմանու և այ-
" լոց գաւառաց քաղաքիս Սպահանայ, աղաչեցին մերում վե-
" հափառութեան, զի 'ի ժամանակս հանգուցեալ Թագաւո-
" րաց ոչ է եղեալ կարգ և կանոն դնելոյ զհարկս 'ի վերայ
" եկեղեցեաց հայոց, և յառաջ քան զայս առ Նախանձու և
" ըստ Թելադրելոյ Թշնամեաց. մանաւանդ ըստ սադրելոյ Նո-
" րահաւատ Շիխմօմէնի ††† (որ էր 'ի միաբանից Էջմիածնի
" և Թշնամացեալ էր ընդ ժողովրդեան Հայոց) սահմանա-
" դրեցաւ հարկ վասն եկեղեցեաց Հայոց: Յետ այնորիկ մինչ
" յայտնի եղև բարձրագոյն Դիւանին՝ թէ յիշեալ գործն Նո-
" րահաստատ է, Թողութիւն շնորհեցու նոյն հարկն, այլ վե-
" րըստին հաստատեցու հարկն այն՝ և պահանջեցաւ այն յեկե-
" ղեցեաց զի վճարեսցի, որոյ աղագաւ բազումք 'ի պատճառս
" հարստահարութեան ծառայից ոստիկանաց՝ փախուցեալ
" գնացին 'ի սահմանս օտար Տէրութեանց, վասն այնր'ի նե-
" ղին վիճակ անկանելով գործոյ նոցա աղաչեցին զի հարկն
" եկեղեցեաց շնորհիւ արքայական բարեգթութեան Թող-
" ցի, զի ըստ աւուրցն առաջնոց հանգիստ եղիցին: Եւ զնա-
" խարարս միջնորդ արկեալ էին զի ըստ վաղնջուց կարգին
" շնորհեսցի հրովարտակ վասն ազատութեան հարկաց եկե-
" ղեցեաց, ուստի որովհետև յիշեալ գործն չէր յաւուրց
" առաջին Թագաւորաց՝ անվաւեր է, վճռ 'ի Իլանիլ տար-
" ւոյ զհարկս Նոր Ջուղայու եկեղեցեաց և այլոց գաւառացն
" Սպահանայ ազատութիւն շնորհեցաք, զի յայսմհետէ ըստ
" սահմանագրեալ կարգին վեհափառ Շահաբասայ յանդոր-
" րութեան եղիցին, և պարապեսցին յաղօթս վասն հաստա-
" տութեան յաւիտենական Աթոռոյ Տէրութեանն:
" Դիւանադպիրք մեծագոյն Դիւանի, զհրաման հրովար-
" տակիս հաստատուն համարեսջիք, և 'ի Տէրուն տումարս
" օրինակեսջիք, և յայսմհետէ մի ևս պահանջեսցի (հրով-

“ արտակ ) առկս այնր ։ Գրեցաւ յառաջնում րէբիօւլ ամսոյ .
“ յամի 1125 . ( 1709 ) ։

Գ.

“ Հրաման հանրահռչակ, թէ որովհետեւ յառաջին ամս
“ վասն հարկի եկեղեցեաց հին և Նոր Ջուղայու և սահմա-
“ նակից գաւառացն Փէրիա՝ Բուրվարու՝ Գեանդիմանայ և
“ այլոց գաւառաց Սպահանայ ’ի Դիւանական տումարս հարկ
“ ինչ ոչ գոյ հաստատեալ, այլ միջոց մի յառաջ՝ զրպար-
“ տութեամբ Թշնամեաց՝ մանաւանդ Շէխմամիէն անուն Նորա-
“ հաւատի սահմանեցաւ հարկ վասն իւրաքանչիւր եկեղե-
“ ցեաց, և յետ այնորիկ վարդապետք՝ քահանայք և ժողո-
“ վրդականք յիշեալ կողմանց՝ աղաչեալ էին թէ յիշեալ ա-
“ ռարկայն է Նորայարմար, ուստի ըստ թախանձանաց նո-
“ ցա ’ի շնորհս արքայական բարեշնորհութեան բաշխեցաք
“ նոցա զգումար նոյն հարկի, սակայն եկրորդապէս և վե-
“ րըստին անօրէնութեամբ, ’ի ղուիլ 1127 ամի՝ յիշեալ գու-
“ մարն հասեալ եղև գանձարանին Տէրութեան, և եղև հա-
“ տուցումն այնր առ գանձապետն ։ Այլ յայսմ ժամանակի
“ միւսանգամ՝ Զաքարիայ քեալանթար՝ վարդապետ՝ թա-
“ ղապետք և քահանայք հայոց Ջուղայու աղաչեցին և
“ խնդրեցին, զի յիշեալ գումար հարկին թողցի, յայնսակս
“ արքայական շնորհածութեամբ պարգևեցաք յիշեալ ժո-
“ ղովրդոցն զգումար հարկին Նշանակեալ եկեղեցեացն, և
“ ’ի շնորհս գլխոյ թագաւորի հրամայեցաք զի յետ այսու ըստ
“ այնմ մասին մի՛ եղիցի պահանջումն ’ի նոցանէ ։ Բարձրա-
“ պատիւ գանձապետք, զգումար յիշեալ հարկին ’ի հաշւոյ
“ ձերոյ արտահանիջիք, և ըստ այնմ մասին մի՛ պահանջե-
“ ջիք ։ Դիւանադպիրք մեծի և բարձրագոյն Տէրութեան,
“ զգրեալսն ’ի սմա հաստատուն համարիջիք, զգումար յի-
“ շեալ հարկին ’ի դիւանական հաստատուն տումարաց ձերոց

« 'Ի բաց հանիջէք, զի նոր կարգ մի ըմնեցի, հակառակ այսմիկ
« հրամանի մի ինչ արասջիք, և զայս արգելս ծանիջիք և
« համարեսջիք արժանի պատզանդութեան: Գրեցաւ յամ-
« սեանն Ջիլհաճօլհարամ յամի 1128 (1712).

Մերոյ եղեալ չորեքին հրովարտակքն են տուեալ 'ի Շահհուսէյնէ, այլ նոքա զայն վայր ունեցեալ են ներգործութիւն՝ ցորքան կաշառ և պարգևք հայոց իշխ-բարկուաց եկեալ են յառաջին որինն վեհափառութեան և նախարարաց նորին, իսկ յետ զկաշառսն և զպարգևսն ստանալոյ, դարձեալ նորոգեալ լինէր հրամանն առնալոյ զհարկս եկեղեցեաց:

Դ. Ժողովուրդք Ջուղայու ոչ ես կարելով հատուցանել միանգամայն զծանրութիւն հարկին, զտուգանսն և զեկեղեցեմունս իւրեանց՝ և զհարկն եկեղեցեաց, պարտաւորեցան եկեղեցիք հին Ջուղայու վասն ամի 1720 զարծաթի զարդս եկեղեցեացն տալ 'ի վճար անիրաւ հարկին: Ցուցակ յայնմամի յեկեղեցեաց տուեալ արծաթի սպասուցն է 'ի ներքոյ նշանակեալն, (որ էր օրօշակի գրեալ 'ի քահանայից իւրաքանչիւր եկեղեցեաց և կնքեալ վասն հաստատութեանն՝ ըստ առաջարկելոյն Աստուածատուր և Յակոբ վարդապետաց):

« Սուրբ Գէորգայ եկեղեցւոյ սպասաւորք Տէր Յարու-
« թիւնս և Տէր Յովհաննէսս երկու լիտր և մի չարեք ար-
« ծաթ տուինք (ա)․ որ է 13 մեծ և փոքր խաչ:

« Սուրբ Յակոբայ եկեղեցւոյ սպասաւոր Տէր Յովհաննէս,
« երեք չարեք արծաթ պահաթսաղ գաւաթոյն տարանք
« փոխանքն ողորմած հոգի Զաքարիայ վարդապետին Թաֆիլ
« (բ)․ (յանձն) աքարինք, որ է մի բուրվառ, 11 խաչեր,
« 20 սաղավարդի խաչեր, արծաթէ սաղավարդներ, որ ողջի
« (դ)․ քաշն երեք չարեք էր:

« Սուրբ Բեթղահէմի եկեղեցւոյ սպասաւորք Տէր Աստուա-
« ծատուրս և Տէր Յարութիւնս տվինք, դ․ կանթեղ, ա․
« տապանակ, ա․ բուրվառ, բ․ ըսկիհ, դ․ մաղզման, ա․
« ըսկիհ ալաղան, է․ ձեռնախաչ, ա․ պատուանդան, որոց
« քաշն է մի լիտր երեք չարեք:

“ Սուրբ Թովմայի եկեղեցւոյ սպասաւոր Տէր Մարտիրոս և
“ Տէր Յովհաննէսս երկու լիտր արծաթ տվինք, որ էր խա-
“ չեր և խաչերի խնձորանի :

“ Սուրբ Յովհաննիսի եկեղեցւոյ սպասաւոր Տէր Մարգարս
“ և Տէր Յովաննէսս, տվինք մին բուրվառ, Ա. քշոց, Ա. ճա-
“ ճանչ, Ա. մեռոնաման, Թ. խաչ, Ա. արծաթով բռնած
“ սաղաւարդ, Ա. սկոհ պատուանդան, որ է քաշն մին լիդր
“ կէս չարէք, Ա. վակաս և մի քամար :

“ Սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյն երեք լիդր և մի չարէք
“ արծաթ տուինք Տէր Ստեփանին ձեռօքն :

“ Շահվէլէնց սուրբ Յովհաննիսի եկեղեցւոյն սպասաւոր
“ Տէր Մատթէոսս և Տէր Յոհանս տվինք Ա. լիտր արծաթ,
“ Ա. բուրվառ, Ա. սկիհ, Ա. քշոց, Ա. մեծ խաչ, Թ.
“ թեթև խաչ, Դ. ջուղտ (Դ) քամար : Ա. Աւետարանի
“ կոստղ, Դ. Աւետարանի գուշայ, (Ե). Դ. սաղաւարդի
“ խաչ :

“ Սուրբ Ստեփաննոսի եկեղեցւոյ սպասաւորք Տէր Ստե-
“ փաննոս, Տէր Մարտիրոս, Տէր Բարսեղս և Տէր Խաչա-
“ տուրս, լուսահոգի Աղայ Յակոբջանի ամբրոշն (Զ) Բ.
“ լիդր արծաթ, որ է սկիհ՝ խաչ՝ և մեռոնաման տվինք
“ Զաքարիայ վարդապետին :

“ Սուրբ Հոգի եկեղեցւոյ սպասաւոր Տէր Մարտիրոսս գի-
“ տակ եմ, որ չոք (Է). արծաթէ խաչ, Բ. քշոց, խաչէ
“ պատուանդաններ, սկւոյ պատուանդաններ, և էլ քսուր
“ արծաթեղէն հնէնց (Ը). սապատով (Թ). տարան որ
“ քաշեցին Ա. լիտր կէս էր :

“ Փռանշինոյ սուրբ Նազարէթի եկեղեցւոյ Տէր Սիմոնի
“ կողակից Սանդուխտս գիտակ եմ, որ քէթխուդէքն անօթին
“ ուզում, երկու մեծ խաչ իմ կենակից Տէր Սիմոնն տարա-
“ վանիքն տվէց քէթխուդէքոնցն, եկաւ մեզ ասաց, քաշն մի
“ լիտր ” :

Այս յիշատակութիւն յաղագս միւս եկեղեցեաց Ջուղա-
յու : Գումար արծաթեցն առացելոց 'ի տասն եկեղեցեաց 'ի վեր
անդր նշանակելոց է 16 լիտր և կէս և կէս չարէք :

Է․ Թէպէտ ստացան Հայք զնորեսին հրովարտակս 'ի Շահսուլթան Հուսէյնէ ասկս ապահովութեան եկեղեցեաց, այլ վճարումն հարկի եկեղեցեացն տակաւին շարունակեալ մնաց ցտիրելն Աղուանից զԱսպահան ։ Ջուղայեցի Հայք աստնց յուսաբեկ լինելոյ, դարձեալ մատուցին զաղերս իւրեանց առ Շահ Աշրաֆ, յորմէ և ընկալան զհրովարտակ ըստ յետադայ թարգմանութեանն ։

« Հրաման հանրահռչակ, զի որովհետև յայսմ ժամանակի
« քեալանթար՝ վարդապետք՝ թագապետք՝ քահանայք և
« ժողովուրդք հայոց, 'ի կողմանէ հարկի եկեղեցեաց հին և
« Նոր Ջուղայու՝ և գաւառացն Փերիու՝ Բուրվարու՝ Գեան-
« դըմանայ և այլոց սահմանաց Սպահանայ, եկեալ 'ի սպաս
« մեր բողոքեցին և խնդրեցին զապահարկութիւն եկեղե-
« ցեաց, և ապացուցին զայն խնդիր իւրեանց մատուցանելով
« 'ի տեսութիւն մեր զհրովարտակս առաջին թագաւորաց 'ի
« ժամանակէ Սաֆաֆեանց՝ որք թողեալ էին զայն հարկ ։
« Յաղագս այնորիկ ըստ կարեկցական շնորհաց Տէրութեան
« ողորմելով նոցա, զգումար եկեղեցական հարկացն՝ ըստ ա-
« ռաջնոյ ժամանակին թողուլ հրամայեցաք, զի յետ այսո-
« րիկ ըստ այնմ մասին մի ինչ պահանջեսցեն 'ի նոցանէ ։ Դի-
« ւանատպիրք մեծի Տէրութեան զմերոյ գրեալն հաստա-
« տուն իմասջիք, և զասացեալ գումարն 'ի դիւանական
« տումարաց արտահանիջիք, զի մի նոր կանոնաւորեալն այն
« հաստատեսցի ։ Զայսմանէ հրամանէս մի ելցի զանցառու-
« թիւն, և ասկս ամենայն տարւոյ մի պահանջեսցի նոր հը-
« րովարտակ, այլ պարտ վարկցի կատարումն ըստ այսոցիկ
« բանից ։ Գրեցաւ յամսեանն րամազան յամի 1137 (1721) ։

Քահանայք 'ի ներքոյ յիշատակեալ վեց եկեղեցեացն Նոր Ջուղայու գրեն 'ի Հնդիկս առ խօջայ Մաքսուն անուն ոմն Պետրոսեան երեւանցի յաղագս առաքելոյ զծախսն եղեալ ասկս ստացման վերոյգրեալ հրովարտակին ։ Բանք նոյն խընդրագրոյ ըստ այսմ մասին արժանի յիշատակութեան գոլով, նշանակեմ 'ի ներքոյ ։

« Քրիստոսի նուաստ ծառայք՝ Երեւանցոց սուրբ Ամենա-

" փրկչի մեծ եկեղեցւոյ հասարակ քահանայք, սուրբ Յակո-
" բայ եկեղեցւոյ որ մակ անուամբ կոչին Բաղաթայ՝ հասարակ
" քահանայք, սուրբ Մինասայ եկեղեցւոյ հասարակ քահա-
" նայք՝ որ առին Մէյդանի, սուրբ Աստուածածնի եկեղեցւոյ
" հասարակ քահանայք՝ որ է Գազկեցւոց, սուրբ Լուսաւորչի
" եկեղեցւոյ հասարակ քահանայք՝ որ եմք Թարւզեցւոց, և
" սուրբ Աւետոքի եկեղեցւոյ հասարակ քահանայք՝ որ եմք
" Գաւռապատցւոց, յորոց օրհնութեամբ և սիրով ողջոյն
" հասցէ բարեպաշտօն և ողորմած խօջայ Մալխանիդ . . .
" Ած քեզ և մեր ժողովուրդն օրհնէ, այնչափ փող (Ժ).
" էին խալճէլ (ԺԱ)· վասն սուրբ եկեղեցեաց մալէ-
" ին (ԺԲ), բաշխելոյ Ռուղամին (ԺԳ)· համար. որչափ ոչ
" գոյր չափ, որ ոչ կարէաք եւս յիշել զանուն Ռուղամին
" հանելոյ, վասնորոյ յետին լթշուառութեան միջի կայաք.
" ողորմածն Աստուած ըստ իւրում մեծի ողորմութեանն մեզ
" ողորմեցաւ որ զքեզ 'ի հեռուստ յորդորեաց զայն թուղթն
" գրել մեզ, յորում գրեալ էիր մեզ՝ թէ երփ (ԺԴ)· դուք
" սոց եկեղեցեաց մալէին բաշխել է ուղամ հանէք, և նորին
" հաստատուն սաւադն (ԺԵ)· աղարկէք (ԺԶ), ինձ; եւ
" մին Ճ թուման ողորմութիւն տամ, որ հասանի ձեզ: Երփ
" այս յուսադրական գիրն եհաս, ամենեքեանս նոր հոգի
" առաք և կրկին յոտին կանգնեցաք, և նոր այլ արզ (ԺԷ)·
" արարաք, և փող խառնեցաք, ինչ լսածես թէ որչափ
" կախեցաք զանեցաք՝ և նախատեցաք՝ զոր ոչ լինի մի ըստ
" միոջէ ընդ գրով արկանել, մինչ որ Աստուած մեր ռահ-
" մըդիլ (ԺԸ)· շահի սիրտն ռահմ (ԺԹ)· ձգեաց, որ այս
" ուղամին մեզ շնորհեաց, որով միխեալ էաք և կենդանա-
" ցաք, քանզի եթէ չէր բաշխուել, Աստուած մի արասցէ
" այժմ եկեղեցիքս մեր և քահանայութիւնն բարձրուեր
" էր, քանզի դՃ թուման խարջ գնաց, այժմս զօհանամք
" զԱստուծոյ որ ոչ անտես արար զմեզ զծառայսս իւր . . .
" այժմս Քրիստոսիւ ազատ եմք 'ի հարկապահանջողաց, ա-
" պա ՌՃԻ թմՆ պարտքայ մնացել եկեղեցեաց վերայ, որ
" ամենէն ՌՃԾ դեան շահ եմք քաշում, քանզի հնդուքից (Ի).

« եմք առեալ, և զմեր սուրբ եկեղեցեաց որբութեան սպասք
« և անօթքն ամէնն անաստուած կռապաշտից մօտ գրաւու-
« մէ, և սուրբ եկեղեցիքս մեր ամէնն անզարդ՝ մերկ և կո-
« ղոպուտ մնացեր է, և մեք այլ երես չունեմք մեր ժողո-
« վրդեան մօտն որ փող ուզեմք, վասնորոյ մեծաւ յուսով
« զայս խնդրեցաք առ Աստուած սիրուք քոյ մասլահաթով
« (խա). և գիտութեամբ մեր Առաջնորդ Մովսէս Աստուա-
« ծաբան վարդապետին . . . . . . „ :

Դ. Յետ ստացման հրովարտակին Շահ Աշրաֆայ, թուի թէ վերջացաւ հատուցումն եկեղեցական հարկին, զի յայնմ հետէ ոչ ևս լինի յիշատակութիւն եկեղեցական հարկաց: Ըստ իմ խորհրդածելոյ պատճառն ապահարկութեան եկեղեցեաց եղև չփոթումն վիճակի թագաւորութեանն պարսից յետ մուտ գործելոյ Աղուանիցն 'ի Պարսկաստան, և յետ զօրանալոյ Նադիրշահի և յաղթանակելոյ 'ի վերայ Աղուանից, զի յայնմ խառն ու չփոթ ժամանակի թերևս Դիւանական տումարքն Շահսուլէյմանայ կամ Շահ սուլթան Հուսէյնի կորեալ անհետացան, և հրամանն շահ Աշրաֆայ մնաց հաստատուն յաղագս ապահարկութեան եկեղեցեաց:

Յիսուն ամ տևեաց ստացումն եկեղեցական հարկին, որոյ գումար առ պակասն յամն 800 թուման հաշուելով՝ լինի 40 հազար թուման: Ա՛յդ է արգասիք չարանախանձ մատնութեան չէք վարդապետին Շիխմօմէնի:

---

* . Ստեփաննոս երէց դարմօգէր էջ 26 — 30 :

** . Անուն կենդանակերպի տարւոյ :

(1). Բեթղահէմ : (2). սուրբ Յակոբ : (3). սուրբ Հոգի : (4). սուրբ Աստուածածին : (5). սուրբ Գէորգ : (6). սուրբ Թովմայ : (7). Անանիայ Առաքելոյ : (8). սուրբ Յովհաննէս : (9). սուրբ Լուսաւորիչ : (10), սուրբ Ստեփաննոս Յակոբջանեանց թաղի : (11). սուրբ Յովհաննէս Չարսու թաղի : (12). Երևանայ սուրբ Ամենափրկիչ : (13), Թարվերդեցւոց սուրբ Լուսաւորիչ կամ սուրբ Մինաս : (14). սուրբ Յակոբ կամ Բաղաբայ ժամ : (15). Գանձակեցւոց Մելքոմի սուրբ Յակոբ : (16). Քոչերի, սուրբ Ներսէս :

«« խայիցն լուսաւոր Հոգւոյ Մովսէս վարդապետն բաժանեաց
« յաւել և զերկուս Դպրատունս, զմէկն Մուրատէնց եկե-
« ղեցին՝ և զմէկն սուրբ Ստեփաննոսի եկեղեցին, կարգեաց
« և նոցունց Դպրապետս և ուսուցիչս. որում և դուք գի-
« տակ իսկ էք» ։ Այպա արգելէ զի երիցունք մի՛ 'ի տունս ի-
րեանց ուսուսցեն զմանկունս այլ առաքեսցեն 'ի Դպրոցս ։

Յայտ լինի 'ի բանից անտի, զի իսկզբանէ հիմնարկու-
թեանն Ջուղայու 'ի վանին Ամենափրկչի եղեալ է Դպրատուն.

Առաջին վարժապետ այնմ Դպրոցի եղև Խաչատուր Կեսա-
րացի առաջնորդ վանիցն, որում աշակերտեցան Դաւիթ Ե-
պիսկոպոս և այլք ոմանք, յետ նորա եղև Դաւիթ Առաջ-
նորդ (1) . զկնի նոցա Ստեփաննոս Առաջնորդ և յետոյ և
տասներրորդ դարուն էր Կոստանդ դպիր ։ Որոյ լեալ են հետ
զհետէ երկերիւր և յիսուն աշակերտք ։ Ըստ որում
'ի ժամանակի այնմիկ ծաղկեալ էր վաճառականութիւնն 'ի
Ջուղայ, վանորոյ երևելի իշխանք հոգ տանէին զի ման-
կունք իւրեանց ուսանիցեն զհամարակալութիւն, զհասարակ
ընթերցումն գրոց և զգրագրութիւն, զորս բաւական համա-
րէին սակս իւրեանց որդւոց, ուստի դասատուութիւն նոյն
Կոստանդ վարժապետի էր թուաբանութիւն, հասարակ ըն-
թերցողութիւն, գրագրութիւն և ըստ մեծի մասին խրատ
յաղագս վաճառականութեան ։ Շինեալ է նա յամի 1687 ըզ-
մատեան մի, յորում կան խառն առարկայք, զի խրատ վասն
վաճառականութեան, սկզբունք թուաբանութեան, գործա-
ծութիւն Աղարիայի թուականին և այլ խառն պարագայք,
որոց աղագաւ կոչեցաւ այն մատեան՝ «աշխարհաժողով»
(2) ։ Սկզբունք խրատու աւանդեալ յայնմ մատենի վասն
վաճառականութեան են այսոքիկ «մի երթիցես միայն 'ի Ճա-
«նապարհ, անփորձ և անճանաչ ընկերի հետ մի՛ նստիցես
« և մի՛ քնիցես, զուցէ սպանիցէ զքեզ և առցէ զինչս քո,
« պաշարն 'ի տաշտէդ առ՝ ընկերն 'ի տանէդ, քաղաքն 'ի
« ծոցդ պահեա, գրիչ ղամբարն 'ի Ջուղայ պահեա, ղանթարն
« 'ի թամբալիթդ՝ կշեռքն իւր գրամներովն 'ի օխտեանդ. կի-
« սադագն 'ի գօտիդ, խելքդ 'ի գլուխդ, միտքդ առ Աստ-

« ռամ, ինչ Աստուած շնորհեաց քեզ՝ նովաւ շատացիր․․․,
« անփորձ մարդոյ ամանաթ մի տար, զամենայն առ և տուր
« գրեա և էս օրէն վաղն մի ձգեր »։ Ի նմին մատենի կայ ո-
տանաւոր մի շինեալ ՚ի նոյն Կոստանդ վարժապետէ, որ ՚ի
մերում ժամանակի ևս տակաւին երգեալ լինէր այն՝ ՚ի մանր
աշակերտացն Դպրոցաց ։

Կարդա Մանուկ՝ ուսիր սիրով, զարմանազան բանս ասելով,
որոք լսեն ունկն դնելով՝ գովեն զքեզ փառս տալով ։
Սաղմոս կարդեաց, Դաւիթ արքայն, յամէն մարդոյ է պատ-
ուական ։
Տէրն տայ քեզ միտք բանական՝ վարժ ասելով ամէն բան ։
աշխատութեամբ դու գիր ուսար՝ աղօթելով լինես ար-
դար,
նաւահանգիստ ահա գտար՝ խոնարհութեամբ դրուատե-
ցար ։
Դաւանութեամբ խոստովանես՝ Ջերմ արտասուօք մեղայ գո-
չես,
Քահանայից գործքն յայտնես՝ սուրբ Հաղորդին արժան
լինես ։
Կոստանդ դու քո մեղքն ասիր՝ լալով առ Աստուած յուսացիր,
բանք հարցմանց ժողովեցիր՝ Թողեր յաշխարհս գնացիր ։

Տապան նոյն Կոստանդ վարժապետի կայ ՚ի վարդապետաց
հանգստարանին Ջուղայու ունելով զայս տապանագիր « տա-
« պանս այս է միայնակեաց Դպրապետ Կոստանդին որ փոխե-
« ցաւ առ ՚ի Քրիստոս 1151 (7106) ։

Մովսէս Առաջնորդ յաւել զերկու ևս Դպրատունս, մինն
յեկեղեցւոջ Մուրադենց սուրբ Յակոբայ, և միւսն յեկե-
ղեցւոջ սուրբ Ստեփաննոսի ։

Բ. Մեծահամբաւ Ջուղայեցի Աղայ Պետրոս Ղուկանեան
երևելի իշխան և վաճառականն ՚ի Մադրաս, յամի 1750 կը-
տակեաց քանն և վեց հազար հինգ հարիւր արկաթ ռուփիս,
զի նովին գումարաւ բացեալ լիցի ՚ի Ջուղայ Դպրոց հիմնա-

ւոր, յորում եղիցի դասատուութիւն Հայերէն՝ Լատիներէն և Պարսկերէն լեզուաց ( 3 ) :

Չիք տեղեկութիւն ինչ թէ կատարեցաւ ազգասէր կամք Նորա, քանզի յայնմ ժամանակի եղև պատերազմ Անգղիացւոց և Գաղղիացւոց 'ի Հնդկաստան, և գումարք կտակի Նորա անկան 'ի Ներքոյ դժուարութեան, Ջուղայ ևս վտանգեալ կայր յերեսաց անդադար բռնակալութեանց, ուստի իմ կարծիք է թէ այն գումար թաղեալ 'ի դժուարութեան, կամք ազգասիրին այնմիկ մնաց ապարդիւն :

Դ. Յամի 1825, Պարոն Յովսէփ Վօլֆ Անգղիացի եկն 'ի Ջուղայ, և իւրով ծախիւք կամէր բանալ դպրատուն վասն Ջուղայու մանկանց, այլ դժուարութիւն պարագայից քաղաքական կառավարութեան արգելք եղեն բարի առաջադրութեան Նորա ( 4 ) :

Ե. Յամի 1833 Պարոն Գրիգոր Սամեան երևելի վաճառական 'ի Մադրաս կտակեաց զքսան հազար ռուփի, յանուն իւր հաստատելոյ զԴպրոց մի 'ի Ջուղայ : Այս է պատճէն կտակին, "Երրորդ՝ ըստ փափագանաց և ցանկութեան սրտի
" իմոյ հաստատելոյ դպրատուն մի 'ի Նորն Ջուղայ վասն ու-
" սուցանելոյ հայ մանկանց զարհեստ քերականական և
" թուաբանական, թողում և տամ 20 հազար Մադրասի
" ռուփի, այսպէս՝ զի յետ սոյն Դպրատանն հաստատելոյն,
" սոյն գումարի տարեկան եկամուտն՝ ութն հարիւր Մադ-
" րասայ ռուփին՝ կտակակատարքն իմ զգուշութեամբ յանձ-
" Նայն տարավերջ հասուցանիցեն 'ի Ջուղայ ընտրեալ վե-
" րակացուաց և կառավարչացն Դպրատան՝ մինչ վեց ամ, և
" յետ վեց ամաց եթէ առացեալ Դպրատունն ամենայնիւ
" բարւոք ընթացիւք և կարգաւորութեամբ յառաջասցի,
" յայնժամ վերակացուք և կառավարիչք Դպրատանն և կամ
" 'ի նոցանէ կարգեալ տեղակալք և գործակատարքն առ
" ստասցեն 'ի կտակակատարացն իմոց զայն գումար քսան
" հազար մադրասայ ռուփին : Այլ այն ստացեալն կամիմ՝ զի
" դիցեն 'ի վերայ ինկլիզի կումպանւոյ պարտականութեան
" մուրհակի միաբան ընդ կտակակատարացն իմոց զի մնասցէ

‹‹ 'ի վերայ սոյն պարտուց, և տարեկան վաշխն միայն հաս-
‹‹ նեցի 'ի Ջուղայ. և պատուիրեմ կտակակատարաց իմոց
‹‹ տալ և վճարել զայն գումար քսան հազար Մադրասայ
‹‹ ռուփին տեղակալաց կամ գործակատարացն ասացեալ
‹‹ վերակացուաց և կառավարչացն Դպրատանս, և լերովքն դե-
‹‹ ջարջ (անդորրագիր) ստանալ 'ի նոցունց։ Այլ եթէ զկնի
‹‹ վեց ամաց՝ Դպրատունն յայտնապէս և հաւաստեաւ 'ի վե-
‹‹ րայ հաստատուն հիմանց և բարի յառաջադիմութեանց չի-
‹‹ ցէ՝ և անկարգութեամբ կառավարեսցի, և զայն տարեկան
‹‹ եկամուտն՝ բոլորն կամ մասն 'ի վերայ այլ իրաց ծախսե-
‹‹ ցեն՝ և ոչ 'ի վերայ Դպրատանն, յայնժամ առա եղեալ
‹‹ գործակալըն 'ի վեր 20 հազար Մադրասայ ռուփին յետ
‹‹ դարձուսցեն և վճարեսցեն կենդանի կտակակատարացն ի-
‹‹ մոց, և մինչդ վեց ամաց եկամուտն զոր հաւաքեալ իցեն
‹‹ 'ի Ջուղայ վասն նոյն Դպրատանն՝ կտակակատարքն իմ ան-
‹‹ յիշելի արասցեն. և չունիցին կարօս պահանջել յումեքէ
‹‹ զայն։ Զանձն և կարգադրութիւն վասն ասացեալ Դպրա-
‹‹ տանն յօրինեալ և ձեռնագրեալ կայ, և ցանկամ զի նովա
‹‹ ընթասցին »։

Յամի 1834 'ի 21 փետրվարի ըստ հասարակաց ժողովոյ ե-ղելոյ 'ի Ջուղայ կացուցան գործակալք և կառավարիչք Սա-մեան Ըմենափրկչեան Դպրոցի, Պարոնայք Մնացական Ստե-փաննոսեան, Ղեւոնդ Յ. Աւաքեան, Եղիայ Յովհաննէսեան և Յովհաննէս Տէր Ղուկասեան, և առաջին վարժապետ այնմ եղև. ամիսս ինչ Յակոբոս յաջորդ և Տայրագոյն վարժապետ (5). Իսկ յետ քանի ամսոց գիտնական Պարոն Մկրտիչ Դա-ւիթ Թաղիադեանց ըստ հրաւիրմանց Արքազան Յովհաննէս Դ. Առաջնորդի 'ի սուրբ Էջմիածնէ եկն և եղև վարժապետ այն-միկ Դպրոցի՝ յորում ժամանակի ուսումն աշակերտք հա-ւաքեցան տասն՝ զորս դասակարգելով ըստ բարեկարգու-թեան զնորահանդրական յաձն արար դասատուաց՝ և զչափ-հասսն ինքն ուսուցանէ յաշակերտութիւն իւր։ Երկու ամ մի-այն եկաց նա վարժապետ այնմիկ Դպրոցի, և յընթացս սոյն ժամանակին այնմիկ՝ բազում մանկունք լուսաւորեցան 'ի գի-

զանկանութեան ըստ իւրաքանչիւր կարեաց։ Այլ Պարոն Մեսրովբ վարժապետ (որոյ բնաւորութեանն ընդարբոյս իմն է ոչ համբերատար և միաշաւիղ մնալ յինչ և իցէ գործողութեան, այլ սիրէ միշտ զնորանոր դէպս և զփոփոխմունս պարագայից ինքեան յանձն եղեալ գործոյ) ոչ մնաց 'ի պաշտօնի վարժապետութեանն այնմիկ, ուստի Դպրոցն յետ մեկնելոյ նորա ոչ ևս մնաց 'ի շարունակ հաստատութեան, թէպէտ կառավարեցաւ այն առ ժամանակ դասատուութեամբ Գէորգ վարդապետի Տէր Յովսէփեան, Պարոն Գէորգայ Յովսէփեան՝ Տէր Աւետիք Տէր Ղազարեան, և Տէր Ստեփաննոսի Յարութիւնեան, այլ ոչ ընդ երկար պահելով զայն շարունակութիւն փակեցաւ այն յամի 1837։

Պարոն Յովհաննէս Մ. Զօրաբեան մնեալ 'ի Մադրաս քաղաքի և ծանօթ տանն Սամեանց ըստ խնդրոյ և ըստ հաճութեան նոցին (որք էին կտակակատարք հանգուցեալ Պրն Գրիգորի Սամեան) յամի 1839 եկն 'ի Ջուղայ և յամի 1840 եբաց կրկին անգամ զվարժատունն Սամեանց Ամենափրկչի. 'ի գաւիթ սուրբ Ստեփաննոսի եկեղեցւոյ Յակոբջանեանց թաղի, ինքն լինելով 'ի նմա առաջին վարժապետ։ Ժողովեցան իսկզբան անդ ութսունաչափ աշակերտք ըստ մեծի մասին չափահասք, զորս ըստ դասակարգութեան բաժանելով, սորին դասատուինքն յանձն եղեն դասատուաց, որք էին՝ Պարոն Կարապետ Մ. Զօրաբեան, Տէր Յովսէփ Տէր Գրիգորեան և յետ նոցա այլք ոմանք։ Կառավարութիւն Դպրոցին յինքն միայն ունէր Պարոն Յովհաննէս վարժապետն առանց այլոց խորհրդակցութեան, և ըստ իւրոյ կարեաց 'ի բարեկարգութեան պահեաց զայն Դպրոց մինչև ցամ Տեառն 1853, յորում ժամանակի մնանկացաւ տունն Սամեանց 'ի Մադրաս, և քսան հազար ռուփի դրամն Ամենափրկչեան Դպրոցի մտանեցաւ 'ի կորուստ, ուստի Պարոն Յովհաննէս վարժապետ յետ կրելոյ զվնաս 800 ռուփի անհատոյց վերադարձուցեալ փոխանակագրոյ իւրոյ՝ փակեաց զայն Դպրոց։ Աթէ իցէր մտադրութիւն բանից ազդայէր կտակողին՝ յետ վեց ամաց բարեկարգ հաստատութեան և շարունակութեան Դպրոցին այս-

միկ, մարթ էր ապահովել զայն դրամագլուխ ըստ աւանդե.
լոյ ազգասէր կտակողին՝ գնելով զայն 'ի վերայ տէրութեան
մուրհակաց, այլ արդարև ցաւ ազգային, զի առանց այնպիսի
մատակարարութեան կորեաւ այն գումար 'ի մեծ վնաս Ջուղայու։
Առաջադէմ աշակերտք նոյն Դպրոցի 'ի քերականութեան մի.
այն յընթացս երկոտասան ամաց, եղեն Տէր Յարութիւն Տէր
Ստեփաննոսեան, Աւետիք եղբայր նորա, Մարտիրոս Զօրա.
բեան, Միրզայ Յարութիւն Յորդանան Եղիազարեանց, Աս.
քիաս Բեթղահէմեան, Յովհաննէս Բաբանեան. գրիչ պատ.
մագրոյս և այլք ոմանք։ Գլխաւոր դասատուութիւնք յայն.
միկ Դպրոցի էին հայերէն քերականութիւն, թուաբանու.
թիւն. վայելչագրութիւն, և առ ժամանակ ինչ աշխարհա.
գրութիւն, կայր և դասատուութիւն Անգղիական և Պարսի.
կերէն լեզուաց, այլ ոչ ոք առաջադիմութիւն արար 'ինոսա։
Ե. Օկնի փակման այնմիկ՝ Դպրոցի աշակերտք այնր ցիր
և ցան եղեալ դատարկաշրջիկ պարապէին 'ի փողոցս՝ որ ոչ
սակաւ վիշտ էր սրտի ազգասիրաց, մանաւանդ Սրբազան Թադ.
դէոս Առաջնորդի, ուստի գուն գործեալ նորա յաճախակի
խնդրագրութբ և ըստ աջողելոյ Աստուծոյ հաստատեցան
միւսանգամ յամի 1853 երկու Դպրոցք 'ի Ջուղայ։ Հիմն.
դիր միոյն 'ինոցանէ՝ եղեն ազգասիրութեամբ համբաւեալ
հարազատ քորքն որք 'ի Բթաւիայ բնակին, Ջուղայեցի Տի.
կին Մարիամ Յակոբ Յարութիւնեան, և Օրիորդ Թագուհի
Մանուկեան, և հիմնադիր միւսոյն եղև ազգասէր Պարոն
Մարգար Սուքիասեան Ջուղայեցի բնակեալ այժմ 'ի Ջաւայ։
Տարեկան նպաստ առաջնոյն է չորս հարիւր ռուփի կումպան.
եայ, զոր խոստանան շարունակել տևողաբար §(6), և նը.
պաստ երկրորդին է տարեկան երեք հարիւր ռուփի կում.
պանեայ։ Մինն 'ի Դպրոցաց անտի բացեալ եղև 'ի գաւիթ սուրբ
Ստեփաննոսի եկեղեցւոյ՝ ուր կայր նախ Դպրոցն Ամենափրկ.
չի, և միւսն 'ի գաւիթ սուրբ Մինասայ եկեղեցւոյ։ Վարժա.
պետ առաջնոյն եկաց Պարոն Յովհաննէս Մ. Զօրաբեան, և
վարժապետ երկրորդին՝ Պարոն Եղիազար Մ. Զօրաբեան եղ.
բայր նորա։ Շարունակութիւն յիշեալ երկու Դպրոցաց բա.

րեն կարգութեամբ ընթանայ մինչև ցարդ, և աշակերտք ըստ քննական որամտութեան իւրեանց ստանան զբաւական առաջադիմութիւն ։ Աշակերտաց թիւ նոյն երկու Դպրոցաց հասանէ ցհարիւր, ուսանելիք 'ի նոսա են քերականութիւն՝ թուաբանութիւն՝ համառօտ ընթերցումն մեկնաբանութեամբ՝ և վայելչագրութիւն ։ Հայ և Պարսիկերէն դասատուութիւն, այլ զանցառութեամբ այլազգի վարժապետաց ոչ ոք յաշակերտաց մինչև ցարդ ստացան զառաջադիմութիւն յայնմիկ դպրութեան ։

Զ. Հայկեան Հայրենասիրական Դպրոց սկզբնաւորեալ յամի 1841՝ և հաստատեալ յամի 1843, որոյ նիստ է 'ի գաւիթ սուրբ Աստուածածնի եկեղեցւոյ Թաղին Մէյդանի ։ Բարերար հիմնադիր այնմիկ եղև մեծահամբաւ տունն Արզարեանց, որում և առանձնապէս նպաստամատոյց եղև բարեպաշտ ոմն որ 'ի Նալկաթայ ։ Վասն տարեկան ծախուց այնմիկ ամբառ ամէ առաքի 130 թուման պարսից ։ Յօրէ հաստատութեան նորին մինչև ցարդ վարժապետ այնր եղև Պարոն Թորոս Մանուկ Թորոսեան ։ Թիւ աշակերտացն ոչ առաւելու քան զութսուն, և ոչ նուազի քան զվաթսուն ։ Բաց յառաջնոյ և յերկրորդ վարժապետաց, երեք դասատու ևս կան 'ի նմա ։ Ուսմունքն նոյն են որ ինչ կան յերկու վերոյգրեալ դպրոցսն, այլ յամի 1856 եկեղեցական երգոց երաժշտութիւն յաւելաւ 'ի սմա ։ Շարունակեցաւ այն բարւոք կառավարութեամբ վերատեսչի և հոգաբարձուաց ։ Առաջադէմ աշակերտք ելեալք 'ի Դպրոցէ անտի, են Անդրէաս Տէր Եղիազարեան՝ որ այժմ երկրորդ վարժապետ է նոյն Դպրոցի, Մկրտիչ Տէր Յովհաննէս Գալստանեան, Ղազար Գ. Աբգարեան, Մանուկ Թորոսեան, Կարապետ Մարգարխանեան, Նիկողայոս Աւետիքեան և այլք ոմանք ։

Է. Վերոյգրեալ Դպրոցք Ջուղայու ընդունին ձրիաբար և անխտիր զաշակերտս, և շնորհեն նոցա զմատեանս ուսումնական, զթուղթ՝ զմելան՝ զգրիչ և զմատիտ, որք հոգացեալ լինին նպաստիւք ազգասէր հիմնադրաց նոցին ։ Չիք 'ի նոսա թոշակաւոր աշակերտ, ուստի ամենայն աշակերտք յարձա-

կել Դպրոցին զնան 'ի տունս ծնողաց իւրեանց, և 'ի հեռաւեալ աւուրն դարձեալ հաւաքին 'ի Դպրոցն : Ըստ աւանդութեան Ջուղայու ըստ հասարակ գրագիտութեան՝ համեմատութեամբ անցեալ ժամանակաց՝ գերազանց է այժմ, և ըստ Տեառն աջողելոյ որ ըստ օրէ կատարելութեան աստիճանին է ակնունելի : Նախ քան զամն 1830 մինչև ևս էին հաստատեալ մերոյ յիշատակեալ Դպրոցք, մանկունք Ջուղայու 'ի տունս քահանայից դիմէին աշակերտիլ : Յորս երևելի էին Տէր Մատթէոսեանք՝ Տէր Մարգարեանք՝ և այլք ոմանք : Գործ նոցա էր զօրն ողջոյն մշակել վասն տնկալուն գործոց, և ուսանելիք նոցա էր 'ի բերան ուսանել զեկեղեցական փոխս կամ զերգս : Քերականութեան արհեստ (որ այժմ հասարակ իմն է յաշակերտս Դպրոցաց) անծանօթ էր յայնմ ժամանակի 'ի Ջուղայ, ուստի յընթացս քսան և եօթն ամեայ ժամանակի՝ մեծ առաջադիմութիւն ուսման եղև 'ի Ջուղայ :

Ը. Յամի 1841 Պարոն Բոռէ Գաղղիացի եկեալ 'ի Ջուղայ՝ եբաց զԴպրոց 'ի տանն Սիմէօնեանց, ուսուցանել կամելով զհայերէն՝ զԳաղղիերէն և զՊարսիերէն : Ժողովեցան բազումք 'ի մանկանց հայոց յայն Դպրոց : Կամէր հիմնադիր նորին իւրով ծախիւք պահել զկառավարութիւն այնր, և թերևս ունէր զբազում մտադրութիւնս, այլ յետ ամսօրեայ ժամանակի ծագեալ գժտութեան ընդ մէջ Լուսաւորչական Հայոց և պապականաց Ջուղայու, Խաչատուր Առաջնորդ յետս կոչեցաւ 'ի Սինօդէ սրբոյ Էջմիածնի, և Գաղղիացին Մօսիւն Բոռէ պարտաւորեցաւ փակել զԴպրոց իւր, որոյ գնացեալ 'ի Պօլիս՝ եբաց զԴպրոց իւր :

Թ. Հանգուցեալ Յովհաննէս Առաջնորդ Սուրենեան, յամի 1844 եբաց զԴպրոց հոգևորական 'ի տանն Սիմէօնեանց, յուսալով կառավարել զայն արդեամբ վանին կամ նպաստիւք ազգասիրաց : Ղազար վարդապետ կարգեցաւ վարժապետ այնր, այլ յետ իբրև ութ ամսեայ ժամանակի ելանել նորա 'ի պաշտօնէ այնմիկ՝ 'ի դէպ համարեցաւ : Պարոն Նարապետ Մ. Զօրաբեան և Տէր Յովսէփ Տէր Գրիգորեան եղեն զկնի Ղազար վարդապետի ուսուցիչք այնմիկ Դպրոցի,

և Դպրոցն կաղ 'ի կաղ ընթացիւք պահեաց զշարունակութիւն իւր ցերեկ ամ միայն, և ապա յաղագս անհաստատուն ար-դեանց պարտաւորեցաւ փակիլ:

Ժ. Գեներալնիւ Աղայ Կարապետ Գրիգորեան Սառաֆեանց երևելի վաճառականապետն Ռուսաց որ 'ի Թէհրան (որ ազգասիրաբար յամի 1851 վճարեաց զ540 թուման պարտս վանիցն առ Պարոն Ամիրխան Յ. Ամիրեան) ունի մտադրութիւն բանալոյ 'ի Ջուղայ 'ի մէջ Ամենափրկչեան վանուց զԴպրոց մի վասն երկոտասան մանկանց որք համարեսցին ինքեան որդեգիր: Յամի 1854, 'ի 20 օգոստոսի յաղագս նոյն նպատակի ետ զթուղթ խոստման առ Միքայել Թադէոս Արք եպիսկոպոս Առաջնորդ վանացն Ամենափրկչի, որ հաստատեցաւ 'ի դեսպանատան Ռուսաց որ 'ի Թէհրան: Այս է օրինակ խոստմնագրոյն այնմիկ "Ստորագրեալս 'ի ներքոյ Կարապետ Գրի-
"գորեան Սառաֆեանց պաշտօնի կրակատանիս Աղեքսանդրա-
"քօլու բնակիչ, մտադրեալ էի 'ի վաղուց հետէ 'ի մտի իմում
"հաստատել զԴպրոց մի 'ի Ջուղայ, որոյ նիստ եղիցի յԱմե-
"նափրկչեան սուրբ վանսն, և Դպրոցն զնոյն անուն կրեսցէ
"յինքեան: Անդ երկոտասան մանկունք իբրև որդեգիրք
"հաստատողիս Դպրոցին, ուսանիցեն զուսմունս Հայերէն,
"Ռուսերէն՝ Գաղղիերէն և Պարսկերէն լեզուաց: Կառա-
"վարութիւնն յիշեալ Դպրոցի կախեալ կացցէ շարունա-
"կաբար զհոգաբարձութենէ Ամենափրկչեան վանաց կառա-
"վարութեան, և նոյն կառավարութիւնն պարտաւոր լիցի
"տալ ամ ըստ ամէ զհաշիւ Դպրոցին 'ի տեղեկութիւն մեր:

"Վասն սոյն նպատակիս որոշեցի զմի հազար թուման
"պարսից դրամ, զոր իբրև հաստատուն խոստմունք իմ նը-
"շանակեալ աստ 'ի պէտս նոյն Դպրատանն՝ պարտական կա-
"ցուցանեմ սովաւ զանձն իմ յաղագս այնր: Տնօրինեմ՝ զի
"նոյն մայր գումար հազար թումանն կացցէ ընդ իմով կա-
"ռավարութեամբ ցորչափ ժամանակ կենդանի իցեմ, և ես
"տարեկան երկու հարիւր թուման տոկոս վասն նոյն գու-
"մարոյ պարտաւոր եղէց հատուցանել, զի նովաւ Դպրոցն
"կարող լիցի պահել զկառավարութիւն շարունակութեանն

Նմանապէս զհրովարտակ զի մի՛ շինեսցեն եկեղեցի Փռանգաց։ Զհրովարտակն տուեալ 'ի Շահաբասայ 'ի 1064 ( 1649 ) Թուականի Պարսից յերկրորդում ամսեանն ըէբիօլ․ ունի զայսպիսի թարգմանութիւնն։

" Յառաջ քան զայս ըստ խնդրոյ դեսպանին Փռանգաց հրամայեցաք զի Փռանգք որք ունին զքաղձանս շինելոյ զեկեղեցիս 'ի Ջուղայ՝ շինեսցեն, այլ արդ Ջուղայու բնակիչ Հայք եկեալ առ մեզ բողոքեցին թէ շինելն նոցա զեկեղեցի 'ի Ջուղայ լինելոց է առիթ ցիր և ցան լինելոյ Հայոց աստի, յայն սակս հրամայեմք զի 'ի ժամանակի այսմիկ արգելցի շինումն եկեղեցւոյն այնմիկ՝ մինչ ցվերադարձն դեսպանին Փռանգաց, յորում ժամանակի ըստ հրամանիս մերոյ կատարեսցեն ,,։

Այլ Լատինահայք օգնականութեամբ դեսպանին Փռանգաց կամ յաճախակի թախանձանաց և խնդրարկութեան իւրեանց շինեցին զեօթն եկեղեցիս, որոց անուանք են․ 1, Աւետեաց՝ շինեալ 'ի Շահրիմանեանց․ 2, սուրբ Եղիայ՝ հասարակաբար կարմիլեթան կոչեցեալ․ 3, սուրբ Յովսէփ՝ որ Ջիզվիթ կոչի յաղագս 'ի Ջիզվիթեան միաբանութենէ լինելոյ կառուցեալ․ 4, Տոմինիկեան վանք․ 5, Օգոստինի վանք՝ 'ի Հուսէյնիա․ 6, Կարմիլեթեան վանք՝ 'ի գովդմիր․ և 7, Կապուճին վանք 'ի Ղալաթաբառուկ։ ( 3 ) Վերջին երեք եկեղեցիքն էին 'ի քաղաքամէջն Սպահանայ՝ 'ի թաղսն որք առընթեր իւրաքանչիւրոցն նշանակեցան, և առաջին չորքն շինեալ էին 'ի Ջուղայ։ Զորից եկեղեցեացն հետք անգամ ոչ երեւին այժմ զի ընդ աւերակս դասեցան, և երեքն որք երեւին այժմ, են Ջիզվիթն՝ Շահրիմանեանց սուրբ Աւետեացն, և Տոմինիկեան վանքն։ Ջիզվիթն և Աւետեացն են աւերակ, և միայն Տոմինիկեան վանքն որ է 'ի թաղն քօչէր՝ կայ 'ի հաստատութեան։

Բ․ Ըստ կրկին տեսակի աջողէր նոցա շրջել զլուսաւորչական Հայս 'ի Պապականութիւն, չքաւորացն մասնաւոր դըրամական օգնականութեամբ և բազմադիմի շողոմաբար բանիւք յանկուցանելով զսիրտս՝ առ ինքեանս և երկրորդ

քաղցրութեամբ և փափայանօք ընդունելով զյանդիմանեալսն 'ի Հայոց մեծաւորաց ( 4 ) ։ Առաջնորդք Ջուղայու միշտ հաւակառակելով՝ խափանէին զնոցին առաջադիմութիւն, մերթ Տէրութեան հրամանաւ տկարացուցանելով զպապականաց քարոզչացն զօրութիւնս, և մերթ տալով զահաբեկութիւն ժողովրդեանն գարձելոց ( 5 ) ։

Անվախճան մնաց 'ի սկզբանէ անտի մինչև ցարդ այն հակառակամն գործողութիւն, զի պապականք ջանակոււ աշխատանօք ըղձիցն թափէին փեռեկտել զեկեղեցի Հայոց. և Լուսաւորչական ժողովրդոցն տեառուչք գուն գործէին պաշտպանել զհօտն իւրեանց յօտարաց անտի փեռեկտմանէ ։ Այն խռովութիւն հակառակութեան ընդ մէջ Լուսաւորչական և պապական ժողովրդոց 'ի Ջուղայ ուժգին արծարծեցաւ նախ 'ի ժամանակս Թագաւորութեանն Շահ սլէյմանի 'յամի 1688 ։ Ջիզվիթեան կրօնաւորք եկեալ յԱսպահան շինեցին զեկեղեցին Ջիզվիթ կոչեցեալ, և բացին զդպրատունս 'ի Ջուղայ 'ի դաստիարակութիւն մանկանց, և ջիզւիթաբար քարոզել և որսալ զժողովուրդն սկիզբն արարին ։ Յայնմ ժամանակի առաջնորդ վանացն Ամենափրկչի էր Ստեփաննոս եպիսկոպոս, որ ունէր զանհաշտ հակառակութիւն ընդդէմ պապականաց, ուստի յոտն պաշտպանութեան ժողովրդոց կացեալ՝ հասոյց զմեծամեծ տառապանս Ջիզվիթեան քարոզչացն ։ Բողոքեաց Շահ սլէյման արքային թէ՝ օտարք 'ի սահմանաց Եւրոպիոյ եկեալ 'ի Պարս խռովեն զխաղաղութիւն ժողովրդեանն Հայոց. բանան զդպրոցս, որսան զմանկունս պարզամտաց և յուզեն զժողովուրդն 'ի վէճ ընդ միմեանս ելանել . զայդ առնեն երևելապէս, այլ ներքին նպատակ նոցա է լրտեսել զերկիր և մտաւոր պարսկաստանի և գրել զամենայն անցս երկրին առ թագաւորութիւնս Եւրոպիոյ ։ Նովին յարմարական և հաւանական ամբաստանութեամբ առեալ կացուցան Ջիզվիթեան կրօնաւորք առաջի Տէրութեանն Պարսից ։ Այլ Շահրիմանեանք զօրաւիգ լինելով Ջիզվիթեանց՝ ծախէին զայլով գումարս թէ 'ի դրունս դեսպանաց քաղաքին Սպահանայ և թէ առ նախարարս Տէրութեանն և ստանային զհրաման զի

մի փակեցին Դպրոցքն Ջիզվիթեանց, և մի խափանումն ինչ լինիցի նոցա քարոզութեանցն (6): Ջուղայու իշխանք և զնոյն առնէին հակառակ Շահրիմանեանց. ուստի մեծագումար ծախսարարութիւնք ոչ պակասեցան յերկուստեքէ: Յաղթական եղև կողմն Լուսաւորչականաց, զի յամի 1689 ընկալեալ զհրաման 'ի Շահ Սուլէյմանայ՝ քակեցին զմի եկեղեցին նոցա Կարմէլիտանաց, և արտաքսեցին զումանս 'ի քարոզչացն Ջիզվիթեանց, ընդ որս էր և Յակոբ վարդապետ, և ընկճեցին յոյժ զկողմն պապականաց (7): Յայնմ ժամանակի տպագրեցաւ 'ի վանքն Ամենափրկչի մատեան հակառակ երկաբնակաց. յորում առիթ առեալ պապականաց՝ զրպարտութեամբ յայտնեցին Տէրութեանն, որպէս թէ հայք հակառակ վարդապետութեանն սուննի տպեալ են զմատեան, որոյ աղագաւ եղև հինգ հարիւր թումանաչափ ծախս 'ի Ստեփաննոս Առաջնորդէ 'ի ցրումն զրպարտութեանն այնմիկ (8): Ըստ այնպիսի թանձրացեալ հակառակութեան, Ստեփաննոս Առաջնորդ իւրով հոգևորականօք կրելով զշուրջառ և սևացեալ մոմեղէնս 'ի Մէյդանն Ջուղայու կատարեցին զթափօր անիծողական կուտելով զնզովս 'ի վերայ Շահրիմանեանց տոհմի, յաղագս նոցին ձեռնտուութեամբ յառաջանալոյ մեծամեծ խռովութեանցն և վնասուց. 'ի տեսանել զայն այլազգեաց յորժամ հարցանէին թէ զինչ գործէք, պատասխանէին թէ որպէս դուք զձեր սուննի հերձուածողսն՝ նոյնպէս և մեք զմեր հերձուածողսն նզովեմք (9): Ցաւ է ինձ ոչ սակաւ զանցս այնպիսի երկպառակութեան արձանագրել յիմում պատմութեանս՝ որք օգուտ և ոչ մի առանց ընծայելոյ ընթերցողաց. զսրտից զգացմունս յուզեն 'ի վշտակցութիւն ընդ աղէտս երկպառակութեան համազգեացն 'ի վնաս և յեղծումն միմեանց, ոչ միայն 'ի Ջուղայ, այլ գոգջիր ընդ ամենայն ուրեք: Այլ կամելով զպարտս պատմագրի անվրէպ պահպանել, հարկ համարեցայ ըստ նիւթոցն եղելոց առիս՝ զկարգ պատմութեանն ոչ աղաւաղել 'ի ծածկել զտգեղութիւն այս կամ այն կողմանն: Սակայն զանց արարի զթարգմանութիւնս հրովարտակացն նշանակել, զի անօգուտ երկարաբանութիւնն մի ձանձ-

բութիւնս պատճառեցէ ընթերցողին ։

Դ. Աղէքսանդր կաթուղիկոս յայնմ երկպառակութեան ժամանակի էր 'ի Ջուղայ 'ի վանքն Ամենափրկչի և վարէր բդպաշտօն յաջորդութեան ։ Ականատես գոլով նորա ամենայն ազգաւեր աղմկեալ խռովութեանցն, յետ հաստատելոյ կաթուղիկոսութեան յամի 1709 (ՌՃԾԸ) 'ի 25 Փետրվարի գրեաց առ պապն Կղեմէս մետասաներրորդ գանգատ զփաթերայից առաքելոց 'ի պարս, յայտնելով թէ յուզեն նոքա զժողովուրդն և յարուցանեն զաղմուկ խռովութեան, որով անունն քրիստոնէութե հայհոյի 'ի մէջ հեթանոսաց, և 'ի դարման նոցին խնդրեաց արձակել զգիր հրամանի առ նոյն քարոզիչսն սակս դադարելոյ նոցա 'ի խռովայուզութեանց անտի (10) ։

Այլ թէ հաւատալ կարելի իցէ վկայութեանն Յակոբ վարդապետի 'ի Ջիզվիթեան կարգէ (որ հալածական վարեալ էր 'ի Ջուղայոյ՝ և անհարազատ իմացուածով թարգմանեալ էր զկոնդակն Աղէքսանդր կաթուղիկոսի) Պապն " գրեաց զպատասխանի նոյն թղթոյ առ կաթուղիկոսն " թէ որովհետև
" օտարացեալ դուստրդ մուծանիլ կամիս առ մայրդ գորո-
" վագութ, պարտ է քեզ զայդ դաւանութիւնդ ուղիղ դաւա-
" նութեամբ գործօք ցուցանել թէ 'ի պատարագն և թէ այլ
" ինչ որ պատկանի 'ի բանս հաւատոյ, ապա խոստովանու-
" թիւնդ գրեսցես և կնքեսցես ամենայն Եպիսկոպոսօքդ և
" առաքեսցես առ մեզ, և տեսեալ մեր զայնպիսի հաւատար-
" մութիւն, ապա թէ տամ քեզ հրաման 'ի վերայ ամենայն
" քարոզատուաց Հռովմայնոյս որք 'ի վիճակի քում են՝ զի
" հնազանդեսցեն քեզ " ։

Յետ ընդունելոյ Աղէքսանդր կաթուղիկոսի զայնպիսի պատասխան 'ի Պապէն, յամի 1711 բողոքեաց առ Շահ սուլթան Հուսէյն, և զքարոզիչս Հռովմայ ցուցանելով անհարազատ Տէրութեանն Պարսից և լրտես և մատնոտ եկեալ 'ի պարս, ընկալաւ զհրովարտակ հրամանի և հալածական վարեաց զնոսա 'ի պարսկաստանեայ հասուցանելով զբազում խոշտանգանս ժողովրդեանն դարձելոց 'ի պապականութիւն (11)։

Պարձեալ զօրացան պապականք մեծաքանակ ծախա-
ռարութեամբ, և կամեցան բանալ յամի 1723 զԴպրոցս և զաստիարակել զմանկունս Հայոց, այլ վերստին բողոքեալ Հայոց առ Շահսուլթան Հուսէյն, ընկալան զհրաման արկանելոյ զբողոքս իւրեանց առ Գենապետս քաղաքին Սպահանայ, ուրանօր դարձեալ զօրաւոր եղեն Հայք, և ըստ հրամանի դենպետացն 'ի 1139 թուականի Պարսից (1723) ընկալան զթուղթ խոստման 'ի քարոզչաց Հռովմայ զի մի ևս ուսուսցեն զմանկունս Հայոց 'ի դպրոցս իւրեանց, և մի ընկալցին զկին յազգէ Հայոց (12)։

Է. Նոյնու ժամանակաւ Մովսէս Առաջնորդ Ջուղայու Քահանայիւք և հոգևորականօք Ջուղայու ժողով գումարեալ հաստատեցին զթուղթ իմն վասն 'ի պապականութենէ շրջելոյն։ Այս է պատճէն այնմիկ թղթոյ " Շնորհօք Տեառն
" Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի Նուաստ ծա-
" ռայ Մովսէս վարդապետ . . . գիտելի է զի հոգալով մեր
" զբարեկարգութեանց Քահանայից 'ի տուէ և 'ի գիշերի ջանք
" մեր այս է զի ծր յաւուր բարեկարգութիւնք յաւելու յե-
" կեղեցականս, և անկարգութիւնն և յանդգնութիւնն տեղի
" տայ, և այս որով լինի, եթէ ոչ խրատուք բայց այսօր ըստ
" ներման ժամանակիս լռութիւնն և հպաղանդութիւնն
" բարձեալ է 'ի միջոյ մերմէ, քանզի յորժամ կամիմք խրա-
" տել զստահակն և զանկարգն, ոչ թէ միայն ոչ հնազան-
" դին որպէս կարգն է, այլ և երկեցուցանեն ևս զմեզ սաս-
" լով թէ գնամք և լինիմք երկարնակ։ Վասնորոյ սակս նա-
" խահօղութեան զայս արժան տեսաք գրել և հաստատել
" 'ի մէջ մեր զի զգուշասցին և խրատեսցին այնպիսիքն։ Այս
" է որ ես հանդերձ իմ Եպիսկոպոսօք և վարդապետօք և մի-
" աբան եղբարբքս և բոլոր Քահանայական դասուք, որք են
" երիցունք մերում թեմի և վիճակի, առաջի Աստուծոյ վկա-
" յութեամբ սրբոց հրեշտակաց Նորա գրեցաք կնքեցաք և
" հաստատեցաք հրամանաւն Աստուծոյ և իշխանութեամբ
" կարգիս մերոյ, զի այսուհետև ինչ կարգաւոր որ 'ի մէնջ
" ոք թէ 'ի սևագլխոց և թէ յաշխարհիկ երիցանց Քահանայից

« որ 'ի սուրբ Լուսաւորչադաւան Հայոց եպիսկոպոսէ լինի
« ձեռնադրեալ և կարգ առեալ, թէ յանդգնի յիւր միաբանակ
« դաւանութենէն (որով զկարգն է առեալ) ելանէ կարգ.
« ւորաց լինի և գնայ երկաբնակաց . . . դաւանութիւնն,
« նա յիւրմէ կարգէ ևս լուծեալ լինի և որոշեալ 'ի քահա.
« նայութենէ, մ.կ աստիճանէն մինչև ցեօթն աստիճանն
« բարձեալ լինի 'ի նմանէ. յայնմհետէ նորա պատարագն ոչ է
« պատարագ այլ դատապարտութիւն, զի կրկին խաչէ զՔրիս.
« տոս . . . յայնպիսեացն փախիջիք և 'ի բաց հեռա.
« նայիք, իբրև զիժէ և զքարբէ . . . և ով ոք յայնմհետէ
« օրհնեա Տէր ասէ կամ քահանայի պատիւ դնէ, նա ևս կից
« լինի նորա մեղացն և նզովիցն, քանզի անիծեալ է և նզո.
« վեալ, կապեալ է և բանադրեալ յերկինս 'ի վեր և յեր.
« կիր 'ի խոնարհ, ասացեալ հրեշտակք և մարդիկք եղիցի
« եղիցի » (13) :

Գրեն 'ի նմա զյանձնառական ընդունելութի նորա. Դաւիթ՝ Աստուածատուր՝ Բարսեղ՝ Ստեփաննոս՝ Պետրոս՝ Զաքարիայ վարդապետք՝ Տէր Յարութիւն՝ Տէր Յովհաննէս՝ Տէր Ղուկաս՝ Տէր Սիմէօն՝ Տէր Ստեփաննոս՝ փոքր Տէր Ղուկաս՝ Տէր Գէորգ՝ Տէր Նիկողայոս՝ Տէր Պարսամ՝ Տէր Ահարոն՝ Բարաղամ և Սիմէօն աբեղայք : Եւ յիսուն և ութն քահանայք 'ի նմին ժամանակի եղեալք 'ի Ջուղայ :

Է. Հակառակութիւն և խռովութիւնն շարունակեցաւ միշտ ընդ մէջ լուսաւորչական և պապական ժողովրդոց, մերթ նուազ և մերթ ուժգին ներգործութ, զի կայ և 'ի Շահ Աշրաֆայ հրովարտակ տուեալ առ Հայս ընդդէմ պապականաց, որով յայտ է թէ յուզեցաւ տարաձայնութիւն և յայնմ ժամանակի :

Յետ 1730 թուականի չերևի երևելի դէպք ինչ խռովութեան, այլ անշուշտ առանձին և մասնաւոր տարաձայնութիւնս պահէր զշարունակութիւնն իւր :

Յամի 1841 ծագեցաւ դարձեալ խռովութիւն մեծ, որոյ հետևանք ոչ սակաւ վնասաբեր եղեն վանքին : Յայնմ ժամանակի առաջնորդն Ջուղայու էր Խաչատուր Վարդապետ.

ղէ․ դիւրագրգիռ 'ի զայրացումն և անյառաջատես հետեւու-թեանց գործոց ։ 'Ի վանս պապականաց կայր Յովհաննէս գխա-սակեան վարդապետ Տէրտէրեան՝ կրթեալ 'ի բովս աշխարհի, և քաջ ուսեալ զեղանակ սիրաշահութեամբ գրաւելոյ ըզ-մարդիկ ։ Յակոբոս գիտնական վարդապետ յաջորդն սորոյ Ա-մենափրկչեան վանի՝ տաղտկացեալ 'ի խցակեցութենէ վանին, սիրէր բնակիլ 'ի տան իւրում արձակապէս, այլ թէ զինչ էր պատճառն՝ ստոյգն չգիտեմ, և զկարծիքականն 'ի լռութեան թողեալ բարւոք համարիմ ։ Խաչատուր Առաջնորդ ոչ մար-թանալով համոզմամբ զնա առ ինքն գրաւել, ահարկութեամբ իշխանութեան կարծէր զնա խոնարհեցուցանել 'ի հնազան-դութիւն, ուստի նա թէ այսպէս և թէ այնպէս յամսեանն Յուլիսի 1841 ամի եմուտ 'ի վանս պապականաց, որում հե-տեւեցան Տէր Ստեփաննոս Յարութիւն Տէր Յովհաննեան (14)։ Յառաջ քան զնա գնացեալ էր և Ամիրխան Յովհաննէս Ամի-րեան, և լինէր շշունջ թէ հինգ քահանայք ես միաբանեալ կամին հետեւել շաւղաց նոցին ։ Այլ նոյն միաբանեալքն (զո-րոց անուանս նշանակել ոչ կամիմ) հաստատուն մնացին 'ի-կողմանն իւրեանց առանց շրջելոյ 'ի պապականութիւն ։

Եկեալ էր 'ի 1840 ամի մուսի բերժէ Գաղղիացի, և բա-ցեալ էր զԴպրոց 'ի Ջուղայ, ուրանօր և ժողովեալ էին բա-զում մանկունք յազգէ Հայոց և բարւոք առաջադիմութեամբ ուսանէին զՀայերէն՝ Գաղղիերէն և զՊարսիերէն լեզուս ։ Նոյն բերժէ ես օգնական և զօրավիգ լինելով Նորադարձ պապականացն՝ յուզեցաւ երկպառակութիւն, և թանձրացաւ առարկայն մինչև հարկ լինել դիմելոյ յատեանս քաղաքա-կան դատաստանաց՝ և 'ի սպառ վեհափառ թագաւորին իսկ ։ Արեգակնափայլ Մահամադ շահն կամելով խաղաղել զխռո-վութիւնն յուզեալ 'ի տարապարտուց, յամի 1842, յԴ յուն-վարի շնորհեաց զհրովարտակ որոյ այս է թարգմանութիւն ։

“ Հասուցաւ 'ի լուր մեր 'ի կողմանէ Ազգին Հայոց, թէ ո-
“ մանք 'ի հոգևորականացն կաթողիկոց կառուցեալ 'ի Նա-
“ հանգս մեր զուսումնարանս և զեկեղեցիս՝ յորդորանօք
“ քարոզութեամբ, և զանազան կաշառանօք հրապուրեն

Նմանն է զհրովարտակ զի մի շինեսցեն եկեղեցի Փռանգաց։
Հրովարտակն տուեալ 'ի Շահաբասայ 'ի 1064 ( 1649 ) Թը-
ուականի Պարսից յերկրորդում ամսեանն րէբիօլ. ունի զյե-
տագայ Թարգմանութիւնն ։

« Յառաջ քան զայս ըստ խնդրոյ դեսպանին Փռանգաց
« հրամայեցաք զի Փռանգք որք ունին զբաղձանս շինելոյ
« զեկեղեցիս 'ի Ջուղայ՝ շինեսցեն, այլ արդ Ջուղայու բը-
« նակիչ Հայք եկեալ առ մեզ բողոքեցին թէ շինելն նոցա
« զեկեղեցի 'ի Ջուղայ լինելոց է առիթ ցիր և ցան լինելոյ
« Հայոց ազգի, յայն սակս հրամայեմք զի 'ի ժամանակի այս-
« միկ արգելցի շինումն եկեղեցւոյն այնմիկ՝ մինչ ցվերա-
« դարձն դեսպանին Փռանգաց, յորում ժամանակի ըստ հրա-
« մանիս մերոյ կատարեսցեն »։

Այլ Լատինահայք օգնականութեամբ դեսպանին Փռան-
գաց կամ յաջախակի թախանձանաց և խնդրարկութեան իւ-
րեանց շինեցին զեօթն եկեղեցիս, որոց անուանք են. 1, Ա-
ւետեաց՝ շինեալ 'ի Շահրիմանեանց. 2, սուրբ Եղիայ՝ հա-
սարակաբար կարմելիթան կոչեցեալ. 3, սուրբ Յովսէփ՝ որ
Ջիզվիթ կոչի յաղագս 'ի Ջզվիթեան միաբանութենէ լինելոյ
կառուցեալ. 4, Դոմինիկեան վանք. 5, Օգոստինի վանք՝ 'ի
Հուսէյնիա. 6, Կարմելիթեան վանք՝ 'ի գովդմիր. և 7,
Կապուչին վանք 'ի Ղալաթաբառուկ։ ( 3 ) Վերջին երեք եկե-
ղեցիքն էին 'ի քաղաքամէջն Սպահանայ՝ 'ի թաղսն որք առ-
ընթեր իւրաքանչիւրոցն նշանակեցան, և առաջին չորքն շի-
նեալ էին 'ի Ջուղայ։ Զորից եկեղեցեացն հետք անգամ ոչ
երևին այժմ զի ընդ աւերակս դասեցան, և երեքն որք երև-
ին այժմ, են Ջիզվիթն՝ Շահրիմանեանց սուրբ Աւետեացն, և
Դոմինիկեան վանքն։ Ջիզվիթն և Աւետեացն են աւերակ, և
միայն Դոմինիկեան վանքն որ է 'ի թաղն քօչէր՝ կայ 'ի հաս-
տատութեան։

Թ. Ըստ կրկին տեսակի աղանդէր նոցա շրջել զլուսաւոր-
չական Հայս 'ի Պապականութիւն, չքաւորացն մասնաւոր դը-
րամական օգնականութեամբ և բազմադիմի շողոմարար բա-
նիւք յանկուցանելով զմիտս՝ առ ինքեանս և երկրորդ

քաղցրութեամբ և փափայանօք ընդունելով զյանդիմանեալսն 'ի Հայոց մեծաւորաց (4)։ Առաջնորդք Ջուղայու միշտ հակառակելով՝ խափանէին զնոցին առաջադիմութիւն, մերթ Տէրութեան հրամանաւ տկարացուցանելով զպապականաց քարոզչացն զօրութիւնս, և մերթ տալով զահաբեկութիւն ժողովրդեանն գարշելոց (5)։

Անվախճան մնաց 'ի սկզբանէ անտի մինչև ցարդ այն հակառակման գործողութիւն, զի պապականք ջանակուռ աշխատանօք զճիգն թափէին փեռեկտել զեկեղեցի Հայոց. և Լուսաւորչական ժողովրդոցն տեսուչք գուն գործէին պաշտպանել զհօտն իւրեանց յօտարաց անտի փեռեկտմանէ։ Այն խռովութիւն հակառակութեան ընդ մէջ Լուսաւորչական և պապական ժողովրդոց 'ի Ջուղայ ուժգին արծարծեցաւ նախ 'ի ժամանակս թագաւորութեանն Շահ սլէյմանի յամի 1688։ Ջիզվիթեան կրօնաւորք եկեալ յԱսպահան շինեցին զեկեղեցին Ջիզվիթ կոչեցեալ, և բացին զդպրատունս 'ի Ջուղայ 'ի դաստիարակութիւն մանկանց, և ջիզւիթաբար քարոզել և որսալ զժողովուրդն սկիզբն արարին։ Յայնմ ժամանակի առաջնորդ վանացն Ամենափրկչի էր Ստեփաննոս եպիսկոպոս, որ ունէր զանհաշտ հակառակութիւն ընդդէմ պապականաց, ուստի յոտն պաշտպանութեան ժողովրդոց կացեալ՝ հասոյց զմեծամեծ տառապանս Ջիզվիթեան քարոզչացն։ Բողոքեաց Շահ սլէյման արքային թէ՝ օտարք 'ի սահմանաց Եւրոպիոյ եկեալ 'ի Պարս խռովեն զխաղաղութիւն ժողովրդեանն Հայոց. բանան զդպրոցս, որպէս զմանկունս պարզամտաց և յուզեն զժողովուրդն 'ի վէճ ընդ միմեանս ելանել. զայդ առնեն երևելապէս, այլ ներքին նպատակ նոցա է լրտեսել զերկիր և մատնել պարսկաստանի և գրել զամենայն անցս երկրին առ թագաւորութիւնս Եւրոպիոյ։ Նովին յարմարական և հաւանական ամբաստանութեամբ ատելի կացուցան Ջիզվիթեան կրօնաւորք առաջի Տէրութեանն Պարսից։ Այլ Շահրիմանեանք զօրավիգ լինելով Ջիզվիթեանց՝ ծախէին զյոլով գումարս թէ 'ի դրունս դենպետաց քաղաքին Սպահանոյ և թէ առ նախարարս Տէրութեանն և ստանային զհրաման զի

մի փակեացին Դպրոցքն Ջիզվիթեանց, և մի խափանումն ինչ լինիցի Նոցա քարոզութեանցն (6)։ Ջուղայու իշխանք և գլխոյն առնէին հակառակ Հաճրիմանեանց. ուստի մեծագումար ծախսարարութիւնք ոչ պակասեցան յերկուստեքէ։ Յաղթական եղև կողմն Լուսաւորչականաց, զի յամի 1689 ընկալեալ զհրաման 'ի Շահ Սէլէյմանայ՝ քակեցին զմի եկեղեցին Նոցա Կարմէլիտանաց, և արտաքսեցին զոմանս 'ի քարոզչացն Ջիզվիթեանց. ընդ որս էր և Յակոբ վարդապետ, և ընկճեցին յոյժ զկողմն պապականաց (7)։ Յայնմ ժամանակի տպագրեցաւ 'ի վանքն Ամենափրկչի մատեան հակառակ երկաբնակաց, յորմէ առիթ առացեալ պապականաց՝ զըպարտութեամբ յայտնեցին Տէրութեանն, որպէս թէ հայք հակառակ վարդապետութեանն ղուրանի տպեալ են զմատեան, որոյ աղագաւ եղև հինգ հարիւր թումանաչափ ծախս 'ի Ստեփաննոս Առաջնորդէ 'ի ցրումն զըպարտութեանն այնմիկ (8)։ Ըստ այնպիսի թանձրացեալ հակառակութեան, Ստեփաննոս Առաջնորդ իւրով հոգևորականօք կրելով զշուրջառ և սևացեալ մոմեղէնս 'ի Մէյդանն Ջուղայու կատարեցին զթափօր անիծողական կուտելով զնզովս 'ի վ̃ր Հաճրիմանեանց տոհմի, յաղագս նոցին ձեռնտուութեամբ յառաջանալոյ մեծամեծ խռովութեանցն և վնասուց. 'ի տեսանել զայն ալազգեաց յորժամ հարցանէին թէ զինչ գործէք, պատասխանէին թէ որպէս դուք զձեր սուննի հերձուածողսն՝ նոյնպէս և մեք զմեր հերձուածողսն նզովեմք (9)։ Ցաւ է ինձ ոչ սակաւ զանցս այնպիսի երկպառակութեան արձանագրել յիմում պատմութեան՝ որք օգուտ և ոչ մի առանց ընծայելոյ ընթերցողաց, զսրտից զզացմունս յուզեն 'ի վշտակցութիւն ընդ աղէտս երկպառակութեան համազգեացն 'ի վնաս և յեղծումն միմեանց, ոչ միայն 'ի Ջուղայ, այլ գոգջիր ընդ ամենայն ուրեք։ Այլ կամելով զպարտս պատմագրի անվրէպ պահպանել, հարկ համարեցայ ը̃ նիւթոցն եղելոց առիւ՝ զկարգ պատմութեանն ոչ աղամողել 'ի ծածկել զտգեղութիւն այս կամ այն կողմանն։ Սակայն զանց արարի զթարգմանութիւնս հրովարտակացն նշանակել, զի անօգուտ երկարաբանութիւնն մի ձանձ-

բութիւնս պատճառեսցէ ընթերցողին ։

Դ. Աղէքսանդր կաթուղիկոս յայնմ երկպառակութեան ժամանակի էր 'ի Ջուղայ 'ի վանքն Ամենափրկչի և վարէր ըզպաշտօն յաջորդութեան ։ Ականատես գոլով նորա ամենայն աղգաւեր աղմկեալ խռովութեանցն, յետ հասանելոյ կաթուղիկոսութեան յամի 1709 (ՌՃԾԸ) 'ի 25 փետրվարի գրեաց առ պապն Կղեմէս մետասաներրորդ գանգատ զփաթերայից առաքելոց 'ի պարս, յայտնելով թէ յուզեն նոքա զժողովուրդն և յարուցանեն զաղմուկ խռովութեան, որով անուանն քրիստոնէութե՟ հայհոյի 'ի մէջ հեթանոսաց, և 'ի դարման նոցին խնդրեաց արձակել զգիր հրամանի առ նոյն քարոզիչսն սակս դադարելոյ նոցա 'ի խռովայուզութեանց անտի (10) ։

Եթէ հաւատալ կարելի իցէ վկայութեանն Յակոբ վարդապետի 'ի Չեզվիթեան կարգէ (որ հալածական վարեալն էր 'ի Ջուղայոյ՝ և անհարազատ իմացուածով թարգմանեալ էր զկոնդակն Աղէքսանդր կաթուղիկոսի) Պապն “ գրեաց զպատասխանն նոյն թղթոյ առ կաթուղիկոսն “ թէ որովհետև
“ օտարացեալ դուստրդ մուծանիլ կամիս առ մայրս գորո-
“ վագութ, պարտ է քեզ զայդ դաւանութիւնդ ուղիղ դաւա-
“ նութեամբ գործօք ցուցանել թէ 'ի պատարագն և թէ այլ
“ ինչ որ պատկանի 'ի բանս հաւատոյ, ապա խոստովանու-
“ թիւնդ գրեսցես և կնքեսցես ամենայն Եպիսկոպոսօքդ և
“ առաքեսցես առ մեզ, և տեսեալ մեր զայնպիսի հաւատար-
“ մութիւն, ապա թէ տամ քեզ հրաման 'ի վերայ ամենայն
“ քարոզատուաց Հռովմայնոյս որք 'ի վիճակի քոյդ են՝ զի
“ հպազանդեսցեն քեզ „ ։

Յետ ընդունելոյ Աղէքսանդր կաթուղիկոսի զայնպիսի պատասխան 'ի Պապէն, յամի 1711 թողոքեալ առ Շահ սուլթան Հուսէյն, և զքարոզիչս Հռովմայ ցուցանելով անհարազատ Տէրութեանն Պարսից և լրտես և մատնոտ եկեալ 'ի պարս, ընկալաւ զհրովարտակ հրամանի և հալածական վարեաց զնոսա 'ի պարսկաստանայ հասուցանելով զբազում խոշտանգանս ժողովրդեանն դարձելոց 'ի պապականութիւն (11)։

Դարձեալ զօրացան պապականք մեծաքանակ ծախսա-պարութեամբ, և կամեցան բռնալ յամի 1723 զԴպրոցս և դաստիարակել զմանկունս Հայոց, այլ վերստին բողոքեալ Հայոց առ Շահսուլթան Հուսէյին, ընկալան զհրաման արկանելոյ զբողոք իւրեանց առ Գենպետս քաղաքին Սպահանայ, ուրանօր դարձեալ զօրաւոր եղեն Հայք, և ըստ հրամանի գենպետացն 'ի 1139 Թուականի Պարսից (1723) ընկալան զԹուղթ խոստման 'ի քարոզչաց Հռովմայ զի մի ևս ուսուսցեն զմանկունս Հայոց 'ի Դպրոցս իւրեանց, և մի ընկալցին զկէն յազգէ Հայոց (12)։

Դ. Յայնու ժամանակաւ Մովսէս Առաջնորդ Ջուղայու Քահանայիւք և հոգևորականօք Ջուղայու ժողով գումարեալ հաստատեցին զԹուղթ ինն վասն 'ի պապականութիւն շրջելոցն։ Այս է պատճէն այնմիկ Թղթոյ ՙՙ Շնորհօք Տեառն
ՙՙ Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի Նուաստ ծա-
ՙՙ ռայ Մովսէս վարդապետ . . . գիտելի է զի հոգալով մեր
ՙՙ զբարեկարգութեանց Քահանայից 'ի տուէ և 'ի գիշերի ջանք
ՙՙ մեր այս է զի որ յաւուր բարեկարգութիւնք յաւելու յե-
ՙՙ կեղեցականս, և անկարգութիւնն և յանդգնութիւնն տեղի
ՙՙ տայ, և այս որով լինի, եթէ ոչ խրատուք բայց այսօր ըստ
ՙՙ բերման ժամանակիս լռութիւնն և հպազանդութիւնն
ՙՙ բարձեալ է 'ի միջոյ մերմէ, քանզի յորժամ կամիմք խրա-
ՙՙ տել զստահակս և զանկարգս, ոչ թէ միայն ոչ հպազան-
ՙՙ դին որպէս կարգն է, այլ և երկեցուցանեն և զմեզ սպառ-
ՙՙ նալով թէ գնամք և լինիմք երկարնակ։ Վասնորոյ սակս նա-
ՙՙ խահոգութեան զայս արժան տեսաք գրել և հաստատել
ՙՙ 'ի մէջ մեր զի զգուշասցին և խրատեսցին այնպիսիքն։ Այս
ՙՙ է որ ես հանդերձ իմ Եպիսկոպոսօք և վարդապետօք և մի-
ՙՙ աբան եղբարբքս և բոլոր Քահանայական դասուք, որք են
ՙՙ երիցունք մերում Թեմի և վիճակի, առաջի Աստուծոյ վկա-
ՙՙ յութեամբ սրբոց հրեշտակաց Նորա գրեցաք կնքեցաք և
ՙՙ հաստատեցաք հրամանաւն Աստուծոյ և իշխանութեամբ
ՙՙ կարգիս մերոյ. զի այսուհետև ինչ կարգաւոր որ 'ի մէնջ
ՙՙ իցէ թէ 'ի սևագլխոց և թէ յաշխարհիկ երիցանց Քահանայից

# ԳԼՈՒԽ Է.

Տնտեսական վիճակ Ջուղայեցւոց, և ճանապարհ խորհրդածութեան յաղագս այնր :

ա. Ըստ թուագրութեանն նշանակելոյ 'ի նախնթաց գըլլուխ՝ բնակիչք Ջուղայու բովանդակին 371 տունք, 1204 արուք և 1382 իգականք : Ըստ կենցաղավարութեան մասին որոշին այն բնակիչք Ջուղայու 'ի չորս դաս : Առաջին դասն է արժանաւոր և վայելուչ եղանակաւ վարողաց զկենցաղավարութիւնն իւրեանց. Քահանայք ունին զառաջին տեղին յայսմ առաջին դասու, զի նոքա քահանայանան Հնդկաստանի վիճակացն ակնկալութեամբ ; և զամս չորս կամ հինգ վիճակաւորեալ .քաղաքացն Հնդկաստանի՝ վերադառնան իւրաքանչիւր ոք ըստ կարի շահելով զբաւական գումար : Թիւ Քահանայից 'ի Ջուղայ այժմ է երեսուն և վեց, յորմէ քսան միշտ 'ի վիճակս մատակարարեն զպաշտօն իւրեանց, և վեշտասանքն մնան 'ի Ջուղայ : Ի քահանայս ևս կայ զանազանութիւն վիճակի կենցաղավարութեան, զի գտանին ոմանք աղքատք ; այլ ըստ իմ խորհրդածելոյ առիթն նոցին աղքատութեան է ոչ իմանալն նոցա 'ի գործ ածել զաջողուածս բաղդին : Երկրորդ տեղին յառաջին դասուն ունին նոքա՝ որք մանաւորապէս պարապին 'ի գործս վաճառականութեան. որոց թիւ հազիւ թէ իցէ վեց : Տուն կամ գերդաստան իբրև երեսուն և հինգ կամ քառասուն, ընդունելով զտարեկան նպաստ յընտանեաց իւրեանց և 'ի մերձաւորաց եղելոց 'ի Հնդիկս և 'ի Ջաւայ, համարին 'ի թիւս երկրորդ աստիճանի առաջին դասուն : Առաջին միջոցն արդեանց Ջուղայու է նպաստն զոր ըն-

ձեռէ Հնդկաստան և Չաւայ թէ առ վիճակաւոր քահանայ. և թէ առ ընտանիս և առ բարեկամս եղեալ 'ի Ջուղայ. որոյ գումար առ ամէն ըստ իմ հաշուելոյ ոչ լինի պակաս քան ըղ. վեց հազար թուման։ Ի գումարոյ անտի կենցաղավարին վանականք, կուսանք, նաև վարժապետք և ուսուցիչք դպրոցաց։ Ըստ իմ կշռադատութեան հարիւր տուն 'ի Ջուղայ կան յառաջնում դասու կենցաղավարութեան, ոմանք զառաջին և ոմանք զերկրորդն ունելով աստիճան։

Երկրորդ դասն կենցաղավարութեան՝ է արհեստաւորացն վիճակ, որք վաստակեալ ըստ կարի՝ պահեն զգերդաստանս իւրեանց միջասահման եղանակաւ։ Արհեստաւորքն 'ի Ջուղայ են փերեզակ 10, գնողք և վաճառողք գուլպայի 30, ոսկերիչք 10. հիւսն 6, դարբին 4, նպարավաճառ 5, մսավաճառ 6, գնող և վաճառողք ցորենոյ 8, ոստայնանկութեան կամ կտաւագործութեան գործարան 130։ Մեծ մասն կանանց գործեն զգուլպայ, և բազում արք յոստայնանկութեան պարապին։ Շահ ոստայնանկութեան առատ էր իբրև տասն ամօք յառաջ. մինչև կարող լինել նոցա ոչ միայն զգերդաստանս իւրեանց խնամել բարօրութեամբ, այլև մթերել ըստ կարևորին զճոխութիւն, այլ այժմ վաստակ իւրաքանչիւր բարեջան ոստայնանկի ոչ է յաւելի քան զտասն շահի առօրին։ Ի տարին 130 կամ 140 հազար կտաւ ելանէ 'ի Ջուղայոյ. և 25 ց30 հազար զոյգս գուլպայի. թիւ սոյն երկրորդ դասու բովանդակի ց140 տուն։

Կալուածատեարք ևս գտանին 'ի Ջուղայ իբրև քսան տուն, որք ունին զայգիս խաղողոյ և պտղոց և զգետինս արմտաբեր, այլ որովհետև սակաւաշահ են կալուածք 'ի Ջուղայ, և բազմածախ (1). և անպակաս է հարուած ցրտահարութեան այգեաց, վասն որոյ նոքա ևս որք կալուածոց են տեարք, չունելով զմեծ արդիւնս՝ ըստ կենցաղավարութեան մասին են դասակից ընդ արհեստաւորացն։

Երրորդ դասն է վասն քրտնաջան վաստակաւորաց և մշակաց որք են որմնադիրք, քարահատք, բաղնեպանք, սափրիչք, գինեվաճառք, կօշկակարք. համետակարք և այլք՝ որք վարեն

զգործ մշակութեան, և օրական վաստակօք հայթայթեն ըղձետոյս կենաց, որոց թիւ լինելոց է ց80։

Իսկ չորրորդ դասն է տնանկաց և չքաւորաց՝ որք ապրին տառապանօք և՝ հեծութեան ցաւօք, և թիւ նոցա ոչ է պակաս. քան զ50 և զ60՝ տուն։

Բ. Որպէս ընդ ամենայն ուրեք՝ նոյնպէս առաւելութեամբ ևս 'ի Ջուղայ հարկաւոր է տնտեսական խոհեմ կառավարութիւն, որ գլխաւորապէս կախի զկանանց, ուստի որոյ ժրագլուխ է տիկին՝ հաստատուն ընթանայ և տնային կառավարութիւն։ Ըստ որում սովորութիւն է 'ի Ջուղայ գնել զտարեկան պարէնս և 'ի տան ամբարեալ պահել, վասնորոյ առաջին պարտք խոհեմ տնարարութեանն է գնել զամենայն ինչ յիւրում ժամանակի, զի թէ ոք ոչ գնեսցէ զիւր ինչ 'ի պատշաճեալ ժամանակին՝ լինի զանազանութիւն ծախսարարութեանն 25 ց30 առ հարիւրն։

Յետ գնելոյ զտարեկան պարէնս՝ ըստ չափու հարկաւորութեան իւրաքանչիւր աւուրն, տիկինն ժրագլուխ արկանէ 'ի գործ, առանց կարօտելի ինչ ունելոյ գնելոյ 'ի կրպակէն՝ բաց 'ի մսոյ։ Ի տան թխեն զհաց լօշ և չորացուցեալ զայն պահեն ցերկու և ցերիս ամիսս, և թրջեալ 'ի ջուր վայելեն քաղցր ախորժանօք։ Իւրաքանչիւր տուն ունի ջրհոր ականակիտ՝ քաղցր և ախորժահամ ջրոյ, որք թէպէտ նուազին այլ ոչ ցամաքին 'ի սաստիկ ամառան, ուստի 'ի մասին ջրոյ՝ չիք ումեք նեղութիւն ինչ կամ պէտք չինելոյ զսառնիչս 'ի պահել անդ զջուր։

Հասարակաբար չիք պէտք ծառայից կամ աղախնեայց 'ի Ջուղայ, զի զօ և իցէ գործս արտաքոյ տանն՝ կատարէ այրն, և զտնային կառավարութիւնն վարէ կինն, 'ի հարկաւոր դէպս միայն կոչելով զվարձուոր կանայս, որք երթան վասն հաց թխելոյ, զհանդերձս լուանալոյ, և զծանր գործս ինչ կատարելոյ։ Չունին կանայք պէտս ստնտու կանանց, զի իւրաքանչիւր կին մայրական գթով սնուցանէ զիւր զաւակունս։ Յաղագս այդորիկ բազում է գութ ծնողաց Ջուղայեցւոց առ զաւակունս իւրեանց, և զաւակացն սէր առ ծնողսն։

Դ. Թէպէտ սակաւ է արդիւնք և չաՀ վաստակոց 'ի Ջուղայ, այլ Թեթևագին լինելն ամենայն պարենից (2) լնու զԹերին պակասութեան վաստակոց, զի իւրաքանչիւր մշակ որոյ օրական վաստակն իցէ տասն շաՀի՝ կարող է իւրով կանամբ և երեք զաւակօք մխիթարութեամբ կենցաղավարել: Չիք կարօտութիւն տան կամ Հարկ 'ի վարձու տանելոյ ընդ տուն, զի կան այնպիսի տունք որք թէ յաղագս մեծութեանն և թէ սակս բնակչացն պակասութեան՝ առանց ինչ վարձու տուեալ լինին բնակութեան տեղի ո՛ և իցէ խնդրարկուաց:

Ե. Գինի կամ այլ ըմպելիք ոչ գնեալ լինին ծանր գնով, այլ իւրաքանչիւր տուն ունի Հնձան՝ կարաս՝ և գինետուն, վասնորոյ 'ի կութս խաղողոյ իւրաքանչիւր տուն ըստ չափու գործածական Հարկաւորութեանն գնէ զխաղող և պատրաստէ զգինի կամ զօղի, որ լինի դիւրագնոյ յոյժ վասն տանուտեառնն: Լաւութիւն գինւոյ կախի զխոՀեմութենէ տնտեսական կառավարութեանն, զի որ ոչ խնայէ 'ի կարևոր վաստակս վերակացութեան խնամոց՝ պատրաստէ զգինիս թէ ոչ վերադաս՝ այլ և ոչ պակաս քան զեւրոպական ըմպելիս: Չորս տեսակ գինւոյ պատրաստին 'ի Ջուղայ, առաջինն քիշմիշ կամ սորեկ խաղողոյ, որ լինի բնութեամբ ջերմ՝ սպիտակ գունով, և դիւրաւ ջեռուցանէ զգլուխ ըմպողին և տայ զգլխացաւ:

Երկրորդն ‘‘ալվանդ,, կամ Հասարակ խաղողոյ որ բնութեամբ է բարեխառն գունով կարմիր, և առաւել գործածական: Երրորդն է սեաւ կամ ռանգ, զոր կազմեն 'ի սեաւ խաղողոյ, որ բնութեամբ է Հով, այլ բազմաց 'ի Ջուղայ ոչ ախորժական ըմպելոյ: Չորրորդն է Նաշարադի յաղագս 'ի Նաշարադ գեղջէն բերելոյ զխաղողն: Որոյ գինին լինի ըստ տեսակին ալվանդի, այլ քան զնա առաւել զօրաւոր և բարեՀամ: Բայց 'ի քիշմիշէն զմիւս խաղողսն պարտ է փռել ցաւուրս քառասուն զի ցամաքեսցի ջուրն՝ և ապա արկանել 'ի Հնձան, զքաղցուն և զկոխածն խաղողոյ միանգամայն ածելով 'ի կարաս, և խառնելով յամենայն օր մինչև պարզեսցի գինին: որչափ Հնոյանան գինիք 'ի Ջուղայ՝ այնչափ ազնուանան, զի

տասխանան զՀամ ազգաց և անորժ, տան զՀոտ Հպարտութեան, որոց ըմբռնողն զգայ զներգործութիւնն ցաւուցս երկոսս։ Գրեչ ապաստանութեանս պահեալ ունէր զինի ցերեկուտասն ամս, որ զերբաղանցեալ էր յոյժ ըստ ազնուութեան Համայ և զօրութեանն իւր։

Ե. Տարազ զգեստուց արքի արանց Ջուղայու է ըստ ամենայն նմանութեան պարսկական Համազերձից, այլ ըստ պատկերացն վկայելոյ՝ նախնիք Ջուղայեցւոց ունեցեալ են զՀանդերձս այլատարազ քան զպարսկականն, զի նմանութիւն ունին զգեստք նոցա Գուրջի կամ Վրացի զգեստուց. զղօտի Հաստ 'ի մէջս, և զփակեղ ունելով 'ի գլուխ։ Տարազ կանացի զգեստուցն ըստ բազմաց վկայելոյ նոյն է զոր եւ բերն 'ի Հայաստանեայ. մերթն Հնդկերձ կանանց կոչի Թալալայ, որոյ լանջն և գոգ բաց է, և քղանցք կամ մերթն գոգ ծածկեն զայն։ Ծածկեալ են գլուխք նոցա չարխուք փաթթութանօք, որոյ վերայ դնեն զկօտ, կապեն զքնթակալ, արկանեն զլանջածածկոցն՝ որ մանուկէլ կոչի, և յամառան՝ Թօռն, և չղարշապատեն զգլուխն։

Զ. Յառաջին ժամանակս իսկ յորժամ 'ի Խոխութեան ընդայր Ջուղայ, 'ի մէջ ինքեան ոչ լինէր ուելք վաստակ՝ քան զպարուստ իւրաքանչիւր վաստակաւորին. ուստի յայտ է թէ 'ի մէջ Ջուղայու թէ յառաջն և թէ այժմ այնչափ միայն էինի վաստակել՝ որչափ սակաւածախ պէտք տան խնդք պաՀանջէ։ Յորդութիւն առաջնադար վաճառականութեանն Ջուղայեցայր յարդեանց վաճառականութեան, որոյ բազում տարածեալ էր 'ի զանազան Հեռաւոր սաՀմանս, զօրնէ փոքր 'ի շատէ 'ի պրակ վաճառականութեանն ծանուցաք։

Է. Խարիսխ Հաստատութեանն Ջուղայու է Վանքն Ամենափրկչի, և զկառավարութենէ առաջնորդացն կախի բարոյութիւն կամ տարաբախտութիւն բնակչացն։ Զի Ջուղայեցիք չունին այժմ շնորհիւն Աստուծոյ ներդուլթիւն ինչ 'ի կողմանէ Տէրութեան, այլ միայն յառաջ շնորհս նորա՝ որպէս ազատ քաղաքացիք. ուստի զան երբեմն ՀարստաՀարութիւնք ինչ 'ի մանաւորաց թէ 'ի քաղաքական կառավա-

րութեն։ և թէ յունաց յայլազգեաց, վասնորոյ եթէ եղեցէ առաջնորդ ժողովրդականաց, անձնադիր օգտի հասարակութեան, և պաշտպանող իւրում հօտի (որպէս է արդ Առաջնորդն Թադդէոս) վասնին ներգործութիւնք նոյն միաբանաւոր հարստահարողաց, և ժողովուրդն ոչ կորուսանէ զիւր բարորակեցութիւն. այլ թէ ընդ հակառակն առաջնորդն իցէ երկչոտ, անփոյթ վասն խնամոց ժողովրդեանն, և անձին իւրոյ փառաւորութեանն և եթ մոռադիր, ոչ պակասի նեղութիւն Ջուղայու բնակչաց 'ի միաբանաւոր հարստահարողաց՝ որք են ինքեանց դրացի այլազգիք, կամ քաղաքական կառավարութեանն փոքր իշխանաւորք։

Է. Ըստ բազմաց խոհական խորհրդածուաց բաղձաւոր լինի Ջուղայ եթէ ունիցի 'ի ծառայութեան Տէրութեան ըզքանի մի հարազատ Թարգմանս կամ զայլ ծառայողս որք իցեն 'ի բնակչաց Ջուղայու, զի նոքա 'ի բարեդէպ ժամանակս հրաւիրելով զբարեգթութեան շնորհ Տէրութեան առ Ջուղայ՝ ոչ սակաւ նպաստս մատուցանեն իւրեանց Հայրենեաց։ Ըստ այսպիսի խորհրդածութեան յանցեալ ամի առաքեաց Սրբազան Առաջնորդն զերկու Ջուղայեցի տղայս 'ի Ճեմարանն վեհազնեայ Տեարցն Լազարեանց 'ի Մոսկով, զի հմացեալ 'ի զանազան մակացութիւնս՝ պիտոյասցին և ծառայութեան Տէրութեան, և նպաստելոյ Հայրենեացն։ Այժմ շնորհիւն Աստուծոյ չորս Ջուղայեցիք գտանին 'ի Տէրութեան ծառայութեան, որք են Յակոբխան և Աբրահամխան եղբարք, Մէլքումխան որդի Յակոբ խանի, և Թարգման Յարութիւն Եղիազարեան։

---

(1). Յամառն 'ի ցամաքել Երից Հարց ևեթ ելանէր Հանել զԼոյս 'ի Լերհերաց և ... զոյգեռ և զոգնոյն արձակ, ... ծանուցանելոյ յառելու զծախուն հոլովածոց և նաաողեցուցանէ զզոյն։ Այս ... այգեաց երեկոյ հով ... Հարց է Հանել զԼոյս 'ի Լերհերաց, այր ... և ... այգեր Ջուղայու ... զԼերհեր ... 'ի ... ։

(2) Ամէն [illegible] Լեռնաստան շահէ, [illegible] 8 շահէ, [illegible] 4 և կէս 5 շահի, [illegible] 18, 20 շահէ, [illegible] 1 և կէս 2 շահէ, [illegible] 2, 2 և կէս շահի, [illegible] 32, 48 շահէ։ [illegible] 1.280 [illegible], և [illegible] 24 [illegible]։

# ԳԼՈՒԽ Բ.

## Ընդհանուր Բնաւորութիւն Ջուղայեցւոց։

ա. Ունին ամենեքեան զսիրտ քնքուշ և զգացողութիւն նուրբ, ուստի սիրին զկեանս ազատական։ Դժուարութեամբ ժուժեն նախատանաց կամ անարգութեան, և յաղագս այնորիկ դիւրաշարժ են 'ի սրտմտելն։ Այսպիսի բնաւորութիւն կարծի յոմանց ամբարտաւանութիւն, այլ ինձ առաւել յարմար թուի բնական վեհութիւն հոգւոյ կոչել զայն։ Աշխատասէրք են և տաղտկացողք 'ի պարապորդութենէ, աչալուրջ են 'ի գործառնութիւնս իւրեանց, և դժուարաւ խաբին յումեքէ։ Վարժապետ այնպիսի աչալրջութեան է ազգն՝ յորոց մէջն բնակեալ կան, զի 'ի տուրևառութիւնս մանուածոյ հընարագիտութիւնք նոցա դաստիարակեն զՋուղայեցիս լինել աչալուրջ՝ վասն ոչ անկանելոյ 'ի խորխորատ վնասուց։ Եթէ ունիցին զկարողութիւն՝ սիրելի է նոցա կենցաղավարութիւն չափաւոր և վայելուչ, և յաւէտ 'ի շռայլութեան՝ քան թէ 'ի ժլատութեան կողմն հակին ընթացք նոցա։ Հիւրասիրութիւնն 'ի նոսա տարրացեալ ունակութիւն իմն է, և ցանկան զպանդուխտ համազգիս շահել ամենայն մարդասիրութեամբ, և եթէ հիւր հայազգին իցէ, արժանաւոր ոք, ոչ

խնայեն 'ի նմանէ մինչև անգամ' զլոյս աչաց իւրեանց ։ Նորին բաղումք' որք պանդխտութեամբ իւրեանց հիւրասիրեցան 'ի Ջուղայ, և 'ի բացակայութեան իւրեանց ապերախտաբար հեղգնեցին զՋուղայեցւոցն մարդասիրութիւն, որ առ խիթ եղև Ջուղայեցւոց չափաւորելոյ զհիւրասիրութիւնս իւրեանց. Իսկ եղեն և ոմանք որք զաակաւորեայ առանձնականութիւնս Ջուղայեցւոց անմոռանալի պահեցին և պահեն ։ Կարեկցութիւն և գութ առ ընկերն առաւազեղ է յամենեսին, և ոչ առնեն զխնայութիւն կարևոր ծերունութեանց ։

Յօտարութեան' զքաղաքացի համազգիս իւրեանց սիրեն սիրտ մտերմութեամբ. իսկ 'ի Ջուղայ' նուազ ներգործութեամբ է այն զգացումն ։ Ուսումնասէրք են, և իւրաքանչիւր ծնող զուն գործէ զմանկունս իւր առաքել 'ի դպրոց, իսկ մինչ չափահաս լինի տղայն' այնպիսի ծնողք որոց կարողութիւն ոչ բաւէ տալ զհաց և զհանդերձ մանկանն զի դաստիարակեսցի յուսմունս, աղի արտասուօք զտղայն 'ի բաց հանէ 'ի դպրոցէն' զի նա իւրով վաստակօք հոգասցէ զապրուստ իւր ։ Մանկունք նոցա սրամիտ են, ընդունակք ուսմանց' և ջանասէրք վասն առաջադիմութեան. ուստի զամենայն մակացութիւնս առանց դժուարութեան մարթ է նոցա ստանալ դիւրաւ' եթէ եղիցին վարժապետք հմտացեալ, և ուսուցիչք' բարեկիրթ ։

Բ. Հայրենասիրութիւն և ընտանեսիրութիւն եռանդնոտ է 'ի նոսա. Ջատագովութեան արժանի են բոլոր այն մասինքս' որք 'ի Ջուղայոյ գաղթեալ 'ի Հնդկաստան կամ 'ի Ջաւայ' հասին ճոխութեան, զի առ ընտանիս' առ աղքատս' առ տնանկս' առ եկեղեցիս' առ դպրոցս և առ վերաբերեալ նպաստս ազգայինս ոչ խնայեն զոսկիս իւրեանց, այլ են իբրև աղբիւրք առատաբուղխք որով զբազումս զովացուցանեն ։ Թուի ինձ թէ բատ արուէ 'ի Ջուղայ կրեն նոքա զնեղութիւնս, թէ յԱզգէ' յորոց մեջի բնակեալ կան, և թէ 'ի դառն փորձոյ աղքատութեան, վասորոյ զգենուն զսիրտ գորովալի և խանդաղատական, և կարեկցելով իւրեանց եղբարց' յիշատակս Հայրենեացն, առնեն զառատաձեռն օգնականութիւնս մինչ

հաստատեսն ախորժութեան ։

Ապաւասիկ այն եռանդն և այն ազգասէր զգացումն, յորդեալ նոցա՝ որք 'ի Հնդիկս ծնանին և կաթամբ սնանորդ Հնդկաց մնանին և զարգանան, յորոց դուն ուրեք պատահիցի որ իք ընթացեցին 'ի շաւիղ Հայրենասիրութեան չասեմ և բարեպաշտութեան ։ Ուստի հաստատի կարծիքն իմ, թէ Ջուղայ է՝ որ տպաւորէ յորդման իւր զգացումն ազգասիրութեան և Հայրենասիրութեան ։ Կրօնասիրութիւն ջերմ էր 'ի նոսա յառաջին ժամանակս, որոյ ապացոյցն է քսան և չորս եկեղեցիքն յընթացս գոգ ջիր յետուն ամաց շինեալ 'ի Ջուղայ, և այժմ իսկ բաղդաւորութեամբ այլոց քաղաքաց կամ ժողովրդեան՝ Ջուղայ ըստ կրօնասիրութեան մնացին զտանի առաւել ջերմեռանդ և բարեպաշտ ։ Մեծ է պարծանք Ջուղայեցւոց յաղագս հաստատուն պահելոյ զկրօն քրիստոնէութեան, դիմակայելով հազարաւոր տեսակ հալածանաց, վշտաց, նեղութեանց, զրկանաց, աղքատութեան, խարդանաց, կապանաց և ազգի ազգի հարստահարութեանց (զորոց փոքր 'ի շատէ 'ի կարգի պատմութեանս յիւրում տեղւոջ ծանուցաք). որք սկսեալ 'ի ժամանակէ թագաւորութեանն Շահսուլթան Հոսէյնի բաղխեցին զնաւն անխորտակելի՝ զեկեղեցին քրիստոսի, որ նաւապետութեամբ Յիսուսի յաղթեալ ամենայն դժուարութեանցն. ամբարձելոց՝ փառաւոր կացոյց զնշան խաչին 'ի վերայ գմբեթաց եկեղեցւոյ, որք գտանին այժմ 'ի Ջուղայ ։ Ջուղայեցիք էին որք կարեն պարծանօք ասել, թէ կամելով մեր 'ի քրիստոնէութեան կեալ (ըստ Առաքելոյն) 'ի հալածանս համբերատար կացաք, ուստի յԱստուծոյ պարգևեսցի վարձք նոցա ըստ հոգւոյ ։ Եղեն և այլ այլահաւատ ազգք՝ որք գաղթեցան 'ի Հայաստանեայ 'ի պարսկաստան, իբր՝ ազգն Վրաց՝ և ազգն Պարսից (Գեաւուրից) այլ նոքա ամենեքին 'ի յառնել փոքր ինչ նեղութեան՝ հաւատափոխ լեալ եղեն մահմեդական. իսկ Ջուղայու հայոց միայն այն պարծանք՝ զի ոչ միայն 'ի հաւատս քրիստոնէութեան հաստատուն մնացին, այլև վսեմութեամբ պայծառացուցին զանուն ազգի իւրեանց, և ծաղկեցուցին ընդ ամենայն ժամանակս զուսումն և զեկղեն.

հայրենի, և միով բանիւ ասել, նահատակեցան և բարւոյ պահպանեցին զաւանդն պատուական, աշխատանօք և զԱզգութիւն։

Դ. Այնպէս զբնածին յարմարութիւն վաճառականութեան զորմէ թէպէտ լիով ունիմ տեսանել ընթերցողն ՚ի պրակն վաճառականութեան, այլ ՚ի ներկայ ժամանակի իսկ՝ վաճառականութեամբ ծաղկեցեալքն ՚ի Հնդկաստան՝ են Ջուղայեցիք, որք զատարկամծեան և տգիտութեամբ մոլին ՚ի Հնդիկս և գերադանցեցան քան զնոսա՝ որք ծնեալ ՚ի ձոխ ծնողաց անան ՚ի փարթամութեան, և էին ընտելացեալք երկրին և պարագայից Հնդկաստանի․ վասն զի Ջուղայեցիքն զիւրեանս վաստակել ժիր և աչալուրջ գործառնութեամբ, իմանան զպարզ վաստակոց և աճողութեան, և շրջահայեաց մտադրութեամբ յառաջ վարեն զգործ իւրեանց, վասնորոյ Աստուծոյ շնորհիւ ստանան զառաջադիմութիւն, և հանդիսանան յերկիրս յորս մտանեն։

Այլ ըստ որում մարդկային բնաւորութեան ենթակայացեալ՝ ունին և զայսպիսի պակասութիւնս։ Նախանձին վասն առաջադիմութեան ընկերին։ Այս նախանձ ըստ կրկին տեսակի առնէ զիւր ներգործութիւն, մի՝ զի և նախանձօղն հասարեսցի փառաց առաջադիմողին, և միւսն՝ զի առաջադիմօղն մի բարձրասցի ՚ի փառս քան զընկերն նախանձաւոր։ Ի խորհուրդս լաւութեան՝ ոչ միշտ գտանին միաբան։ Դիւրահաւատ լինելով բարեկամութեան օտարաց՝ մերկանան նոցա զխորհուրդս իւրեանց։ Ի բարկանալն ոչ չափաւորեն զկիրս, այլ ձիգն թափեն յառաջ վարել զկամս իւրեանց թէ բարի իցէ և չար, թէ վնաս առ ընկերն իցէ և թէ վնաս առ անձն իւր։ Ի յաջողութեան՝ փոքր ինչ մեծամտին, թէպէտ ոչ ամենեքին։ Զգացումն երախտագիտութեան ոչ առաւել ջերմ ներգործութիւն ունի, ուստի ՚ի դէպս անհաճոյական ինչ առարկայից՝ զատելութիւնն փոխանակեն ընդ երախտագիտութեան։

Ե. Այս նկարագիր բնաւորութեան գրեմ ըստ ընդհանուր գծագրութեան, որչափ իմ էր նկատողութիւն զա-

մնան , ասոր եթէ յոմանց պակասի մինն կամ միւսն , կամ այ-
լուծ ումեք այլայլես նկատեալ լինի բնաւորութիւնն ջուղա-
յեցւոց , ոչ լինիցին առգտանելի բանք իմ , ըստ որում այսնկա-
րագիր է ըստ բնական ունակութեան , և այն տարօրինակ դժա-
տութիւն ոմանց եթէ դէպ լիցի՝ լինելոց է ըստ դրութեան , որ-
թէ ըստ պարագայից ժամանակի , և թէ ըստ կրթութեան-
ու առանձին կամ փոքրոյ նեղութեան կարեն փոփոխել զմարդիկ ։

## ԳԼՈՒԽ Թ.

### Գաւառք և գիւղօրայք Հայոց ՚ի Պարսկաստան ։

ա․ Յետ հատուցանելոյ Շահաբասայ զվտարեալ ժողովրդականսն Հայոց Հայաստանի , գիւղականաց նշանակեաց տեղի բնակութեան զգաւառսն զայսոսիկ ( 1 )․ Լնջան , Ալինջան , Գեանդիման կամ Ջղախօռ , Քեարվանդ , Փէրիայ , Բուրվարի , Գեափլայ , Քեազազ , Քեամարայ , Մալայիր , և Ղարաղան ։

բ․ Լնջանայ էին մետասան գիւղօրայք՝ որոց անուանք են , Քեարքէն՝ Փարթուն՝ Ջուղուն՝ Ջուզուն՝ Քիլխուն՝ Փէլարդ՝ Բուրուզարդ՝ Սէմսուն՝ Խունձրէք՝ Միրգին՝ և Քեալէ ։

Ալինջանայ էին եօթն գիւղօրայք , Մշախբուր՝ Փիղուն՝ Ջաղրան՝ Քափաշան՝ Բօնդարդ՝ Քուրուջ և Մէմէդ ։ Չիք այժմ ՚ի նշանակեալ գիւղօրայսն Լնջանայ և Ալինջանայ տուն մի Հայ գիւղացւոց , զի զբօվանդակն տիրեալ են այլազգիք ։ Ոչ գոյ հաւաստի տեղեկութիւն թէ երբ փախստեայ եղեն Հայք ՚ի գաւառացն անտի ։ Իբր 120 ամօք յառաջ ՚ի կոն-

դանկս Կաթուղիկոսացն քաղաքն Լնջանայ և Ալէքնջանայ ցի-շատակեալ լինին, այլ յետ այնր ոչ ևս լինի յիշատակու-թիւն նոյն գաւառաց, որով յայտնի լինի թէ իբրև 110 կամ 100 ամօք յառաջ եղծան նոյն գաւառք ընդ որս և Գեար-վանդ։ Պատճառն ցիր և ցան լինելոյ նոյն գաւառականն Հայոց՝ է հարստահարութիւնն և անչափաւորութիւնն հարկա-պահանջութեան։ Թէպէտ չիք որոշ ծանօթութիւն, այլ չիք տարակոյս թէ բնակիչք նոյն գաւառաց ափեցան յայլ գաւառսն Հայոց։

Դ․ Պռեանպէլեան կոչի և գաւառ Զարմահալու, որ է չո-րեքտասն փարսաղ հեռի յԱսպահանայ։ Երեք ամօք յառաջ չորս գիւղօրայք Նոր Հայոց 'ի նմին գաւառի, որոց անուանք են, Ահմադաբադ՝ Միրաք՝ Գիշնիգան և Լիւասիան, այլ շը-նորհիւն Աստուծոյ աճման ժողովրդեան հարկաւոր եղև առ-նել զհաստատուն պաշտպանութեան և յաւելուլ զայլ ևս եր-կու գիւղօրայս։

Առաջին հաստատածն եղև յամի 1855 'ի գեղջէն Գիշնիգա-նայ՝ քսան և չորս գերդաստանք, որք բնակեցան 'ի գեօղն կոչեցեալ Մահամռայ․ երկրորդ հաստատածն եղև 'ի 1856 ամի 'ի գեղջէն Ահմադաբադայ՝ տունք իբրև քսան և հինգ, որք բնակեցան 'ի Բօլքաջի։ Ուսահամարութիւն հայ ժողովր-դեանն նոյն գաւառի ըստ հրամանի Սրբազան Առաջնորդին Թադէոսի 'ի 1856 ամի եղև ըստ յետագայ աղիւսակին։

| Գիւղօրայք | Տուն | Արուք | Էգք։ |
|---|---|---|---|
| Միրաք | 64 | 277 | 245։ |
| Ահմադաբադ | 92 | 326 | 271։ |
| Գիշնիգան | 43 | 125 | 114։ |
| Մահամռայ | 24 | 72 | 73։ |
| Լիւասիան | 83 | 307 | 253։ |
| | 306։ | 1107։ | 956։ |

Այս գաւառական ժողովուրդք մերձ լինելով քաղաքին ստանեն զյաճախ անցուդարձ 'ի Ջուղայ, բերելով զգետինս, և զվաճառս իւրեանց, որք են ալիւր՝ իւղ՝ ձէթ՝ ոչխար՝ պանիր՝ և մեղր։ Յաղագս ունելոյ նոցա զյարաբերութիւն ընդ քաղաքին և ընդ Ջուղայու՝ քան զայլ գաւառականսն են քաղաքավար՝ բարեկիրթ՝ և կենցաղագէտ։ Ըստ որում առնեն նոքա զարուեստութիւն և ունին զգետին ընդարձակ վասն հերկագործութեան՝ վասն որոյ սոյն գաւառականք առաւել հարուստ են քան զայլ գաւառականսն, և սկսեալ 'ի 1850 տարւոյ՝ առնեն առաջադիմութիւն թէ ըստ աճելութեան և թէ հարստութեան մասին։

Դ. Ըստ նոյն գաւառի ծերոցն վկայելոյ՝ ժողովուրդ Զարմահալայ են գաւառականք Բասենոյ գաղթեալ 'ի Հայաստանէ։ Որոց պատասպետ միայն իշխան եղեալ է Մելիք Տէր Պետրոս, որ ընդ Սուքիաս որդւոյն իւրոյ եկն 'ի Հայաստանէ։ Սուքիասն ևս ստանայ զկարգ քահանայութեան և զկնի հօրն իւրոյ մահուան վարէ զիշխանութիւն կառավարութեանն ժողովրդոց Զարմահալայ մինչև ցվախճանին իւրն։ Գերեզմանն նորա կայ 'ի Վաստիկեան գեղջ ըստ այսմ տապանագրոյ,

« Այս է տապան Մալիք Տէր Սուքիազի, որ է որդի Մա-
« լիք Տէր Պետրոսի. հանգեաւ 'ի սիրտ երկրիս թւին 1139
« (1690) Ապրիլի 7 ին »։ Նշանաւոր է յոյժ տապանաքարն նորին, զի երկայնութիւնն է 18 թիզ, լայնութիւնն 5, և թանձրութիւնն եօթն թզաչափ. է այն ընտիր մարմարեան կապուտ երկնագոյն և 'ի հարկանելն զայն մուրճով՝ հնչէ ըզձայն զանգակի։ Յետ հօրն վախճանելոյ՝ Աբէլ որդի նորա կառավարէ զժողովուրդն, որոյ պայազատութեանն ժամանակ՝ լինի 'ի Թագաւորելն Նադիրշահի։ Ըստ ծերոցն վկայելոյ յառաջէ Նադիրշահի զհարկահանս, սոյն Աբէլ քեալանթար անվեհեր համարձակութեամբ պատասխանի առնէ հարկահանացն, թէ զի՞նչ է զի Նադիրշահ պահանջէ զհարկս, զի եթէ ըստ որում Թագաւոր պահանջէ՝ ուրեմն ընդէ՞ր լօռք անհանգիստ առնեն զմեզ՝ և նոքա ևս հարկանեն զհարկ։ Արդ եթէ լօռք են Թագաւոր՝ Նադիրշահ զի՞նչ պահանջէ,

Իսկ եթէ Նադէրն է Թագաւոր» Լօռք ընդէր հարստահարէ զմեզ : Վերադարձեալ հարկահանացն պատմեն Նադէրշահի, և Նորա զզօրս առաքեալ Նուաճէ զԼօռս և վարէ փախստական : Յետ յաղթանակաց դառնալոյ Նորա 'ի Չարմահալ գաւառ՝ Աբէլ գաւառապետ ելանէ ընդ առաջ Նորա քահանայիւք և ժողովրդովք և ընծայիւք, որում ասէ Նադիրշահ, ահա Թագաւոր քո, և Աբէլ ասէ՝ ահա ես և ժողովրդականք հպատակ Տէրութեանդ, և տայ զհարկս երկուց ամացն, զոր խափանեալ Նադիրշահի՝ արձակէ ջատագովութեամբ : Որդի Քեալանթարին Աբէլայ էր Մուքիաս, յորմէ ծնաւ Ղուկաս՝ այր լայնախորհուրդ և ժողովրդասէր, որ պաշտպան լինելով իրաւանց ժողովրդեան կասկածաւոր եղև առաջի Մահմադողլեան գաւառապետին Չարմահալայ, վասնորոյ մինչ Նա 'ի 1834 ամի եկեալ էր 'ի Ջուղայ սակս ժողովրդական գործոց : Մահմադողլեան առաքեալ էր զէօրս հեծեալս զի սպանցեն զնա, որոց գտեալ զՔեալանթար Ղուկաս 'ի վերայ կամրջին յերթալն 'ի քաղաք, մերձենան առ Նա կեղծ մտերմութեամբ՝ որպէս թէ զթուղթ գաւառապետին մատուցանեն առ Նա, և 'ի հուպ լինելն արձակեն 'ի վերայ Նորա զատրճանակս, և առեալ զվերարկուն և զգլխարկն խոյս տան 'ի Չարմահալ : Մարմին Նորա ամփոփեցաւ 'ի պարսպի որբոյ վանքին Ամենափրկչի, ունելով զյետագայ տապանագիրն :

Ի Ներքոյ դայս դամբարանիս,
ամփոփեալ՝ հողով ծածկի,
դին Ղուկաս՝ Քալանթարի,
որդի Մուքիաս՝ բարեզարդի :
Էր մեր ազգին՝ յոյժ պիտանի,
յիսուն և մի՝ ամ հասակի,
անմեղ գոլով՝ Նահատակի,
որք հանդիպիք՝ տուք ողորմի,

Թիւն հազար ութ հարիւրի,
երեքտասան հինգ աւելի,
յամսեանն երեք դեկտեմբերի ։

Քեալանթար Ղուկասու Տէրեան որդիք չորք. Յարութիւն՝ Մարտիրոս՝ Յովհաննէս և Յովակիմ անուն ։ Յարութիւնն էր քեալանթար Լիւսախանայ, և Մարտիրոսն՝ քեալանթար Ահմադաբադայ ։ Քեալանթար Յարութիւնն յաղագս խոչ և խափման լինելոյ անիրաւի կողոպտման և յափշտակութեան Լօռեց ումանց զկրացի եղելոց Լիւսախանայ, 'ի 17 Դեկտեմբերի 1855 ամի ընդ Աբէլ հօրեղբօր իւրում սպանաւ 'ի նոցանէ ։ Բողոքեաց Սրբազան Թադդէոս Առաջնորդն առ մեծ նախարարն Պարսից Միրզաաղամ, յորմէ հրաման եղև 'ի վերայ քաղաքապետացն Սպահանայ՝ Գուլփէգանայ՝ և Լօռստանի՝ զի կալանաւորեսցեն զմահապարտսն, 'ի ձմերան եղանակի այնմիկ զօրք առաքեցան 'ի վերայ ամրոցի նոյն մահապարտ Լօռեց, քանդեցին և աւերեցին զտունս նոցա, և նոքա փախստեայ լեալ՝ վտարանդի շրջեցան աստ և անդ ընդ միջոցս քաղաքում, մինչև ապա աղաչաւոր գտեալ առ եղբարսն և առ որդին քեալանթար Յարութիւնի՝ խնդրեցին զանյիշաչար ներողամտութիւն նոցա ։ Յետ մահուան նորա՝ Բէգլար որդի նորա նստաւ քեալանթար Լիւսախանայ, այլ Մարտիրոս հօրեղբայր նորա ունելով զբաւական խոհականութիւն և զհանճար մեծութեան՝ կառավարէ զգաւառական ժողովուրդն Չարմահալայ՝ քրիստոնէական եղբայրասիրութեամբ ։

Այս գաւառ ունի ութ քահանայս և հինգ ժամատունս ։ Երեքին գիւղօրայք սոյն գաւառի Չիւրիգան, Ֆռնճիգան և Վաստիգան՝ որք յառաջին էին բազմամարդ և աբադ, այժմ ընդ ամայիս փառեալ են ։

խնայեն 'ի նմանէ մինչև անգամ' զերկս աչաց իւրեանց ։ Նոյն բազումք՝ որք պանդխտութեամբ իւրեանց հիւրասիրեցան 'ի Ջուղայ, և 'ի բացակայութեանն իւրեանց ապերախտաբար հեգնեցին զՋուղայեցւոցն մարդասիրութիւն, որ առ ինքն եղև Ջուղայեցւոց չափաւորելոյ զհիւրասիրութիւնս իւրեանց. իսկ եղեն և ոմանք որք զանխաօրեայ առանձնականութիւն Ջուղայեցւոց անմոռանալի պահեցին և պահեն ։ Պարկեշտութիւն և գութ առ ընկերն առատազեղ է յամենեսին, և ոչ առնեն զխնայումն կարեւոր ձեռնտուութեանց ։

Յօտարութեան՝ զքաղաքացի համազգիս իւրեանց սիրեն սիրով մտերմութեամբ. իսկ 'ի Ջուղայ՝ նուազ ներգործութեամբ է այն զգացումն ։ Ուսումնասէրք են, և իւրաքանչիւր ծնող զուն գործէ զմանկունս իւր առաքել 'ի դպրոց, իսկ մինչ չափահաս լինին տղայն՝ այնպիսի ծնողք որոց կարողութիւն ոչ բաւէ տալ զհաց և զհանդերձ մանկանն զի դաստիարակեսցի յուսմունս, աղէ արտասուօք զտղայն 'ի բաց հանէ 'ի դպրոցէն՝ զի նա իւրով վաստակօք հոգասցէ զապրուստ իւր ։ Մանկունք նոցա սրամիտ են, ընդունակք ուսմանց՝ և ջանասէրք վասն առաջադիմութեան. ուստի զամենայն մանկացութիւնս առանց դժուարութեան մարթ է նոցա ստանալ դիւրաւ՝ եթէ եղիցին վարժապետք հմտացեալ, և ուսուցիչք բարեկիրթ ։

Բ. Հայրենասիրութիւն և ընտանեսիրութիւն եռանդնոտ է 'ի նոսա. Ջատագովութեան արժանի են բազ այսմ մասին նոքա՝ որք 'ի Ջուղայոյ գաղթեալ 'ի Հնդկաստան կամ 'ի Ջաւայ՝ հասին ճոխութեան, զի առ ընտանիս՝ առ աղքատս՝ առ տնանկս՝ առ եկեղեցիս՝ առ դպրոցս և առ վերաբերելի նպաստս ազգային ոչ խնայեն զտուրս իւրեանց, այլ են իբրև աղբիւրք սառնորակք որով զբազումս զովացուցանեն ։ Թուի ինձ թէ բազում 'ի Ջուղայ կրեն նոքա զնեղութիւնս, թէ յազգէ՝ յորոց մէջի բնակեալ կան, և թէ 'ի դառն փորձոյ աղքատութեան, վասնորոյ զգենուն զսիրտ գորովալի և խանդաղատական, և կարեկցելով իւրեանց եղբարց՝ յիշատակաւ հայրենեացն, տանեն զառատաձեռն օգնականութիւնս մինչ

հաստատնեն աջողութեան ։

Պակասի այն եռանդն և այն ազգասէր զգացումն յորդիս նոցա՝ որք 'ի Հնդիկս ծնանին, և կաթամբ սևամորթ Հնդկաց սնանին և զարգանան, յորոց դուն ուրեք պատահիցին որք ընթասցին 'ի շաւիղ Հայրենասիրութեան չասեմ և բարեպաշտութեան ։ Ուստի հաստատի կարծիքն իմ, թէ Ջուղայ է՝ որ տպաւորէ յորդիսն իւր զզգացումն ազգասիրութեան և Հայրենասիրութեան ։ Կրօնասիրութիւն ջերմ էր 'ի նոսա յառաջին ժամանակս, որոյ ապացոյցն է քսան և չորս եկեղեցիքն յընթացս գոգցես յիսուն ամաց շինեալ 'ի Ջուղայ, և այժմ իսկ բաղդատութեամբ այլոց քաղաքաց կամ ժողովրդեան՝ Ջուղայ ըստ կրօնասիրութեան մասին գտանի առաւել ջերմեռանդ և բարեպաշտ ։ Մեծ է պարծանք Ջուղայեցւոց յաղագս հաստատուն պահելոյ զկրօն քրիստոնէութեան, դիմակալելով հազարաւոր տեսակ հալածանաց, վշտաց, նեղութեան, զրկանաց, աղքատութեան, խարանաց, կապանաց և ազգի ազգի հարստահարութեանց (զորոց փոքր 'ի շատէ 'ի կարգի պատմութեանս յիւրում տեղւոջ ծանուցաք), որք սկսեալ 'ի ժամանակէ թագաւորութեանն Շահսուլթան Հօսէյնի բաղխեցին զնաւն անխորտակելի՝ զեկեղեցին Քրիստոսի, որ նաւապետութեամբ Յիսուսի յաղթեալ ամենայն դժուարութեանցն, ամբարձելոց՝ փառաւոր կացոյց զնշան խաչին 'ի վերայ գմբեթաց եկեղեցւոյ, որք գտանին այժմ 'ի Ջուղայ ։ Ջուղայեցիք էին որք կարեն պարծանօք ասել, թէ կամելով մեր 'ի քրիստոնէութեան կեալ (Պ. Առաքելոյն) 'ի հալածանս համբերատար կացաք, ուստի յԱստուծոյ պարգևեսցի վարձք նոցա ըստ հոգւոյ ։ Եղեն և այլ այլահաւատ ազգք՝ որք գաղթեցան 'ի Հայաստանեայ 'ի պարսկաստան, իբր՝ ազգն Վրաց՝ և ազգն Պարսից (Գեաւուրց) այլ նոքա ամենեքեն 'ի յառնել փոքր ինչ նեղութեան՝ հաւատափոխ լեալ եղեն մահմեդականք. իսկ Ջուղայու Հայոց միայն այն պարծանք՝ զի ոչ միայն 'ի հաւատս Քրիստոնէութեան հաստատուն մնացին, այլև վսեմութեամբ պայծառացուցին զանուն ազգի իւրեանց, և ծաղկեցուցին ընդ ամենայն ժամանակս զուսումն և զլեզուն.

հայրենի, և միով բանիւ ասել, նահատակեցան և դարուց պահպանեցին զաւանդն պատուական, զճշմարտութիւն և զԱզգութիւն։

Դ. Ունին զբնածին յարմարութիւն վաճառականութեան, զորմէ թէպէտ լիով ունիս տեսանել ընթերցողդ ՚ի պրակն վաճառականութեան, այլ ՚ի ներկայ ժամանակի իսկ՝ վաճառականութեամբ ծաղկեցելովքն ՚ի Հնդկաստան՝ են Ջուղայեցիք, որք դատարկաձեռն և աղքատութեամբ մտին ՚ի Հնդիկս և գերազանցեցին քան զնոսա՝ որք ծնեալ ՚ի ծոց ծնողաց սնան ՚ի փարթամութեան, և էին ընտելացեալք երկրին և պարագայից Հնդկաստանի. վասն զի Ջուղայեցիքն գիտեն վաստակել ժիր և աչալուրջ գործառնութեամբ, իմանան զյարգ վաստակոց և աջողութեան, և շրջահայեաց մտադրութեամբ յառաջ վարեն զգործ իւրեանց, վասնորոյ Աստուծոյ շնորհիւ ստանան զառաջադիմութիւն, և հանդիսանան յերկիրս յորս մտանեն։

Այլ ըստ որում մարդկային բնաւորութեան ենթակայացեալ՝ ունին և զայսոսիկ պակասութիւնս։ Նախանձին վասն առաջադիմութեան ընկերին։ Այս նախանձ ըստ կրկին տեսակի առնէ զիւր ներգործութիւն, մի՝ զի և նախանձօղն հաւասարեսցի փառաց առաջադիմողին, և միւսն՝ զի առաջադիմօղն մի բարձրասցի ՚ի փառս քան զընկերն նախանձաւոր։ Ի խորհուրդս լաւութեան՝ ոչ միշտ գտանին միաբան։ Դիւրահաւան լինելով բարեկամութեան օտարաց՝ մերկանան նոցա զխորհուրդս իւրեանց։ Ի բարկանալն ոչ չափաւորեն զկիրս, այլ զճիգն թափեն յառաջ վարել զկամս իւրեանց թէ բարի իցէ և չար, թէ վնաս առ ընկերն իցէ և թէ վնաս առ անձն իւր։ Ի յաջողութեան՝ փոքր ինչ մեծամտին, թէպէտ ոչ ամենեքին։ Զգացումն երախտագիտութեան ոչ առաւել ջերմ ներգործութիւն ունի, ուստի ՚ի դէպս անհաճոյական ինչ առարկայից՝ զատելութիւնն փոխանակեն ընդ երախտագիտութեան։

Ե. Զայս նկարագիր բնաւորութեան գրեմ ըստ ընդհանուր գծագրութեան, որչափ իմ էր նկատողութիւն զա-

մնամբ, ուստի եթէ յոմանց պակասի մինն կամ միւսն, կամ այ-լուսմ ումեք այլապէս նկատեալ լինի բնաւորութիւնն Ջուղա-յեցւոց, ոչ լինին առգամնելի բանք իմ, ըստ որում այս նկա-րագիր է ըստ բնական ունակութեան, և այն տարօրինակ պա-տուածոյ ոմանց եթէ դէպ լիցի՝ լինելոց է ըստ դրութեան, որ-թէ ըստ պարագայից ժամանակի, և թէ ըստ կրթութեան ու-սմանն կամ փորձոյ նեղութեան կարէ փոփոխել զմարդիկ։

# ԳԼՈՒԽ Թ.

## Գաւառք և գիւղօրայք Հայոց 'ի Պարսկաստան։

ա. Յետ հասուցանելոյ Շահաբասայ զվտարեալ ժողո-վրդականն Հայոց Հայաստանի, գիւղականաց նշանակեաց տե-ղի բնակութեան զգաւառսն զայսոսիկ (1). Լնջան, Ալին-ջան, Գեանդիմանն կամ Ջղախօռ, Քեարվանդ, Փէրիայ, Բուրվարի, Գեափլայ, Քեազազ, Քեամարայ, Մալայիր, և Ղարաղան։

բ. Լնջանայ էին մետասան գիւղօրայք՝ որոց անուանք են, Քեարքէն՝ Փարթուն՝ Ջուղուն՝ Ջուզուն՝ Քիլխուն՝ Փէ-լարդ՝ Բուրուզարդ՝ Սէմսուն՝ Խունձորէք՝ Միրգիւն՝ և Քեալէ։

Ալինջանայ էին եօթն գիւղօրայք, Մշախուր՝ Փիդուն՝ Ջագուան՝ Քափաշան՝ Բօնդարդ՝ Քուրուջ և Մէմէդ։ Չիք այժմ 'ի նշանակեալ գիւղօրայսն Լնջանայ և Ալինջանայ տուն մի Հայ գիւղացւոց, զի զբովանդակն տիրեալ են այլազ-գիք։ Ոչ գոյ հաւաստի տեղեկութիւն թէ երբ փախստեայ եղեն Հայք 'ի գաւառացս անտի։ Իբր 120 ամօք յառաջ 'ի կոն-

դանիս Կաթուղիկոսացն գաւառքն Լնչանայ և Ալճնչանայ յի-
շատակեալ լինին, այլ յետ այնր ոչ ևս լինի յիշատակու-
թիւն նոյն գաւառաց, որով յայտնի լինի թէ իբրև 110 կամ
100 ամօք յառաջ եղծան նոյն գաւառք ընդ սրով և աքսոր-
ւանդ: Պատճառն ցիր և ցան լինելոյ նոյն գաւառականն Հայ-
ոց՝ է հարստահարութիւնն և անչափաւորութիւնն հարկա-
պահանջութեան: Թէպէտ չիք որոշ ծանօթութիւն, այլ
չիք տարակոյս թէ բնակիչք նոյն գաւառաց սփռեցան յայլ
գաւառսն Հայոց:

դ. Գնեանդիմանն կոչի և գաւառ Զարմանհալու, որ է հո-
րեքտասն փարսախ հեռի յԱտրպատականայ: Երեք ամօք յառաջ
չորս գիւղօրայք էին Հայոց ՚ի նմին գաւառի, որոց անուանք
էին, Ահմադաբադ՝ Միրաք՝ Գինշիգան և Լիւաւխան. այլ շը-
նորհիւն Աստուծոյ անձուամն ժողովրդեան հարկապետ եղև առ-
նել զհաստատուած զաղթականութեան և յաւելույ զայլ ևս եր-
կու գիւղօրայս:

Առաջին հաստատուածն եղև յամի 1855 ՚ի գեղջէն Գինշիգա-
նայ՝ քսան և չորս գերդաստանք, որք բնակեցան ՚ի գեղջն
կոչեցեալ Մահմադայ. երկրորդ հաստատուածն եղև ՚ի 1856 ամի
՚ի գեղջէն Ահմադաբադայ՝ տունք իբրև քսան և հինգ, որք
բնակեցան ՚ի Բոլլաղի: Թուահամարութիւն հայ ժողովր-
դեանն նոյն գաւառի ըստ հրամանի Սրբազան Առաջնորդին
Թադէոսի ՚ի 1856 ամի եղև, ըստ յետագայ աղիւսակին:

| Գիւղօրայք | Տուն | Արուք | Էգք: |
|---|---|---|---|
| Միրաք | 64 | 277 | 245: |
| Ահմադաբադ | 92 | 326 | 271: |
| Գինշիգան | 43 | 125 | 114: |
| Մահմադայ | 24 | 72 | 73: |
| Լիւաւխան | 83 | 307 | 253: |
| | 306: | 1107: | 956: |

Այն գաւառական ժողովուրդք մերձ լինելով քաղաքին առնեն զայլազան անցուդարձ ՚ի Ջուղայ, բերելով զբերս, և զվաճառս իւրեանց, որք են ալիւր՝ իւղ՝ ձէթ՝ ոչխար՝ պանիր՝ և մեղր։ Յաղագս ունելոյ նոցա զյարաբերութիւն ընդ քաղաքին և ընդ Ջուղայու՝ քան զայլ գաւառականսն են քաղաքավար՝ բարեկիրթ՝ և հնարագէտ։ Ըստ որում առնեն նոքա զտուրևառութիւն և ունին զգեստս ընդարձակ վասն հերկագործութեան՝ վասն որոյ սոյն գաւառականք առաւել հարուստ են քան զայլ գաւառականսն, և սկսեալ ՚ի 1850 տարւոյ՝ առնեն առաջադիմութիւն թէ ըստ աճելութեան և թէ հարստութեան մասին։

Դ. Ըստ նոյն գաւառի ծերոցն վկայելոյ՝ ժողովուրդ Զարմահալայ են գաւառականք Բասենոյ գաղթեալ ՚ի Հայաստանէ։ Որոց պատասպետ կամ իշխան եղեալ է Մելիք Տէր Պետրոս, որ ընդ Ոսքիաս որդւոյն իւրոյ եկն ՚ի Հայաստանէ։ Ոսքիան և ստանայ զկարգ քահանայութեան և զկնի հօրն իւրոյ մահուան վարէ զիշխանութիւն կառավարութեանն ժողովրդեանց Զարմահալայ մինչև ցվախճանին իւրն։ Գերեզման նորա կայ ՚ի Վաստիկեան գեղջ ըստ այսմ տապանագրոյ,

« Այս է տապան Մալիք Տէր Ոսքիազի, որ է որդի Մե-
« լիք Տէր Պետրոսի. հանգեաւ ՚ի սիրտ երկրիս թւին 1139
« (1690) Ապրիլ 7 ին »։ Նշանաւոր է յոյժ տապանաքարն նորին, զի երկայնութիւնն է 18 թիզ, լայնութիւնն 5, և թանձրութիւնն եօթն թզաչափ։ է այն ընտիր մարմարեան կապուտ երկնագոյն և ՚ի հարկանելն զայն մատամբ՝ հնչէ ըղձայն զանգակի։ Յետ հօրն վախճանելոյ՝ Աբէլ որդի նորա կառավարէ զժողովուրդն, որոյ պայազատութեանն ժամանակ՝ լինի ՚ի Թագաւորէն Նադիրշահի։ Ըստ ծերոցն վկայելոյ յառաջէ Նադիրշահի զհարկահանս, սոյն Աբէլ քեալանթար անվեհեր համարձակութ պատասխանի առնէ հարկահանացն, թէ զի՞ է զի Նադէրշահ պահանջէ զհարկս, զի եթէ ըստ որում Թագաւոր պահանջէ՝ ուրեմն ընդէ՞ր Լօռք անհանգիստ առնեն զմեզ՝ և նոքա ևս հարկանեն զհարկ։ Արդ եթէ Լօռք են Թագաւոր՝ Նադիրշահ զինչ պահանջէ,

ծով եթէ Նաւզէրն է Թագաւոր՞ Լօռք ընդէր հարստահարէ զմեզ։ Վերադարձեալ հարկահանացն պատմեն Նաւզերշահի և նորա զզօրս առաքեալ նուաճէ զԼօռս և վարէ փախստական։ Յետ յաղթանակաւ դառնալոյ նորա ՚ի Ղարմահալ գաւառ՝ Աբէլ գաւառապետ ելանէ ընդ առաջ նորա քահանայիւք և ժողովրդովք և ընծայիւք, որում ասէ Նաւզերշահ, ահա Թագաւոր քո, և Աբէլ ասէ՝ ահա ես և ժողովրդականքս հպատակ Տէրութեանդ, և տայ զհարկս երկու ամացն, զոր խափանեալ Նաւզերշահի՝ արձակէ ի խաղաղութեամբ։ Որդի քալանթարին Աբէլայ էր Մուքիաս. յորմէ ծնաւ Ղուկաս՝ այր լայնախորհուրդ և ժողովրդասէր. որ պաշտպան լինելով երաւանց ժողովրդեան կասկածաւոր եղև առաջի Մահմադռզայխան գաւառապետին Ղարմահալայ; փախուցող մինչ նա ՚ի 1834 ամի եկեալ էր ՚ի Ջուղայ սակս ժողովրդական գործոց. Մահմադռզայխան առաքեալ էր զզօրս հեծեալս զի սպանցեն զնա, որոց գտեալ զքալանթար Ղուկաս ՚ի վերայ կամրջին յերթալն ՚ի քաղաք, մերձենան առ նա կեղծ մտերմութեամբ՝ որպէս թէ զթուղթ գաւառապետին մատուցանեն առ նա, և ՚ի հուպ լինելն արձակեն ՚ի վերայ նորա զատրճանակս, և առեալ զվերարկուն և զգլխարկն խոյս տան ՚ի Ղարմահալ։ Մարմին նորա ամփոփեցաւ ՚ի պարըսպի որբոյ վանքին Ամենափրկչի, ունելով զայս տապանագիրն.

Ի ներքոյ դայս դամբարանի,
ամրափակեալ՝ հողով ծածկի,
դդի Ղուկաս՝ քալանթարի,
որդի Մուքիայ՝ բարեզարդի։
Էր մեր ազգին՝ յոյժ պիտանի,
յիսուն և մի՝ ամ հասակի,
անմեղ գոլով՝ նահատակի,
որք հանդիպիք՝ տուք ողորմի,

Թիւ հազար ութ հարիւրն,
երեքտասան հինգ աւելի,
յամսեանն երեք դեկտեմբերի ։

Քեալանթար Ղուկասու Տեան որդիք չորք. Յարութիւն՝ Մարտիրոս՝ Յովհաննէս և Յովակիմ անուն։ Յարութիւնն էր քեալանթար Լիւասխանայ, և Մարտիրոսն՝ քեալանթար Ահմադաբադայ։ Քեալանթար Յարութիւնն յաղագս խոչ և խափան լինելոյ անիրաւ կողոպտման և յափշտակութեան Լօռեց ոմանց դրացի եղելոց Լիւասխանայ, ի 17 Դեկտեմբերի 1855 ամի ընդ Աբէլ հօրեղբօր իւրում սպանաւ ի նոցանէ։ Բողոքեաց Որբազան Թադդէոս Առաջնորդն առ մեծ նախարարն Պարսից Սադրազամ, յորմէ հրաման եղև ի վերայ քաղաքապետացն Սպահանայ՝ Գուլփէգանայ և Լօռստանի՝ զի կալանաւորեսցեն զմահապարտսն, ի ձմերան եղանակի այնմիկ զօրք առաքեցան ի վերայ ամրոցի նոյն մահապարտ Լօռեց, քակեցին և աւերեցին զտունս նոցա, և նոքա փախստեայ եղեալ՝ վտարանդի շրջեցան աստ և անդ ընդ միջոցս քաղաքում, մինչև ապա աղաչաւոր դիմեալ առ եղբարսն և առ որդիսն քեալանթար Յարութեանի՝ խնդրեցին զանյիշաչար ներողամտութիւն նոցա։ Յետ մահուան նորա՝ Բէգլար որդի նորա նստաւ քեալանթար Լիւասխանայ, այլ Մարտիրոս հօրեղբայր նորա ունելով զբաւական խոհականութիւն և զհանճար մեծութեան՝ կառավարէ զգաւառական ժողովուրդսն Չարմահալայ՝ քրիստոնէական եղբայրասիրութեամբ։

Այս գաւառ ունի ութ քահանայս և հինգ ժամատունս։ Երեքին գիւղօրայք սոյն գաւառի Չիւրիգան, Ֆռնդիգան և Վաստիգան՝ որք յառաջն էին բազմամարդ և արդ, այժմ ընդ ամայիս պատեալ մնան։

## Գաւառք Փէրիա։

Ե. Փէրիոյ գաւառք գիւղօրայք և բնակիչք ըստ Թուագրութեանն եղելոյ ՚ի 1856 ամի՝ են ՚ի ներքոյ յիշատակեալքն։

| Գիւղօրայք | Տուն | Արուք | Էգք։ |
|---|---|---|---|
| Խօջիդամլայ | 45 | 160 | 135։ |
| Հազարջըւիք | 99 | 334 | 311։ |
| Թոլորան | 81 | 269 | 219։ |
| Եղնաւուլ | 50 | 167 | 133։ |
| Հալէան | 62 | 189 | 130։ |
| Նամազերէ | 84 | 367 | 221։ |
| Գրախտակ | 14 | 67 | 42։ |
| Մելազերդ | 50 | 192 | 169։ |
| Շրշկան | 44 | 134 | 111։ |
| Թոժգերդ | 21 | 66 | 70։ |
| Խունկ | 40 | 141 | 104։ |
| Սանգիբարան | 89 | 285 | 251։ |
| Խօյգան | 73 | 273 | 228։ |
| Գաջան | 36 | 100 | 99։ |
| Ղարդուն | 49 | 181 | 175։ |
| Սվարան | 19 | 81 | 59։ |
| Մուղան | 26 | 109 | 103։ |
| Եգիզեան | 54 | 174 | 158։ |
| Նանագիզեան | 42 | 135 | 121։ |
| Ըրգերն | 20 | 71 | 61։ |
| Գարաբաւրգ | 16 | 58 | 44։ |
| 21. | 1,014. | 3,553. | 2,964։ |

Ինն ՚ի գիւղօրէից անտի են Թագաւորական, որք են Թոլո-րան՝ Հազարջըւիք՝ Սանգիբարան՝ Խօյգան՝ Անգերդ. Ղարդուն՝

Մելադերդ՝ Շուրշկան՝ և Նամակերդ։ Ժողովրդականք նոյն քենա Գիւղօրէից ձնչին 'ի ծանրութենէ հարկի, որ եղև յանւոհեմութենէ ոմանց իշխանաց այնր գաւառի։ Զի տարեկան սահմանեալ հարկ նոյն ինն գիւղօրէիցն էր 1.056 խալվար ցորեան, զոր տայինն նախ քան զամն 1847։ Գին ալեր և ցորենոյ յայնմ ժամանակի էր խալվարն 3 Թումանս. սաստի ոմանք յիշխանաց գաւառին անյառաջատես լեալ՝ գնացին 'ի Թէհրան և խնդրամատոյց եղեն զի փոխանակ ցորենոյն՝ զգինն պահանջեսցեն 'ի ժողովրդոց. սակս իւրաքանչիւր խալվարի գին հաստատեցաւ 'ի Տէրութենէն 18 ղռան, և յետ միջոցի ինչ այլ ծախուց գաւառին բարդեալ 'ի վերայ բովանդակեցաւ գին իւրաքանչիւր խալվարին 23 ղռան։ Իսկ գին ցորենոյն. և այժմ հազիւ թէ խալվարն բերէ զգին 13 - ց15 ղռան. ուր վասն նեղութիւն յոյժ լինի սոյն գաւառականաց, որք պարտաւորին զալիւրն բերել յԱսպահան, և վաճառել դիւրագնոյ, և զգինն առնելով զուտ դրամ վճարել զհարկս Տէրութեան։

Ի պատճառս այսպիսի սոյն գաւառականք յաղքատութեան կոծին նահանջեն։ Յաղագս այսր յամի 1854 արդի Առաջնորդն Թադդէոս խնդրամատոյց եղև Տէրութեան մինչ էր և ինքն 'ի Թէհրան, և ընկալաւ զհրովարտակ մեծ եպարքոսին, զի միայն 18 ղռան տացի վասն իւրաքանչիւր խալվարին, որով տարեկան մերձ 350 Թուման լինէր օգուտ նոյն գաւառականաց, այլ գաւառապետք դարձեալ պահանջեն և ստանան զգինն 23ովն, ուր վասն Թէպէտ լինին բազմաճիղն աշխատութիւնք՝ այլ դժուարին լինի առնել փոփոխութիւն ինչ. մնացեալ երկոտասան գիւղօրայք սոյն գաւառի՝ չեն Թագաւորականք, այլ այս և այն իշխանաց, որոց հարստահարութիւն ոչ նուազ ինչ է քան զծանրութիւնս հարկի Թագաւորական գիւղականացն։

Արդի Առաջնորդն Թադդէոս մեծի օգնականութեամբ մատուցանէ սոյն գաւառականաց, զի հարստահարող իշխանքն ակնածեալ 'ի ժողովրդականաց պաշտպանութենէ սորին՝ ոչ չար կեղեքեն զժողովուրդն՝ որպէս էրն յառաջ։ Նախ քան

ի ժամանակ կառավարութեան Մօթամէզի, այն է 1840 թէ-պէտ ոչ ներքին ՚ի ծանրութենէ հարկի, այլ յափշտակութեամ հօտից և անդեայց նոցա լինէր անպակաս. զի մինչ անասունք յառաւօտուն ելանէին յարօտ, այս ոք կամ այն ոք ելուզակա-պետ ոք՝ հինծելովք ՚ի վերայ հասեալ վարէր զհօտն ՚ի գե-րութիւն. և տանէր յամուր վայրս անմատչելի բնակութեանց իւրեանց, որոյ ապաքէն տառապէին յոյժ գիւղականք, և ան-պակաս էր աշխատութիւնն նոցա, այլ ՚ի ժամանակէ կառա-վարութեանն Մօթամէզի մինչև ցարդ ոչ ևս լինի յափշտա-կութիւն այնպիսի, ուստի գիւղականք հոգի առեալ են ապրու ինչ ՚ի վտանգ անտի ելուզակութեան։

Դ. Նշանակութեան արժանի է ոխակալութիւն դաժա-ներացի գիւղականաց։ Երկու եղբարք էին, Թորոս և Ներա-կոս, և իւրաքանչիւրն ունելով զծնունդս որդւոց և թոռանց՝ են մեծ գերդաստան։ Ոխ ինչ անդի կալեալ էր ընդ մէջ նո-ցա, որոյ ՚ի զայրանալն խմբէին ՚ի կռիւ, վիրաւոր առնէին ըզ-քաղաքս յերերում և սպանանէին երբեմն զերկու կամ զերիս յայս կամ յայն կուսակցաց։ Ի խմբելն ՚ի կռիւ՝ կոչէին յօգնու-թիւն զայլազգի դրացի գիւղականս, և ՚ի գեղջն Նամակերտ ունէին իւրաքանչիւր կողմն զսուրսն և զմարտկոց, յոր պատսպարեալ ըստ օրինակի քաղաքական պատերազմի՝ մարտնչէին ընդ միմեանս երբեմն մինչև ցտասն կամ տասն և հինգ աւուրս։ Այսպիսի գեղջկական ոխակալութեան յերկուց կողմանց զոհ եղեն սպանմամբ հոգիք իբրև երկոտասան։ Որչափ թէ սպանելոցն յաճախէր, այնչափ և գրգռէր թշնա-մութեանն զօրանայր. զի այր իւրաքանչիւր զուն գործէր զերդօրն պահանջել զվրէժ արեան։ Բողոքք նոցա և աղաղակք անպակաս լինէին յատենից քաղաքական կամ զաւառական դատաւորաց, կաշառք և ծախք խաղային յերկուստեքէ և նովին վտանգաւ երկոքին կուսակցականքն լեալ՝ ոչ վեր-ջնային յոխակալութենէ թշնամութեան։ Յամի 1851 ժա-մանեցաւ ՚ի Ջուղայ Սրբազան Եպիսկոպոսն Թադէոս, և յայնմ ամի ևս յուզեցաւ խռովութիւն ինչ ընդ մէջ նոցա, և պաշտօնէ նշանաւորն ՚ի կուսակցաց Ներակոսեանց Մկրտում.

Ճօտանօ։ Խնդիրն մնացուցան յառեան նորեկ Առաջնորդին, որպէս երկրորդն կողմն իբրև առ ժողովրդականս ունելով գութ և գորով հայրօրինակ խնամոց, սկսաւ ազդու խրատաբանութեամբ արմատախիլ առնել զախտ 'ի սրտից նոցա։ Աջողեցաւ խնդիրն, զի երկոքին կուսակիցք 'ի դարձ և 'ի զղջումն եկեալ ապաշաւեցան, և հնազանդ մնացին վճռոյ Առաջնորդին։ Քաջ գիտելով Առաջնորդին, թէ անհնարին է մնալ նոցա 'ի խաղաղութեան եթէ լիցին 'ի միասին բնակակից, վճռեաց, զի կողմն թորոսեանց վաճառեսցեն զամենայն կալուածս իւրեանց զոր ունին 'ի Նամակերտ, և կողմն Սիրակոսեանց պարտաւորեսցին գնել զայն ըստ գնոյ և արժէիցն, և Թորոսեանք մեկնեալ անտի բնակեսցին յայլում գեղջ։ Հնազանդեցան նոյն վճռոյ, և թորոսեանք զկալուածս իւրեանց վաճառեալ Սիրակոսեանց 'ի նոյն 1851 ամի, մեկնեցան 'ի Նամակերտայ՝ և բնակեցան 'ի Դրախտակ։

Հաշտութիւնն զոր էարկ Առաջնորդն թադդէոս ընդ մէջ նոցա՝ տևէ մինչև ցարդ հաստատուն սիրով և խաղաղութեամբ, և ոչ ինչ խռովութիւն՝ կագ՝ կամ տարաձայնութիւն 'ի վեր ելեալ է մինչև ցարդ յայս կամ յայն կուսակցութենէ։ Գիւղականք Նամակերտայ ըստ քաջութեան՝ ըստ արիութեան և ըստ ճոխութեան մասին համբաւաւորք են քան զայլ գիւղականս այնր գաւառի։ Բէկլար Յովսէփեան Թոռն կիրակոսի, յամի 1857 վարեաց զգաւառապետութիւն նոյն գաւառի, եղբայրասիրութեամբ խնամելով զժողովուրդն։ Սա ունելով զսէր ազգասիրութեան և զինձ ուսումնասիրութեան, սկսեալ 'ի 1854 տարւոյ բացեալ է զԴպրոց մի 'ի տան իւրեանց 'ի գեղջն Նամակերտ, ուրանօր ուսանին մանկունք իբրև երեսուն, ուսուցիչ ունելով զխաչատուրն Տէր Յարութիւնեան Տէր Եղիազարեանց։

Է. Իւրաքանչիւր գիւղ սոյն գաւառի ունի զմի ժամատունս, և զՔահանայս մի կամ երկու։ Այլ տգիտութիւն թանձր տարածեալ կայ 'ի վերայ մեծի մասին ժողովրդեանն, որք զօրհանապազ վաստակոց իւրեանց միտ դնելով՝ տգէտ մնացեալ են զգիտելեացն հաւատոյ Աստուածպաշտութեան։

Ղ, այն քան զղակն Թորոսեան Առաջնորդի՝ ամենայն ամսոր մնալով քահանայից սոյն գաւառի՝ առնէին զոր ինչ և հաճոյ լինէր կամաց իւրեանց. այլ յետ վիճակաւորութեանն Տեառն Տէր Նիկողայոս խոհեմ քահանայն Տէր Յովհաննիսեան Աղեգեանցի կարգեցաւ գործակատար այնր գաւառի. որոյ ջանարեջան վերականգնութեամբ ոչ սակաւ կարգ և պարկեշտութիւն մուծաւ յայն գաւառ ։

Է. Հաղարծնոյ գիւղ նշանաւոր էր ի հնումն ժամանակս թէ սակս բազմամարդութեանն՝ որ ունէր մինչ հարիւր տուն բնակիչ, և թէ յաղագս անդ լինելոյ վանացն Աստուածածնի, յորում նստէր Առաջնորդ և իշխէր ոչ միայն փէրիոյ գաւառին՝ այլ և Համշինան քաղաքի ։ Այլ յետ վանացն ամայանալոյ, և բնակչացն նուազելոյ, այժմ է իբրև զմի ՚ի հասարակ գիւղօրէից ։

Թ. Գիւղն Շրշկան մեծահամբաւ է յաղագս ձեռագիր Աւետարանի միոյ եղելոյ յայնմ գեղջ՝ որ հրաշագործ և ախտահալած համբաւի լինել. որ վասն բազում էին և են ուխտաւորք նորա ։ Նոյն Աւետարան գրեալ ՚ի վերայ մագաղաթի՝ ունի յետագայ յիշատակարանն. «Արդ յանկ ելեալ աւարտե-
« ցաւ Աստուածախօս և աւետարեր սուրբ Աւետարանս ՚ի
« թուականիս Չ ԽԷ ամին, ՚ի գաւառս Քաղքերունի ՚ի գիւղս
« Առաքելականըն Յովհաննէս սուրբ Ստեփաննոսի ։ Եւ արդ
« այսմ ամի որում թիւն էր Չ ԽԷ և տանուտէր տարւոյն
« խոյն՝ ՚ի ձեռն անաստուածութեանց ժամանակի, որ էր որ փառա-
« վարի հինգն, եղև նեղութիւն Հայոց ազգիս, զի արեանար-
« բու ազգն և զօրքն Խումջէլեան, և հեծեալքն պարսկա-
« տանեայ շրջեցան Հայաստան աշխարհիս. նախ ՚ի գաւառն
« Վասպուրականն ՚ի վանն, և ստեան բազմութիւնք հեծելոց.
« որ ունէր ընդ իւրեանս ԺԴ հեծեալս նորընծայ փաշայն
« Ջալուլանցն. և կացին անդ ԺԲ օր, բազում չարչարանս
« տուին մեր ազգին, և ապա անտի ելեալ եկին ՚ի գաւառս
« մեր Քաղքերունի անհամար ազգ թաթարաց, և եկին ՚ի
« սատան ձմեռն եղանակի, զմարդ և զանասունս ՚ի տանէն
« հանէին, և ինքեանք մտանէին զրասատօքն իւրեանց, և զը-

«« Կերպակուրսն զոր ամբարեալ էին մարգաց և անասնոց զա-
«« մենայն ըմբռնեցին և տարին . և նովաւ ոչ բաւացան սկսան
«« չարչարել զքրիստոնեայս վասն խոտի՝ յարդի՝ և գարւոյ և
«« այլ ամենայն պիտոյից ,, ( Թերթ մի պակասի , և 'ի միւս
«« Թերթին գրեալ կայ ) « Ամուսին խաթուն փաշէն նորաբող-
«« բոջ զաւակն նորա , խաշխաբար կարապետն , քոյրն սոցա
«« Ջանադէն, և ս և հարազատ եղբայրն իւր Պարոն Մարջէն և
«« կենակիցն իւր զխանումն , և յիշեցէք զամենայն արեան
«« մերձաւորսն զկենդանիս և զհանգուցեալսն 'ի Քրիստոս ա-
«« մէն ,, :

« Փծուն գրիչս Բարսեղ Քահանայ . որ անուամբ միայն
« եմ Քահանայ, և գործով ունայն և թափուր . զի անար-
« ժան երեսս 'ի գետին դնելով միոյ ողորմիայիւ սնարժանիս
« յիշեցէք և Աստուած ձեզ արժանիս արասցէ 'ի գալստեան
« իւրում : Դարձեալ յիշեցէք զիս եղկելի գրիչս և զհայր
« իմ զեմելիքն , ամուսինն իմ Ջմրութն , զաւակն իմ զԸր-
« թանէսն , Յովհաննէսն . ուսուցիչն իմ Տէր Աղաբէկն և
« Կարապետ Քահանայն , Աստուած ինքեանց վարձն հա-
« տուսցէ " :

Ունի 'ի վերայ կազմի նորա խաչ մի արծաթեայ ափաձև , որոյ 'ի չորս անկիւնս կան չորս մասունք սրբոց , և 'ի կեդրոն խաչին բոլորակ մի փոս , յորում կայ թուղթ մի , որ վերայ գտանի գրեալ անուն սրբոյն Բարսղի Կեսարացւոյ , և ապակի կան եդեալ յերեսս նոյն թղթոյն և մասանցն : Աւանդութեամբ պատմի . թէ նոյն Աւետարան գրեալ է 'ի սրբոյն Բարսղէ Կեսարացւոյ , սակայն անստոյգ է այն , զի որում սուրբն Բարսեղ Կեսարացի Յոյն էր ազգաւ : Այլ աւանդութիւն այնպիսի թերևս ծագեալ իցէ յանուանէ սրբոյն որ գտանի 'ի վերայ սորայ Աւետարանին , և ըստ որում 'ի յիշատակարանի նորա և ս գրիչ այնր է Բարսեղ Քահանայ , ենթադրեն գոլ սրբոյն Բարսղի Կեսարացւոյ , սակայն անհաւատալի է այդ կարծիք : Նոյն Աւետարան եկն 'ի Հայաստանեայ , զի վաղեմի են համբաւ նորին հրաշագործութեանց : Գտանի այն 'ի ձեռս ազգատոհմի միոյ ( որք կոչեն զինքեանս Տէարք աւետարա-

իսկ եթէ Նադէրն է Թագաւոր՝ Լուք ընդէր հարստահարէ զմեզ։ Վերադարձեալ հարկահանացն պատմեն Նադիրշահի, և նորա զզօրս առաքեալ նուաճէ զԼօռս և վարէ փախստական։ Ցետ յաղթանակաց դառնալոյ նորա ՚ի Չարմահալ գաւառ՝ Աբէլ գաւառապետ երանէ ընդ առաջ նորա քահանայիւք և ժողովրդովք և ընծայիւք, որում ասէ Նադիրշահ, ահա Թագաւոր քո, և Աբէլ ասէ՝ ահա ես և ժողովրդականքս հպատակ Տէրութեանդ, և տայ զհարկս երկուց ամացն, զոր խափանեալ Նադիրշահի՝ արձակէ խաղաղութեամբ։ Որդի քեալանթարին Աբէլայ էր Մուքիաս. յորմէ ծնաւ Ղուկաս՝ այր լայնախորհուրդ և ժողովրդասէր. որ պաշտպան լինելով երկուց ժողովրդեան կտակածուոր եղեւ առաջի Մահմադաղայխան գաւառապետին Չարմահալայ՝ փառաւորոյ մինչ նա ՚ի 1834 ամի եկեալ էր ՚ի Ջուղայ ուսկս ժողովրդական գործոց. Մահմադաղայխան առաքեալ էր զզօրս հեծեալս զի սպանցեն զնա, որոց գտեալ զքեալանթար Ղուկաս ՚ի վերայ կամրջին յերթալն ՚ի քաղաք, մերձենան առ նա կեղծ մտերմութեամբ՝ որպէս թէ զթուղթ գաւառապետին մատուցանեն առ նա, և ՚ի հուպ լինելն արձակեն ՚ի վերայ նորա զատրճանակս, և առեալ զվերարկուն և զգլխարկն խոյս տան ՚ի Չարմահալ։ Մարմին նորա ամփոփեցաւ ՚ի պարսպի սրբոյ վանքին Ամենափրկչի, ունելով զայս տապանագիրն.

Ի ներքոյ այս դամբարանի,
ամբափակեալ՝ հողով ծածկի,
զդի Ղուկաս՝ քալանթարի,
որդի Մուքիազ՝ բարեզարդի։
էր մեր ազգին՝ յոյժ պիտանի,
յիսուն և մի՝ ամ հասակի,
անմեղ գոլով՝ նահատակի,
որք հանդիպիք՝ տուք ողորմի,

Թի՛վ հազար ութ հարիւր,
երեսնական հինգ աւելի,
յամսեանն երեք դեկտեմբերի։

Գեղանմթար Դուկասու Տնան որդիք չորք. Յարութիւն՝ Մարտիրոս՝ Յովհաննէս և Յովակիմ անուն։ Յարութիւնն էր քեալանթար Լիւասխանայ, և Մարտիրոսն՝ քեալանթար Ահմադաբադայ։ Քեալանթար Յարութիւնն յաղագս խաչ և խափան լինելոյ անիրաւ կողոպտման և յափշտակութեան Լօռեց ոմանց դրացի եղելոց Լիւասխանայ, 'ի 17 Դեկտեմբերի 1855 ամի ընդ Աբէլ հօրեղբօր իւրում սպանաւ 'ի նոցանէ։ Բողոքեաց Մրթազան Թագւէսս Առաջնորդն առ մեծ Նախարարն Պարսից Սադրազամ, յորմէ հրաման եղև 'ի վերայ քաղաքապետացն Սպահանայ՝ Գուլփէգանայ՝ և Լօռստանի՝ զի կալանաւորեսցեն զմահապարտսն, 'ի ձմերան եղանակի այնմիկ զօրք առաքեցան 'ի վերայ ամրոցի նոյն մահապարտ Լօռից, քակեցին և աւերեցին զտունս նոցա, և նոքա փախստեայ լեալ՝ վտարանդի շրջեցան աստ և անդ ընդ մինչոյս բազում, մինչև ապա աղաչաւոր գտեալ առ եղբարսն և առ որդին քեալանթար Յարութիւնի՝ խնդրեցին զանյիշաչար ներողամտութիւն նոցա։ Յետ մահուան նորա՝ Բէգլար որդի նորա նստաւ քեալանթար Լիւասխանայ, այլ Մարտիրոս հօրեղբայր նորա ունելով զբաւական իշխանութիւն և զհանճար մեծութեան՝ կառավարէ զգաւառական ժողովուրդն Չարմահալայ՝ քրիստոնէական եղբայրասիրութեամբ։

Այս գաւառ ունի ութ քահանայս և հինգ ժամատունս։ Երեքին գիւղորայք սոյն գաւառի Չիւրիգան, Ֆռնթիգան և Վաստիգան՝ որք յառաջն էին բազմամարդ և արայ, այժմ ընդ ամայիս փառեալ մնան։

### Գաւառ Փէրիա։

Ե. Փէրիոյ գաւառի գիւղօրայք և բնակիչք ըստ Թուագրութեանն եղելոյ 'ի 1856 ամի՝ են 'ի ներքոյ յիշատակեալքն։

| Գիւղօրայք | Տուն | Արու | Էգք։ |
|---|---|---|---|
| Խօջիգամլայ | 45 | 160 | 135։ |
| Հազարջրիբ | 99 | 334 | 311։ |
| Բօլորան | 81 | 269 | 219։ |
| Եզնաւուլ | 50 | 167 | 133։ |
| Հաւլան | 62 | 189 | 130։ |
| Նամագերդ | 84 | 367 | 221։ |
| Դարախոտակ | 14 | 67 | 42։ |
| Մելագերդ | 50 | 192 | 169։ |
| Չըրշկան | 44 | 134 | 111։ |
| Բոժգերդ | 21 | 66 | 70։ |
| Խունկ | 40 | 141 | 104։ |
| Սանգիբարան | 89 | 285 | 251։ |
| Խօյգան | 73 | 273 | 228։ |
| Դաջան | 36 | 100 | 99։ |
| Գարղուն | 49 | 181 | 175։ |
| Ավարան | 19 | 81 | 59։ |
| Մուղան | 26 | 109 | 103։ |
| Ազիզեան | 54 | 174 | 158։ |
| Նանագիզեան | 42 | 135 | 121։ |
| Հերգերն | 20 | 71 | 61։ |
| Դարաբուրգ | 16 | 58 | 44։ |
| 21 | 1,014 | 3,553 | 2,964։ |

Իսկ 'ի գիւղօրէից անտի են Թագաւորական, որք են բոլորան՝ Հազարջրիբ՝ Սանգիբարան՝ Խօյգան՝ Անգերդ՝. Ղարղան՝

Մելազկերդ՝ Չուրշկան՝ և Նամակերդ։ Ժողովրդականք նոյնպիսին գիւղօրէից ճնշին 'ի ծանրութենէ հարկի, որ եղև յանխոհեմութենէ սմանց իշխանաց այնր գաւառի։ Ջի տարեկան սահմանեալ հարկ նոյն իսկ գիւղօրէիցն էր 1.056 խալվար ցորենոյ, զոր տային նախ քան զամն 1847։ Գին ալեր և ցորենոյ յայնմ ժամանակի էր խալվարն 3 Թուման. սաստի սմանք յիշխանաց գաւառին անյառաջատես լեալ՝ գնացին 'ի Թէհրան և խնդրամատոյց եղեն զի փոխանակ ցորենոյն՝ զգինն պահանջեսցեն 'ի ժողովրդոց. սակս իւրաքանչիւր խալվարի գին հաստատեցաւ 'ի Տէրութենէն 18 ղռան, և յետ միջոցի ինչ՝ այլ ծախուց գաւառին բարդեալ 'ի վերայ բովանդակեցաւ գին իւրաքանչիւր խալվարին 23 ղռան։ Իջաւ գին ցորենոյն. և այժմ հազիւ թէ խալվարն բերէ զգին 13 - ց15 ղռան. այր վասն նեղութիւն յոյժ լինի սոյն գաւառականաց, որք պարտաւորին զալիւրն բերել յԱպահան, և վաճառել դիւրագնոյ, և զգինն առնելով զուտ դրամ վճարել զհարկս Տէրութեան։

Ի պատճառս այսպիսի սոյն գաւառականք յաղքատութեան կողմն նահանջեն։ Յաղագս այսր յամի 1854 արդի Առաջնորդն Թադդէոս խնդրամատոյց եղև Տէրութեան մինչ էր և ինքն 'ի Թէհրան, և ընկալաւ զհրովարտակ մեծ եպարքոսին, զի միայն 18 ղռան տացի վասն իւրաքանչիւր խալվարին, որով տարեկան մերձ 350 Թուման լինէր օգուտ նոյն գաւառականաց, այլ գաւառապետք դարձեալ պահանջեն և ստանան զգինն 23ական, այր վասն թէպէտ լինին բազմաճիգն աշխատութիւնք՝ այլ դժուարին լինի առնել փոփոխութիւն ինչ. մնացեալ երկոտասան գիւղօրայք սոյն գաւառի՝ չեն Թագաւորական, այլ այս և այն իշխանաց, որոց հարստահարութիւնք ոչ նուազ ինչ են քան զծանրութիւնս հարկի Թագաւորական գիւղականացն։

Արդի Առաջնորդն Թադդէոս մեծ օգնականութեամբ մատուցանէ սոյն գաւառականաց, զի հարստահարող իշխանքն պկնածեալ 'ի ժողովրդականսն պաշտպանութենէ սորին՝ ոչ շատ կեղեքեն զժողովուրդսն՝ որպէս էրն յառաջ։ Նախ քան

պաշտամանակ կուսակալութեանն Մօթամէգի, այն է 1840 թուա-կանէ ոչ ներէին ՚ի ծանրութենէ հարկի, այլ յափշտակութեամբ հօտից և անդեայց նոցա լինէր անպակաս. զի մինչ անասունք յառաւօտուն ելանէին յարօտ, այս ոք կամ այն ոք ելուզակա-պետ Լօռ՝ հետեւելով ՚ի վերայ հասեալ վարէր զհօտն ՚ի գե-րութիւն, և տանէր յամուր վայրս անմատչելիս բնակութեանց իւրեանց, որոյ աղաղակ տառապէին յոյժ գիւղականք, և ան-պակաս էր աշխատութիւնն նոցա, այլ ՚ի ժամանակէ կուսա-կալութեանն Մօթամէգի մինչև ցարդ ոչ ևս լինի յափշտա-կութիւն այնպիսի, ուստի գիւղականք հոգի առեալ են սակաւ ինչ ՚ի վշտաց անտի ելուզակութեան։

Դ. Նշանակութեան արժանի է օտարութիւն Դամա-կերտցի գիւղականաց։ Երկու եղբարք էին, Թորոս և Աբրա-կոս, և իւրաքանչիւրն ունելով զծնունդս որդւոց և թոռանց՝ են մեծ գերդաստան։ Ոչ ինչ օտարի կարկեալ էր ընդ մէջ նո-ցա, որոյ ՚ի զայրանալն խմբէին ՚ի կռիւ, վիրաւոր առնէին ընդ-դարձումն յիրերաց և սպանանէին երբեմն զերկու կամ զերիս յայս կամ յայն կուսակցաց։ Ի խմբելն ՚ի կռիւ՝ կոչէին յօգնու-թիւն զայլազգի դրացի գիւղականս, և ՚ի գեղջն Դամակերտ-ունէին իւրաքանչիւր կողմն զբուրգն և զմարտկոց, յոր պատսպարեալ ըստ օրինակի քաղաքական պատերազմի՝ մարտնչէին ընդ միմեանս երբեմն մինչև ցտասն կամ տասն և հինգ աւուրս։ Անմիկ զեղջկական օտարութեանն յերկուց կողմանց զոհ եղեն սպանմամբ հոգիք իբրև երկոտասան։ Որչափ թէ սպանելոցն յաճախէր, այնչափ և գրգռէր թշնա-մութեանն զօրանայր. զի այր իւրաքանչիւր գուն գործէր զեղբօրն պահանջել զվրէժ արեան։ Բողոքք նոցա և աղաղակք անպակաս լինէին յատենից քաղաքական կամ գաւառական դատաւորաց, կաշառք և ծախք խաղային յերկուստեքէ և նովին վնասուք երկոքին կուսակիցք անաքանդ լեալ՝ ոչ վեր-ջանային յոխակալութենէ թշնամութեան։ Յամի 1851 ժա-մանեցաւ ՚ի Ջուղայ Սրբազան Եպիսկոպոսն Թադէոս, և յայնմ ամի ևս յուզեցաւ խռովութիւն ինչ ընդ մէջ նոցա, և պատճառ նշանաւորն ՚ի կուսակցաց Աբրակոսեանց Մկրտումս.

Յօշանս ։ Խնդիրն մատուցաւ յատեան Նորին Առաջնորդին, որ-
տես երկրորդին կողմն իբրև առ ժողովրդականս ունելով զգութ
և զօրով հայրօրինակ խնամոց, սկսաւ ազդու խրատաքա-
նութեամբ արմատախիլ առնել զախտն 'ի սրտից նոցա ։ Աջողե-
ցաւ խնդիրն, զի երկոքին կուսակիցք 'ի դարձ և 'ի զղջումն ե-
կեալ ապաշխարեցան, և հնազանդ մնացին վճռոյ Առաջնորդին ։
Բայց գիտելով Առաջնորդին, թէ անհնարին է մնալն նո-
ցա 'ի խաղաղութեան եթէ լիցին 'ի միասին բնակակից, վճռ-
ռեաց, զի. կողմն Թորոսեանց վաճառեսցեն զամենայն կալուա-
ծըս իւրեանց զոր ունին 'ի Նամակերտ, և կողմն Սիրակո-
սեանց պարտաւորեսցին գնել զայն ըստ գնոյ և արժէիցն, և
Թորոսեանք մեկնեալ անտի բնակեսցին յայլում գեղջ ։ Հնա-
զանդեցան նոյն վճռոյ, և Թորոսեանք զկալուածս իւրեանց
վաճառեալ Սիրակոսեանց 'ի նոյն 1851 ամի, մեկնեցան 'ի Նա-
մակերտայ՝ և բնակեցան 'ի Դրախտակ ։

Հաշտութիւնն զոր էարկ Առաջնորդն Թադդէոս ընդ մէջ
նոցա՝ տևէ մինչև ցարդ հաստատուն սիրով և խաղաղու-
թեամբ, և ոչ ինչ խռովութիւն՝ կագ՝ կամ տարաձայնութ
'ի վեր ելեալ է մինչև ցարդ յայս կամ յայն կուսակցութե-
նէ ։ Գիւղականք Նամակերտայ ըստ քաջութեան՝ ըստ արիու-
թեան և ըստ ճոխութեան մասին համբաւաւորք են քան
զայլ գիւղականս այսր գաւառի ։ Բէկլար Յովսէփեան Թոռն
Կիրակոսի, յամի 1857 վարեաց զգաւառապետութիւն նոյն
գաւառի, եղբայրասիրութեամբ խնամելով զժողովուրդսն ։
Սա ունելով զսէր ազգասիրութեան և զինչ ուսումնասիրու-
թեան, սկսեալ 'ի 1854 տարւոյ բացեալ է զԴպրոց մի 'ի տան
իւրեանց 'ի գեղջն Նամակերտ, ուրանօր ուսանին մանկունք
երբեմն երեսուն, ուսուցիչ ունելով զԽաչատուրն Տէր Յարու-
թիւնեան Տէր Եղիազարեանց ։

Է. Իւրաքանչիւր գիւղ սոյն գաւառի ունի զմի ժամա-
տունս, և զՔահանայս մի կամ երկու ։ Այլ տգիտութիւն
թանձր տարածեալ կայ 'ի վերայ մեծի մասին ժողովրդեանն,
որք զօրհանապազ վաստակոց իւրեանց միտ դնելով՝ տգէտ
մնացեալ են զգիտելեացն հաւատոյ Աստուածպաշտութեան։

Դիւան քան զղային Թոդոքէոս Աշտիշատցի՝ ամենայն ամիս-մնացին . Քահանայից այն գաւառի՝ առնէին զոր ինչ և Հաճ-ղէնէր կամաց իւրեանց . այլ յետ վիճակաւորութեանն Նորին Տէր Նիկողայոս խոհեմ Քահանայի Տէր Յովհաննիսեան Աղի. զեանցն կարգեցաւ գործակատար այնր գաւառի, որոյ քաջարե-ջան վերակացութեամբ ոչ սակաւ կարգ և պարկեշտութիւն մուծաւ յայն գաւառ :

Է . Հաղարջուր գիւղ նշանաւոր էր ՚ի նախնիսն ժամա-նակս թէ սակս բազմամարդութեանն՝ որ ունէր վեց Հարիւր տուն բնակիչ ; և թէ յաղագս անդ լինելոյ վանացն Աստ-ուածածնի , յորում նստէր Առաջնորդ և իշխէր ոչ միայն Փէրրիոյ գաւառին՝ այլ և Համադան քաղաքի : Այլ յետ վա-նացն ամայանալոյ , և բնակչացն նուազելոյ , այժմ է իբրև զմի ՚ի Հասարակ գիւղօրէից :

Թ . Գիւղն Շրշկան մեծահամբաւ է յաղագս ձեռագիր Աւետարանի միոյ եղելոյ յայնմ գեղջ՝ որ Հրաշագործ և ախ-տահալած Համբաւ լինել . որը վասն բազում էին և են ուխ-տաւորք նորա : Նոյն Աւետարանագրեալ ՚ի վերայ մագաղաթի՝ ունի յետադայ յիշատակարանն . "Արդ յանկ ելեալ աւարտե-"ցաւ Աստուածախօս և աւետաբեր սուրբ Աւետարանս ՚ի "թուականիս ՉԽԷ ամին , ՚ի գաւառս Քաջբերունի ՚ի գիւղս "Արզիկական ընդ Հովհաննէս սուրբ Ստեփաննոսի : Եւ արդ "այսմ ամի որում թիւն էր ՉԽԷ և տանուտէր տարւոյս "խոյն՝ ՚ի ձեռն տանուտերոյն ժամանակի , որ էր օր փետր-"վարի հինգն , եղև նեղութիւն Հայոց ազգիս , զի արեւար-"քու ազգն և զօրքն խուժէլեան , և հեծելքն պարսկաս-"տանայ շրջեցան Հայաստան աշխարհքս . Նախ ՚ի գաւառն "Վասպուրական ՚ի վանն , և ոտեան բազմութիւնք հեծելոց . "որ ունէր ընդ իւրեանս ԺԴ հեծալս նորընծայ փաղշահ "Ջալուլանոյն . և կացին անդ ԺԵ օր , բազում չարչարանս "տուին մեր ազգին , և այլա անաւ եկեալ եկին ՚ի գաւառս "մեր Քաջբերունի անհամար ազգ թաթարաց , և եկին ՚ի "տասն ձմեան եղանակի , զմարդ և զանասուն ՚ի տանէն "հանէին , և ինքեանք մտանէին զբաստօքն իւրեանց , և ըզ-

«« Կերակուրն զոր ամբարեալ էին մարդոց և անասնոց զա-
«« մենեսին ըմբռնեցին և տարին. և նոքա ոչ բաւացան սկսան
«« չարչարել զքրիստոնեայս վասն խոտի՝ յարդի՝ և գարւոյ և.
«« այլ ամենայն պիտոյից ,, (Թերթ մի պակաս, և 'ի միւս
Թերթին գրեալ կայ) «« Ամուսին խաթուն փաշէն նորաբող-
«« բոջ զաւակն նորա, խաչխաթար կարապետն, քոյրն սոցա
«« Ջանաղէն, եւս և հարազատ եղբայրն իւր Պարոն Մարջէն և
«« կենակիցն իւր զխանումն, և յիշեցէք զամենայն արեան
«« մերձաւորսն զկենդանիս և զհանգուցեալսն 'ի Քրիստոս ա-
«« մէն ,, :

«« Փծուն գրիչս Բարսեղ Քահանայ. որ անուամբ միայն
«« եմ Քահանայ, և գործով ունայն և Թափուր. զի անար-
«« ժան երես 'ի գետին դնելով միոյ ողորմութեան անարժանիս
«« յիշեցէք և Աստուած ձեզ արժանիս արասցէ 'ի գալստեան
«« իւրում: Դարձեալ յիշեցէք զիս եղկելի գրիչս և զհայր
«« իմ զԵմելիքն, ամուսինն իմ Ջմրութն, զաւակն իմ զԵր-
«« Թանէսն, Յովհաննէսն. ուսուցիչն իմ Տէր Ազարիէն և
«« Կարապետ Քահանայն, Աստուած իւրեանց վարձն հա-
«« տուսցէ ” :

Ունի 'ի վերայ կազմի նորա խաչ մի արծաթեայ ափաձև, որոյ 'ի չորս անկիւնս կան չորս մասունք սրբոց, և 'ի կեդրոն խաչին բոլորակ մի փոս, յորում կայ Թուղթ մի որ վերայ գտանի գրեալ անուն սրբոյն Բարսղի Կեսարացւոյ, և ապակի կան եդեալ յերեսս նոյն Թղթոյն և մասանցն: Ըստ աւանդութեան պատմի. Թէ նոյն Աւետարան գրեալ է 'ի սրբոյն Բարսղէ Կեսարացւոյ, սակայն անստոյգ է այն, զի որում սուրբն Բարսեղ Կեսարացի Յոյն էր ազգաւ: Այլ աւանդութիւն այնպիսի Թերևս ծագեալ իցէ յանուանէ սրբոյն որ գտանի 'ի վերայ սրբոյ Աւետարանին, և ըստ որում 'ի յիշատակարանի նորա և ս. գրիչ այնր է Բարսեղ Քահանայ, ենԹադրեն գոլ սրբոյն Բարսղի Կեսարացւոյ, սակայն անհաւատալի է այդ կարծիք: Նոյն Աւետարան եկն 'ի Հայաստանեայ, զի վաղեմի են համբաւ նորին հրաշագործութեանց: Գտանի այն 'ի ձեռս աշխատասիրի միոյ (որք կոչէին զինքեանս Տէրք աւետարա-

նի ) որք են գիւղական բնակիչք Երզկանայ ։

Ազգատոհմն այն՝ անուանեալ Տեարք Աւետարանին, զատա-
նին տառապեալք քան զամենայն գիւղականս Երզկանայ, քանզի
զնոսին աղքատք և միշտ պարտական ։ Պահի Աւետարանն ՚ի
գեղջ կական սենեկի միում, զոր իւրաքանչիւր Տէր Աւետա-
րանին ունի որոշեալ վասն այնր ՚ի տան իւրում ։ Պատմեն
զնմանէ, թէ ՚ի ժամանակի միում եղեալ է խռովութիւն, և
եկեալ աւարառուաց կամեցեալ են կողոպտել զգիւղն Երզ-
կան, ունողքն նոյն Աւետարանի՝ ձգեալ են զայն ՚ի մէջ Աղ-
բեր միում որ մերձ է նոյն գեղջ, թաղելով զայն ՚ի մէջ
աւազոյ, և ինքեանք խոյս տուեալ փախեալ են անտի ։ Յետ
ժամանակաց ՚ի խաղաղել խռովութեանն դարձ արարեալ ժա-
ռանգաւորաց Աւետարանին՝ հանեալ են զայն յաղբերէ ան-
տի, և գտեալ են զայն անթաց ՚ի ջրոյ և առանց իմիք վնա-
սու կամ եղծման ։ Անուն նոյն աղբեր կոչի մինչև ցայսօր ժա-
մանակի "պապի աղբիւր", զի ՚ի գիւղականսն՝ անուն Աւետա-
րանին այն հասարակօրէն "պապ" կոչի ։ Պատմի և թէ
Ազգն Լօռից յառաջ ժամանակաւ երբեմն մտադիր լինին աւար
հարկանել զայն գիւղ, ուստի ՚ի գիշերի միում ժողովելով
քանի մի հեծելոց զան յարձակել ՚ի վերայ գեղջն, յորժամ
մերձեցան անդ, տեսանեն զբազմութիւն սուսերամերկ զօրաց
կարմիր և կանաչ զգեստաւորաց շրջապատեալ զնովաւ, յայն-
մանէ զահի հարեալ փախչին, և ՚ի միւս աւուր բերեն զոչ-
խարս և զենուն ՚ի պատիւ սուրբ Աւետարանին ։ Ակնածու-
թիւն՝ յարգ և երկիւղ՝ մինչև ցայսօր ժամանակի գտանի
՚ի սիրտս այլազգի բնակչաց գաւառին Փէրիու յաղագս յիշեալ
Աւետարանին, և ոմանք ՚ի նոցանէ հաւատան անկեղծօրէն
հրաշագործ զօրութեանց նորա, ուստի բազումք յայլազ-
գեաց բերեն առ ոտս Աւետարանին զհիւանդս իւրեանց՝ հան-
դերձ ընծայիւ դրամոյ և ոչխարի ; և մերթ ողջանան հի-
ւանդք նոցա ։ Ի ժամանակի հիւանդութեան կամ նեղու-
թեան իմիք զԱւետարանն բերէին ՚ի Ջուղայ ունողքն նորա՝
վասն ուխտակատարելոյ նովաւ ։ Փառաւոր լինէր հանդէսն
ընդունելոյ զայն ՚ի Ջուղայ, զի և ժողովուրդք մանաւանդ

հրամանայք․ բազմութեամբ ելանէին ընդ առաջ նորա, ոմանք և ս թափ ոտիւք և երկրպագեալ համբուրէին զայն, զոչխարս զենուին առ ոտիւք նորա, և այնպիսի փառաւորութեամբ պատուէին զմուտ նորա 'ի Ջուղայ։

Յառաջ ժամանակաւ բազում էին Թիւ ուխտաւորաց առն Աւետարանի, մինչև անգամ 'ի Բուշեռայ և 'ի Բասրոյ գային ուխտաւորք առ նա։ Ծնօղք ոմանք յետ ծնանելոյ զաւակին իւրեանց՝ ուխտադիր լինէին գերծուլ զհեր գլխոյ նորա յոտս սուրբ Աւետարանին, մինչ հասանիցի մանուկն 'ի հասակ եօթնամեան. 'ի հասանել ժամանակի ուխտադրութեանն տանէին զմանուկն առ Շրջկան գիւղ, և անդ փոքրելով զգհեր գլխոյ նորին՝ ուխտ արարեալ դարձ յանէին 'ի տուն իւրեանց։ Յառաջ քան զտանելն մանկանն 'ի Շրջկան, ածելի տաշ ելանէր 'ի գլուխ նորա. վասն "ղուլ" լինելոյ Աւետարանին։ Բազում հիւանդք և ցաւագարք ջերմեռանդ հաւատով դիմելով յոտս սուրբ Աւետարանին՝ ըստ պատմելոյ բազմաց, ընկալեալ են զառողջութիւն։ Բազումք յուխտաւորաց անտի տանեն յԱւետարանէն զարծաթի խաչ՝ զաչք՝ զլեզու՝ զգերան և զայլ ըստ վասն առողջութեան մանկանց իւրեանց, և յետ ժամանակաց երկպատկելով զայն դարձուցանէին առ Աւետարանն հանդերձ ուխտակատարութեամբ։ Ի Տիզկաստանայ ևս երբեմն բարեպաշտ արք կամ կանայք ոմանք՝ առաքէին 'ի ձեռն հաւատարիմ արանց զուխտադրամս վասն յիշեալ Աւետարանին։ Ամենայն ուխտաւորաց տուեալ լինի մատնեհար, է այն կտոր մի մոմոյ՝ զոր գնելով 'ի վերայ մատանցն եղելոց 'ի կազմ Աւետարանին, պատեն 'ի մէջ թամբակի և տան ուխտաւորին 'ի պահպանութիւն իւր։ Երբեմն զտանին 'ի ծառայութեան Աւետարանին "ընկնուոր" կոչեցեալ կին՝ այրիկ կամ մարդ։ Զգուշելի է արարողութիւն սոցա։ Մինչ ուխտաւոր ոք գնայ 'ի սենեակ Աւետարանին՝ "ընկնուորն" անյուշանայ, յերկիր անկեալ թաւալի, ծեծէ զկուրծս իւր, փետէ զհերսն, ցեմէ զերեսն, և յետ այնր կանգնեալ յոտին՝ բուռն ընկալեալ խնկարկութիւն տանէ մնդր, իբրև պատգամաւոր Աւետարանին՝ պատմէ ուխտաւո-

բայց՝ զպատճառն ուխտադրութեանն իւրեանց և զպաշտամանն անուր, ձայնիւ և ըստ եղանակի երգմնացութեան պատմի յիշեալ պատգամքն, և բանքն են ըստ յարմարութեան և ըստ այլաբանական ձևոյ, զի թէ առ այս նիշ երանգ զգեցոյ հանդերձի՝ այս են հրաման «Աղին» «Աղէն». կոչէ Աւե-տարանն 'ի խօսս սոյն արարողութեան։ Ցնծութեան ժամանակի նոյն պատգամախօսութեն՝ աչք «ընկնուորին» են սրակ, միտքն վերացեալ, ինքն յանդգայութեան և բանք նորա մերթ ըղ-հրաշս ներգործեալս յԱւետարանէն պատմին, և մերթ թէ զինչ լինելոց են առ այս ինչ անձն, կամ առ այս ինչ տեղի։ Շարունակի բաղխումն նորա զկուրծս և ցնտելն զերեսս, ուստի գոգչիր յայսպիսի արարողութիւնս միշտ արիւնաթա-թաւ ներկեալ լինին երեսք «ընկնուորին»։ Յետ աւարտելոյ զարարողութիւնն՝ զղաստանայ «ընկնուորն» և եթէ ոք հարցանիցէ ցնա թէ զինչ պատմեաց, խոստա չգիտել զասա-ցեալն ասէ։ Տաղտկալի է արտաքև խաբեբայական արարո-ղութիւնն այն զոր շահասիրութիւնս հնարեաց։ Ի հազարչէք գեղջէ Տէր Ստեփաննոս Քահանայ (գրողն համառօտ պատ-մութեանն Ջուղայու) 'ի մայիսի 10, 1246 (—) ամի յայտ-նէ Յարութիւն Առաջնորդին Ջուղայու զանցս նմանօրինակ անկարգութեան «Ջղապուրկայ Տէր Յովանէսն և Ջանխո-«շայ Տէր Կիրակոսն հինգ Աւետարան ունեն, ամէն Աւետա-«րանի տասն զուլ են բռնել երիտասարդք և աղջկունք և «հարսունք սուրբ Աւետարանքն տվել են նոցա ձեռքն օրն «երկու երեք անգամ հնչեցուցանեն զքնարսն գիւղական, «և նոցա առեալ զսուրբ Աւետարանն ճոճան և կաքաւեն և «ահացուցանեն զամենեսին՝ թէ Աղէն մեր մատաղ կուխրդ-«րէ, և այլոց թէ՝ հրամայեալ է Դաւատր քո տալ այս երե-«տասարդիս՝ կամ թէ հրամայէ Աղէն մեր տանել 'ի տուն «ուրեք. կամ թէ խռովեալ է այս գեղէս առեալ տանեն 'ի «միւսն։ Այդպիսի արարողութ երեք հարիւր ոչխար և զառն «ժողովեալ են և բազում արծաթ . . . այդ վերայ գրեալն «աչօք տեսաք»։

Սրովհեան սոյն Աւետարան է իբրև տացուած ընդ մէջ

ազգ պատահմի միում, վասն որոյ զօրհանապազ անպակաս լինին՝ ռաւրանձայնութիւն և վէճ ընդ մէջ ժառանգաւորաց նորին յաղագս բաժանելոյ հասից և արդեանց այնր ։ ի Թղթոց վա-նեաց անցին 'ի ձեռս իմ երկու գրութիւնք, միոյն պարսկերէն՝ որ էր դաշնադրութիւն վասն մասնաւորութեանն արդեանց Աւետարանին, և միւսն կոնդակ հրամանի գրեալ 'ի Սրբազան Աղեքսանդր Առաջնորդէ վանին Ամենափրկչեան յաղագս ա-ռաւրկային այնմիկ ։ Զթարգմանութիւն առաջնոյն և զօրի-նակ կոնդակին 'ի դէպ համարեցի գրել առ տեղւոյս ։

« Յիսուսի Քրիստոսի ծառայ Աղեքսանդր վարդապետ « օրհնութիւն հասցէ Շուրշկանայ համարակ քահանայից և « ժողովրդոց ։ Աւետարանն սուրբ եկեղեցւոյ է, ով որ որ « քահանայ է՝ սուրբ եկեղեցւոյ սպասաւոր է, թէ Աւետա-« րանի գէլուրն և թէ հասիրանքին ինչ որ կայ պիտի որ բա-« բէբար բաժին առէք ․ Տէր Մանուէլն՝ Տէր Մկրտիչն՝ և Տէր « Բաղդասարն էն աւելի ժամուցն չվեռուն ․ Տէր Աստուա-« ծատուրն՝ փոքր Տէր Մանուէլն՝ Տէր Սարգիսն՝ Տէր Մատ-« թէոսն և Տէր Մարկոսն Աւետարանի գէլուրն միայն չը-« վեռուն, ողջն համարակ սամ արարէք ։ Մեր սուրբ օրէնք « և կանոնն այս է, թամամ հայաստան այնպէս է, Աւետա-« րանի Տէր եմ ասելն մեղք է, կամ Աստուծոյ վախեցէք, « կամ մեզանէ ամաչեցէք, մինչև յերբ ձեր անկարգ բանե-« րին համբերեմ, և եթէ այսուհետև միաբան չեղաք, նե-« ղութիւն կքէրէք, թէ սէր լինէք գէլուրն էլ կուշատա-« նայ, թէ Աւետարանի գէլուր, և թէ եկեղեցւոյ գէլուր մի « տեղ կքսեցէք ։ Գրեցաւ թուին ՌՃԾԷ ․ Մայիսի ԺԸ ։

Յետոյ սոյն կոնդակի գրեալ կայ « Զաւակ Սիօնի ընտա-« նիք նորա էցեն, Երուսաղէմ ըստ Մարգարէին ։ Սուրբ Ա-« ւետարանն է սրբութիւնն՝ որ է վաղըֆիաթ, ընտանիք նորա « են քահանայքն ։ Պարտ է ամենայն հարկ և իրաւունքն « քահանայքն վայելեն 'ի միասին, ըստ առաքելոյն որ ասէ, « որք սրբութեց սպասաւորքն են՝ 'ի սրբութէ անտի վայելեցեն ։ « Ըստ հրամանի Սրբոյն և բանիբուն Աղեքսանդր վրդպետին « հրամանս այս հաստատուն է ։ Յարութ Սաֆարեան քէհեայ »

Եդաւ 'ի վերայ նոյն կոնդակի ստորագրութիւն և կնիք Եօթանասուն իննօ քահանայից Ջուղայու (եղելոց 'ի նոյն ժամանակի) որք վկայեն թէ իրաւացի է հրամանն վերոյ գրեալ։ Տէր Ղազար Ռօստոմեան և Տէր Մկրտիչ Գրիգորեան Շրջկանցիք ուխտ եդեալ ընդ միմեանս դաշինս հաստատեցին առ այն՝ զի սկսեալ յօրէ սոյն Թուականի որ ինչ ուխտադրամ եկեսցէ ուստի և իցէ վասն Աւետարանին Շրջկանայ, բաժանեսցեն յերկու մասն, որոյ մի բաժինն հասցէ Տէր Ղազարին Ռօստոմեան, և միւս բաժինն՝ Տէր Մկրտչին Գրիգորեան, իսկ թէ լիցի տարաձայնութիւն վասն հասից Աւետարանին ընդ մէջ ուխտադրեալ երկուցն, պարտական եղիցին վասն իւրաքանչիւր տարւոյ տամն երկու թուման հատուցանել ծածագոյն մզկիթին Իմամ Ջօմայի։ Այս քանի տողս գրեցաւ վասն դաշնադրեալ ուխտադրութեանն։ Ի Շաւալ ամիս 1092։

Խոստացան երկոքին դաշնադիր կողմունքն առաջի մեր վասն ուխտադրութեանն և վասն խոստմանն որ գրեալ կայ 'ի սմա։
Կնիք Շէխէսլամի։

Ի ժամանակս ներկայ Առաջնորդի՝ Սրբազան Թադէոս Արք Եպիսկոպոսի, պակասեցաւ ջերմեռանդութիւն ուխտաւորացն, զի տեսանելով Նորին Սրբազնութեանն զխռովութիւնն և զկարգն զոր հանապազ յարուցանէին ժառանգաւորքն նոյն Աւետարանի, և տեղեկանալով սնոտիապաշտ պատգամաւորութեն ընկնուորաց, մանաւանդ հաւատար ճանաչելով զզօրութիւնս ամենայն Աւետարանից, պատուէր ետ մերձաւորացն՝ ոչ ևս ուխտ դնել յառս նոյն Աւետարանին, և 'ի վիճակն Հնդկաստանի առաքեաց զկոնդակ 'ի 6 սեպտեմբերի 1852, յետ ծանուցանելոյ զանկարգութիւնս որք ծնանին 'ի ժառանգաւորսն Աւետարանին, խափանել պատուիրեաց զառաքումն ուխտադրամոյ յանուն յիշեալ Աւետարանին։ Ի պատճառս այսմիկ կարի պակասեալ է այժմ թիւ ուխտաւորաց այնր, և նուազեալ յոյժ արդիւնք հասից նորին․ այլ տակաւին պաշտի հաւատն 'ի պարզամիտ ռամիկս, և ուխտապահութիւնն չէ բնաւ վերջացեալ։

Ժ. Սանգիւրարան է գեղեցիկ քան զայլ գիւղօրայս գաւառին, զի ունի դաշտ բազմաբեղուն ծաղկօք. և յարօտս նորա դալարերք խոտոց են որպէս սփռոցք կանաչազարդ տարածեալ յերեսս դաշտին: Յառաջ քան զամն 1840, հին գեօղն էր ՚ի տափարակ վայրի, ուր վասն յարձակել Թշնամեաց՝ դիւրեաւ աւերանային գիւղականք, և տունք նոցա յաւարի լինէին ելուզակաց: Յամի 1840 քակեցին զայն գիւղ և փոքր մի ՚ի բացեայ ՚ի նմանէ ՚ի վերայ բարձրաւանդակ տեղւոյ կառուցին զնոր գիւղ՝ վայելուչ ՃԾ ծխոյ և պարսպապատեալ հաստատոմով, ՚ի չորեքին կողմունս դնելով զբրգունս մարտկոցաց ՚ի պահել զԹշնամիսն: Ջկողով այնր անցանէ առու մի մեծ որոյ ջուրք են ՚ի բազմակնեան աղբերաց: Շինեցին զեկեղեցի վայելուչ, որ ունի արդ զերկու քահանայս՝ Տէր Դաւիթ և Տէր Պարապետ անուն: Բնակիչք այս գեղջ որպէս և քահանայք նոցա քան զայլ գիւղականս են առաւել եւս բարեկիրթ՝ քաղաքավար և հիւրասէր: Պարսիկք յաղագս գեղեցկութեան այն գեղջ կոչեն զնա “ գօլզարան ,, այսինքն ծաղիկ ՚ի նմա: Յայսմ գեղջ կայ ձեռագիր Աւետարան մի՝ կարմիր ջէրհէօր կոչեցեալ, առ որ գնան ուխտաւորք:

ԺԱ. Բոլորան յաղագս Թանձր պարզամտութեան ժողովրդոցն յառակս ելեալ է: Պատմի յաղագս նոցա Թէ կամելով ոչ տեսանել զարքունի հարկահանս՝ խորհուրդ արարեալ ժողովեն զհարկս իւրեանց և ածել ՚ի քաղաք դնեն ՚ի վիմ ձորոյն՝ Ը որ անցուդարձ է հասարակացն, ենԹադրելով Թէ ՚ի գալ հարկահանին առեալ զքսակն զայն մեկնի անդէն՝ առանց այլ եւս գալոյ ՚ի գեօղն, աշխատութիւն հասուցանել իւրեանց. կորնչի քսակն, և գայ հարկահանն պահանջել զհարկն. նոքա յարուցանեն զկագ և զխռովութիւն՝ իրաւաբանելով Թէ մեք զհարկն մեր ՚ի վաղուց հետէ ժողովեալ եդաք ՚ի վերայ ձորոյն, զի դու եկեալ տարցես անդէն: Լուեալ հարկահանին զխօլ բանս նոցին՝ տանի զգլխաւորս նոցա առ արքայն և յայտնէ զբանդագուշանսն: Արքայն հրամայէ բերել զմի աման սեաւ չամիչ՝ և զմի աման բողոջ, դնելով զխուփ ՚ի վերայ երկուցն ես, բերեն զայն եդեալ առաջի նոցա

'ի բաց առնուն զխուփսն ։ Տեսեալ նոցա թէ սնաւս չամիչն ոչ շարժի, այլ բողոջն յոտն եկեալ շրջի, ասեն զմիմեանս « ողջերք պփալ առնաւորերն », և փութան ուտել զպայտոսնիկ ։ Տեսեալ թագաւորին զթանձր պարզամտութիւն նոցա՝ ընծայէ զնոյն ամի հարկն և արձակէ զնոսա 'ի բաց ։ Բազում են այգւիսի ծիծաղաշարժ առարկայք վասն նոցա, այլ եւս զերկու եւս միայն առաջի առնեմ ։ Մանուկ մի ընդ խաղ մուծեալ է զձեռն իւր 'ի թակոյկ, և ոչ եւս կարողացեալ է 'ի բաց հանել զձեռն, ժողովեալ հօր և մօր մանկանն և կոչեալ զդեհիսն (գիւղապետն) և զազգականս՝ աշխատեալ մնան 'ի վերայ այնմ, մինչեւ հատանել զձեռն մանկանն՝ զի մարթ լիցի հանել զայն, հարսն ոք զուեալ զայն՝ դնայ և բեկանէ զթակոյկն և հանէ զձեռն մանկանն, զարմացեալ ամենեցուն ընդ խելս նորա՝ անօրհնեն զբևեռ մեծ հեղուսել 'ի ճակատ նորա զի լիցի նշանաւոր և մի կորիցէ 'ի միջոյ ժողովրդեան ։

Ի ժամանակս ձմեռան քանի մի գիւղականք Բոլորանոյ շուրջանակի նստեն 'ի վերայ թոնրոյ ջեռնուլ անդր, և ոչ եւս կարեն ելանել՝ կարծելով թէ ոտք միմեանց շփոթեալ և խառնեալ իցեն, կոչեն զդեհիսն զի որոշեսցէ զոտս իւրեանց, և նա զփայտ առեալ հարկանէ զոտս նոցա, որով այլ իւրաքանչիւր զոտս իւր յինքն քարշեալ ճանաչէ ։

ԺԱ. Նուրմարի գաւառ ունի զյետագայ գիւղօրայս և զբնակիչս ։

| Գիւղօրայք | Տուն | Արուք | Էգք ։ |
|---|---|---|---|
| Գոմղ . . . . . . | 31 . . . | 115 . . . | 107 ։ |
| Գարաքարիզ . | 11 . . . | 31 . . . | 37 ։ |
| Փարաջաբաղ . | 17 . . . | 57 . . . | 50 ։ |
| Մանխօշ . . . | 65 . . . | 171 . . . | 123 ։ |
| Չարբաղ . . . | 46 . . . | 153 . . . | 115 ։ |
| Ճաւրաւայ . . | 19 . . . | 63 . . . | 43 ։ |
| | 189 | 590 | 475 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Դուշմոր Քէօ Էրէօէ . . | 189 . . . | 590 . . . | 475 : |
| Սնաւշ . . . . | 35 . . . | 115 . . . | 100 : |
| Փահրայ . . . . | 34 . . . | 115 . . . | 89 : |
| Պոէյնով . . . . | 5 . . . | 9 . . . | 9 : |
| 9 | 263 | 829 | 673 : |

ԺԶ. Գաւառ Քեամարու բաղկանայ ըստ յետագայ աղիւսակին :

| | | | |
|---|---|---|---|
| Գաւութարագ . | 14 . . . | 45 . . . | 36 : |
| Վըհանդընէրն . | 24 . . . | 75 . . . | 61 : |
| Իէլեան . . . . | 54 . . . | 170 . . . | 154 : |
| Սաքի . . . . . | 10 . . . | 38 . . . | 23 : |
| Պօրշիբաշի . . | 22 . . . | 74 . . . | 68 : |
| 5 | 124 | 402 | 342 : |

ԺԷ. Գաւառ Գեավլու բաղկանայ ըստ յետագայ աղիւսակին :

| | | | |
|---|---|---|---|
| Զարթաղ . . . | 19 . . . | 69 . . . | 61 : |
| Օրթաշիման . | 37 . . . | 109 . . . | 99 : |
| Թօխմար . . . | 35 . . . | 119 . . . | 88 : |
| Մուղան . . . | 3 . . . | 8 . . . | 6 : |
| Ահմատարագ կամ Ճառուկի ղալայ. | 23 . . . | 82 . . . | 64 : |
| Հօսէյնաւայ . . | 38 . . . | 113 . . . | 93 : |
| Հաջիաւայ . . . | 37 . . . | 95 . . . | 83 : |
| Շարաֆաւայ . | 5 . . . | 18 . . . | 15 : |
| Փրշստան . . . | 32 . . . | 114 . . . | 102 : |
| Վամիան . . . | 11 . . . | 44 . . . | 36 : |
| Վըրթ . . . . | 87 . . . | 287 . . . | 237 : |
| Օառնայ . . . | 39 . . . | 123 . . . | 117 : |
| | 366 | 1181 | 1001 : |

նի ) որք են գիւղական բնակիչք Հրշկանայ ։

Ազգատոհմն այն՝ անուանեալ Տեարք Աւետարանին․ գտանին տառապեալք քան զամենայն գիւղականս Հրշկանայ, քան զնոսին աղքատք և միշտ պարտական ։ Պահի Աւետարանն 'ի գեղջկական սենեկի միում, զոր իւրաքանչիւր Տէր Աւետարանին ունի որոշեալ վասն այնր 'ի տան իւրում ։ Պատմեն զնմանէ, թէ 'ի ժամանակի միում եղեալ է խռովութիւն, և եկեալ աւարառուաց կամեցեալ են կողոպտել զգիւղն Հրշկան, ունողքն նոյն Աւետարանի՝ ձգեալ են զայն 'ի մէջ Աղբեր միում որ մերձ է նոյն գեղջ, թաղելով զայն 'ի մէջ աւազոյ, և ինքեանք խոյս տուեալ փախեալ են անտի․ յետ ժամանակաց 'ի խաղաղել խռովութեանն դարձ արարեալ ժառանգաւորաց Աւետարանին՝ հանեալ են զայն յաղբերէ անտի, և գտեալ են զայն անթաց 'ի ջրոյ և առանց իմիք վնասու կամ եղծման ։ Անուն նոյն աղբեր կոչի մինչև ցայսօր ժամանակի "պապի աղբիւր", զի 'ի գիւղականսն՝ անուն Աւետարանին այն հասարակօրէն "պապ" կոչի ։ Պատմի և ս թէ Ազգն Լօռեց յառաջ ժամանակաւ երբեմն մտադիր լինին աւարհարկանել զայն գիւղ, ուստի 'ի գիշերի միում ժողովելով քանի մի հեծելոց գան յարձակել 'ի վերայ գեղջն, յորժամ մերձենային անդ, տեսանեն զբազմութիւն սուսերամերկ զօրաց կարմիր և կանաչ զգեստաւորաց շրջապատեալ զնովաւ, յայնմանէ զահի հարեալ փախչին, և 'ի միւս աւուր բերեն զոչխարս և զենուն 'ի պատիւ սուրբ Աւետարանին ։ Ակնածութիւն՝ յարգ և երկիւղ՝ մինչև ցայսօր ժամանակի գտանի 'ի սիրտս այլազգի բնակչաց գաւառին Փէրիոյ յաղագս յիշեալ Աւետարանին, և ոմանք 'ի նոցանէ հաւատան անկեղծօրէն հրաշագործ զօրութեանց նորա, ուստի բազումք յայլազգեաց բերեն առ ոտս Աւետարանին զհիւանդս իւրանց՝ հանդերձ ընծայիւ դրամոյ և ոչխարի ; և մերթ ողջանան հիւանդք նոցա ։ Ի ժամանակի հիւանդութեան կամ նեղութեան իմիք զԱւետարանն բերէին 'ի Ջուղայ ունողքն նորա՝ վասն ուխտակատարելոյ նովաւ ։ Փառաւոր լինէր հանդէսն ընդունելոյ զայն 'ի Ջուղայ, զի և ժողովուրդք մանաւանդ

կանանայք․ բազմութեամբ ելանէին ընդ առաջ նորա, ոմանք և ս բոկ ոտիւք և երկրպագեալ համբուրէին զայն, զոչխարս զենուին առ ոտիւք նորա, և այնպիսի փառաւորութեամբ պատուէին զմուտ նորա 'ի Ջուղայ :

Յառաջ ժամանակաւ բազում էին թիւ ուխտաւորաց առ Աւետարանի, մինչև անգամ 'ի Բուշեռայ և 'ի Բասրայ գային ուխտաւորք առ նա : Ծնողք ոմանք յետ ծնանելոյ Ջաւակին իւրեանց՝ ուխտադիր լինէին գերծուլ զհեր գլխոյ նորա յոտս սուրբ Աւետարանին, մինչ հասանիցի մանուկն 'ի հասակ եօթնամեան․ 'ի հասանել ժամանակի ուխտադրութեանն տանէին զմանուկն առ Շրշկան գիւղ, և անդ փոքրելով ըզհեր գլխոյ նոցին՝ ուխտ արարեալ դարձ առնէին 'ի տուն իւրեանց : Յառաջ քան զտանելն մանկանն 'ի Շրշկան, ածելի ոչ ելանէր 'ի գլուխ նորա․ վասն «զուլ» լինելոյ Աւետարանին : Բազում հիւանդք և ցաւագարք Ջերմեռանդ հաւատով դիմելով յոտս սուրբ Աւետարանին՝ ըստ պատմելոյ բազմաց, ընկալեալ են զառողջութիւն : Բազումք յուխտաւորաց անտի առանեն յԱւետարանէն զարծաթի խաչ՝ զաչք՝ զլեզու՝ զբերան և զսիրտ վասն առողջութեան մանկանց իւրեանց, և յետ ժամանակաց երկպատկելով զայն դարձուցանէին առ Աւետարանն հանդերձ ուխտակատարութեամբ : Ի Պարսկաստանայ ևս երբեմն բարեպաշտ արք կամ կանայք ոմանք՝ առաքէին 'ի ձեռն հաւատարիմ արանց զուխտադրամս վասն յիշեալ Աւետարանին : Ամենայն ուխտաւորաց տուեալ լինի մատենահար, է այն կտոր մի մոմոյ՝ զոր դնելով 'ի վերայ մատանցն եղելոց 'ի կազմ Աւետարանին, պատեն 'ի մէջ թամբակի և տան ուխտաւորին 'ի պահպանութիւն իւր : Երբեմն զտանէին 'ի ծառայութեան Աւետարանին «ընկնուոր» կոչեցեալ կին՝ աղջիկ կամ մարդ : Ջզուելի է արարողութիւն սոցա : Մինչ ուխտաւոր ոք գնայ 'ի սենեակ Աւետարանին՝ «ընկնուորն» անյուշանայ, յերկիր անկեալ թաւալի, ծեծէ զկուրծս իւր, փետէ զհերսն, ցեմէ զերեսն, և յետ այնր կանգնեալ յոտին՝ բուրվառ ընկալեալ խնկարկութիւն առնէ մնջիր, իբրև պատգամաւոր Աւետարանին՝ պատմէ ուխտաւո-

բացն՝ զպատճառն ուխտադրութեանն իւրեանց և զպաշտօնեանն անուր, ձայնիւ և ըստ եղանակի երգմանցութեան պաշտամին յիշեալ պատգամքն, և բանքն են ըստ յարմարութեան և ըստ այլաբանական ձևոյ, Զի թէ առ այս նիշ երանգ զգեցող հանդերձի՝ այս են հրաման "Աղին„ "Աղէն„ կոչէ Աւետարանն 'ի խօսս սոյն արարողութեան: Յընթացս ժամանակի նոյն պատգամախօսութեանն՝ աչք "ընկնուորին„ են փակ, միտքն վերացեալ, ինքն յանդգայութեան և բանք նորա մերթ ըղհրաշս ներգործեալս յԱւետարանէն պատմին, և մերթ թէ զինչ լինելոց են առ այս ինչ անձն, կամ առ այս ինչ տեղի: Շարունակի բաղխումն նորա զկուրծս և ցնծելն զերեսս, ուստի զոգձիր յայսպիսի արարողութիւնս միշտ արիւնաթաթաւ ներկեալ լինին երեսք "ընկնուորին„: Յետ աւարտելոյ զարարողութիւնն՝ զգաստանայ "ընկնուորն„, և եթէ ոք հարցանիցէ ցնա թէ զինչ պատմեաց, իսպառ չգիտել զառացեալսն ասէ: Տնօրակալի է արդարև խաբեբայական արարողութիւնն այն զոր շահախնդրութիւնն հնարեաց: Ի Հազարջերբ գեղջէ Տէր Ստեփաննոս Քահանայ (գրողն համառօտ պատմութեանն Ջուղայու) 'ի մայիսի 10, 1246 (—) ամի յայտնէ Յարութիւն Առաջնորդին Ջուղայու զանցս նմանօրինակ անկարգութեան "Ջղպուրկայ Տէր Յովանէսն և Ջանխօ-
" շայ Տէր Նիրակոսն հինգ Աւետարան ունեն, ամէն Աւետա-
" րանի տասն ղուլ են բռնել երիտասարդք և աղջկունք և
" հարսունք սուրբ Աւետարանքն ավէլ են նոցա ձեռքն որն
" երկու երեք անգամ հնչեցուցանեն զքնարսն դիւական,
" և նոցա առեալ զսուրբ Աւետարանն ծոծան և կաքաւեն և
" ահացուցանեն զամենեսին՝ թէ Աղէն մեր մատաղ կուխնդ-
" րէ, և այլոց թէ՝ հրամայեալ է Դաւութ քո տալ այս երե-
" տասարդիս՝ կամ թէ հրամայէ Աղէն մեր տանել 'ի տուն
" ուրեք, կմ թէ խռովեալ է այս գեղջս առեալ տանեն 'ի
" միւսն: Այսպիսի արարողութեամբ երեք հարիւր ոչխար և գառն
" ժողովեալ են և բազում արծաթ . . . այդ վերոյգրեալն
" աչօք տեսաք":

Որովհետև սոյն Աւետարան է իբրև աստուացուած ըստ մեզ

ազգ պատահմի միում, վասն որոյ զօրհանապազ անպակաս լինին՝ տարաձայնութիւն և վէճ ընդ մէջ ժառանգաւորաց նորին յառաջակայ բաժանելոյ հասից և արդեանց այնր ։ Ի թղթոց փանիաս անցին 'ի ձեռս իմ երկու գրութիւնք, միոյն պարսկերէն՝ որ էր դաշնադրութիւն վասն մասնաւորութեանն արդեանց Աւետարանին, և միւսն կոնդակ հրամանի գրեալ 'ի Սրբազան Աղէքսանդր Առաջնորդէ վանին Ամենափրկչեան յաղագս աւետարկային այնմիկ ։ Զթարգմանութիւն առաջնոյն և զօրինակ կոնդակին 'ի դէպ համարեցի գրել առ տեղեաւս ։

« Յիսուսի Քրիստոսի ծառայ Աղէքսանդր վարդապետէ
« օրհնութիւն հասցէ Շուրշկանայ հասարակ քահանայից և
« ժողովրդոց ։ Աւետարանն սուրբ եկեղեցւոյ է, ով ոք որ
« քահանայ է՝ սուրբ եկեղեցւոյ սպասաւոր է, թէ Աւետա-
« րանի գելուրն և թէ հասիրանին ինչ որ կայ պիտի որ բա-
« րէբար բաժին առէք ․ Տէր Մանուէլն՝ Տէր Մկրտիչն՝ և Տէր
« Բաղդասարն էն ուերլ ժամուցն չվեռուն ․ Տէր Աստուա-
« ծատուրն՝ փոքր Տէր Մանուէլն՝ Տէր Սարգիսն՝ Տէր Մատ-
« թէոսն և Տէր Մարկոսն Աւետարանի գելուրն միայն չը-
« վեռուն, ողջն հասարակ սամ արարէք ։ Մեր սուրբ օրէնք
« և կանոնն այս է, թամամ հայաստան այսպէս է, Աւետա-
« րանի Տէր եմ ասելն մեղք է, կամ Աստուծուց վախեցէք,
« կամ մեզանէ ամաչեցէք, մինչև յերբ ձեր անկարգ բանէ-
« րին համբերեմ, և եթէ այսուհետև միաբան չեղաք, նե-
« ղութիւն կըկրէք, թէ սէր լինէք գելուրն էլ կուշառա-
« նայ, թէ Աւետարանի պէլուր, և թէ եկեղեցւոյ պէլուր մի
« տեղ կեսեցէք ։ Գրվեցաւ թուին ՌՃԾԷ ․ Մայիսի ԺԵ ։

Յեզր սոյն կոնդակի գրեալ կայ « Զաւակ Սիօնի ընտա-
« նիք նորա էցեն, երուսաղէմ ըստ Մարգարէին ։ Սուրբ Ա-
« ւետարանն է սրբութիւնն՝ որ է վարդիքաթ, ընտանիք նորա
« են քահանայքն ։ Պարտ է ամենայն հարկ և իրաւունքն
« քահանայքն վայելեն 'ի միասին, ըստ առաքելոյն որ ասէ,
« որք սրբութեց սպասաւորքն են՝ 'ի սրբութէ անտի վայելեսցեն ։
« Ըստ հրամանի Սրբոյն և բանիբուն Աղէքսանդր վարդապետին
« հրամանս այս հաստատուն է ։ Յարութին Սաֆարեան քեհեայ »։

Կայ 'ի վերայ նոյն կոնդակի ստորագրութիւն և կնիք Ե. Թանասուն իին Քահանայից Ջուղայու (եղելոց 'ի նոյն ժամանակի) որք վկայեն թէ իրաւացի է հրամանն վերոյ գրեալ ։ Տէր Նազար Ռոստամեան և Տէր Մկրտիչ Գրիգորեան Հրշկանցիք ուխտ եդեալ ընդ միմեանս զաշխնս հաստատեցին առ այն' զի սկսեալ յօրէ սոյն Թուականի որ ինչ ուխտադրամ եկեսցէ ուստի և իցէ վասն Աւետարանին Հրշկանայ, բաժանեսցին յերկու մասն, որոյ մի բաժինն հասցէ Տէր Նազարին Ռոստամեան, և միւս բաժինն' Տէր Մկրտչին Գրիգորեան, իսկ թէ լիցի տարաձայնութիւն վասն հասից Աւետարանին ընդ մէջ ուխտադրեալ երկուցն, պարտական եղիցին վասն իւրաքանչիւր տարւոյ տալ երկու թուման հատուցանել ծախադրոյն մզկիթին Իմամ Ջոմայի ։ Այս քանի տողս գրեցաւ վասն դաշնադրեալ ուխտադրութեանն ։ Ի Շաւալ ամիս 1092 ։

Խոստացան երկոքին դաշնադիր կողմունքն առաջի մեր վասն ուխտադրութեանն և վասն խոստմանն որ գրեալ կայ 'ի սմա ։

Կնիք Շէխէսլամի ։

Ի ժամանակս ներկայ Առաջնորդի' Սրբազան Թադդէոս Արք Եպիսկոպոսի, պակասեցաւ ջերմեռանդութիւն ուխտաւորացն, զի տեսանելով նորին Սրբազնութեանն զխառվութիւնն և զկարգն զոր հանապազ յարուցանէին ժառանգաւորքն նոյն Աւետարանի, և տեղեկանալով մնոտիապաշտ պատգամաւորութեն ընկնուորաց, մանաւանդ հաւասար ճանաչելով զզօրութիւնս ամենայն Աւետարանից, պատուէր ետ մերձաւորացն' ոչ ևս ուխտ գնալ յոտս նոյն Աւետարանին, և 'ի վիճակն Հնդկաստանի առաքեաց զկոնդակ 'ի 6 սեպտեմբերի 1852, յետ ծանուցանելոյ զանկարգութիւնս որք ծընանին 'ի ժառանգաւորսն Աւետարանին, խափանել պատուիրեաց զառաքումն ուխտադրամոյ յանուն յիշեալ Աւետարանին ։ Ի պատճառս այսմիկ կարի պակասեալ է այժմ թիւ ուխտաւորաց այնր, և նուազեալ յոյժ արդիւնք հասից նորին ․ այլ տակաւին պահի հաւատն 'ի պարզամիտս ոմանս, և ուխտակատարութիւնն չէ իսպառ վերջացեալ ։

Ժ. Սանգիբարան է գեղեցիկ քան զայլ գիւղօրայս գաւա-
ռին, զի ունի դա՛շտ բազմաբերբեղուն ծաղկօք. և յարօտս նորա
դալարութիւնք խոտոց են որպէս սփռոցք կանաչազգեստ տարածեալ
յերեսս դաշտին: Յառաջ քան զամն 1840, հին գեօղն էր
'ի տափարակ վայրի, ոյր փանն յարձակիլ թշնամեաց՝ դիւ-
րեաւ ակարանայրն գիւղականք. և տունք նոցա յաւարի լինէ-
ին ելուզակաց: Յամի 1840 քակեցին զայն գիւղ և փոքր մի
'ի բացեայ 'ի նմանէ 'ի վերայ բարձրաւանդակ տեղւոջ կառու-
ցին զնոր գիւղ՝ վայելուչ ըստ ձևոյ և պարսպապատեալ հաստ
որմով, 'ի չորեքին կողմունս դնելով զբրգունս մարտկոցաց 'ի
վանել զթշնամիսն: Զկողով այնր անցանէ առու մի մեծ որոյ
ջուրք են 'ի բազմակնեան աղբերաց: Շինեցին զեկեղեցի վայե-
լուչ, որ ունի արդ զերկու քահանայս՝ Տէր Դաւիթ և Տէր
Պարապետ անուն: Բնակիչք սոյն գեղջ որպէս և քահանայք
նոցա քան զայլ գիւղականս են առաւել ևս բարեկիրթ՝ քա-
ղաքավար և հիւրասէր: Պարսիկք յաղագս գեղեցկութեան
սոյն գեղջ կոչեն զնա "գօլզարուն,, որ ծաղիկ 'ի նմա: Յայսմ
գեղջ կայ ձեռագիր Աւետարան մի՝ կարմիր ջերհեզոր կոչե-
ցեալ, առ որ գնան ուխտաւորք:

ԺԱ. Բոլորան յաղագս թանձր պարզամտութեան ժողո-
վրդոցն յառակս ելեալ է: Պատմի յաղագս նոցա թէ կամելով
ոչ տեսանել զարքունի հարկահանս՝ խորհուրդ արարեալ
ժողովեն զհարկս իւրեանց և ածել 'ի քաղաք դնեն 'ի վ[րայ] ձո-
րոյն՝ որ անցուդարձ է հասարակացն, ենթադրելով թէ
'ի գալ հարկահանին առեալ զքսակն զայն մեկնի անտէն՝ ա-
ռանց այլ ևս գալոյ 'ի գեօղն, աշխատութիւն հասուցանել
իւրեանց. կորնչի քսակն, և գայ հարկահանն պահանջել
զհարկն. նոքա յարուցանեն զկագ և զխռովութիւն՝ իրաւա-
բանելով թէ մեք զհարկն մեր 'ի վաղուց հետէ ժողովեալ
եդաք 'ի վերայ ձորոյն, զի դու եկեալ տարցես անտի: Լու-
եալ հարկահանին զխօլ բանս նոցին՝ տանի զգլխաւորս նոցա
առ արքայն և յայտնէ զպանդագուշանսն: Արքայն հրամայէ
բերել զմի աման սեաւ չամիչ՝ և զմի աման բօղօջ, դնելով
զխուփ 'ի վերայ երկուցն ևս, բերեն զայն եդեալ առաջի նոցա

՚ի բաց առնուն զխուփսն ։ Տեսեալ նոցա թէ սեառ չամիչն ոչ շարժի, այլ բողոջն յոտն եկեալ շրջի, առեն զմուսեանս ՚՚ ոտղէրք փախել ոտնաւորերն ,, և փութան ուտել զայնոսիկ ։ Տեսեալ թագաւորին զթանձր պարզամտութիւն նոցա՝ ընծայէ զնոյն ամի հարկն և արձակէ զնոսա ՚ի բաց ։ Բազում են այդպիսի ծիծաղաշարժ առարկայք վասն նոցա, այլ եւս զերկու և ս միայն առաջիկ առնեմ ։ Մանուկ մի ընդ խաղ մուծեալ է զձեռն իւր ՚ի թակույկ, և ոչ եւս կարողացեալ է ՚ի բաց հանել զձեռն, ժողովեալ հօր և մօր մանկանն և կոչեալ զդեհիսն (գիւղապետն) և զազգականս՝ աղաչեալ զնոսա ՚ի վերայ այնմ, վճռեն հատանել զձեռն մանկանն՝ զի մարթ լիցի հանել զայն, հարսն ոք լուեալ զայն՝ դնայ և բեկանէ զթակոյկն և հանէ զձեռն մանկանն. զարմացեալ ամենեցուն ընդ խելս նորա՝ անօրինեն զբեեռ մեծ հեղուսել ՚ի ճակատ նորա զի լիցի նշանաւոր և մի կորիցէ ՚ի միջոյ ժողովրդեան ։

Ի ժամանակս ձմեռան քանի մի գիւղականք Բոլարանոյ շուրջանակի նստեն ՚ի վերայ թոնրոյ ջեռնուլ անդէր, և ոչ եւս կարեն ելանել՝ կարծելով թէ ոտք միմեանց շփոթեալ և խառնեալ իցեն, կոչեն զդեհիսն զի որոշեսցէ զոտս իրեանց, և նա զփայտ առեալ հարկանէ զոտս նոցա, որով այլ իւրաքանչիւր զոտս իւր յինքն քարշեալ հանէ ։

ժա. Ի Նուրխարի գաւառ ունի զայսպիսի գիւղօրայս և զբնակիչս ։

| Գիւղօրայք | Տուն | Արու | Էգք ։ |
|---|---|---|---|
| Գոմլզ . . . . . | 34 . . . | 115 . . . | 107 ։ |
| Պարաքարիզ . | 14 . . . | 34 . . . | 37 ։ |
| Ֆարաջաբադ . | 17 . . . | 57 . . . | 50 ։ |
| Մանխօշ . . . | 65 . . . | 171 . . . | 123 ։ |
| Չարբաղ . . . | 46 . . . | 153 . . . | 115 ։ |
| Շաւրաւայ . . | 19 . . . | 63 . . . | 43 ։ |
| | 189 | 590 | 475 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Դումոր Կաօ Երեօէ . . | 189 . . . | 590 . . . | 475 : |
| Ընաւշ . . . . | 35 . . . | 115 . . . | 100 : |
| Փահրայ . . . . | 34 . . . | 115 . . . | 89 : |
| Պոէյնով . . . . | 5 . . . | 9 . . . | 9 : |
| 9 | 263 | 829 | 673 : |

ժէ. Գաւառ Քեամարու բաղկանայ ըստ յետագայ աղիւ-սակին :

| | | | |
|---|---|---|---|
| Պուլութաբադ . | 14 . . . | 45 . . . | 36 : |
| Վըհանդընէրն . | 24 . . . | 75 . . . | 61 : |
| Մելեան . . . . | 54 . . . | 170 . . . | 154 : |
| Սաքի . . . . . | 10 . . . | 38 . . . | 23 : |
| Գօրչերաշի . . | 22 . . . | 74 . . . | 68 : |
| 5 | 124 | 402 | 342 : |

ժը. Գաւառ Գեափլու բաղկանայ ըստ յետագայ աղիւ-սակին :

| | | | |
|---|---|---|---|
| Չարթաղ . . . | 19 . . . | 69 . . . | 61 : |
| Օրթաչիման . | 37 . . . | 109 . . . | 99 : |
| Թօխմար . . . | 35 . . . | 119 . . . | 88 : |
| Մուղան . . . | 3 . . . | 8 . . . | 6 : |
| Ըհմադաբադ կամ Ճառուկի ղալայ. | 23 . . . | 82 . . . | 64 : |
| Հօսէյնաւայ . . | 38 . . . | 113 . . . | 93 : |
| Հաջիաւայ . . . | 37 . . . | 95 . . . | 83 : |
| Շարաֆաւայ . | 5 . . . | 18 . . . | 15 : |
| Փրչստան . . . | 32 . . . | 114 . . . | 102 : |
| Վամիան . . . | 11 . . . | 44 . . . | 36 : |
| Վըրթ . . . . | 87 . . . | 287 . . . | 237 : |
| Օառնայ . . . | 39 . . . | 123 . . . | 117 : |
| | 366 | 1181 | 1001 : |

| | | | |
|---|---|---|---|
| Գումար. յառ երեսէ · | 366 | 1181 | 1001 ։ |
| Աբասաբադ . . | 2 . . . | 9 . . . | 8 ։ |
| Նաղմովդի . . | 40 . . . | 130 . . . | 126 ։ |
| Մաղրայ . . . | 5 . . . | 16 . . . | 9 ։ |
| 16 | 413 | 1336 | 1144 ։ |

ԺԴ. Գաւառ Քեազազայ բաղկանայ ըստ յետագայ աղիւսակին ։

| | | | |
|---|---|---|---|
| Ամբարթայ . . | 11 . . . | 38 . . . | 35 ։ |
| Պալայշէխ . . | 8 . . . | 32 . . . | 29 ։ |
| Պիլիսաւայ . . | 29 . . . | 102 . . . | 103 ։ |
| Ազնայ . . . . | 26 . . . | 94 . . . | 81 ։ |
| Կեալաւայ . . | 51 . . . | 154 . . . | 140 ։ |
| Սումբրեան . . . | 6 . . . | 18 . . . | 16 ։ |
| Մարանդ . . . | 12 . . . | 43 . . . | 31 ։ |
| Գօլզար . . . . | 27 . . . | 70 . . . | 62 ։ |
| Սէյդունայ . . | 13 . . . | 30 , . . | 27 ։ |
| 9 | 183 | 581 | 524 ։ |

ԺԵ. Գաւառ Մալայերայ բաղկանայ ըստ յետագայ աղիւսակին ։

| | | | |
|---|---|---|---|
| Անուաշ . . . . | 61 . . . | 190 . . . | 151 ։ |
| Պասումաբադ . | 24 . . . | 71 . . . | 69 ։ |
| Պէյչունայ . . . | 3 . . . | 11 . . . | 9 ։ |
| 3 | 88 | 272 | 229 ։ |

ԺԴ. Գաւառ Ղարադաղնայ բաղկանայ. ըստ յետագայ ա-ղիւսակին :

| | | | |
|---|---|---|---|
| Զարհադ . . . . | 6 . . . | 23 . . . | 24 : |
| Զանախչի . . . | 32 . . . | 96 . . . | 108 : |
| Լառ . . . . . . | 50 . . . | 152 . . . | 129 : |
| Զամբար . . . . | 14 . . . | 44 . . . | 43 : |
| 4 | 102 | 315 | 304 : |

ԺԵ. Ի յիշատակեալ գաւառսն թանձր տգիտամտութիւն պաշարեալ է զամենեսին, որք ոչ զպարտիս Աստուածպաշտութեան և քրիստոնէութեան ճանաչեն՝ և ոչ զհամ կենցաղագէտ քաղաքավարութեան ստացեալ են, վասն որոյ շնորհ մեծ լինի եթէ ազգասէրք ոմանք բարեհաճեսցին հանգանակել զօգնականութիւնս 'ի բացումն երկու կամ երից դպրոցաց յայնոսիկ գաւառս, 'ի կրթութիւն և 'ի լուսաւորութիւն համազգեացն եղելոց անդր :

ԺԶ. Կամելով 'ի մի գումար բովանդակել զթիւ հայ ժողովրդականացն եղելոց 'ի Պարսկաստան ('ի բաց զատրպատականն առնելով) նշանակեմ զթիւ բնակչացն Համադանայ՝ Թէհրանայ և այլ քաղաքացն և գիւղօրէիցն՝ որք են թեմ և վիճակ Ամենափրկչեան վանի :

| | | | |
|---|---|---|---|
| Համադան քաղաք . . . . . | 40 . . . | 116 . . . | 119 : |
| Շաւրէն գիւղ նորա . . . . | 76 . . . | 166 . . . | 152 : |
| Թէհրան քաղաք . . . . . . | | | |
| Պազբինի թաղ նորա . . . . | 36 . . . | 92 . . . | 81 : |
| Շահաբդօլազիմ թաղ նորա . | 39 . . . | 78 . . . | 67 : |
| Սանակ գիւղ նորա . . . . | 30 . . . | 76 . . . | 73 : |
| Շօթօրխառ . . . . . . . . . | 13 . . . | 32 . . . | 30 : |
| Ընծայլք տեղական բնակիչք . | 9 . . . | 21 . . . | 16 : |
| | 243 | 581 | 538 : |

| | | | |
|---|---|---|---|
| Գումար վերո երեսոյ | 243 | 581 | 538 ։ |
| Ի Ռաշտ վաճառականք զանազան քաղաքաց . | | 69 | 3 ։ |
| Ի Շինդ 'իսկզբան գաղթելոյ իւրեանց էին 500 տուն . և այժմ են . . | 7 | 15 | 20 ։ |
| Բուշեռ | 9 | 32 | 34 ։ |
| | 259 | 697 | 595 ։ |

ԺԹ . Ըստ որում Հայ բնակիչք Հնդկաստանի և Ջավայի են գաղթեալք 'ի Ջուղայոյ , վասն որոյ ոչ օտար ինչ՝ կամ արտաքոյ կարգի պատմութեանս համարիմ նշանակել և ըզթիւ բնակչացն այնոցիկ կողմանց ։

| | | | |
|---|---|---|---|
| Կալկաթայ | 113 | 345 | 277 ։ |
| Օտարականք 'ի նմա | | 77 | ։ |
| Չանագար | 1 | 4 | 2 ։ |
| Չինչրայ | 6 | 6 | 6 ։ |
| Սէյդաբադ | 5 | 14 | 9 ։ |
| Դաքայ | 24 | 55 | 39 ։ |
| Մադրաս | 20 | 51 | 45 ։ |
| Բումբայի | 17 | 24 | 25 ։ |
| Սուրաթ | 5 | 19 | 17 ։ |
| Սինկափուռ | 8 | 29 | 26 ։ |
| Պինանկ | 4 | 16 | 13 ։ |
| 10 | 203 | 640 | 459 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Գումարք վերոյ երեսի . . . . . | 203 . . . | 640 . . | 459 ։ |

Ճաւայ․

| | | | |
|---|---|---|---|
| Բաթաւիայ . . . . . . . | 7 . . . | 19 . . | 20 ։ |
| Չերիբօն . . . . . <br> Թեգալ . . . . . <br> Բանիւմաս . . . . . | 4 . . . | 6 . . | 10 ։ |
| Ճապարայ . . . . . . . | 2 . . . | 13 . . | 6 ։ |
| Սուրաբայիայ . . . . . . . | 5 . . . | 11 . . | 12 ։ |
| Սմարանգ . . . . . . . | 4 . . . | 10 . . | 8 ։ |
| | 225 | 699 | 515 ։ |

ՎԵՐՋ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

